արժանաւորն ու ամենից աւելի մոռացուածն է բաղդի բերմամբ: Արդարև, ամեն ինչ զարմանալի և տարօրինակ է այս մարդու կեանքի մէջ: ելևէջներն այդ համեմատաբար կարճատև կեանքում այնքան խոշոր են և իսկայական, վայրն ու վերը այդ կեանքի ալիքներում այնքան տարբեր ու ահագին, որ խտացնելիս մարդ շշմում է: Արարատեան դաշտից մինչև Մասիսի անմատչելի կատարը, Էջմիածնի մոնթից մինչև մինիստրներին սեղանակից լինելը, Քանաքեռի շինականից մինչև ժամանակի առաջնակարգ եւրոպական գիտնականներին՝ Պարրոտ, Վագներ, Աբիխ, Հաքստհաուզէն, բանաստեղծ Րօդենշտէտ և այլոց ընկերանալն ու նրանց հրճուանքին արժանանալը: Կուսակրօն սարկաւագութիւնից մինչև գերմանուհու հետ ամուսնանալը և ապա, գրաւոր խնդիրքը, զաւակները թողնելու և նորից վարդապետ ձեռնադրուելու իղձը: Փոխարքաներին, կաթողիկոսներին ու մինչև ռուսաց կայսրուհուն ունկնդրուելուց յետոյ, նահանգական դպրոցից զրկուելով գաւառական ուսուցչի պաշտօնին իջնելը և ապա իսպառ արձակուելը պաշտօնից, այս ամենը մի այնպիսի զիգ-զագ է, մի այնպիսի ելևէջ կեանքի ալեկոծութեան, որ վաղ թէ ուշ առաջ պիտի բերէր մի սոսկալի կատաստրօֆա:

Ու պսակուեց այդ կեանքը մի աղէտալի վախճանով, որի նմանը խոշոր տաղանդների համաշխարհային պատմութեան մէջ անգամ հազուագիւտ է... Նա անյայտացաւ՝ այդ բառի իսկական իմաստով:

Միջակ ընդունակութիւնների և հակումների տէր մի անհատ՝ այս հանգամանքներում պիտի դառնար մեծամոլ, հպարտ և ֆրազէօր: Այլ էր սակայն Աբովեանի ներքին աշխարհը, այլ էին նրա իղձերը, ցանկութիւնները և իղէալները, որոնք այրում ու տոչորում էին նրա տարաբաղդ հոգին:

Նա ամբողջ էութեամբ նուիրուել էր մի գաղափարի, որ ծնունդ էր առել ժամանակից առաջ. իսկ ժամանակից առաջ աճող ծաղիկը միշտ զոհ է դառնում ձմրան ցրտերին: Նա մտածում էր հիմնել աշխարհիկ լեզու և գրականութիւն, աշխարհիկ դպրոց և դասագրքեր այն ժամանակ, երբ ամենքն զբաղուած էին գրաբարով և ճանաչում էին նրա անխորտակելի հեղինակութիւնը: Հետևանքն այն եղաւ, որ խոշոր ու հազուագիւտ տաղանդով գրուած պօէման - «Վէրք Հայաստանին» - անտիպ մնաց ամբողջ տասնութ տարի և լոյս տեսաւ միայն այն սերնդի ձեռքով,- Աբովեանի աշակերտների, որոնք, ժամանակի բերմամբ հասունացած, գնահատել և հասկանալ կարող էին այդ երկը:

Աբովեանի միւս մանր ու խոշոր գործերը ցարդ չեն անցած քննութեան

բովից և մի քանիսը նոյնիսկ չեն էլ տպագրուած կամ կարդացուած ուշի ուշով: Նորերս, թատրոնի յիսունամեակը տօնելիս, Աբովեանի անունն անգամ չը յիշուեց, այն ինչ նա մեր առաջին թատրերգուն է, որ գրել է «Ֆէօդօրա» աշխարհաբար պիէսը մէկ գործողութեամբ: Դա, որ զուրկ չէ բեմական արժանիքներից, դեռ երբէք չէ արժանացել հայ բեմում խաղացուելու բաղդին, այն ինչ գրուած է սրանից վաթսուն և եօթ տարի՝ ուրեմն մեր թատրոնի գոյանալուց 18 տարի առաջ: Աբովեանը ժամանակով առաջինն է իբրև վիպասան, թատրերգու, բանաստեղծ, առակախօս, մանկավարժ և դասագրքերի յօրինող... այս ամենի աշխարհիկ ըմբռնումով, մանաւանդ որպէս հիմնադիր աշխարհիկ մտածման և աշխարհիկ լեզուի:

Այդ ամեն ասպարէզներում որպէս սկսնակ, նա չէր կարող առաջնակարգ տեղ գրաւել, ներկայ ըմբռնումով: Իր ժամանակ, սակայն, նա եզակի էր և անզուգական: Այսօր, «Վէրք Հայաստանին» գրուելուց ուղիղ վաթսունութ տարի յետոյ, նա՝ իբրև բնութեան նկարագրող և բուռն զգացումների արտայայտիչ, իբրև առաջնակարգ ստիլիստ՝ իր նմանը չունի մեր մէջ և առանց մի երկիւղի համեմատուել կարող է իր ժամանակի առաջնակարգ եւրոպացի գրողների հետ: Այդ տաղանդը աւելի մեծանում և ստուարանում է, երբ ի նկատի ենք ունենում, որ նա առաջինն էր և նախորդ չունէր մեր մէջ:

Այս տաղանդը և այս զգացումների բոցը, մասամբ գրուած թղթի վրայ և մասամբ ներշնչուած աշակերտներին, մեծ մասով մնում էին խեղդուած, անելք և լիովին անբաւարար Աբովեանի կրակոտ, բոցավառ և հայրենասէր հոգու մէջ... Ո՛չ մինն այդ գործերից չարժանացաւ տպագրութեան նրա կենդանի ժամանակ: Տպագրած տեսաւ նա միայն մի այբբենարան, ամենից խղճալին իր գործերի մէջ, որ և արժանացաւ լիակատար անաջողութեան և հալածանքի: Մէկը չունէր այդ մարդը, որի առաջ գոնէ ձեռագիր «Վէրք Հայաստանին» կարդար, որը խնամքով թաքցնում էր այցելուներից որպէս՝ իր խօսքով ասենք՝ «ախմախի» գործ:

Դէպքերի մի տարօրինակ դասաւորութեամբ, մեզ դեռ ևս անյայտ պատճառներով, նրա պաշտօնը ցածրացնելուց յետոյ արձակեցին պաշտօնից:

Որպէսզի մի ռուս չինօվնիկ, Աբովեանի նման մէկը, 40 թուականներին, համալսարանական կրթութեամբ և եւրոպական լեզուների գիտութեամբ, խոշոր և կարևոր ծանօթութիւնների տէր,- արձակուի գաւառական ուսուցչի ողորմելի պաշտօնից, հարկաւոր էին խոշոր, շա՛տ խոշոր պատճառներ, որ ցարդ մնում են միանգամայն խաւար...

Ներսիսեան դպրոցի տեսչութեանը, հակառակ խոստումներին, նա չարժանացաւ: Կուսակրօն հոգևորականների շարքը նրան չընդունեցին... Այսպիսով ներքին սոսկալի անբաւականութիւնները զուգորդուած արտաքին անյաղթելի անաջողութիւնների հետ, պատրաստում էին մօտալուտ կատաստրոֆի պարագաները հետևօրէն և մի անողոք խստութեամբ:

Մանր, գծուծ, մերկանտիլ հայ հասարակութիւնը ներկայիս անգամ ընդունակ չէ ըմբռնելու բացառիկ հոգիների ներքին հրաբուխը. ևս առաւել ա՛յն ժամանակ, մի պաշտօնանկ չինօվնիկի և մի անկեալ մեծութեան առաջ, որպիսին էր Աբովեանը... Ու նրա կորուստը մի անհրաժեշտութիւն էր, որպէս արդիւնք ողբալի հիասթափումների:

Բոլոր կրթուած ազգերը ունեն իրանց սիրելի հեղինակները. իտալացիք Դանտէին ու Պետրարկային, անգլիացիք Շէքսպիրին, գերմանացիք Գէօթէին ու Շիլլերին, ռուսները Պուշկինին, Լերմոնտովին, որոնց շիրիմը երկրպագութեան առարկայ է այդ ազգերի համար: Մենք, հայերս, հողի մի թումբ անգամ չունենք Աբովեանի համար, որի վրայ, չե՛մ ասում տարէնը մէկ, այլ այս վաթսուն տարուայ ընթացքում գէթ մի անգամ հաւաքուած մեր յարգանքն յայտնէինք ի դիմաց այն մեծ ժառանգութեան, որ պետական օրէնքով այս տարուանից դառնում է համազգային սեփականութիւն:

Խօսքս «Վէրք Հայաստանիի» մասին է, որ այս տարուանից դառնում է ազգային սեփականութիւն, քանի որ լրացաւ արդէն 50 տարին նրա տպագրութիւնից յետոյ:

Այս հանգամանքը գոնէ, վերջապէս, առիթ պիտի տայ զարթնելու հայ հասարակութեանը և մի համազգային տօնախմբութեամբ յաւերժացնելու մարմնով ընդմիշտ կորած, բայց տաղանդով յաւիտեան կենդանի Աբովեանի յիշատակը:

*«Մշակ», 1908 թ. ապրիլի 2, N 73*

# ՀԱՅ ԲՈՇԱՆԵՐ[1]

Կովկասի բազմատարր ժողովրդների թւում համարեա՛ մի ամենաաննշան տեղ են բռնում գնչուներն առհասարակ և սակաւաթիւ հայ բոշաներն մասնաւորապէս: Այս յօդւածովս ցանկանում ենք ընթերցողին գաղափար տալ նոցա կենցաղավարութեան և առանձնայատկութիւնների մասին առհասարակ: Մեր յօդւածը վերաբերում է առաւելապէս Ախալքալաքի, Ախալցխայի և Ալեքսանդրապոլի հայ բոշաներին, որոնք 1828-ին hռչակաւոր Կարապետ եպիսկոպոսի առաջնորդութեամբ Բարձր Յայքից գաղթեցին դէպի Ռուսաստանի նոր տիրած սահմանները: Դոցա թիւը ճշդութեամբ մեզ յայտնի չէ. և դժւար թէ մէկը կարողանայ նոցա ստոյգ թիւը իմանալ, քանի որ բոշաները իրանց կենցաղավարութիւնով, իրանց թափառական նիստ ու կացով միշտ խուսափում են կանոնաւոր վիճակագրութիւնից: Նոցա թիւը մօտաւորապէս այս է. Ախալքալաքում 25 տուն, Ախալցխայում 16 տուն, Ալեքսանդրապոլում 40 տուն, Ղարսում 25 տ., Ախալքալաքի գաւառի Եխտելա գիւղում 8 տուն, Ծալկայի վիճակի Դամալայ գիւղում 20 տուն, նոյն վիճակի Ղզըլ-քիլիսէ գիւղում 4 տուն: Աւելի մեծ թւով և հին անփոփոխ աստանդական կեանքով ապրող բոշաներ կան վերջին պատերազմով նւաճած երկիրներում, առաւելապէս Աջարայի Փանէկ և Փարտուզ կոչւած գաւառներում: Այս վերջիններիս թիւը գէթ մօտաւորապէս չեմ կարող դնել, դորա մասին տեղեկանալու հաստատ աղբիւր չ՛ունենալով: Երևանում և Գանձակում ևս մի ժամանակ եղել են սակաւաթիւ բոշաներ, բայց թողնելով իրանց պարապմունքը բոլորովին մոռացել և խառնւել են տեղացի հայերի հետ: Կովկասի սահմաններում վերոյիշեալներն են այն տեղերը, որտեղ բնակւում են հայ բոշաներ: Նոցա մեծագոյն մասը ապրում է Տաճկա-Յայաստանում, գլխաւորապէս Սինոպի և Թոխաթի (Եւդոկիա) կողմերը:

## I

Յայ-բոշաները, չը նայելով իրանց խիստ սահմանափակ քանակութեանը, իրանց կրօնին՝ ու խմռած գործածած լեզւին, որ միևնոյնն

1 «Բոշա» բառը Էրզրումի բարբառով տրւում է գնչուների այն ցեղին, որը կրօնով լուսաւորչական է և խօսում է մեծ մասամբ հայերէն. այնպէս որ բոլոր այլակրօն գնչուները միշտ կրում են այլ անուններ, ինչպէս «ղարաչի», «գնչու», «ցիգան» և այլն. մինչդեռ օր. Ղարաբաղի բարբառով «բոշա» բառը ընդհանուր է բոլոր գնչուներին: Համեմատեցէք բոշաների մասին «Մուրճ», 1890 թ., N 9 - Բոշաները ըստ Կոլոչիի (յօդ. Ա. Արասխանեանցի) և Խաք Սաբա, վէպ Վ. Փափազեանի. 1890, N 9 և 10:

են ինչ որ մեր լեզուն և կրօնը և որոնց պատճառով ոմանք նոցա հայ-բոշա են անւանում, բայց այդ ժողովուրդը իրա՛ն միայն յատուկ սովորութիւններով և բնաւորութիւնով մի զարմանալի ինքնատիպ, ինքնուրոյն ժողովուրդ է, օժտւած ուշադրութեան արժանի օտարոտի յատկութիւններով:

Հայ բոշայի ազնիւ յատկութիւնները աւելի աչքի են ընկնում և կշիռ են ստանում մանաւանդ եթէ նոցա համեմատելու լինենք ո՛չ թէ մի նստակեաց և քիչ թէ շատ քաղաքակիրթ ազգի հետ, այլ իւր ցեղակից և համարեա՛ նոյն միջոցներով իւր ապրուստը հայթայթող գնչուի հետ, որ կրօնով մահմետական է: Թէև սոցա կեանքի հանգամանքները, աւանդական պարապմունքը միատեսակ են, թէև ծագումով նոքա պատկանում են միևնոյն ցեղին, բայց հայ բոշան շատ և շատ բարձր է կանգնած թուրք գնչուից:

Մինչ թուրք-գնչուն պատրաստ է յարմար րոպէին առանց առիթը բաց թողնելու թալանել մտած տունը, գողանալ ամեն մի ձեռքը ընկած առարկայ, եթէ նորա այդ գործողութիւնը դիտող չը կայ, հայ-բոշան երբէ՛ք, ո՛չ մի դիպւածում այդպիսի ստորութիւն յանձն չի առնի: «Չգողանալ»-ը նորա ցեղի աւանդական և ամենասրբազան պատւէրներից մինն է: Երբէ՛ք, ո՛չ մի հանգամանքում բոշան չի բռնւած գողութեան մէջ. գոնէ ինչքան հետաքրքրւել ենք, չենք պատահել մէկին, որ մեր ասածի հակառակը պնդէր: «Բոշան գողանալ չը գիտէ» այդ է ժողովրդի այն մասի արմատական կարծիքը, որը յարաբերութիւն ունի նոցա հետ: Այդ է պատճառը, որ ո՛չ մի տեղ արգելւած չէ բոշայի մուտքը. ամեն տան տէր վստահ է նորա շիտակութեան վերայ, մինչդեռ ոչ մի գնչու ազատ մուտք չունի տներում:

Թուրք գնչուն աւելի գործնական և խորամանկ է, երբ բանը գալիս է մարդկանցից փող կորզելուն: Նա խիստ լաւ գիտէ օգտւել ռամիկ ժողովրդի սնահաւատութիւնից զանազան խաբեբայութիւններով: Նոցա կանայք իրանց «ֆալ»-երով (հմայութիւն), եղունգներին նայելով, վիկութեամբ կամ անբարոյական և գրաւիչ կաքաւով տզրուկի նման ծծում են միամիտ ժողովրդի արիւն-քրտինքով վաստակածը: Հայ բոշան բոլորովին չը գիտէ գործադրել վերոյիշեալ թէև ստոր, բայց դիւրին փող կորզելու միջոցներից և ոչ մինը: Նոյն իսկ արտաքին հագուստից կարելի է դատել այս ցեղակից թափառաշրջիկների տարբերութեան և առաւելութեան կամ պակասութեան աստիճանը. գնչուն կարծես բոլորովին զուրկ է ամօթխածութիւնից և վայելչութեան զգացմունքներից. նա շրջում է համարեա՛ մերկ, առանց քաշւելու, մինչդեռ բոշան խիստ խուսափում է մերկութիւնից. նորա

հագուստը թէև հնոտի, ծածկւած անթիւ և բազմագունի կտորտանքով, երբէք անվայելուչ և պատառոտած չէ՛ք տեսնի: Էլ չենք յիշում բոշաների միւս ներքին բարոյական արժանաւորութիւնները, որոնք մեզ շատ կը հեռացնէին յօդւածիս նպատակից: Սակայն պէտք է աչքի առաջ ունենալ, որ այդ համացեղ և համապարապմունք ժողովրդների մէջ եղած տարբերութիւնը ունի, ինչպէս ամեն բան, իւր պատճառը. նոցանից մինը կրօնով մահմեդական է և այդ կրօնի շնորհիւ գուցէ հնուց ունեցած լաւ յատկութիւնները կորցրած՝ պէտք է միայն յետադիմէր, անպիտանար. մինչ հայ բոշան, իբրև քրիստոնեայ ժողովուրդ, մշտապէս ապրելով ու շփւելով հայերի հետ, հարկաւ շատ բարձր պիտի լինի առաջինից: Թողնելով սոցա համեմատութեան մանրամասնութիւնները, ես կ՛անցնեմ յօդւածիս բուն նպատակին, հայ բոշայի առանձնակի նկարագրութեանը:

## II

Մի ժողովուրդ, որ «չի ցանում, չի հնձում, բայց թռչունի պէս ապրում է», որի հայրենիքը աշխարհն է ամբողջապէս, հովանին երկինքը, հարստութիւնը մի աւանակ և մի քանի չուլ ու փալաս,- դա բոշան է: Հպարտ իւր աղքատութեան մէջ, անկախ և ազատասէր առանց որ և է քաջութեան, աշխարհակալ և հարկառու առանց զէնքի և բռնութեան՝ ահա բոշայի աչքի ընկնող յատկութիւնները: Նա վստահ է, որ ամեն տեղ կ'իշխէ, կը տիրապետէ այն մտքով, ինչ մտքով բոշան է հասկանում իշխել և տիրապետել բառերը: Նա գիտէ, հաւատացած է, որ ամենից կ'ստանայ իւր հարկը, ուստի և նա ամեն տեղ է, ամենուրեք է, ուր մարդիկ կան: Սարերն ու ձորերը չեն խափանում նորա ընթացքը, ծովն ու անապատը արգելք չեն դառնում նորա անընդհատ թափառելուն: Եղանակների յանկարծական փոփոխմունք, անձրև, արև, ձիւն կամ փոթորիկ երկիւղ չեն ազդում նորան. տոկունութեամբ յաղթելով բոլոր բնական արգելքներին և պատահարներին, նա ամառւայ կիզիչ տօթին, կամ խիստ ձմեռւայ բքերին ուրւականի նման երևում ու անցնում է այս կամ այն գաւառը, այս կամ այն նահանգը:

Չունենալով մասնաւոր, անձնական սեփականութիւն, նա բոլոր աշխարհը, բոլոր մարդկանց ունեցածը իւր սեփականութիւնն է համարում, եթէ նոցա կարիք ունի: Ուստի և սեփականատիրոջ վստահութեամբ անարգել նա մտնում է ամեն մի օտարականի տուն և ըստ երևոյթին արդարացի պահանջով, թէև այդ պահանջը քողարկած է լինում աղերսախառն բառերով և արտայայտւում է խնդիրքի ձևով: Բոշան

աղքատի նման մուրալ չը գիտէ, այլ նա գիտէ պահանջել խնդիրքի ձևով և վայ նորան, ով որ չի յարգիլ նորա խնդիրը: Կարկտի նման կը թափի բոշայի բերանից նորա անսպառ կծու և ազդու անէծքը՝ մերժող տան տիրոջ գլխին: Բոշան ապրում է իր ճարտար լեզւի և ռամիկներին սարսափեցնող ազդու անէծքով:-

Բոշաների մասին խօսելիս դիւրութեան համար պէտք է ճշտութեամբ որոշել այր և կին բոշայի դրութիւնը, որոնց փոխադարձ յարաբերութիւնը և կացութիւնը մի տարապայման բնութիւն ունի: Բոշա հասարակութեան մէջ, կնոջ դերը յատկացրած է տղամարդոց և, ընդհակառակը, տղամարդկանց դերը յատկացրած է կանանց: Ինչպէս բոշա հասարակութիւնը մի սպառող ոյժ է, մի պարազիտ է ամբողջ մարդկութեան համար, նոյնպէս ի մասնաւորի այր բոշան մի կատարեալ ծրիակեր է իր կնոջ վերաբերութեամբ, որի վերայ նա ծանրաբեռնել է բնութիւնից իրան նշանակած հոգսերն ու աշխատանքը: Վերևը մեր յիշած յատկութիւնների մեծագոյն մասը պէտք է տալ բոշա կնոջ, որին իսկապէս կարելի է իր ցեղի արժանաւորութիւնների և պակասութիւնների կատարեալ ներկայացուցիչը համարել: Բոշա ժողովրդի մէջ տղամարդը մի տեսակ երկրորդական, կրաւոր դեր է կատարում, նա ապրում է իր կնոջ աշխատանքի փշրանքով, ուստի իր հասարակութեան գոյութեան խնդրում նորա դիրքը խիստ աննշան է: Բոշայի գոյութեան պահողը, նորան պահպանողը բոշա կանայք են: Ընտանիքի սնունդը, նորա հագուստը և մնացած բոլոր առօրեայ չնչին պահանջները հոգացողը, տոկուն, ոչ մի արգելքի և խոչընդոտի առաջ չ'երկնչող բոշա կինն է:

Ինչքան էլ այդ ընտանիքի պահանջները սակաւ լինին, այնուամենայնիւ դոցա բաւականութիւն տալը շատ դժւար է, եթէ աչքի առաջ ունենանք որ նոքա պէտք է լրացին ոչ թէ մի արդիւնաբերող ձեռնարկութիւնով, ոչ թէ ունեցածը շահեցնելով կամ ցանածը հնձելով, այլ բոլորովին պատահական, այս ու այն տեղից համարեա զօրով կորզած պատառներով: Եւ բոշա կինը վրան առած այդ ծանր պարտականութիւնը կատարում է զարմանալի տոկունութեամբ, որ հերոսութեան է հասնում: Զրկւած այն բոլոր իրաւունքներից և քնքշութիւններից որ յատուկ է իր սեռին, նա բացի յիշեալ ծանր հոգսերը լրացնելուց, որով շատ անգամ կերակրում է 4-8 հոգի՝ հաշւելով ամուսնուն, նորա ծնողներին և իր երեխաներին, նա իր աշխատութեան վերջին կոպէկներով հոգում է ամուսնու շռայլութիւնների ծախսը - նորա ծխախոտի և արաղի գինը: Եւ այդ բոլոր ջանքերի համար վայելում է իր ամուսնուց միայն արհամարհանք:

Ընտանեկան յարկի տակ շատ սակաւ է ապրում բոշա կինը, նա իր օրերը անցնում է հեռաւոր օտարութեան մէջ, թէև նորա համար ոչ մի տեղ օտար չէ: Այցելում է ամեն մի ազգի, մտնում է ամեն մի անհատի տուն, սակայն այդ դէպքում նա միշտ խտիր է դնում քաղաքի և գիւղի, հարստի և աղքատի մէջ, միշտ առաւելութիւնը վերջիններին տալով, որոնցից նա դիւրութեամբ է ստանում իր աղքատիկ պահանջը:

Մտնելով ամեն մի տուն, հազիւ է պատահում, որ նա մտած տեղից դատարկաձեռն դուրս ելնէ: Խտիր չը դնելով ոչ մէկի տւածի մէջ, նա խնդրում է ամեն բան, ինչ որ իրան պէտք կը գայ: Նորա խնդրած բաները լինում են սովորաբար հաց, ալիւր, ցորեն, գարի, կորէկ, բուրդ, շորեր, զանազան կտորտանք, հին կօշիկներ, մածուն, սերուցք (արաժան), իւղ, կարագ, պանիր, թան և այլն. երբ ամեն բան բացասում են, նա խնդրում է աղ, փայտ, տաշեղ, ուտելու կերակուր… մի խօսքով ամեն բան, որ կարող է ունենալ և տալ տանտէրը: Նորա սուր աչքը տեսնում է տան ամեն անկիւնը, նորա հայեացքից չի խուսափում ոչ մի առարկայ, որ կարող էր իրան պէտքական լինել: Եթէ նորա խնդիրը շուտով գոհացում չի ստանում, նա դառնում է պահանջող: Պէտք է բոշայի հաստատակամութիւն ունենալ, նոցա պահանջածը մերժել կարողանալու համար:

Երկար, առանց ձանձրանալու, հին ու նոր մեռելների յիշատակով, սիրած տղամարդի, անգին զաւակների «արև-սատաղով» նա աշխատում է փափկացնել կամակոր տանտիկնոջ սիրտը և ստանալ «իւր փայը»: Երբ իւր բոլոր հնարագիտութիւնը զուր է անցնում, նա մռնչում է կրճտացնելով իւր ատամները, և մի խիստ անէծք տալով, անմիջապէս հեռանում է: Սակայն բացարձակ անիծելու համարձակութիւն չունի նա. նորա խիստ սրամիտ անէծքը միշտ արտայայտւում է փոխաբերաբար, որով միջոց տալով լաւ ըմբռնելու իւր ասածի իմաստը, նա ժամանակ է վաստակում անվտանգ հեռանալու: Այլապէս նոցա այդ համարձակ վարմունքը շատ էժան չի նստի նոցա վերայ:

Մի որ և է տուն մտնելիս, բոշան իւր ուզածը սկսում է հաճոյախօս նախաբանով. նա ճարտար լեզւով աշխատում է գտնել տանտիկնոջ (նկատենք, որ նոցա գործը միշտ կանանց հետ է) թոյլ երակը, որ շատ դժւար չէ, քանի որ նա փորձով լաւ ուսումնասիրել է բազմաթիւ կանանց թոյլ կողմերը: Գովում է տանտիկնոջ սև ու սիրունիկ աչքերը, նրա «ըռընդիկ» (գեղեցիկ) քիթն ու բերանը, նորա մազերն ու հագուստը, արտաքինից անցնում է ներքին արժանաւորութեան, գովաբանում է նորա ողորմածասիրութիւնը և այլն… Եթէ պատահած կինը ծանօթ է հնուց, կամ

ուրիշ տեղից է հարս եկած, նա յօրինում է սուտ բարևներ նորա ծնողներից և բարեկամներից, որով աշխատում է գրաւել նորան: Վա՛յ նորան, ով անծանօթ է լինում բոշայի հաճոյախօսութեան և նոցա հետ մտերմաբար խօսակցում է: Այդ խօսակցութիւնը կամաց, բոլորովին աննկատելի կերպով բոշան ուղղում է դէպի իր նպատակը և կարծես բնականաբար նորա ամանի մի պատւական մասը տանտիկնոջ ձեռով լցւում է իւղով կամ սերուցքով, որ բոշայի ամենաձեռնտու աշխատանքն է:

Միամիտ գիւղացիներին խաբող չարչի-մանրավաճառներից յետոյ, իրաւամբ կարելի է ասել, բոշան առաջին տեղն է բռնում:

Բոշա կանայք սովորաբար շրջում են զոյգ-զոյգ, առանց տղամարդի առաջնորդութեան:

Հարսներին և մատաղահաս կանանց առաջնորդում է մի փորձած հասակաւոր, կամ մի պառաւ կին: Շատ սակաւ է պատահում, որ բոշա աղջիկը շրջի բան խնդրելու, այն էլ երբ հասակն առաւ, դադարում է շրջելուց: Հարսին առաջնորդող պառաւ կամ տարիքն առած կինը լինում է կամ նորա սկեսուրը, բարեկամներից մինը և կամ մօտիկ ծանօթ հարևանը, որը իբրև մենտոր, նորահարսի ամուսնութիւնից չորս-հինգ ամիս յետոյ, նորա առաջն ընկած ման է ածում գիւղից գիւղ, քաղաքից քաղաք շրջելու և իւր ապագայ արւեստին վարժեցնելու, որով պիտի հայթայթէ իւր և իւր ամբողջ ընտանիքի ապրուստը:

Այդպիսի շրջագայութեան ողջ ընթացքում նոցա ուսերից մշտապէս կախած են լինում միշտ մի կամ երկու աւագին կաշեայ պարկեր, որոնց մէջ ածում են ստացած իրերը, մի ձեռին քուղա, մէջը իւղ, մածուն, արաժան և այլ հեղուկներ ածելու համար, իսկ միւսին՝ մի խոշոր հովւական մահակ,- բոշաների միակ զէնքը գիւղական կատաղի շների և երեխաների դէմ, որոնք հաւասարապէս հալածում ու չարչարում են նոցա: Այնքան բեռը դեռ բաւական չէ, որ նոքա պարտաւոր են օրերով շրջելու. յաճախ դորա վերայ աւելանում են և չորս-հինգ հատ մաղեր, գիւղացիներին ծախելու համար, իսկ թելն ու կծիկը, երբ երկար ճանապարհի գնալիս մահակը բանեցնելու առիթ չի լինում, բոշա կնոջ ձեռքից համարեա վայր չի ընկնում:

Նա շարունակ կամ նորոգում է հնոտի գուլպաներ, կամ նորն է գործում: Հետաքրքրաշարժ է նորա շրջագայութիւնը մանաւանդ այն ժամանակ, երբ դա լինում է ընտանիքով, կամ խմբովին: Այդպիսի խմբովին շրջագայութիւն բոշաները յանձն են առնում այն ժամանակ, երբ մի գաւառում այլ ևս տեղ մնացած չի լինում, որը այցելած չը լինեն. այնուհետև նոքա խմբով անցնում են մի այլ գաւառ կամ նահանգ, տեղաւորւում են մի կենտրոնական տեղ և,

եթէ կարելի է այսպէս ասել, բաց են թողնում իրանց ասպատակ կանանց շրջակայքը կողոպտելու: Այդպիսի տեղափոխութիւնների ժամանակ, ահա կը տեսնէք բոշա կնոջ բազմած մի աւանակի վերայ, առաջևը դրած մի երեխայ, յետևից մի ուրիշը, մէկն էլ կախած խուրջինի մի աչքից, միւս կողքից էլ քաշ արած մաղեր կամ տոպրակներ, ինքը հանգիստ մանում կամ գործում է, իսկ այրը ահագին մահակով առաջ է վարում հնազանդ անասունին: Այսպէս մի քանի ընտանիք գնում են խառն ի խուռն առանց որ և է կարգ ու կանոնի, իջնում են մի գիւղ, որտեղ տղամարդիկ պարապում են երեխաներ պահելով, որոնց մասին ի հարկէ եթէ նայելու լինենք բոշայի աչքով, շատ չնչին հոգատարութիւն է հարկաւոր, արածացնում են իրանց բեռնակիր անասունները, մաղեր են գործում, իսկ կանայք, ինչպէս ասացինք, գնում են շրջելու - «կովի պէս կաթ ժողովելու, որ գան իրիկունը կթեն», ինչպէս սովոր է ասելու այր բոշան իւր աշխատասէր կնոջ մասին: Այդպիսի առժամանակեայ բանակներում բոշաները հաւաքում են մածուն, սերուցք, կաթ և այլ բաներ, դոցանից շինում են իւղ, պանիր, ծախում և կամ տանում են իրանց տները: Իսկ հաւաքած հացը, ալիւրը և այլ անհրաժեշտ պաշարեղէնները նոքա բոլորովին չեն ծախում, այլ մթերում են իբրև ձմեռւայ պաշար:

Որովհետև այժմս բոշա հասարակութիւնը կիսովին հաստատաբնակ է դարձել, այդպիսի խմբովին շրջագայութիւնը ներկայում և հազւադէպ է լինում: Հեռաւոր տեղեր շրջողը միայնակ բոշա կինն է լինում, որը երբեմն ամիսներով հեռանում է տանից:

Այսպէս օրինակի համար Ախալքալաքի բոշաները ոտի տակ տալով Ախալքալաքի, Ախալցխայի, Ալեքսանդրապոլի գաւառները, անցնում են նաև Թիֆլիս, Թելաւ, Սղնախ, երբեմն նաև աւելի հեռու, բոլոր ժամանակ ոտով շրջելով:

Չը նայելով այդ երկարատև բացակայութեան և այն բազմաթիւ աննպաստ հանգամանքներին, որոնց շնորհիւ մի այլ կին ակամայ բարոյական անկման պիտի դիմէ, բոշա կինը անցնում է բոլոր պատահած խոչընդոտները անձնավստահ ամեն տեղ ցոյց տալով իւր ցեղի ամենամեծ առաքինութիւններից մինը՝ իւր զարմանալի բարոյականութիւնը:

Յօդւածիս սահմանից դուրս լինելով բոշա կանանց մղած հերոսական կռիւների նկարագիրը, իրանց պարկեշտութիւնը պահպանելու համար, որ իբր բարոյական խրատ պատմւում է ժողովրդի բերանում, մենք հարևանցիօրէն ենք անցնում այս աչքի ընկնող առաւելութիւնը, որից համարեա զուրկ են միւս թափառաշրջիկ գնչուների կանայք: Այս

պատճառով զուր չէ այր բոշայի այն մեծ վստահութիւնը, որ նա ազատ թողնելով իր կնոջը առանց տղամարդու առաջնորդութեան և հսկողութեան հեռաւոր երկիրներ, միանգամայն հաւատացած է, թէ քանի չէ լռել իր կնոջ բերանում նրա սուտ ու կծու լեզուն, որ կարիճի նման խայթել և օձի նման թունաւորել գիտէ, և քանի որ շարժւում է նրա ձեռքում հաւատարիմ մահակը, իր պատիւը արատաւորւած չէ:

Ասացինք, որ բոշան գող չէ: Դա պէտք էր մասնաւորել բոշա կնոջ վերաբերութեամբ, որովհետև նոցա տղամարդոց վերայ գէթ նկատւած է մի չնչին, շատ սովորական և միմիայն բոշա տղամարդոց առանձնայատուկ գողութիւն. սոքա խիստ վարպետութեամբ կտրտում են ձիերի ագիները նրանցից մաղեր պատրաստելու համար: Բայց բոշա կանանց յիրաւի ոչ ոք չի կարող մեղադրել գողութեան մէջ: Այդպիսի մի կիսավայրենի ժողովրդի մէջ, իրաւամբ զարմանալի է այդչափ գովելի յատկութիւններ տեսնելը, որոնց կարող են շատ քաղաքակիրթ ազգեր ևս նախանձել: Ամենի դուռը բաց է բոշայի առաջ. ամեն տեղ նա մտնում է անխտիր, շատ անգամ, մանաւանդ ամառ ժամանակ, երբ գիւղացիները դաշտումն են լինում կամ կալումը, նա ոչ ոք չի գտնում տանը, ուրեմն կարող է վերցնել ինչ որ ցանկայ. բայց նա մնում է հաւատարիմ իր աւանդական սովորութեանը: «Ոչինչ չը վերցնել սեփական ձեռքով» - թէև դա տիրոջ թոյլատրութեամբ լինի, այս է պատւիրում նորա ցեղական պատուէրը, որ դարերով սրբագործած, խիստ օրէնքի նշանակութիւն է ստացել բոշայի աչքում և որի զանցառութիւնը աններելի մեղք է համարւում նորա համար: Բոշան երբէք անմիջապէս չի վերցնիլ իր ուզածը, այլ դա միշտ կատարւում է միջնորդաբար, տան մի անդամի ձեռքով, որ տւողին «ողորմութիւն» համարւի, իսկ ստացողին «հալալ» լինի: Երբ տանտիկինը զբաղւած է, բոշան սպասում է մինչև նորա գործի վերջանալը և ապա ստանալով իր բաժինը, հեռանում է: Մտնելով մարդ չեղած տուն, նա մի քանի անգամ կանչում է տանտիկնոջ և երբ նա չի երևում՝ անմիջապէս հեռանում է:

Նկատւած է, որ բոշան կը խաբի, բայց չի գողանալ. պէտք է ասել, որ բոշաները սովորութիւն ունեն երբեմն հետները ման ածել վատ տանձ, խնձոր կամ այլ մրգեղէն, առաւելապէս դոշաբ, որոնք դարձեալ ձրի հաւաքած են լինում այլ տեղերից և այդ մրգեղէնով յաճախ խաբում են երեխաներին, երբ մեծերը տանը չեն և նոցա ձեռքով տանից ցանկացած բանը վերցնում են: Ի հարկէ երբ մեծերը վրայ հասնեն, բոշան արդարանալու միջոց կ'ունենայ թէ, ինքը չի վերցրել իր ձեռքով, այսինքն չի գողացել, այլ երեխան է նրան տւել:

Շրջելով երկրէ երկիր, գործ ունենալով ամեն տեսակ մարդոց և ժողովրդի հետ, ել ու մուտ ունենալով ամեն տան և հասարակութեան մէջ, բոշա կանայք ձեռք են բերում զարմանալի գործնական սրամտութիւն, որ առակ է դարձած ժողովրդի մէջ: Այդ է պատճառը, որ շատերը հետամուտ են լինում բոշաներին հարցերով՝ նրանցից ծարաշարժ և սրամիտ պատասխաններ ստանալու համար: Եւ ո՛չ մի խօսք, ո՛չ մի ակնարկ, ո՛չ մի հեգնական հարցմունք անպատասխան չի մնում բոշա կնոջ կողմից: Սրամտութիւնների իւր անսպասելի բառարանից իւրաքանչիւր հարցմունքի կամ ակնարկի փոխանակ՝ նա տալիս է խիստ շուտափոյթ, սրամիտ և կծող պատասխաններ: Այնպիսի հանգամանքներում երբ լիրբ տղամարդիկ նորա հասցէին արատաւոր և անառակ սրախօսութիւններ են ուղարկում, բոշան ոչ ամաչում է և ոչ էլ վախենում է հապճեպ և յարմարաւոր պատասխաններ տալուց: Այդ սրախօսութիւնները սովորաբար արտայայտում են քողարկած, փոխաբերական մտքերով, որոնք արտաքուստ վիրաւորիչ չեն երևում: Դորանով բոշան ազատւում է շատ անախորժութիւններից, որովհետև մինչև հակառակորդը հասկանայ բոշի երկդիմի պատասխանի իմաստը, բոշան արդէն հեռացած լինելու միջոց գտած կը լինի: Երբ բանը բացարձակ կռւի է հասել, այդպիսի նեղ հանգամանքներում նա էգ առիւծի արիութեամբ թէ խօսքով և թէ գործով գիտէ պաշտպանել իւր պատիւը:

Երևի այդպիսի շուտափոյթ և սրամիտ պատասխան տալն է պատճառ եղել այն ասացւածքի կազմւելուն, որ ժողովուրդը գործածում է հապճեպ պատասխանող անձանց համար թէ՝ «բոշի պէս խօսքը ճեպն է» (բոշի նման պատասխանը պատրաստ գրպանումն է): Լաւ հայհոյելուց, շուտ, սրամիտ պատասխան տալուց զատ, բոշան մանաւանդ լաւ անիծել գիտէ գիւղացի չարաճճի երեխաների դէմ, որոնք խմբերով քարկոծում են նոցա. այդ անէծքը միակ զէնքն է: Բոշայի աղբիւրի նման առատաբուղխ բերանից դուրս հոսող հարուստ, բազմատեսակ անէծքը բառերով անհնարին է նկարագրել, դորա մասին լիովին գաղափար կազմելու համար պէտք է անձամբ լսել և զարմանալ:

## III

Գանք այժմ այր բոշային: Նա իւր դանդաղաշարժ և անգործ կեանքի մեծագոյն մասը հին խրճիթի ծածկոյթի տակն է անցկացնում: Նա մասնակից չէ իւր անխոնջ, մշտապէս թափառող կնոջ ո՛չ աստանդական կեանքին ամբողջապէս, ոչ չարչարանքներին և ոչ էլ նորա ամենօրեայ

զրկանքներին:

Այր բոշան իւր ջանասէր կնոջ աշխատանքի արդիւնքի անհոգ վայելողն է. նորա վաստակի պտղի տէրն ու ճաշակողն է: Ինչպէս մի արևելցու ճշգրիտ պատկեր, նա իւր ընտանեկան պէտքերի մեծագոյն մասի հոգացողութիւնը գցելով կնոջ վերայ, ինքը հանդարտութեամբ կլանում է չարչարանքի արդիւնքը առանց խնայելու: Բոշա կինը իւր հաւաքածի տէրը և գործադրողը չէ, նա իւր քաղցը միշտ դուրսը, օտարների տանն է յագեցնում, մինչ իւր «պուտ-պուտ» հաւաքած կաթը, մածունը և կամ իւղը անցնում է իւր մարդու ձեռքը, որի տէրը, գործադրողը կամ ծախսարարն է համարւում նա: Ինչպէս խելքին փչեց այնպէս էլ կարող է վարուել նա այդ ապրանքի հետ. կարող է ծախել և ծխախոտի կամ արաղի տալ, այդ նորա ցանկութիւնից է կախւած:

Բոշայի պահանջները և ձգտումները չափազանց սահմանափակ լինելով, նա զերծ է մնացել նոցա անձնատուր լինելու ցանկութիւնից, որոնց յաճախ դէպի շռայլութիւն և ապականութիւնն են տանում մարդոց: Նորա շռայլութեան միակ առարկաներն են էժանագին ծխախոտը և օղին, մանաւանդ վերջինը, որ առանց բացառութեան խիստ սիրելի է բոշաներին: Առանց տատանւելու կարելի է ասել, որ արբեցողութիւնը բոշաների համար հասարակային ախտ է դարձել: Դոցանից զատ այր բոշան ուրիշ շռայլութիւններ չունի: Նորա ամբողջ կեցութիւնը պարզ, նոյն իսկ աղքատիկ կերպարանք է կրում: Նորա հագուստը իսկ և իսկ համապատասխանում է իւր դրութեանը. արխալուղը ծածկւած անթիւ կարկատաններով, շալեղէն չուխան և շալարը պարզապէս վկայ են մեր ասածին: Ներկայումս թէև կան բոշաներ, որոնք տնտեսապէս կատարեալ ապահով դրութեան մէջ լինելուց զատ, շահով փող էլ ունին, բայց երբէք նոցանից ո՛չ մինը չի ցանկանում իւր աղքատիկ հագուստը փոխել մի քիչ թէ շատ մաքուր և կոկիկ հագուստի հետ: Բոշան իւր բոլոր հարստութեան մէջ յաւիտենական աղքատ է մնում ամբողջովին, ոչ մի տնտեսական ապահովութիւն նորա ապրուստը մազաչափ չի փոխիլ:

Նա պարապ ժամերը անց է կացնում իւր հասակակիցների հետ այս կամ այն խրճիթում նստած խօսելով և ծխելով: Իրանց թափառական կեանքի արկածները, այս ու այն երկրում, այս ու այն ազգի մօտ տեսածներն ու լսածները, իրանց կանանց հաղորդած պատմութիւններն ու դէպքերը բոշաների խօսակցութեան անսպառելի աղբիւրներն են: Այդ խօսակցութիւնների ժամանակ մեծ դեր են խաղում բոշա ժողովրդական երգիչները, որոնք անթիւ առակների, հանելուկների, երգերի և

մանաւանդ գովական հէքիաթների անսպառելի պաշար ունեն ժողովրդին զւարճացնելու համար: Եւ այր բոշան զւարճանում է. ոչ մի հոգս, ոչ մի աշխարհային մտածմունք չեն վրդովում նորա հոգու անդորրութիւնը: Յասկանալի է կարծեմ, որ նորա նիւթական և բարոյական պահանջների խիստ սահմանափակ քանակութիւնով կարելի է բացատրել նորա անհոգ և մշտազւարճ կեանքը:

Արդարադատ լինելու համար չը մոռանանք ասելու, որ այր բոշան, ուրիշ ժողովրդի հետ համեմատելով ինչքան էլ ծոյլ, անգործ անւանելը նորան իրաւացի համարենք, այնուամենայնիւ նաև իր պարապմունքը, իր գործը, իր հոգսն ունի, որքան էլ այդ պարապմունքը չափազանց չնչին լինի: Եւ անկարելի էլ է երևակայել մի մարդ, որ ամբողջ օրը ձեռքերը ծալած, պարապ նստած լինի:

Ինչպէս տեսանք, այր բոշան իր բոլոր պարտականութիւնները ծանրաբեռնել է իր կնոջ վերայ, որի բացակայութեան միջոցին ինքն է կատարում տան գործերը, երբ տանը մի ուրիշ կին չկայ: Նա կնոջ պէս տանը նստած, հսկելով և խնամելով իր երեխաներին, մեծ մասամբ պարապում է բոշաների ժառանգական և բացառապէս նրանց յատուկ արհեստով - մաղագործութիւնով, որը չափազանց դիւրին, ոչ մի մտաւոր աշխոյժ չը պահանջող և միայն կնոջ վայել ու նոցա թոյլ ձեռներին մատչելի գործ է: Բոշան խիստ պարծենում է իր այդ արհեստով. նոցանից ոմանք, իրանց «մաքրիչ» են անւանում այն պատճառով, որ հասարակաց հացը մաքրելու գործիքը -մաղը նոքա են մատակարարում: «Մեզ ոչ թէ բոշա՝ այլ մաքրիչ պիտի անւանէք». ասում են բոշաներից առաւել պատւասէրները, որոնք հասկանում են բոշա անւան ոչ այնքան համակրելի նշանակութիւնը: Բացի մաղերից, որ պատրաստում են ձիու պոչի մազերից, և որոնց ծախողը, ինչպէս տեսանք, դարձեալ նոցա կանայք են, բոշաները շինում են երեխայական թմբուկներ, տափեր, որոնց փոխարինում են իրանց պէտքական բերքերի հետ: Մի քանի տեղերի բոշաները, ինչպէս օրինակի համար Սինոպի և առհասարակ Անատոլիայի բոշաները, պարապում են դարբնութիւնով ևս, աւելի լաւ կը լինէր ասել նալբանդութիւնով և երկաթեայ մանր իրերի նորոգութիւնով: Բոշան ոչ միջոց և ոչ էլ ցանկութիւն ունի կատարեալ դարբին լինելու, որ մեծ ջանք և խիստ աշխատութիւն է պահանջում, և որի պարագաները պիտի նորան ստիպեն մշտակեաց լինելու: Նա պայտում է իր աւանակը, եթէ պատահի՝ նաև իր դրացունը և օտարինը, նորոգում է հին դանակ, մանգաղ կամ գերանդի, հաւաքած երկաթի կտորտանքից շինում է մեխեր կամ պայտեր, ահա այդ է նորա

դարբնութեան ծայրը: Այժմ սակաւադէպ արհեստի դիմող բոշաները սովորում են հասարակ ոտնամաններ կարել (ո՛չ կօշկակարութիւն), որ դարձեալ չի պահանջում առանձին խելք կամ ոյժ:

Ինչպէս ընթերցողը կը նկատի, մեր թւած պարապմունքների մէջ, որոնցով զբաղւում է այր բոշան (որոնց հազիւ թէ կարելի լինի արհեստ անունը տալ), ոչ մի արհեստ չկայ որը քիչ թէ շատ մտաւոր կորով, կամ ֆիզիքական ոյժ պահանջէր: Բոշայի ընտրածը բոլոր արհեստներից ամենադիւրինը, ամենաքիչ մտաւոր կամ ֆիզիքական ոյժ պահանջողներն են, որոնք կան և միշտ մնում են նոյնը նորա ձեռքում առանց յառաջադիմելու, միշտ կանգնած, ինչպէս որ մշտապէս կանգնած և անփոփոխ է մնում ինքը բոշա ժողովուրդը:

Բոշան միշտ խուսափում է այն բոլոր բաներից, որը պահանջում է խելք, մտածողութիւն, կամ ֆիզիքական ոյժ, աշխատանք, ճակատի քրտինք: Ի հարկէ դրականապէս չի կարելի ասել, թէ բոշան անընդունակ է որ և է ֆիզիքական կամ մտաւոր աշխատանքի և յառաջադիմութեան՝ թէև փաստերը այդպէս են թելադրում եզրակացնելու. այսքանը միայն կարելի է ասել, որ բոշայի թէ մտաւոր և թէ ֆիզիքական ոյժերի դարևոր անգործադրութիւնը, ճրի ապրուստի հնարաւորութիւնը սաստիկ խոպանացրել են բոշայի մէջ այն ոյժերը, որոնցով ապրում է իւրաքանչիւր անհատ, որ ընդունակ է աշխատելու:

Միակ պարապմունքը, որտեղ քիչ թէ շատ փայլում է բոշայի մտաւոր ընդունակութիւնը, որտեղ արտայայտւում է նորա խելքի արդիւնքը, նորա աշխարհահայեցողութիւնը և զգացմունքները, նորա ճարտարութիւնն և սրամտութիւնը, մի խօսքով նորա հոգեկան, մտաւոր կեանքը ամբողջովին, դա աշուղութիւնն է, որ ի նպաստ բոշաների, նոցա մէջ տարածւած է: Բոշաների մէջ կան ընտիր ժողովրդական երգիչներ, որոնք նոյն իսկ հայերի մէջ մեծ համբաւ են վայելում ոչ այնքան իրանց ինքնուրոյն ստեղծագործութիւնով, որքան իրանց ծիծաղաշարժ սրամտութիւնով: Նոքա երգում են բոշայերէն (յօդւածիս վերջում իբրև նմուշ դնում եմ մի քանի տուն նոցա երգերից), հայերէն, բայց առաւելապէս թուրքերէն: Բոշա երգիչները լաւ հէքիաթներ ասողներ են. նոքա ձմեռային երկար գիշերները իրանց վառվռուն հէքիաթներով զբաղեցնում են բազմաթիւ գիւղացիների, որոնցից իբրև վարձ որոշեալ քանակութեամբ ցորեն կամ գարի են ստանում: Հարսանիքների, տօների, հասարակաց խաղերի և զւարճութիւնների ժամանակ այդ երգիչները թէ բոշաների և թէ հայերի մէջ անհրաժեշտ մասնակցողներ են:

# IV

Զարմանալի է բոշաների անուսումնասիրութիւնը. նոցանից ոմանք ապրելով քաղաքներում, իրանց կրօնակից հայերի հետ, շատ սակաւ է պատահում որ երեխաներին ուղարկեն նոցա ուսումնարանը ուսանելու. նոքա չեն ուզում հետևել այն ազգին, որի անդամն են համարում իրանք իրանց: Մի քանի տարի առաջ երկու թէ երեք բոշա երեխայք միայն կային Ախալքալաքի հայոց ուսումնարանում, որոնք չը վերջացրած դուրս գնացին, առաջին և վերջին ուսանող սերունդը դառնալով բոշաների մէջ: Նոցա այդ անուսումնասիրութիւնը առիթ է տուել իրաւամբ այն առածի կազմելուն թէ՝ «քուրդտէն փաշա, բոշատէն քեշիշ օլմազ» (քրդից փաշա, բոշայից քահանայ չի լինիլ):

Բոշան ձգտում չունի նոր բան սովորելու, գուցէ նա անընդունակ էլ է նորը, լաւը ըմբռնելու, հասկանալու. մանաւանդ այս կարծիքը պէտք է ընդհանրացնել այր բոշայի վերաբերութեամբ, որ ամեն բանով յետ է իւր կնոջից: Բոշան մի մանուկ է, մի երեխայ, մանկան բոլոր թուլութիւններով: Սակայն նա մանկան հետաքրքրւելու և շլանալու յատկութիւններից զուրկ է: Այդ այդպէս լինելով, բնական է, որ բոշան մարդկային յառաջադիմութեան փայլուն առաւելութեան արժէքը ո՛չ հասկանում է, ոչ էլ հետաքրքրւում է հասկանալու. ուստի և նա կանգնած է միշտ միևնոյն աստիճանի վերայ և կարծես թէ ոչ մի ձգտում չունի այդ ստոր աստիճանից բարձրանալու, գէթ տեսնելու համար, թէ ի՞նչ է կատարւում իւր շուրջը, թէև, աւելացնենք, նորա մտաւոր կարողութիւններն էլ դորան հասնելու շանսեր չեն ներկայացնում:

Բաւականանալով իւր կնոջ հաւաքած հացի փշրանքներով, որ խիստ սակաւապետութեան, համարեա աղքատութեան է հասնում, բոշան զերծ չէ ինքնագոհ հպարտութիւնից: Նա իւր շրջակայքի, իւր աչքին երևացող հարստութեան, բարեկեցութեան և փառայեղութեան վերայ նայում է դերւիշի արհամարհանքով: Նա երեխայի պարզութեամբ նայում է իւր շուրջը և կարծես չի տեսնում կամ հասկանում ինչ որ կատարւում է այն երկիրներում, այն ժողովրդոց մէջ, որոնց յաճախ նա այցելութեան է գնում: Մի անգամ անցկացած անմատչելի սարը՝ նա միւս անգամ տեսնում է իւր առաջը հարթած, դիւրամատչելի ճանապարհ. մի անգամ գնացած հասարակ ուղին դարձել է սլագնաց երկաթուղի. իւր հարևանի խրճիթը, բարձրացել, դարձել է երեք-չորս յարկանի փառաւոր պալատ. նայում է այդ ամենի վրայ բոշան և կարծես չի տեսնում, ականջին է հասնում այդ դղրդիւնը, որ անընդհատ առաջ գնացող կեանքի նշանն

է պարունակում և կարծես չի լսում: Այդ բոլորը նորան երևում է ինչպէս մի երազական երևոյթ, անհասկանալի մարդկային սատանայութեան մի արդիւնք: Նայում է նա այդ բոլորի վերայ և, զարմանալու տեղ, կարծես արհամարհանքով կրկնում է. «աշխատեցէ՛ք, չարչարւեցէ՛ք, զուր ջանք, անօգուտ վաստակ, ես կամ և մնում եմ նոյնը. դուք ձեր ցանկութիւններին յագեցում չէք կարող տալ, իսկ ես կ՚ապրեմ հանգիստ ու անդորր»: Բոշան արհամարհում է լուսաւորութիւնը, որովհետև նրանից շատ յետ մնացած լինելով, նորան ըմբռնել չը կարողանալուց զատ, նա կատարելապէս զգում է թէ լուսաւորութիւնը իւր թշնամին է: Լուսաւորութեան մէջ նա իւր ապրուստի կորստեան նշոյլներն է տեսնում. այս պատճառով նա խուսափում է այն ամենից ինչ որ լուսաւորութեան հետքեր է կրում: Նա որոնում է նահապետական քնով քնած ժողովուրդ, հեռաւոր, դժւար մատչելի խորշեր, որտեղից նա կարող է ճարել իւր ապրուստը:

Փորձեցէ՛ք մտնել մի բոշայի խրճիթ կամ հարցրէք նորա կեանքից, նորա լեզւից տեղեկութիւններ, աշխատեցէք իմանալ նորա դրութեան մանրամասնութիւնները,- այդ անկարելի, եթէ չ՚ասենք անհնարին է: Քո շլեապդ նորան երկիւղ է ազդում, խորամանկութեամբ նա քո առաջը կը քծնի, իւր կեանքի մուր կողմերը արւեստութեամբ նա կ՚աշխատի ծածկել, քեզ կ՚աղաչի, որ աշխատէ՛ք նորա համար հող ձեռք բերել, նա չունի, թէ չէ ինչպիսի ուրախութեամբ նա երկրագործութիւնով կը պարապի թողնելով իւր զզւելի զբաղմունքը, կը խեղճանայ, կը ստորանայ նա. բայց երեսներդ դարձնէք թէ չէ՝ նա ձեր յետևից իւր լեզուն կը հանէ: Բոշան միայն խաբել գիտէ, նա արհամարհում է ամեն մի պարապմունք, դոցա թւում և առաւել սաստիկ այն մարդու պարապմունքը, առանց որին նա ապրել չի կարող: «Աղքատ ու հպարտ». ահա բոշայի յատկանիշ կողմը, որը իւր ծագման վերայ նայում է ճիշտ այն հայեացքով, ինչ հայեացքով ազնւականը նայում է իւր հին տոհմական ծագման վերայ. ուստի ամեն մի պարապմունք որ բոշայութիւն չէ, անարգելի, ստոր, պարսաւելի է բոշայի համար: «Իմանաս սալի զռզռոց, չիմանաս իշու զռզռոց». ահա այն ամենախիստ անէծքը, որ կարող է մի բոշա մի ուրիշ բոշայի տալ: «Իմանաս սալի (սայլի) զռզռոց», կը նշանակէ գիւղացի, երկրագործ դառնաս, քո պարապմունքդ եզներ և սայլ լինի, քո լսածդ սայլի ճռինչը լինի, որ միայն պարսաւելի, արհամարհանքի արժանի ռամկին է արժանի և ոչ թէ մի ազնւիկ բոշայի: Դու գիւղացի դառնաս, անազատ, սայլի միայն քաշ եկող, նորա անիւներից բարձրացած փոշին ծծող և ոչ թէ մի ազատակամ բոշա, որ գիւղացու նման չարչարանքով չի վաստակում իւր հացը, որի ականջին սայլի անախորժ

ճռնչոցի փոխանակ հասնում է միայն իշուկի - «նարդոսի» նւիրական, բոշայի համար խիստ քաղցր, շատ դուրեկան ձայնը: Ահա թէ ուր է հասնում բոշայի տածած արհամարհանքը դէպի երկրագործութիւնը և նորա ունեցած կարծիքը իւր պարապմունքի մասին: Բոշայի համար մի առաւել մեծ դժբաղդութիւն չը կայ իւր իշու, իւր պատւական «նարդոսի» զռզռոցից զրկւելուց աւելի, ուստի վերոյիշեալ բնորոշ անէծքը այդ ամենախիստ, բոշայի անբաղդութեան ամենաարմատական կէտն է ընտրում նորա վերայ ազդելու համար: Էշը, եթէ կարելի է այսպէս ասել, բոշայութեան սիմբոլն է. իւր ամբողջ կեանքը, իւր բոլոր էութիւնը կապւած է այդ խոնարհ անասունի հետ, ինչպէս գիւղացու կեանքը կապւած է հողի հետ. ուստի այդ կենդանին, որից զատ ուրիշ ոչ մի կենդանի չի պահում բոշան, նորա ընտանիքի մէջ մի իսկական անդամի տեղ է բռնում:

Նա իւր իշուն պահում է և խնամում է իւր որդուց աւելի, նորան տալիս է այնպիսի քնքոյշ, սիրելիածականներ, որ իւր կնոջն էլ չի տալ. «ծաղիկ, նարդոս, թումբուլ, մարալ, ընտանի» (վերջինը կնոջ համար ևս գործածելի է) և այլն և այլն սովորական անուններն են, որոնք բոշան տալիս է իւր սիրելի աւանակին և որից զրկւելը բոշայի համար աշխարհիս ամենամեծ չարիքն է համարում նա:

## V

Վերևը դրած այր և կին բոշայի առանձնակի նկարագրութիւնից կարծեմ ընթերցողը քիչ թէ շատ գաղափար կազմեց նոցա փոխադարձ յարաբերութեան մասին, որ խիստ բնորոշ կերպով արտայայտւում է այն խոստումով, որ տալիս է ամուսնանալու ժամանակ հարսնացուն իւր փեսացուին. երբ մօտենում է պսակի ժամը, ինչպէս պատմում են, փեսացուն մտնում և պահւում է թոնրում, իսկ հարսը մօտենալով նորան մի քանի անգամ համոզողական ոճով խնդրում է դուրս գալ թաքստեան տեղից. «Դուս էկօ, տոտիկներիդի մեռնիմ, դո՛ւս էկօ, մուրամ, կուրամ՝ քեզի կը պահեմ»: (Դուրս ե՛կ, ոտներիդ մեռնեմ, ես մուրամ, կուրամ՝ քեզ կը պահեմ): Այդ խոստումը ստանալով իւր նշանածից, փեսան դուրս է գալիս և գնում պսակւելու: Քանի որ աղջիկ է, բոշան ազատ է, չի շրջում ապրուստ ժողովելու, ապրում է հօր տանը, կատարելով միայն ընտանեկան թեթև գործեր. նրա երեսը բաց է, քողով չի ծածկած, նա ազատ է, խօսելը և մարդկանց երևալը նորան չեն արգելւում: Բայց երբ նա նշանւեց, մանաւանդ երբ նորա շրթունքը ինչեց յիշեալ անխուսափելի խոստումը, որով նա դառնում է մի նոր տան անդամ, որով այդ տան

կարիքներն ու հոգսերը հոգացողն ու մատակարարողն է դառնում, զրկւում է այն ազատ, անկախ դրութիւնից, որ վայելում էր իւր հօր տանը: Նա իրաւունք չունի իւր փեսայի տան մեծերի հետ խօսելու մի առժամանակ, պէտք է երեսը քողով ծածկէ մինչև որ սկսի իւր շրջագայութիւնը, մինչև որ ձեռքն է առնում աստանդական մահակը: Սկզբներում ի հարկէ նա լինում է ամաչկոտ և անհամարձակ, այդ պատճառով նորան առաջնորդում է իբրև մենտոր մի փորձառու և հասակաւոր կին. իսկ հետզհետէ վարժւելով իւր պարապմունքի մէջ, դառնում է իւր տան պահպանողը: Յղութեան վերջին ամիսներին սովորաբար բոշա կանայք դադարում են շրջելուց և տանն են մնում. թէև սակաւ չի պատահում, որ նոքա ճանապարհին կամ հեռու օտարութեան մէջ ծնելով, վերադարձին իրանց վաստակի հետ մի զաւակ էլ պարգև են բերում իրանց ամուսիններին:

Բոշա կինը իւր այդ դրութեամբ, իբրև ընտանիքի առաջաւոր ոյժ, իբրև նորա խոշոր հոգսերի հոգացող, հասկանալի է, թանկ էլ պիտի գնահատւի: Ամեն մի բոշա փեսացու պարտաւոր է մի պատկառելի դրամագլուխ վճարել իւր հարսնացուի ծնողաց: Այդ դրամագլուխը, որ «հատէմասի» (համաձայնութիւն, այո ասել) է կոչւում, Ախալքալաքի բոշաների որոշմամբ 115 րուբլի է ներկայումս: Առաջ դա աւելի շատ է եղել, բայց անցեալ տարուց բոշա համայնքը կարգադրել է դորանից աւելի երբէք ոչ պահանջել, ոչ էլ վճարել: Այդ համեմատաբար մեծ գումարը նոքա առանձին դժւարութեամբ չեն վճարում. գէթ Ախալքալաքի բոշաները համեմատելով նոյն տեղի հայ գիւղացիների հետ, որոնց մօտ նոյնպէս այդ սովորութիւնը կայ, նոցանից շատ աւելի և որ գլխաւորն է, շատ էլ դիւրութեամբ են վճարում: Այդ և ուրիշ մի քանի հանգամանքներ ցոյց են տալիս, որ բոշաները խեղճ, համարեա աղքատ ապրելով, աշխատածը յետ են գցում «նեղ օրւայ համար», թէև նոքա աշխատում են ամեն կերպ ցոյց տալ, թէ նոքա ամեն բանի կարօտ յետնեալ աղքատներ են: Մի զուտ բոշայական յատկութիւն, որ ի հարկէ ոչ ոքի չը պիտի զարմացնէ:

Այդքան փող ստանալով աղջկայ ծնողները խիստ աղքատիկ օժիտ են տալիս իրանց աղջկան. մի դիմացկուն և ընտիր մահակ, մի մեծ կաշեայ տոպրակ, իւր հագի շորերը, երբեմն նաև մի զոյգ նոր, հասարակ կտորից կարած շոր, ահա բոշա աղջկայ իւր հօր տանից տարած օժիտը, որոնք և նորա ամենաանհրաժեշտ իրերն են:

Բոշաների հարսանիքը թէև զուրկ է արտաքին շքեղութիւնից, բայց շատ հետաքրքրելի է իւր օտարոտի ծիսակատարութիւններով: Առատ օղին, որ բոշաների ամենասիրելի խմիչքն է, միջոց է տալիս

բոշային անչափ արբելու և ուրախանալու: Այդ առանց այն էլ մշտազւարթ ժողովուրդը անձնատուր եղած ոգելից խմիչքի ազդեցութեան, գոռում, գոչում, երգում, պարում, սրախօսում, զւարճանում է անընդհատ: Հարսանիքին մասնակցում են առանց բացառութեան բոլոր բոշաները. հարևան, բարեկամ, կամ ազգական փնտռող չը կայ. հասակաւոր, մեծ, փոքր, երեխայ, կին, աղջիկ և հարս, բոլորը անխտիր մասնակցում են այդտեղ: Ինչպէս ուրախութիւնը, նոյնպէս էլ վիշտը բոլորի համար է, ընդհանուր է. բոշան ինչպէս գիտէ ուրախանալ իւր ընկերոջ հետ, նոյնպէս էլ գիտէ վշտակցել նորան: Լացը կամ խնդումը, վիշտը կամ բերկրանքը, բոշաների մէջ անհատից անցնում է ընդհանուրին և փոխադարձ:

Պէտք է նկատել, որ բոշաները իրանց որդոց ամուսնացնում են շատ մատաղահաս. սովորաբար 15-17 տարեկան տղան և 12-15 տարեկան աղջիկը արդէն հասուն և ամուսնութեան համապատասխան են համարւում: Այդ վաղահաս ամուսնութիւնը պէտք է մեծ մասամբ վերագրել բոշաների վերին աստիճանի բարեբարոյ կեանքին, որ գերազանցում է բոլոր հարևան ազգերից: Յիշելու արժանի է այն աչքի ընկնող երևոյթը, որ բոշաները իրանց հայ անւանելով[1] յաճախելով հայոց եկեղեցի, սերտ կրօնական կապերով կապւած լինելով հայոց հետ, միշտ խորշում են հայի հետ ամուսնանալուց, թէև վերջինս էլ պակաս չի խորշում և արհամարհում առաջինին: Ինչպէս տեղեկացանք իրանց բոշաներից, Ախալքալաք գաղթելու օրից, այսինքն 1828-ից մինչև այսօր միայն մի անգամ է տեղի ունեցել այդպիսի մի ամուսնութիւն հայ աղջկայ և բոշա տղամարդու մէջ, չը նայելով որ բոշաներին խիստ դրդող պատճառներ կան այդպիսի խառն ամուսնութեան դիմելու: Բոշաները վերին աստիճանի սակաւաթիւ և սերտ համայնական կապերով ապրող ժողովուրդ են. դրականապէս կարելի է ասել, որ նոցա մէջ կանայք աւելի քիչ են, քան տղամարդիկ և որովհետև նոքա դրացի հայերի կամ այլ ազգութիւնների հետ չեն ամուսնանում, ուստի ստիպւած են մօտիկ արիւնակից ազգականների հետ խնամիանալու, որը պէտք է ասած հակառակ եկեղեցու օրինաց պահանջներին՝ նոքա միշտ կարողանում են դիւրութեամբ ծածկել, և ամուսնութիւնը գլուխ բերել շնորհիւ այն հանգամանքի, որ հայ քահանաները ի մօտոյ չեն ճանաչում նոցա, ուստի և յաճախ խաբւելով պսակում են արիւնակից ազգականներին: Չը

1 Եթէ բոշային հարցնելու լինինք թէ նա ի՞նչ ազգութեան է պատկանում, նա առանց տատանւելու կը պատասխանի - հայ, բոշայերէն հային նա անւանում է «կալարաւ», իսկ իրան՝ «լօմ» - այստեղ ահա նա կարծես անգիտակցաբար յիշում է իւր օտար ծագումը և անունը:

նայելով որ մեր ձեռքում չունենք բուն ստատիստիկական տեղեկութիւններ, բայց մեր քաղած տեղեկութիւններից կարելի է եզրակացնել, որ բոշաների աճելութիւնը աւելի յետ է հայերից, որը անտարակոյս պէտք է վերագրել նոցա վարած ողորմելի ապրուստին և գուցէ արիւնակից ամուսնութիւններին:

## VI

Ի՞նչ կասէք մի այնպիսի ժողովրդի համար, որ թէև տգէտ, թէև սակաւաթիւ, թէև բաժան-բաժան եղած և ցրուած այս ու այն կողմը, թէև զուրկ ինքնուրոյն անկախ դրութիւնից, զուրկ այնպիսի անհրաժեշտ տնտեսական պայմաններից, առանց որոնց ոչնչանում, կորչում է իւրաքանչիւր անհատ և ժողովուրդ իրանից թւով շատ և կուլտուրայով բարձր ժողովրդի մէջ, չը նայելով այդ ամենաաննպաստ պայմաններին՝ բոշան կարծես մի իմաստուն ժողովրդի գիտակցութեամբ շարունակում է իւր գոյութեան խուլ և տոկուն կռիւը: Մի պատառաբոյծ սնկի նման նա նստած մի ծառի բնին, հանգիստ ապրում է նորա հաշւով առանց թուլութեան կամ հիւանդութեան նշաններ երևացնելու:

Թէև կիսակիրթ ազգերի մէջ քիչ չեն մարդիկ, որոնց մէջ չափազանց վառ է ազատասիրութեան ոգին, բայց դա պայմանաւորւում է բնակած երկրի կամ լեռների ներկայացրած բնական յարմարութիւններով, կամ ամբողջ ցեղի սերտ և անբաժան միութեամբ, որոնցից եթէ զրկւեն, անմիջապէս կ'ընկճւեն, մինչդեռ՝ դոցա համեմատութեամբ աւելի զարմանալի, առաւել օտարոտի է բոշայի ազատասիրութիւնը, որը ոչ ոք չի կարող նորանից խլել. նա իւր ազատութիւնը ո՛չ թէ անմատչելի լեռների բնական ամրութիւնների մէջ է որոնում, ո՛չ թէ յանդուգն արշաւանքներով կամ հերոսական քաջութեամբ է պահպանում իւր ազատութիւնը, որը նորա համար ամեն բանից թանկ է, այլ այնպէս, կարծես ամեն տեղ, ամեն երկրում նա ազատ է, որ բղխում է բոշայի ամբողջ էութիւնից, նորա հասարակական կազմակերպութիւնից, և որ գլխաւորն է, նորա կենցաղավարութեան և ապրուստի տարապայման բնաւորութիւնից:

Բոշան ապրում է ինքը իւր մէջ. չափազանց կղզիացած է նորա դրութիւնը շրջապատող ազգերի նկատմամբ, նա համարեա բոլորովին կտրուած է արտաքին աշխարհից. մի օր նա կ'երևայ սորա կամ նորա առջև, կը խնդրէ, կը պահանջէ իւր հացը, իւր ապրուստը: Այս է նորա ունեցած շփումը դրսի աշխարհի հետ, ուրիշ շատ հազւագիւտ դէպքերում նա գործ կարող է ունենալ օտար հասարակութեան հետ: Եթէ նորան խանգարող

չը լինի, նա գուցէ մոռանայ էլ թէ իրանից զատ ազգ, կամ ժողովուրդ գոյութիւն ունի. նա նոցա գոյութիւնը ճանաչում է նոցանից ստացած փշրանքներով, ուրիշ կերպ նա չի տեսնում, չի թափանցում իր շուրջը ապրող հարևան ազգերի կեանքը և չի թողնում, որ իր հասարակութեանը չը պատկանող մի օտար անհատի հետաքրքիր աչքերը դիտեն իր ներքին միօրինակ կեանքի մանրամասնութիւնները: Երեխայի թեթևամտութեան և զւարճասիրութեան հետ, նա ունի իր համայնքի կեանքին վերաբերող խիստ ծածկամտութիւն ու գաղտնապահութիւն: Օտարի ներկայութեամբ նա գործ է ածում իրան միայն հասկանալի մի լեզու, որ իր պապերի լեզւի մնացորդն է: Հրէայի տոկունութեան հետ, նա ունի չինացու ծածկապահութիւն, ուստի ամեն հնարաւոր միջոց նա ձեռ կ'առնէ ծածկելու, վարագուրելու իր թէ հասարակական կազմակերպութիւնը և թէ ընտանեկան կեանքը. այդ պատճառով բոշային ամեն ոք ծանօթ լինելով, համարեա ոչ ոք չի ճանաչում իսկապէս:

Բոշաները իրանց բոլոր գործերը կարգադրում և վերջացնում են իրանք իրանց, առանց օտարի միջնորդութեան. դեռ ո'չ մի դատաւորի ականջին բոշայի գանգատ չի հասել, ո'չ մի դատարան բոշան յօժարակամ չի այցելել, ո'չ մի դատարանի սեմից բոշայի ոտը չի անցկացել, ո'չ մի աքսորավայր բոշա աքսորականի երես չի տեսել, դեռ ո'չ մի բոշա չի մեղադրւած քրէական յանցանքի մէջ: Ահա բոշայի ամենավեհ, ամենակատարեալ կողմերը, որոնք կարող են նախանձ յարուցանել նոյն իսկ նոցանից շատ աւելի քաղաքակիրթ ազգերի մէջ: Այդ յատկութիւններին պէտք է մեծ մասամբ վերագրել բոշաների ինքնագոյ կացութիւնը: Օտար հասարակութեանը ո'չ մի հանգամանքում մազաչափ վնաս չի' տալիս բոշան. չի' գողանում, չի թալանում, չի' կռւում նորա հետ: Կռիւ պատահում է իրանց բոշաների մէջ, որը հայհոյանքից և տուր ու դմբոցից դէնը չի անցնում: Բոշան զէնք չունի և որովհետև մեր գիտեցածներից դեռ ո'չ մինը մեղադրւած չէ սպանութեան և առհասարակ քրէական յանցանքի մէջ, ուստի չենք վստահանում ասելու՝ թէ բոշան ընդունա՞կ է արդեօք որ և է խոշոր յանցանք գործելու կամ սպանելու: Որովհետև նա հասարակութեան խաղաղութիւնը երբէք խանգարած չէ', ուստի նա ոչ ոքի, նաև կառավարութեան ուշադրութիւնը գրաւած չէ իր վերայ: Նա, եթէ չը յիշենք դժւար հարկառութիւնը, կառավարութեանը ո'չ մի հոգս չի պատճառում իր հանգիստ և խաղաղ նիստ ու կացով:

Ի հարկէ, չի կարելի երևակայել մի ժողովուրդ, որ որ և է ներքին նոյն իսկ թեթև խռովութիւններ չունենար, որոնց դադարացնելու, և

խռովութիւնը վերացնելու համար անհրաժեշտ պիտի լինեն կամ օրէնք և կամ հեղինակաւոր ազդեցիկ անձնաւորութիւններ: Այսպէս էլ բոշաները թէև փոքրիկ, բայց իբրև մի ինքնուրոյն և նեղ համայնական կապերով ապրող նահապետական ժողովուրդ, իւր թէ արտաքին և թէ ներքին գործերը կառավարող ներկայացուցիչ ունի որ կոչւում է աթոռակալ:

## VII

Աթոռակալին ընտրում են իրանք բոշաները, ծեր և պատկառելի անձերից առաւել արժանաւորին՝ և մի պահպանիչով հաստատում է նորան հայ քահանան: Աթոռակալը բոշա համայնքի մէջ մեծ պատիւ է վայելում. բոլոր հասարակական գործերի հոգացողը, քննողը և կարգադրողը աթոռակալն է. մասնաւոր վէճերը, կռիւները, մանաւանդ ծեծը, որ խիստ սովորական է իրանց բոշաների մէջ, դատում և վերջացնում է նոյն աթոռակալը. այդ է պատճառը, որ բոշաները համարեա չեն դիմում պաշտօնական դատարանը իրանց վէճերը քննելու համար: Հարսանիքի և այլ հասարակական հանդէսների ժամանակ նա քահանայից յետոյ երկրորդ տեղն է բռնում: Նոյն իսկ շատ մասնաւոր, զուտ ընտանեկան բնաւորութիւն կրող գործեր ևս, երբ հասարակութեան այս կամ այն անդամի համար հարկաւոր է մարմնաւոր կամ հոգևոր իշխանութեան դիմել, առաջ է անցնում աթոռակալը. վկայել թէ նշանուող աղջիկն ու տղան ազգականներ չեն, նշանադրութիւն կամ հարսանիք գլուխ բերել, պսակի հրաման կամ թոյլատուութիւն ստանալ և այլ զանազան մեծ և փոքր գործեր կատարել բոլոր ժողովրդի կողմից, ահա այս է նորա պաշտօնը: Հասկանալի է, որ այդ բոլոր գործերը նա կատարում է առանց որ և է վարձատրութեան, այլ ձրի: Այդ բոլորի փոխարէն, ինչպէս ասացինք, նա վայելում է մեծ յարգանք և պատիւ. նրա խօսքը բոլոր հասարակութիւնից պատգամի տեղ է ընդունւում. և եթէ աթոռակալը մի քիչ խելացի և ազդեցիկ մարդ է, իսկական իշխանի դեր է կատարում նոցա մէջ:

Ինչպէս տեսնում է ընթերցողը, «աթոռակալ»-ը մի տեսակ ընտրողական ցեղապետի նշանակութիւն ունի, որ հարկաւ, նոցա հնագոյն առաջնորդ-ցեղապետների նսեմ մնացորդն է, ինչպէս շէյխը քրդերի մէջ:

Առաջ, քանի որ բոշաները քրիստոնեայ չէին, գուցէ այժմս իսկ մեզ անծանօթ բոշա ցեղերի աթոռակալին քահանան ի հարկէ չէր կարող հաստատել: Դա առաջացել է քրիստոնէութիւն ընդունած օրից: Այս հանգամանքը մեզ առիթ է տալիս մատնանիշ անելու բոշաների

բարեպաշտութիւնը առհասարակ և այն նշանակութիւնը որ նոքա տալիս են հայ հոգևորականներին, նոցա միջոցով հաստատել տալով իրանց աթոռակալին: Յոգևորականներին նոքա շատ յարգում և պատւում են և նոցա վերաբերմամբ համեմատաբար առատաձեռն են: Տղամարդկանցից առաւել բարեպաշտ և ժամասէր են բոշա կանայք:

Չը նայելով այդ հանգամանքին՝ հասկանալի է, մասամբ հոգևորականութեան անուշադրութիւնից, մասամբ իրանց բոշաների անհետաքրքրութիւնից և տգիտութիւնից նոցա կրօնական հասկացողութիւնները չափազանց սահմանափակ և վայր ի վերոյ են: Բոշան միայն գիտէ «Իսսուս-Քրիստոսի» անունը, առանց սակայն մի որոշ հասկացողութեան կամ գաղափարի որ արտայայտում է այդ անունը, գիտէ նոյնպէս անորոշ «Մարիկ, Մայր-Աստուածածնի» անունը, գիտէ «հայ-քրիստոնի» պէս խաչ հանել երեսը և մի քանի բառեր «հայր-մերից»...

Ահա այս է նորա կրօնական հասկացողութիւնների ամբողջ պաշարը: Սորանից դուրս նա ո՛չ իւր կրօնի, ո՛չ իւր եկեղեցու և նորա առանձնայատկութիւնների և ոչ էլ նորա դաւանաբանական տարբերութիւնների մասին որ և է հասկացողութիւն կամ գաղափար ունի: Մի հարցման միայն նա կը պատասխանի դիւրութեամբ, կարծես ուզելով հասկացնել, թէ քո բոլոր հարցերիդ պատասխանը որոնի՛ր այդ բառի պարունակութեան մէջ՝ «ես հայ եմ». և այդ բառով, այդ լակոնական պատասխանով նա հասկանում է իւր կրօնը, իւր դաւանութիւնը, իւր եկեղեցին, այլ և իւր ազգութիւնը ամբողջապէս: Կարծում ենք, որ բոշաները միշտ հաւատարիմ կը մնան իրանց կրօնին, եթէ աչքի առաջ ունենալու լինենք բոշայի բարեպաշտութիւնը և իւրաքանչիւր նորութիւնից խորշիլը. հետաքրքրելի է իմանալ թէ Տաճկա-Յայաստանում բողոքական և կաթոլիկ միսիօնարները բոշանների՞ն էլ քարոզում են և ի՞նչքան յաջողութիւն են գտնում նոցա քարոզելում:

Դիւրին է եզրակացնել, որ բոշան իւր կրօնական աղքատիկ հասկացողութիւնների պակասը պիտի լրացնէր սնոտիապաշտութիւնով և նախապաշարմունքով, որ շատ յատուկ է զարգացման ստոր աստիճանի վերայ կանգնած թուլամիտ և տգէտ ժողովրդներին: Բայց իրօք այդպէս չէ՛: Յետաքրքրական է այն խնդիրը, թէ ի՞նչ պատմական նպաստաւոր պայմաններ թելադրել են բոշաներին քրիստոնէութիւն ընդունելու: Որովհետև բոշան անընդունակ է էապէս ըմբռնելու քրիստոնէութիւնը, ուստի անհաւանական է ենթադրել, թէ քրիստոնէութիւնը նորանից վերացրել է սնոտիապաշտութիւնը. որը չի կարողացել վերացնել

քաղաքակրթութիւնով բոշայից շատ աւելի բարձր հայ ազգի միջից:

Այսպէս թէ այնպէս իրողութիւնն այն է, որ բոշան աւելի քիչ նախապաշարմունք ունի, աւելի սակաւ սնոտիապաշտ է, քան հայը և գուցէ ունեցածն էլ ըստ մեծի մասին նա ընդունել է քրիստոնէութեան հետ հայից:

Մի աչքի ընկնող երևոյթ էլ այն է, որ բոշաները ուխտ գնալ չը գիտեն համարեա՛. մինչդեռ թուրք, քուրդ, նոյն իսկ եզիդ կարելի է տեսնել հայոց այս կամ այն սրբավայրին ուխտ գնացած, բոշաները այդպիսի տեղեր շատ սակաւ է պատահում որ յաճախեն:

Սակայն ինչպէս կրօնական հասկացողութիւնների պաշարը, նոյնպէս և զանազան նախապաշարմունքների սակաւութիւնը և ուխտագնացութեան բացակայութիւնը մեզ չը պիտի զարմացնեն. բոշան բարդութիւն չի՛ սիրում, նորա միտքը զանազան բարդ կրօնական և փիլիսոփայական, նոյնպէս և ցնորամիտ նախապաշարմունքներ ըմբռնելու անընդունակ է. նա միանգամայն աւելորդ է համարում իր միտքը ծանրաբեռնել այդպիսի աւելորդութիւններով. բոշայի մտաւոր կեանքի հիմնաւոր թելը պարզութիւնն է, թեթև, դիւրըմբռնելի, սակաւ մտաւոր ճիգ պահանջող գաղափարներ, որոնք դիւրութեամբ պահւում են յիշողութեան մէջ: Մենք այսպէս ենք բացատրում այդ երևոյթները:

## VIII

Բոշաների նիստ ու կացը անմաքուր, պարզ և հասարակ է: Բոշայի խրճիթը, որ նոյն իսկ անւանի հարուստների մէջ կատարեալ աղքատութեան կերպարանք է կրում, իր տիրոջ անընչասիրութեան, անփառամոլութեան ճշգրիտ պատկերն է: Նորա խրճիթը մտնելով, որ սովորաբար բաղկացած է բակից, գոմից և տանից, որտեղ քնում և ճաշում են ըստ մեծի մասին, նոյնպէս և օդայից, որ գոմի մի մասն է ծակ տախտակներով միայն նրանից բաժանւած, որ այնտեղից ստանայ իր տաքութիւնը, այդ խրճիթում կը տեսնէք մի թոնիր, որ ձմեռը գործ է ածւում իբրև վառարան և քուրս ու մի քանի կաւեայ ամաններ - «թղուղներ» և «կճուճներ», մի անկիւնում դարսած հնոտիք և կապերտների կտորտանք, որ անկողնի և նստաշորի տեղ են ծառայում, և մի փայտեայ «սարք»[1]:

Տան միւս անկիւնը, գոմ կոչւածը, կապած է լինում բոշայի անբաժան

1 Սարք կոչւում է այն գործիքը, որի վրայ մաղ են գործում: Դա մի փայտեայ քառակուսի է յար և նման այն գործիքին, որի վրայ օրիորդաց ուսումնարանում ասեղնագործում են - «քարկեա» կոչւածը:

ընկերը, հլու աւանակը, որը նորա թափառաշրջիկ երթևեկութեան ընկերն ու նորա թեթև հարստութեան տեղից տեղ փոխադրողն է: Վերևը մենք յիշեցինք թէ էշը ի՞նչ արժէք և պատիւ ունի բոշաների աչքում: Ի դէպ, այստեղ դնում ենք մի անեկդոտի բնաւորութիւն կրող պատմութիւն, որ ցոյց է տալիս թէ բոշաները ի՞նչ տեղ են յատկացնում իրանց միակ սիրելի կենդանուն: Բոշաները խնդրով դիմում են Կարապետ սրբազանին և նիւթական, կենդանի օրինակով հասկացնելու համար նորա հզօրութիւնը և իրանց անզօրութիւնը, բերում են հետևեալ համեմատութիւնը. «Հոգևոր տէ՛ր, տուն օր կաս, իտի մեր պօզ-էշն ես. մենք օր կանք, քու պոչիտ տկի ճանճերն ենք: Ուզենաս սխմես սատկեցնես կը, ուզենաս բաց թողնես, մեզի կ՛ազատես կը»:

Եւ շատ հասկանալի է այդ յարգանքի պատճառները որ նոքա տածում են դէպի անասունը: Ինչպէս որ առանց եզների երկրագործ չի կարող լինել, ինչպէս որ առանց մզրախի քուրդը մի խղճալի արարած է, այնպէս էլ բոշան առանց իշի մի անզէն զինուորի է նման: Ամենաաղքատ բոշան էլ մի հատ էշ պիտի ունենայ, իսկ քիչ թէ շատ աչքի ընկնողը մի քանիսն է ունենում: Ոմանք, որոնք արդէն քիչ թէ շատ հաստատաբնակ են դարձել, սկսել են ձիեր նա պահել. սովորաբար էգ ձի են պահում, որոնց խառնելով էշերի հետ, թանկ գնահատող ընտիր ջորիներ են առաջացնում: Բոշաների պարապմունքների թւում մենք մոռացանք յիշելու, որ էշ, ձի և ջորի ճանաչելու, նոցա հիւանդութիւնները բժշկելու և կռտելու մէջ բոշաները խիստ հռչակւած և հմուտ վարպետներ են:

Բոշաները հագնում են այն ժողովրդի հագուստը, որի մէջ ապրում են և խիստ ճկունութիւն են ցոյց տալիս ընդունելու այն ժողովրդի հագուստը և լեզուն, որի հետ ամենամերձ յարաբերութիւն ունին:

Նոքա խօսում են մեր գաւառական բարբառներով. թէև անսխալ, բայց մի առանձին արտասանութիւնով և շեշտով, որ անմիջապէս ծանօթ մարդու ականջին է դիպչում: Եթէ որ և է գաղտնի բան է ուզում խօսել բոշան իւր ընկերոջ հետ, նա գործ է ածում բոշայերէն լեզու, որ նոցա հին, մայրենի լեզւի մնացորդն է: Այդ լեզուն արդէն գործածութիւնից դուրս է եկել և համարեա մոռացութեան աստիճանին է հասել, այնպէս որ երիտասարդներից ոմանք համարեա չը գիտեն այդ լեզուն: Նորա բառերի մեծագոյն մասը մոռացւել է արդէն և մնացել է միայն ամենագործածական մասը, որի պակասը բոշաները լրացնում են հայ և թուրք բառերով: Հէնց մնացածն էլ այնքան խախուտ է, որ, ինչպէս կը նկատէ ընթերցողը ներքևը դրած օրինակից, նրա բայերը կորցրել են իրանց խոնարհման ինքնուրոյն

ձևը և խոնարհւում են հայոց բայերի պէս:

Ահա՛, ստորև դնում ենք երեք տուն բոշայերէն «խաղ», որոնցից մինը ուստա Հանէսի և միւսը հռչակաւոր ուստա Վանօի ասածներիցն է (երկուսն էլ բոշա երգիչ-աշուղներ են):

I

Հանէս օղլին պակրեց լոմ եմ ուչաւեցէք տլարիս:
- Հանէսի որդին ասաց՝ բոշա եմ խօսացէք անունս
Ակմը կայէն, չտար կայէն, աթ մը կայէն ակ կայէն
մէկ ժամանակ, չորս ժամանակ, հինգ ժամանակ,
մէկ (ամեն) ժամանակ:
Լոմ մը վեսաց ֆենար, սաւը սընքէր պակրածս
բոշա մի նստած լինէր այստեղ՝ հիմնովին հասկանար ասածս
Ակ մը կայէն, չտուր կայէն և այլն[1],
մէկ ժամանակ, չորս ժամանակ, և այլն:
Վեսողները կամ նա՛ ջան է, աթաւէս լէ դմրաւիս
Նստողները բան չը գիտեն, ձեռքէս առնեն սազս
Հեւաւ կը կամաւտիք փանեցէք սիս աւես ջէ խլաւիս:
այնպէս բաներ ասացէք՝ գլխիցս ելնէ միտքս:
Ակ մը կայէն և այլն:

II

Ուստա, աւեմ դու գայիդ կետա՞ր ես պաշտաս
- վարպետ, գամ մօտդ, ինչ ունիս հետս
Սամլի կարեմ ճարիս, բանթեմ կու դաստաս աս
շինում եմ մաղս, կապում եմ տասը-տասը
Պհու որով նայեմ նաբարիս պաշտաս
շատ մեծ չեմ (որ) ընկնես հետս
Լորեցի՞ր իաս, մանուս ես մանուս:
գտար թէ որ[2] մարդ ես մարդ:

Ուստա Վանօն պակրեց տերաւեն թաճլիս
վարպետ Վանօն ասաց իրանից երգ (խաղ)

1 Այս տողը ամեն նոր տողից յետոյ կրկնւում է:

2 Այսինքն՝ թէ որ գտար հանելուկը:

Կամ նա ջան ես իսա նա՛ պէս ես մաճլիս
բան չը գիտես եթէ չը մտնես հանդէս
Սոլաւնոց կանեմ կու սնանես կու զիս
շներոց կ'անեմ (կը) ճանաչես կը ինձ
Լորեցիր իսա մանուս ես, մանուս:
գտար թէ որ՝ մարդ ես, մարդ:

*«Մուրճ», 1892, N 7-8, էջ 1047-1064, N 9, էջ 1310-1321*

ՀԱՅ ԲՈՇԱՆԵՐ. «Մուրճ»-ի այս համարում վերջացող յօդւածի հեղինակ մեր աշխատակից պ. Գ. Վանցեանը գրում է մեզ՝ թէ այդ յօդւածը հանւած է իւր մի աւելի ընդարձակ աշխատասիրութիւնից, որի պարունակութիւնն է բոշաների կեանքի աւելի մանրամասն ուսումնասիրութիւնը, բոշայերէնի բառարանը, բոշայերէն նախադասութիւններ և երգեր, բոշաների անցեալը և մարդաբանական տեղեկութիւններ բոշաների մասին:

*«Մուրճ», 1892 թ., N 9, էջ 1382*



# ՊԱՏՄԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ ԲՈՇԱՆԵՐԻ ԱՆՑԵԱԼԻՑ

(Անտիպ աշխատութիւնից)

## I
## ԲՈՇԱՆԵՐԻ ԱՆՈՒՆԸ

Այս ժողովուրդը շատ սակաւ է ծանօթ որպէս գիտութեանը, նոյնպէս և մեզ՝ հայերիս, թէև մենք ամենից շատ պարտական էինք նորան վաղօրօք ծանօթանալու, քանի որ նա դարերից ի վեր եղբայրացած է մեզ կրօնով ու լեզւով:

Հայերէն լեզւով չկայ ոչ մի, չենք ասում՝ լուրջ, այլ նոյն իսկ հասարակ աշխատասիրութիւն այդ ժողովրդի մասին, իսկ գիտութեանը նա յայտնի է միայն Ք. Պատկանեանի մի ուսումնասիրութիւնով, ուր դժբաղդաբար մի քանի էջեր միայն նւիրւած են բոշաներին: Այս պատճառով ահա դորա ուսումնասիրութիւնը ահագին անյարմարութիւններ ունի: Գնչուների ուսումնասիրութեան հէնց առաջին և գլխաւոր դժւարութիւններից մինն է և նոցա անունը, որ շատ շփոթութիւնների պատճառ է դառնում,

որովհետև գնչու ցեղերը իրանց համար առհասարակ որոշ, հաստատ և առանձնայատուկ մի անուն չունին. անտեղեակ, շատ անգամ նաև գիտնական գործին հմուտ, անձինք միևնոյն անունը տալիս են և՛ հայ-բոշային, և՛ թուրք-մըթրբին, և՛ պարսիկ-ղարաչուն: Իրանք գնչուներն էլ առհասարակ թեթևամտաբար են վերաբերուում դէպի իրանց անունը և միշտ ձգտում են այն ազգութեան անդամ կոչուել, որից ուզում են օգտուել, որի հաշւով ուզում են ապրել:

Իսկապէս նոքա ազգութիւն չեն էլ ճանաչում ու հասկանում այն մտքով, ինչպէս որ դա գործածական է մեր մէջ. ազգ, ազգութիւն բառերը բոշայերէնը չունի: Եւրոպական գնչուները իրանց անւանում են դոմ կամ րոմ, որ նոյնանիշ է մարդ անւան:

Գնչուի համար գոյութիւն չունի ազգութիւնը իբրև մի առանձին գաղափար, այլ մարդը.- նա չի ճանաչում ազգ, հայրենիք և կրօն: Այն բազմաթիւ անուններն իսկ, որով նոքա ճանաչւում են օտարներից, կապ ունին լոկ ժամանակի և տարածութեան հետ. Իսպանիայում նա կոչւում է Ջիտանոս, Իտալիայում՝ Չինկանի, այլ տեղերում Եգիպտացի, Բոհեմիեն, Չինկեանէ, Ղարաչի, Ցինգա, Ցիգան, Բոշա և այլն... Գնչուների կեանքի ուսումնասիրութեամբ պարապող անձերը սովորաբար չեն որոշում այդ ցեղերը. բոլոր ցեղերին համարելով մի ազգութեան անդամ, նոքա մինը շփոթում են միւսի հետ, մինչդեռ, իրօք ծագումով գնչուները թէև մի ընտանիքի են պատկանում, բայց իրանց ներքին կացութիւնով, մանաւանդ բարբառներով զգալի կերպով տարբերւում են միմեանցից:

Այդ բոլորին մենք ընդհանուր անունով կ'անւանենք գնչու. նոցա այն ցեղին, որ խօսում է հայերէն և դաւանում է լուսաւորչականութիւն՝ բոշա կամ հայ-բոշա: Իսկ մնացեալ ցեղերը, համաձայն իրանց սովորական անւան՝ կոչւում են կամ ղարաչի, կամ ցիգան և կամ մըթրըբ, նայելով թէ նրանք աւելի ո՞ր ազգութեանն են յարած՝ պարսից, ռուսաց, թէ թուրքաց:

Բարձր-Հայոց բարբառով բոշա են կոչւում միայն լուսաւորչական-հայախօս գնչուները. նոյն կարծիքին է և Շոպէնը. Պատկանեանը նոցա տալիս է նաև անունս «մաղագործ». հ. Սրուանձտեանը բոշաներին մի տեղ անւանում է «հայ-բոշա», մի այլ տեղ «մաղագործ հայք», երրորդ տեղը անխտիր «բոշա» կամ «գնչու»:

«Մաղագործ» անունը սակաւածանօթ է և վերցրած է նոցա պարապմունքից - արհեստից: Այդպէս են անւանում իրանց բոշաների մէջ հասկացող պատւասէրները միայն, որոնք խորշում են բոշա արհամարհական, մասամբ նաև նախատական անունից:

«Մաղագործ» են կոչւում նոքա նաև մեր հոգևոր գործերում, որպիսիք են պսակ, կնունք և այլն, երևի բոշաների պատւասիրութիւնը չվիրաւորելու համար: Բոշայերէն նոքա իրանց անւանում են «լոմ», որ համապատասխանում է միւս գնչուների րոմ, կամ դոմ անւանը, բայց կորցրել է մարդ նշանակութիւնը:

Սովորական հարց ու փորձի ժամանակ նոքա իրանց անխտիր անւանում են հայ: Բոշա բառը հայերէն բարբառներում գործ է ածւում նաև ածականաբար և, ըստ իս, յատուկ անուն պիտի չլինի: Էրզրումի բարբառով, բացի գնչուների այս ցեղից, ածականաբար բոշա են անւանում այն անհատին, թէկուզ նա հայ լինի, որ բազմիցս թախանձանքով՝ առանց վարձատրութեան մի բան է խնդրում, գլխաւորապէս ուտելեղէն, կամ աշխատում է ուրիշի հաշւով ապրել:

Այդ անւան մասին ահա հայր Ալիշանի կարծիքը. «յայտ է, որ հին չէ բոշայից անունն, այլ ծագումն ինձ անյայտ. մենք սովորաբար գնչու կ'անւանեմք՝ ինչ որ թուրքք չինկեանէ կ'ըսեն և եւրոպացիք ծինկանի, ծինկարի և այլ ասոնց նման անւանք»[1]:

Պատկանեանին ևս յայտնի չէ «բոշա» անւան ծագումը:

«Բոշա» անւան բացատրութիւնը, եթէ իրօք դա յատուկ անուն է և սեփական է գնչուների այս ցեղին միայն, կարող է լոյս սփռել նորա անցեալի վերայ, որովհետև Ցինգա, Ջիտանոս, Չինկեանէ, Ցիգան և այլ անունները, որ զանազան ազգեր տալիս են գնչուներին, եթէ չենք սխալւում, ծագում են մի արմատից, մինչդեռ՝ «բոշա» կոչումը այդ բազմաթիւ անունների մէջ եզակի է իւր կազմութեամբ:

Գնչու անունն իսկ, որ այժմ մեզանում գործածական է իբրև յատուկ անուն և նշանակում է ցիգան-չինկեանէ ընդհանրապէս, իսկապէս ածական անուն է: Ահա դրա բացատրութիւնը Հայկազեան բառարանից. «Գնչու... թլատ և թոթով լեզւով, կամ թիւր և եղծեալ արտաբերութեամբ խօսող. կամ կրճատելով և ծռելով զբառս և զհնչմունս արտաբերող զբանս, որպիսիք են ծռալեզուք, կամ ռամիկ գիւղականք և բոշայք»:

Մեր աշխարհիկ գրականութեան մէջ նոր-նոր քաղաքացիութիւն է ստանում բոշա բառը, որ Էրզրումի բարբառով տրւում է գնչուների միմիայն լուսաւորչական ցեղին. այդ վերջին նշանակութեամբ գործածում ենք և մենք:

Հետաքրքրական է իմանալ, թէ գնչու բառը ո՞ր դարուց է գործածւում

1 Այս և յաջորդ հատուածները, որ կրում են հայր Ալիշանի անունը, մենք հանել ենք մի մասնաւոր նամակից, որ մեզ է ուղղած:

մեր հին գրականութեան մէջ իբրև այս ժողովրդեան անուն. անշուշտ, այն դարերից, երբ գնչուները սկսել են աղճատելով և թոթովելով հայերէն խօսել:

## II
## ԲՈՇԱՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

Բոշաները ոչինչ չգիտեն իրանց ծագման մասին. նոքա մոռացել են այդ. մի աւանդութեամբ միայն, որ անտարակոյս քրիստոնէութիւն ընդունելուց յետոյ է կազմւել, նոքան իրանց Կայէնի սերունդ են համարում: Նոքա սովորաբար իրանց հայ են անւանում և համարում են սերնդակից հայերին:

Հայերն ևս նոցա ծագման մասին ոչինչ չգիտեն:

Պիտի ասենք, որ բոշաներին համարում են գնչուների մի ցեղ Շոպէն, Պասպատի, Պատկանեան, Վէյնդենբաում և այն բոլոր եւրոպացիք, որոնք առիթ են ունեցել նոցա մասին խօսելու:

Միայն հայր Սարգիսեանն է, որ իւր մի աշխատութեան մէջ նոցա համարում է հալածեալ հայ աղանդաւոր մանիքեցիք[1]: Սակայն, դա մեզ երևում է միանգամայն զուրկ հիմունքից, քանի որ հէնց ինքը մի քանի տողից յետոյ իրան հակասում է ասելով. «գնչուներու վրայ գրողներն,- ինչպէս նաև բոշաներուն,- Է և Ը-երորդ դարէն անդին չեն անցներ անոնց գոյութիւնն ի հայս, լեզւաբանական քննութեանց համաձայն»: Արդ՝ եթէ հայր Սարգիսեանի հետ ընդունելու լինինք, թէ «գնչուներն ու բոշաները» ծագում են Մանիքէա-Պաւղիկեան թոնդրակեցիներից, հապա ո՞րտեղից ծագեց նոցա լեզուն, որի քննութիւնով «Է և Ը-երորդ դարէն անդին չեն անցներ անոնց գոյութիւնն ի հայս»:

Այդպիսով գնչուների լեզուն գողի լեզու չի կարելի համարել, որովհետև գողի լեզուն լեզւաբանական հետազօտութեան չի կարող ենթարկւել մի ազգի ծագումն ու անցեալն իմանալու և լուսաբանելու համար: Թէև այս առթիւ հ. Սարգիսեանը կարող է պատճառաբանել թէ իւր խօսքը միայն գնչուներին և ո՛չ հայ-բոշաներին է վերաբերում, բայց իրօք սխալը մնում է նոյնը, որովհետև գնչուներն ու բոշաները ծագումով չեն տարբերւում բոլորովին, մանաւանդ Պատկանեանը պարզ ապացուցել է հէնց բոշայերէնով գնչուների և բոշաների ցեղակցութիւնը:

Վերջապէս յարգելի հօր ենթադրութեանը հակասում են գնչուների

[1] «Բազմավէպ», 1893 թ., N 1 (եր. 24):

անունը, մարդաբանական առանձնայատկութիւններն ու տիպը, ցեղական պարապմունքը և այլն:

Մենք ևս ընդունում ենք, որ բոշաները ցեղակից են գնչուներին, որ նոցա ծագումն էլ նոյնն է, ինչ որ համայն աշխարհի գնչուներինը, այն է հնդկա-արիական:

Այսպէս ուրեմն՝ բոշաները ծագմամբ հայեր չեն[1], ինչպէս կարծում են իրանք - բոշաները, մասամբ նաև հայերը, այլ մի եկամուտ, օտար տարր, որ արդէն եղբայրացել է հայերին, որի նման շատերին ենք կլանել մենք մեր պատմական երկարատև կեանքում:

## III
## ԲՈՇԱՆԵՐԻ ՀԱՅԱՍՏԱՆ ՄՏՆԵԼԸ ԵՒ ԲՆԱԿՈՒԹԵԱՆ ԱՅԺՄԵԱՆ ՏԵՂԵՐՆ ՈՒ ԹԻՒԸ

Փոքր Ասիան առհասարակ և Հայաստանը մանաւորապէս, բռնելով հին աշխարհների միջնակէտը, նոցա փոխադարձ յարաբերութեան միակ ճանապարհն են: Այդ պատճառով բազմաթիւ ազգեր հնագոյն ժամանակներից մինչև նորագոյն դարերը Ասիայի խորքերից եկել և անցել են այդ միջազգային կամրջով, որոնց շատերի կենդանի հետքերն այսօր էլ տեսնում ենք այդ երկրում:

Այդ անցորդ ազգերից մինն են և գնչուները, որոնք Հայաստանում և Փոքր Ասիայում թողել են իրանց ցեղերից մի քանիսը. այդ ցեղերից մինը կոչւում է հայ-բոշա, կամ հասարակօրէն բոշա, որ Հայաստանի բազմատարր ժողովրդների թւում ապրում է ցան ու ցիր և իր սակաւութեան շնորհիւ շատ աննշան տեղ է բռնում:

Թէ ո՞ր կողմից, ի՞նչ ճանապարհով և մօտաւորապէս ո՞ր դարերում կարող էր մտնել այս մթին, առանց պատմութեան և ժամանակագրութեան ժողովուրդը Հայաստան, կ՚աշխատենք պարզել այստեղ:

Նախընթաց գլխում ասացինք, որ բոշաները Հնդկա-արիական ծագումն ունին. այսինքն նոցա նախկին բնակավայրը՝ արիական ազգերի

---

1 Ոմն Мелешко «Кавказъ » լրագրի 1854 թ. N 26, խօսելով «թումբուլցիների» մասին, որ մեր մէջ յայտնի են անունով - խաչագող, և պարապում են ռուս ժողովրդին սրբութիւններ վաճառելով, նոցա համարում է հայ-գնչուներ: Թումբուլցիների գաղտնի լեզւին ծանօթ չլինելով չենք կարող որ և է կարծիք յայտնել այդ մասին, մանաւանդ յիշեալ յօդւածի բովանդակութեանը մենք ծանօթ ենք միայն Միանսարեանի «Библіографія»-ից և չգիտենք թէ յօդւածագիրն ինչ հիմունք ունի այդպէս կարծելու:

ծննդավայրը - Հնդկաստանն է եղել: Պարզ է, որ գնչուները Հնդկաստանից Հայաստան մտնելու համար կարիք չունէին եւրոպա գնալ և ապա Հայաստան վերադառնալ, որ նոցա ճանապարհին է:

Յայտնի է, որ գնչուներն եւրոպայում երևացին դեռ ԺԴ դարու սկզբներին, իսկ Հայաստան, անտարակոյս, նոքա մի քանի դարեր առաջ պիտի մտած լինէին, որովհետև մինչ եւրոպական շատ գնչուների լեզուներում նկատելի է յունականի ազդեցութիւնը, որ նշան է թէ նոքա երկար ժամանակ ապրել են Յունաստանում, ասիական գնչուների լեզուն զերծ է այդ ազդեցութիւնից, որ նշան է թէ նոքա եւրոպա չեն եղած, այլ Փոքր Ասիա աւելի առաջ են եկած, որտեղից նոցա մի մասը Յունաստանով անցել է եւրոպա, թէև Աֆրիկայից անցնող ցեղեր ևս եղել են:

Ռուս գիտնական և յայտնի ճանապարհորդ Ելիսէևը բացէ ի բաց յայտնում է, որ «նոքա՝ (Փոքր Ասիայի գնչուները) այստեղ երևեցան աւելի շուտ քան թէ եւրոպայում, հաւանականօրէն քրիստոնէութեան առաջին դարերում»[1]: Ինչպէս տեսանք, մօտաւորապէս նոյն կարծիքն է յայտնում և հ. Սարգիսեանը, թէ ըստ լեզւաբանական հետազօտիչների՝ գնչուներն ու բոշաները Հայաստանում երևացին Է և Ը դարերում: Մենք ևս Է և Ը, կամ Թ դարերը համարում ենք մօտաւորապէս այն ժամանակամիջոցը, երբ գնչուներն արդէն հաստատուել էին Հայաստանում: Այդ դարերի մեր մատենագիրների մէջ, որքան մեզ յայտնի է, դժբաղդաբար ո՛չ մի տեղեկութիւն չկայ բոշաներին վերաբերեալ: Յովհաննէս կաթող. պատմիչը միայն, Ժ դարու սկզբները յիշում է «ժողովուրդ մի գաբաւոնացի անւամբ, որ թւի թէ վրանաբնակք էին ի կողմանս Սիւնեաց, Վասպուրականի և Ատրպատականի», կարդում ենք հայր Ալիշանի նամակում. «եւրոպայի գիտնականաց կամ քննչաց մէջ ալ գտնւած է այս կարծիքն ունեցող, այսինքն թէ գաբաւոնացոց սերունդք ըլլան գնչունք»:

Շատ հաւանական է կարծել, թէ Յովհաննէս կաթող. յիշած գաբաւոնացիք բոշաները լինեն, որ արդէն Թ և Ժ դարերում հաստատուել էին Հայաստանի արևելեան նահանգներում:

Սիւնիք, Վասպուրական և Ատրպատականն էլ այն նահանգներն են, ուր հաւանականօրէն առաջին անգամ պիտի երևային գնչուները, քանի որ, ինչպէս տեսանք նախաբանից[2], ըստ Կոլոչչիի՝ գնչուների մի մասը ցամաքով - Պարսկաստանով ու Միջագետքով մտաւ Փոքր Ասիա: Իսկ մեր երկրի սահմանակից նահանգները Պարսկաստանի հետ՝

1 Антропологическая экскурсія поперечъ Малой Азіи. А. В. Елисеева. 1887 г. (»с. 30):

2 Անդ[?]:

Սիւնիքը, Վասպուրականն ու Ատրպատականն են, Միջագետքի հետ՝ Հայոց Միջագետքը: Այս վերջինը չի յիշում Յովհաննէս կաթող. երևի այն պատճառով, որ իրան յայտնի չի եղել: Եթէ չենք սխալւում, մեր բերած բոշայերէն բառարանում* պարսկերէն բառեր կան, որոնք պարզ ապացոյց կարող են լինել այն ենթադրութեանը, թէ բոշաները Պարսկաստանից են մտել Հայաստան:

Այդ ճանապարհի մասին աւելորդ չենք համարում դնել և Ելիսէևի կարծիքը. «Ցիգան խմբերի ճանապարհը, որպէս երևում է նրանց բանաստեղծութիւնների, կրօնի և մի քանի աղճատեալ յատուկ անունների ուսումնասիրութիւնից, մօտաւորապէս նոյնն է, ինչ որ Մակեդոնիայի աշխարհակալի ճանապարհը»[1]: Այնպէս որ նրանք Հայաստան պիտի մտած լինին մասամբ Պարսկաստանից, մասամբ Միջագետքից, ուր և, այսինքն Հայոց Միջագետքում, ինչպէս յետոյ կը տեսնենք, նրանք ընդունեցին քրիստոնէութիւն:

Այժմ, սակայն, որքան մեզ յայտնի է, այդ նահանգներում բոշաներ չկան, թէև ուրիշ գնչուներ կան: Բոշաները այժմ կենդրոնացած են Հայաստանի արևմտեան նահանգները, առաւելապէս Սեբաստիոյ կողմերը: - Յայտնի է, որ ԺԱ դարու սկզբին Վասպուրականի Սենեքերիմ թագաւորը բազմաթիւ հայերի հետ գաղթեց Սեբաստիա: Բնական է, որ այդ գաղթականութեան հետ պիտի գնային և Վասպուրականի բոշաները, որոնք, իբրև թափառաշրջիկ, անտուն, անտեղ մի ժողովուրդ, աւելի դիւրութիւն և յարմարութիւն ունէին խուսափելու թշնամուց՝ քան բնիկ հայերը, որոնք պիտի թողնէին իրանց դարաւոր հայրենիքը, պապերի հանգստարանը, կայքն ու գոյքը: Հէնց այսօր էլ բոշաների ստուար մեծամասնութիւնը հաստատւած է մասամբ Սեբաստիոյ կողմերը, մասամբ նրանից արևմուտք, որի կենդրոնը այժմ Պոլպատն է համարւում:

Բոշաների երկրորդ մասը, որ ապրում էր Միջագետքում, աւելի ուշ, հաւանականօրէն Լէնկ-Թեմուրի արշաւանքներից յետոյ, Եփրատի ուղղութեամբ ճանապարհ ընկաւ դէպի հիւսիս՝ Բարձր Հայք - Էրզրում, այնտեղից էլ տարածւեց Օլթի, Կարս, Աջարա, Տրապիզոն, իսկ 1828-ին՝ նաև Ալեքսանդրապոլ, Ախալքալաք, Ախալցխա և Կովկասեան այլ քաղաքներն ու գաւառները: Այս մեր խօսքերն ու ենթադրութիւնը վերաբերում են բոշաների մեծ խմբերով կատարած և առ միշտ մի որ և է տեղում հաստատած գաղթականութիւններին: Այդ գաղթականութիւններից առաջ էլ, անշուշտ, նրանք ըստ սովորութեան ժամանակաւորապէս

1 О матеріалахъ для изследованія цыганъ. А. В. Елисеева. »с. 23:

պանդխտած և այցելած կը լինէին Հայաստանի զանազան մասերը:

Եթէ ուշի ուշով դիտելու լինենք բոշաների այժմեան տեղերը Հայաստանում և Փոքր Ասիայում, կը գանք այն եզրակացութեանը, որ նրանք բռնում են այդ երկիրների հիւսիս-արևմտեան նահանգները և տարածւում են Չիլէ, Սեբաստիա, Արաբկեր, Ակն, Կարին, Օլթի, Կարս, Ալեքսանդրապոլ, Ախալքալաք և Ախալցխա քաղաքները իրանց գաւառներով: Եթէ այդ քաղաքները միացնենք մի ընդհանուր գծով, կը ստանանք մի ճիշտ զուգահեռագիծ Սև ծովի հարաւային ափերի հետ, որի մէջ տարածւած են այժմեան բոշաները: Նրանց բնակութեան հարաւային սահմաններն են Արածանին և Բինգեօլ լեռները, որոնցից հարաւ, որքան մեզ յայտնի է, բոշաներ չկան: Այստեղ ահա բերում ենք նրանց բնակութեան տեղերի և քանակութեան մասին վիճակագրական տեղեկութիւններ: Այս թւերը ճիշտ են մօտաւորապէս միայն, որովհետև բոշաները իրանց անհանգիստ թափառական նիստ ու կացով միշտ խոյս են տալիս կանոնաւոր վիճակագրութիւնից, այնպէս որ, նրանց ստոյգ թիւն իմանալը շատ դժւար է, եթէ չասենք անհնարին: Կովկասեան բոշաների թիւը մենք հաւաքել ենք մասամբ պաշտօնական աղբիւրներից, առաւել ևս անմիջապէս՝ անձնական հարց ու փորձով. իսկ Փոքր Ասիայի բոշաների թւի մասին մեր աղբիւրն է հայր Սրուանձտեանի «Թորոս Աղբարը», որ միանգամայն արժանահաւատ կարելի է անւանել, քանի որ ականատես է իր գրածներին: Կովկասեան բոշաները ցրւած են գլխաւորապէս Կարսի, Երևանի և Թիֆլիսի նահանգների արևմտեան հայաշատ գաւառներում և ըստ մեծի մասին 1828-ի գաղթականներից են: Ամենից շատ՝ բոշա կայ Կարսի և Ալեքսանդրապոլի գաւառներում: - Ահա նրանց մանրամասն ցուցակը:

Ալեքսանդրապոլում և գաւառում 57 տուն, որոնցից երկու տուն հայ-կաթոլիկ-բոշաներ են և ապրում են Քօռ-Ախպուր գիւղում: Կարս՝ 20 տուն, համանուն գաւառի Չայիմ գիւղ՝ 20 տ.: Ախալքալաք և գաւառ 31 տ., Ծալկա՝ 20 տ., Ախալցխա՝ 16 տ., Օլթի և գաւառ՝ 17 տ., Լոռի՝ 5 տ.: Երևանում, Գանձակում, Թիֆլիսում և նոյն իսկ Շամախումն էլ մի ժամանակ եղել են բոշաներ, բայց երևի մասամբ գաղթելով, մասամբ թողնելով իրանց ցեղական պարապմունքը, բոլորովին մոռացւել և խառնւել են տեղացի հայերի հետ: Նրանց սերնդից այժմս Թիֆլիսում լաւ վաճառականներ կան, որ դեռ կոչւում են «Բոշի տղերք»: Ք. Պատկանեանը Շոպէնի աշխատութիւնից վերցնելով ասում է, որ «Նախկին Արմեանսկի օբլաստ-ում (այժմեան Երևանի նահանգ) 46 ընտանիք հայ բոշաներ

կան. 101 ար. սեռի, 94 իգ., ընդամենը 195 հոգի»: Անտարակոյս, նրանք ձուլել են հայերի հետ: Բացի դրանից, եթէ չենք սխալւում, Կովկասի այլ մասերում բոշաներ պիտի չլինին: Նրանց մեծագոյն մասը ապրում է Տաճկա-Հայաստանում և Փոքր Ասիայում: Նրանց մասին թող խօսի հայր Սրուանձտեանը.- «Վէզիր-Քեօբրուէն մինչև Գասթամօնի, կը տարածին հայ մաղագործաց բնակութիւնները և իրանց կենդրոնը կը համարի Պօյպատ: Ասոնք գարնանէ մինչև ձմեռն կը սփռուին գեղեր և քաղաքները մինչև Սևաստ. միայն ձմեռը իրանց խրճիթները կը քաշուին... Պօյպատու մաղագործ Հայոց թիւը 6-7000 կը հաշւէին, ի բաց առեալ անոնք, որ այլ և այլ քաղաքաց և գիւղից մէջ բնակութիւն հաստատած էին»[1]:

Նոյն գրքից քաղում ենք և հետևեալ տեղեկութիւնները. «Պաֆրայ քաղաք՝ մաղագործ հայք 290, Զիլէ՝ 93 բոշա, Մարզւան 481, Վէզիր-Քեօփրու 280»:

Ինչպէս երևում է, Ակնի և Արաբկերի մասերն էլ բոշաներ կան, որ պատահել են հ. Սրուանձտեանին, որոնց մասին նա գրում է. «Աղտոտ գնչուներ իրենց էշերով և ճագերով թաւալած են ջրոյն ափը. մուրացկանութեան տոպրակներ և բուռները բացած մեր շուրջն առին»:

Բոշաներ կան նաև Կարնում և իր շրջակայքում, դէպի Տրապիզոնի ճանապարհը ցան ու ցիր: Փասպատին մի միսիոնարի գրութիւնից առնելով ասում է, որ Թոխաթումն ու նրա մօտերքը բոշաներ կան. նրանք Լուսաւորչական են և կոչւում են «բոշա»:

Այս մեր բերած տեղեկութիւնների համեմատ եթէ ուզենք բոլոր բոշաների գէթ մօտաւոր թիւն իմանալ, կը ստանանք հետևեալը. Կովկասում բնակւող բոշաները վերև բերած թւերով 195 ընտանիք են: Եթէ ամեն մի ընտանիք միջին թւով հաշւենք հինգ անդամ, կը ստանանք 975 հոգի.- անւանենք 1000, ամենաշատը Կովկասում նրանց թիւը 1500-ից աւելի ո՛չ մի դէպքում չի կարող լինել:

Փոքր Ասիայի միայն Պօյպատ քաղաքում «ի բաց առեալ անոնք, որ այլ և այլ քաղաքաց և գիւղից մէջ բնակութիւն հաստատած էին», հ. Սրուանձտեանը հաշւում է 6-7000 բոշա: Պաֆրայի, Մարզւանի և այլոց բոշա բնակիչների թիւն էլ, որ վերևը դրինք, կանէ 1144 հոգի: Եթէ Կարնի և իր շրջակայքի, Խարբերդի, Ակնայ և այլ տեղերի բոշաներին էլ հաշւենք 3000 հոգի և աւելացնենք առաջիններին, կը ստանանք Տաճկա-Հայաստանի բոշաների թիւը 11,044 հոգի. Կովկասեան 1500-ի հետ՝ կանէ 12,544 բոշա: Յամենայն դէպս բոշաների թիւն ամբողջովին՝ հաւանական է, որ 15,000-ից անց չլինի:

1 Թորոս Աղբար. 272 երես:

## IV
## ԲՈՇԱՆԵՐԻ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆ ԸՆԴՈՒՆԵԼԸ

Մենք նախընթաց գլխում մօտաւորապէս որոշեցինք, թէ գնչուները Հայաստան պիտի մտած լինեն Պարսկաստան-Միջագետքով Է-Թ դարերում. այժմ հարկաւոր է լուծել մի այլ հանելուկ, որ պատմութիւնից ու բանասիրութիւնից մինչև օրս մնացել է բոլորովին անուշադիր. դա այն խնդիրն է թէ արդեօք բոշաները ե՞րբ ընդունեցին քրիստոնէութիւն - լուսաւորչականութիւն:

Որքան յայտնի է պատմութիւնից, եթէ չյիշենք մի քանի բացառիկ դէպքերը, հայերը կրօնական բանասիրութիւն չեն ունեցել. Հայաստանում ազատ դաւանում էին իրանց կրօնը Բագրատունիք և ապա իրէական բազմաթիւ գաղթականութիւնները. չինացի Մամգունի սերունդը այստեղ շարունակում էր Դեմետրի և Գիսանէի պաշտամունքը առանց հալածանքի... Հայոց աստուածների պանթէոնում պատւաւոր տեղ ունէին յունաց և ասորոց աստուածները. նոյն համբերատար ոգին տիրում էր և քրիստոնեայ հայոց մէջ, այնպէս որ չի կարելի կարծել, թէ այս ազգութիւնը բռնի ստիպած լինէր բոշաներին իւր կրօնը ընդունել տալու, մանաւանդ հայերն այդ չէին կարող անել այն խառնաշփոթ Ժ, ԺԱ, ԺԲ դարերում (երբ կարծում ենք թէ բոշաներն ընդունեցին քրիստոնէութիւն), երբ սկսւում են Տուղրիլների և Ալփասլանների արշաւները մի կողմից, յունաց՝ Անին և Հայաստանը տիրելու ձգտումը միւս կողմից և ներքին անվերջ երկպառակտումներն երրորդ կողմից:

Որովհետև գնչուների գոյութեան գլխաւոր պայմաններից մինն է անխտիր տիրապետող ազգութեան կրօնին հետևելը, ուստի աներկբայ կարելի է ասել, որ բոշաները քրիստոնէութիւն ընդունեցին առանց հայերի միջամտութեան, աստիճանաբար և ինքնաբերաբար:

Երկար ժամանակ ապրելով հայերի մէջ, սովորելով մեր լեզուն, ծանօթանալով հայերի վարք ու բարքին, կրօնին ու ծիսակատարութիւններին, նոքա հետզհետէ ընտելացան այդ բոլորին՝ և կամեցան միանալ հայերի հետ, որոնք, ի հարկէ, չպիտի խնայէին այդ միութեանը նպաստել բարոյապէս:

Որպէս զի այդ կիսավայրենի ժողովուրդը ընտելանար քրիստոնէութեան և ճանաչէր նորա առաւելութիւնը, անտարակոյս, պիտի անցնէին մի քանի դարեր այն օրից, երբ նա մտաւ Հայաստան, այնպէս որ բոշաների քրիստոնէութիւն ընդունելը պաշտօնապէս՝ անշուշտ պէտք է

վերագրել ԺԱ, ԺԲ դարերին:

Յիրաւի, ԺԲ դարում մեզ յայտնի է մի ժողովուրդ, որ լուսաւորչականութիւն է ընդունում, որի մկրտութեան և բարոյական կրթութեան մասին Ն. Շնորհալին գեղեցիկ պատուէրներ է տալիս Սամոսատի քորեպիսկոպոսին. խօսքս Արևորդոց մասին է, որ ըստ Շնորհալու յայտնի թղթի՝ պաշտօն էին մատուցանում արևին և բարդի ծառին, որոնց նա հին հեթանոս հայերի մնացորդ է համարում:

Մեզ ստոյգ յայտնի չէ գնչուների նախնական կրօնը, այլապէս դիւրին կը լինէր որոշել Արևորդոց բոշա, կամ հայազգի արևապաշտ լինելը:- Գնչուների կեանքով հետաքրքրւող բոլոր նշանաւոր հետազօտիչներն այն կարծիքն են յայտնում, որ նոքա չեն ունեցել առանձին, սեպհական կրօն:

Շատերը մինչև անգամ նոցա համարում են մի «անկրօն» ժողովուրդ: Գնչուն սեպհական ոչինչ չի ստեղծագործում, այլ միայն օգտւում է ուրիշի ստեղծագործութիւնից. այժմեան գնչուները դաւանում են աշխարհի համարեա բոլոր կրօնները:

Սակայն, Ա. Վ. Ելիսէևը՝ Կունաւինի մեծագին հաւաքածուից նիւթեր քաղելով այն կարծիքն է յայտնում, որ ցիգանները երբեմն դաւանում էին Զենդ-աւեստի վարդապետութիւնը, որպէս այդ ցոյց է տալիս նոցա հէքիաթների ուսումնասիրութիւնը: Այդ հէքիաթներից երևում է, որ ցիգանները «Լուսապարգև Ջանտրա»-ին - արևին ընդունում էին իբրև Աստւած, որ շրջում է «ոսկէ կառքով և արծաթէ ձիերով»:

Ուրիշ հէքիաթներից երևում է բարու և չարի կռիւը, որ նման է Որմզդի և Արհիմանի կռւին՝ ըստ Զենդի: Այս հեռաւոր ցոյցերից հասկանալի է, որ գնչուները երբեմն դաւանել են հին պարսից կրօնը, որից շատ չէր տարբերւում և հին հայկականը, մանաւանդ գնչուները պաշտում էին «Լուսապարգև Ջանտրա»-ին - հայոց «Արեգին»:

Գնչուների և հայերի նախնական կրօնների այս նմանութիւնը ի նկատի ունենալով, կարծեմ՝

ա) անհաւանական չի լինիլ, եթէ ենթադրենք, որ դոցա նմանութիւնից խաբւած՝ Ն. Շնորհալին Արևորդոց համարել է հայազգի հեթանոսներ:

բ) Գնչուն ազգութիւն չի ճանաչում. այսօր իսկ մի գնչու չի կարելի գտնել, որ իր ազգութեան անունը տայ, իբրև առանձին ժողովրդի. ո՛ր ազգութեան հետ գործ ունեցաւ, նորա անունն ու կրօնն էլ ընդունում է նա. «ում սալին նստի, նորա զուռնան կը փչի». այդ ֆակտ է: Յայտնի է, որ Արևորդիներից պատգամաւորներ էին գնացել Շնորհալու մօտ. այն էլ է յայտնի, որ այդ պատգամաւորների գալուց առաջ, ինչպէս

ներքևը կը տեսնենք, նոցանից շատերը մկրտուած էին, իսկ բոլորը միասին դեռ չմկրտուած, իրանց քրիստոնեայ էին կոչում. ուստի՝ ո՛չ մի տեղիք չկայ կասկածելու, որ այդ պատգամաւորները աւելի շահաւէտ, նպատակայարմար և պատուաբեր կը համարէին Շնորհալու մօտ իրանց հայ անուանել, քան մի համաշխարհային Պարիայի անունը տալ, որպիսին է գնչուն (կամ Արևորդին): Այդպիսի օրինակներ այսօր էլ շատ ունենք աչքի առաջ. ուտիացիք ու բոշաները իրանց հայ են անուանում, թէև ծագումով հայեր չեն. ընդհակառակը ծագմամբ հայ-կաթոլիկները իրանց ֆրանկ են կոչում, բողոքականները ֆարմասոն, լիտերական, յունադաւան հայերն իրանց հոռոմ, ուռում են կոչում: Տգէտ ժողովուրդը ազգութիւն չի ճանաչում, այլ միայն կրօն. այդ է պատճառը, որ Վրաստանի հայ-կաթոլիկներից շատերը իրանց համարում են վրացի-կաթոլիկ, որովհետև կրօնով էլ, լեզւով էլ խորթացած են հայութիւնից:

Մանաւանդ Արևորդիք հայերէն են խօսելիս եղել. «զի ազգաւ և լեզուաւ ի տոհմէ հայոց են», այնպէս որ այդ հանգամանքները պէտք է համարել Շնորհալու սխալի գլխաւոր պատճառներից մինը, որոնք շփոթեցրել են նրան:

գ) Որ ամենագլխաւորն է, այս մեր ենթադրութեանը, թէ Արևորդիք գնչուներ են, նպաստաւոր են նոյն իսկ Շնորհալու սեփական խօսքերը, որոնք համարեա ո՛չ մի կասկած չեն թողնում թէ Արևորդիք գնչուներ են: «Նոյնպէս կանանց պատուէր տուք, գրում է Շնորհալին իր թղթի մէջ, 'ի կախարդութենէ, և ի դեղատուութենէ և յամենայն դիւական աղանդաւորութենէ ի բաց կալ. զի ամենայն որ որ կախարդութեան զհետ երթայ, դիւաց է պաշտօնեայ և երկրպագու... Նոյնպէս և որ զպիղծ և զաղտեղի իրս ի կերակուրս կամ յըմպելիս խառնեալ՝ ուտել քրիստոնէի վասն դիւական սիրոյն... և զգուշացուցէք զնոսա յամենայն այսպիսի բժժագործութենէ»: Տղամարդոց մասին նա հետևեալ պատուէրներն է տալիս. «ի բաց կալ ի սպանութենէ, ի շնութենէ, պոռնկութենէ, ի գողութենէ, ի նենգութենէ ընկերաց, ի յարաբերութենէ և յամենայն չար գործոց սատանայի, զորս ատէ Աստուած և փոխանակ այսոցիկ՝ լինել եղբայրասէր և ո՛չ միայն զայլոց իրս ո՛չ գողանալ, այլ՛ւ յիւր արդար ստացուածոյն տալ կարօտելոյն»[1]:

Շնորհալու այս ակնարկները միանգամայն յիշեցնում են գնչուներին.

1 Տե՛ս Ընդհանրական թուղթք Ն. Շնորհալւոյ, Երուսաղէմ, 1871. «Յաղագս Արևորդեացն դարձի, ուղղեալ առ քորեպիսկոպոսն Սամոստիա քաղաքի», (եր. 223-229): Տես նաև մեր յօդւածում թուրք գնչուի վարք ու բարքի նկարագիրը. «Մուրճ», 1892, N 7-8, 9 Հայ-բոշաներ վերնագրով, այլև N 3, «Գինա Ռայնիչիչ:

այդ պատւէրները չէին կարող վերաբերել բնիկ հայերիս. յիրաւի, չենք կարծում, թէ Արևորդիք, հայ ազգի լինելով հանդերձ, բարոյապէս այդչափ հեռու կանգնած լինէին իրանց քրիստոնեայ եղբայրներից. ընդհակառակը, յիշեալ յատկութիւնները համարեա կէտ առ կէտ այսօր էլ տեսնում ենք բոլոր գնչուների մէջ: Այսօր էլ պոռնկութիւնը և գողութիւնը (որի վրայ առանձնապէս շեշտում է Շնորհալին. «ոչ միայն զայլոց իրս ոչ գողանալ») նրանց յատկանիշ կողմն է, այսօր էլ գնչուները ըստ մեծի մասին իրանց ապրուստը հայթայթում են կախարդութիւնով, սիրադաւելով և «բժժագործութիւնով», որպէս Արևորդիք:

դ) Մեր աշխատութեան մէջ դժբաղդաբար յիշեալ յատկութիւնները առանձնապէս աչքի չեն ընկնում և չեն շեշտւում, որովհետև նրա նիւթը գնչուների մի այնպիսի ցեղն է, որ ըստ մեծի մասին զերծ է այդ վատ կողմերից. այն ինչ՝ մնացեալ թէ՛ եւրոպական և թէ ասիական գնչուներին լիովին յատուկ են Շնորհալու ակնարկած կողմերը, որ կարծես հէնց այսօր դիտած և գրած լինի դրանց: Այդ մեզ չպիտի զարմացնէ. բոշաները ի բնէ զերծ չէին կարող լինել այդ յատկութիւններից. դա մէկ պէտք է վերագրել Շնորհալու նման հովւապետի հեռատես և մանրազնին հրահանգներին, որոնցով խորհուրդ է տալիս Սամոստիոյ քորեպիսկոպոսին նոր ընծայեալներին առաջնորդել բարոյական ճանապարհը. մէկ էլ՝ քրիստոնէութեան բարերար և հայ ազգի կուլտուրական ազդեցութիւնը բոշաների մէջ խեղդեցին այդ բնածին յատկութիւնները, նրանց փոխանակ պատւաստելով աւելի բարի և առաւել ազնիւ յատկութիւններ, որոնցով այժմ փայլում են մեր բոշաները:- Ուրիշ կերպ անկարելի է բացատրել այն անդնդի գոյութիւնը, որի մի ափին կանգնած են բոշաները իբրև զուտ բարոյական ժողովուրդ, իսկ միւսին՝ մնացեալ գնչու ցեղերն, իբրև տիպար անբարոյականութեան:

ե) Շնորհալու սխալի գլխաւոր պատճառներից մինն էլ այն է, որ նա, ինչպէս երևում է, Արևորդոց չի ճանաչում անմիջապէս, այլ ի լրոյ միայն. համարձակւում եմ կարծելու, որ նա, մինչև անգամ Արևորդոց շփոթում է Թոնդրակեցոց հետ... «եկին և առաջի մեր ի նոցանէ և զնոյն բանս աղաչանաց խօսեցան ընդ մեզ (Արևորդիք ուզում են քրիստոնեայ դառնալ) և մեք ծանուցաք նոցա զոր ընթերցեալ էաք ի գրոց (!?) վասն դիւապաշտ աղանդոյ (!?) նոցին, և զոր լուեալ էաք ի համբաւէ յընդելակցաց նոցին զզանազան չարիս բանիւ և գործով զնոցանէ... Որպէս և դոքա առ մեզ եկին, յուրաստ եղեն երդմամբ մեծաւ ի չար աղանդոյ (!?) անտի, և նզովեցին բերանօք իւրեանց, որ զայնպիսի ծածուկ

անաստուածութիւն ունիցի յինքեան և զոր ինչ սահման եդաք նոցունց՝ յանձն առին կատարել զամենայն»... Մի քիչ յետոյ շարունակում է. «իսկ զայնոսիկ, որք յառաջագոյն մկրտեալք լինին, միայն զխոստովանութիւն առեալ... Ս. Միւռոնաւ զճակատն դրոշմեցէք... Իսկ եթէ ստութեամբ լինիցի դարձ նոցա, որպէս և կարծեն բազումք զնոցանէն, և դարձեալ անդրէն ի փսխածն իւրեանց դառնան, մեզ և ոչ մի ինչ վնասէ»:

Այս հատուածի մէջ երեք նշանաւոր կէտեր են շօշափւում. մէկ որ Շնորհալին կարդացել է Արևորդոց աղանդի մասին և նոցա ընդելակիցներից լսել է Արևորդոց չար գործերի մասին. դժբաղդաբար չի յիշում թէ ինչ գիրք է եղել նրա կարդացածը: Արևորդոց մասին, որքան մեզ յայտնի է մատենագրութիւնից թէ Շնորհալուց առաջ և թէ յետոյ, ո՛չ մի քիչ թէ շատ մանրամասն գրութիւն, բացի հատակտուր հատուածներից՝ չի եղել. գէթ այսօր մեզ յայտնի չէ մի այդպիսի գրութիւն, որ նւիրուած լինէր այդ «աղանդի» պատմութեանը. չենք էլ կարծում, թէ մի այդպիսի «գիրք» գոյութիւն ունեցած և կորսուած լինի. ընդհակառակը քանի որ Շնորհալին Արևորդոց դենը «աղանդ» է անւանում, քանի որ Թոնդրակեցոց վերաբերեալ թղթեր-«գրքեր» կային Շնորհալուց առաջ, քանի որ Մագիստրոսը Արևորդոց յիշում է Թոնդրակեցոց մասին գրած թղթի մէջ, քանի որ Շնորհալին անմիջապէս ծանօթ չէր Արևորդոց, այլ «ի համբաւէ յընդելակցաց նոցին», ապա մենք հիմք ունենք կարծելու, որ նա Արևորդոց շփոթում է Թոնդրակեցոց հետ և այդ պատճառով էլ նրանց հայ է համարում ինչպէս Թոնդրակեցի հայք, մանաւանդ, ինչպէս տեսանք, Արևորդի-գնչուներն էլ իրանց իբրև հայ պիտի ներկայացրած լինէին Շնորհալուն: Այդ մեզ օտարոտի և զարմանալի չպիտի թւայ, որովհետև դեռ մեր օրերում ևս, ինչպէս տեսանք, կան կարծողներ, թէև առանց որ և է հիմունքի, թէ գնչուները հայազգի Թոնդրակեցիք են[1]:

Երկրորդ, Արևորդիքը ինքնաբերաբար են եկել քրիստոնեայ դառնալու և նրանցից ոմանք արդէն մկրտուած են եղել:

Երրորդ, ինչպէս առհասարակ թղթի ամբողջ ոգուց, մանաւանդ նրա այս վերջին տողերից, այն եզրակացութեանն է գալիս ընթերցողը, որ Արևորդի ժողովուրդը այնպիսի յատկութիւնների տէր է, որի խօսքին և ազնւութեանը շատ քիչ հաւատ կարելի է ընծայել. որ նա երևի քրիստոնէութիւն է ընդունում ո՛չ թէ ճապէս հասկանալով նրա նշանակութիւնը, այլ աչքի առաջ ունենալով լոկ այն նպաստաւոր պայմանները, որոնք կարող էին դիւրութիւն տալ իրանց ապրուստին քրիստոնեաների մէջ, որպիսին են և

1 Տե՛ս նախընթաց գլուխը:

բոլոր այժմեան գնչուները:

գ) Մեզ անհաւանական է թւում, որ Գրիգորների, Ներսէսների, Սահակների և Մեսրոպների ջանքերից յետոյ դեռ մինչև ԺԲ դարը մնացած լինէին հայազգի արևապաշտներ և այն, եթէ չենք սխալւում, առանց յիշատակութեան: Քրիստոնէութիւն ընդունելուց յետոյ տաճարների գիտը և Վարդանանց պատերազմը այն հուժկու մոմէնտներն էին, որոնք հայ հեթանոսութեան հոգոցը կարդացին. մինը մտաւոր ասպարիզում, միւսը քաղաքական: Մեսրոպի քարոզութիւնից յետոյ միայն ԺԲ դարումն է, որ Շնորհալու թղթով իմանում ենք, թէ դեռ մնացել էին հայազգի հեթանոսներ Արևորդի կոչմամբ: Եւ ինչո՞ւ հայերը պիտի Արևորդիք կոչւէին. միթէ այն պատճառով, որ նոքա արևապա՞շտ էին, կամ այդ կոչումը նրանց կրօնին էր տրւում. հապա ինչո՞ւ նախնի արևապաշտ հայերն այդպէս չէին կոչւում քրիստոնէութիւնից առաջ: Այդ կոչումը, եթէ կրօնի անունն էր, նոցա քրիստոնէութիւն ընդունելուց յետոյ պիտի կորչէր, վերանար, մինչ Արևորդոց քրիստոնեայ դառնալուց երկու դար յետոյ Մեծոփեցին նոցա դարձեալ այդ անունով է կոչում, որ նշան է թէ դա յատուկ ազգային անուն է: Յամենայն դէպս հէնց «Արևորդիք» անունը կարծես յիշեցնում է մի ինչ որ խորին արևելեան ծագումն: Արևելեան ժողովրդի համար դա օտարոտի անուն չէ. չինաց կայսրը «Երկնքի որդի» է կոչւում: Մեզ թւում է, թէ Արևորդի կոչումը գնչուների հնագոյն անւան թարգմանութիւնը պիտի լինի, որով նոքա ծանօթ էին հայերին մի ժամանակ:

Այստեղ մենք ցանկացանք հէնց Շնորհալու իր խօսքերով հերքել իր սխալը. այժմ կը բերենք երկու պատմական վկայութիւններ, որոնք, ըստ իս, ո՛չ մի կասկած չեն թողնում, թէ Արևորդիք առ սակաւը հայեր չեն:

Բարեբաղդաբար վկայութիւն տւող անձերը ժամանակով բաւական հեռու են Շնորհալուց, իսկ պայմանները բաւական մօտիկ Արևորդոց, այնպէս որ նոցա խօսքը կտրական նշանակութիւն պիտի ունենայ այս խնդրում: Այդ վկայութիւններից մինը պատկանում է Գրիգոր Մագիստրոսին, որի թոռնորդին է Շնորհալին: Ասորոց կաթողիկոսին գրած Թոնդրակեցոց վերաբերեալ թղթի մէջ նա յիշում է նաև Արևորդոց.

«Եւ այլ ոմանք ի Ջրադաշտ մոգէ՝ մոգ պարսկականք. և այժմ ի նոցունց դեղեալ Արեգակնապաշտք, զոր Արևորդիսն անուանեն և ահա են յայդմ գաւառի (ի Միջագետս) բազումք, և ինքեանք քրիստոնեայք զինքեանս յայտնապէս կոչեն. բայց թէ որպիսի մոլութեամբ և անառակութեամբ վարին, գիտեմք՝ զի ոչ ես անտեղեակ»[1]:

1 Հնախօսութիւն Աշխարհագրական Հայաստան Աշխարհի. Ղուկաս վարդապետի

Այս տողերը գրած են Շնորհալու թղթից առ սակաւը 110 տարի առաջ, ի նկատի ունենալով, որ Մագիստրոսը մեռել է 1058-ին, իսկ Շնորհալին կաթուղիկոսացաւ 1165-ին, որից յետոյ պիտի գրած լինէր իր թուղթը: Այն էլ պէտք է յիշել, որ Մագիստրոսը Միջագետքի կառավարիչն էր, ուրեմն և ի մօտոյ անմիջապէս ծանօթ Արևորդոց և ո՛չ թէ Շնորհալու նման ի լրոյ կամ «ի գրոց»: Վերևն էլ ասացինք, որ Շնորհալու կարդացածը «ի գրոց»՝ կարող էր լինել Մագիստրոսի այս թուղթը, ուր Թոնդրակեցիք և Արևորդիք յիշւում են միաժամանակ, որի պատճառով նա շփոթած պիտի լինի այդ երկու ժողովուրդները:

Այս էլ պէտք է ասենք, որ Սամոստիա կամ Սամոսատ քաղաքը գտնւում է Միջագետքում, որի Արևորդի բնակիչները ուզեցան քրիստոնեայ դառնալ Շնորհալու ժամանակ. Մագիստրոսի և Մեծոփեցու վկայութիւններն էլ վերաբերում են նոյնպէս Միջագետքում բնակւող Արևորդոց. այնպէս որ երեքի վկայութիւնն էլ Միջագետքի Արևորդոց մասին է:

Շնորհալին իւր թղթումն ասում է, որ «Արևորդիքդ յազգս մեր ի մասին սատանայական խաւարին մնացեալք, ո՛չ կամեցան լուսաւորել աստուածային լուսովն ի ձեռն Լուսաւորչին», մինչ Մագիստրոսը պարզաբար ասում է, որ նոքա, Զրադաշտականներից են դեղւած, ուրեմն հեթանոս հայերից չեն մնացած, ինչպէս կարծում է Շնորհալին. և որ գլխաւորն է, նոքա դեռ Շնորհալու թղթից 110 տարի առաջ «ինքեանք քրիստոնեայ զինքեանս կոչէին», թէև իրօք արևապաշտ էին... Այդ դեռ բաւական չէ. ԺԱ դարում իրանց քրիստոնեայ անւանող Արևորդիք, որոնք ԺԲ դարում պաշտօնապէս՝ իրանց խնդրանօք և կաթուղիկոսի թղթով միացան քրիստոնէութեանը, մինչև ԺԴ դարու վերջերը կոչւում են կռապաշտ: Ահա Թովմա Մեծոփեցու վկայութիւնը. «եկն ի Մէրտին (որ ի Միջագետս. ասէ Թովմա Մեծոփեցի վասն Լէնկթէմուրին) աւերեաց զքաղաքն... և չորս գեղ Արևորդի կռապաշտ, զՇօլն, զՇըմըշախ, զՍաֆարի, զՄարաղի իսպառ կործանեաց: Եւ յետոյ դարձեալ սատանայի հնարիւք բազմացան ի Մէրտին և յԱմիթ»: Յորոց գտանին մինչև ցայժմ ի սահմանս երկուց գաւառացս որք են ի Միջագետս, աւելացնում է հայր Ինճիճեանը իրանից[1]:

Այսպէս, ուրեմն, Մագիստրոսը Շնորհալուց մի դար առաջ և Մեծոփեցին նրանից երկու և կէս դար յետոյ խօսելով Արևորդոց մասին, ոչինչ չեն ասում նրանց հայութեան մասին: Արևորդոց գիւղերի անուն-անուն յիշելը նշան է, որ Մեծոփեցին ևս Մագիստրոսի նման ի մօտոյ

Ինճիճեան. hատ. Գ., Վենետիկ, 1835 թ. (եր. 161-162):

1 Տե՛ս նախորդ ծանօթութիւնը:

ծանօթ է Արևորդոց:

Պարզ է, որ Արևորդիք քրիստոնեայ էին կոչւում իրանց ԺԱ դարում, և պաշտօնապէս քրիստոնէութիւն ընդունեցին ԺԲ դարում լոկ երեսանց, որովհետև մինչև ԺԴ դարու վերջերը իրօք նոքա մնացել էին կռապաշտ, ինչպէս վկայում է Մեծոփեցին, ճիշդ այսօրւայ գնչուների նման, որոնք դաւանում են ամեն մի հանդիպած ազգի կրօն, առանց իրօք որ և է մինին առաւելութիւն տալու: Թէ պատմական վկայութիւնների ընթացքից և թէ Ինճիճեանի վերջին խօսքերից, որ վերևը դրինք, իրաւունք ունէինք եզրակացնելու, որ Արևորդոց շառաւիղները, թէպէտ հայացած, պէտք է որ մնացած լինեն Միջագետքում և որոշւեն այնտեղի հայերից, թէպէտ նոցա մեծագոյն մասը, հայ-բոշա անուամբ, այժմս բնակւում է Հայաստանի այլ մասերում: 1894 թ. «Արձագանք» N 55, կարդում ենք «Տիգրանակերտ և իր գիւղերը» որ և է թերթերից երևի արտատպած յօդւածում.

«Իջևանեցանք Շամամ անուն հայ-ասորի գիւղ մը… զարմանօք լսեցի, որ գիւղիս հայ և ասորի ժողովուրդն բացի մայրենի լեզուէ, ունին իրանց առանձնայատուկ լեզու մ՚ալ արաբերէնի մօտիկ (!?) զոր շրջակայք չեն հասկնար»: Արդեօք սոքա Արևորդիներ չե՞ն:

Այսպէս ուրեմն, մենք այն եզրակացութեանն ենք գալիս, որ Արևորդիք հայեր չեն, այլ մի առանձին ազգութիւն. իսկ այդ ազգութեան կրօնը, Հայաստանում երևալու ժամանակը, պատմական վկայութիւնները, նոցա բարք ու վարքի նկարագիրը, կրօնական խտրութիւն չունենալը, կախարդութիւնով և բժժագործութիւնով պարապիլը, որ այսօր յատուկ է միայն գնչուներին, և այլն և այլն… մեզ իրաւունք են տալիս պնդելու, որ Արևորդիք գնչուներ են:

Բացի բերած հատակտորներից, դժբաղդաբար մեզ յայտնի չեն Արևորդոց վերաբերեալ այլ վկայութիւններ. բանասիրութիւնը, հաւատացած ենք, դեռ ևս շատ բան կը լուսաբանէ: Արևորդոց վերաբերեալ սխալ կարծիքի տիրապետութիւնը, թէ նոքա հայեր են, ծագում է հեղինակաւոր Շնորհալու սխալմունքից, որին հետևելով դարուս բոլոր հայագէտները Արևորդոց հայեր են համարում:

Եթէ Արևորդիք գնչուները չլինին, ապա միանգամայն անբացատրելի կը մնայ այն բացառիկ երևոյթը, որ բազմաթիւ գնչուներ, երկար դարերից ի վեր ապրելով Հայաստանում, շփւելով հայերի հետ, դաւանելով նոցա կրօնը և խօսելով հայերէն, մատենագիրների կողմից մնում են առանց որ և է յիշատակութեան: Գնչուները կամ հայ-բոշաները Արևորդի կոչումը մոռացան, կորցրին հաւանականօրէն վերջին դարերում միայն, երբ

ցուելով հայերով աւելի խիտ բնակւած գաւառները, ընտելացան նոցա կրօնին ու ազգութեանը և այդ անունով էլ սկսեցին իրանց անւանել, այն է՝ հայ-քրիստոնեայ:

Եթէ մեր այս ենթադրութիւնը նորանոր փաստերով ապացուցւի և ընդունւի, ապա դա լոյս կը սփռէ ո՛չ միայն մեր բոշաների, այլ համայն գնչուների անցեալի վրայ, որովհետև նրանց վերաբերեալ եւրոպացոց պատմական վկայութիւնները, որքան մեզ յայտնի է, ԺԴ դարուց չեն անցնում, մինչ մեր գրականութեան վկայութիւնը, Մագիստրոսի բերանով, ԺԱ դարու կիսին է հասնում. բանասիրութիւնը թերևս աւելի հին աղբիւրներ որոշէ:

Ի վերջոյ, ինչպէս նախորդ գլխումն ասացինք, Կոլոչին կարծում է, որ գնչուները Փոքր Ասիա մտան Պարսկաստան-Միջագետքով, իսկ Ելիսէևը նրանց հէքիաթների հետազօտութիւնից եզրակացրել էր, որ գնչուները դաւանելիս են եղել Զրադաշտի կրօնը: Այդ երկու գիտնականների սրամիտ ենթադրութիւններն էլ իրականանում են, եթէ ընդունենք, որ Արևորդիք գնչուներն են, քանի որ նրանք ապրում էին Միջագետքում, և, ըստ Մագիստրոսի վկայութեան, «դեղեալք էին ի Զրադաշտականաց»:

## V

Բոշաների կեանքը Հայաստանում լուսաբանելու համար մեծ նշանակութիւն կարող է ունենալ ո՛չ միայն բոշայերէնը, այլ և այն հայերէնը, որ գործածական է հիմակւայ բոշաների մէջ: Մեզ թւում է, թէ այդ հայերէնով հնարաւոր կը լինի ամենադիւրին և դրական կերպով պարզել, թէ բոշաները ե՞րբ են մտել Հայաստան, ե՞րբ են ընդունել քրիստոնէութիւն և ո՞ր մասում աւելի երկար են ապրել: Իրողութիւնն այն է, որ ինձ ծանօթ բոշաները թէև ապրում են Էրզրումից գաղթած հայերի մէջ, բայց գործ են ածում մի այնպիսի հայերէն բարբառ, որ տարբեր է Էրզրումի բարբառից, և, որ գլխաւորն է, աւելի մաքուր և զերծ է թուրքերէն բառերից, որոնք մեծ քանակութեամբ գործածական են գաղթական հայերի բարբառի մէջ.- բոշաները աւելի մաքուր հայերէն են խօսում, քան բնիկ հայերը: Թւում է թէ բոշաները հայերէն են սովորել դեռ այն դարերում, երբ տաճիկները Հայաստան չէին մտել, և իրանց տոկուն ու թափառական կեանքի շնորհիւ աւելի մաքուր պահպանեցին հայերէնը, քան բնիկ հայերը: Որովհետև հաստատաբնակ ժողովուրդը միշտ աւելի է ենթարկւում տիրող տարրի ազդեցութեանը, քան թափառականը, որը միշտ հնարաւորութիւն ունի

խուսափելու այդ ազդեցութիւնից: Դժբաղդաբար այս կէտը մենք ուշ առանք ուշադրութեան. բօշաների խօսած հայերէնից համարեա նիւթեր չունենք ձեռքի տակ, այնպէս որ չենք կարող ասել, թէ դա մեր բարբառներից առաւել որի՞ն է մօտիկ. «էկօ նայեմ, ձեռքիկդ տուր, տոտիկիդ ի մեռնիմ, ծգրեցուցած ծար, ուզուոր պարկի, չեմ իտար, չեմ իգար, չեմ ի առներ» այնպիսի ձևեր են, որոնց նմանը Էրզրումի բարբառում համարեա՛ չենք պատահում: Ինչպէս երևում է, բօշաները հայերէն սովորել են մի այլ գաւառում, թէև Կարնի բարբառը տիրապետող է նրանց լեզւում:

Այս տողերը սրանից մի տարի առաջ գրելիս, մենք չէինք էլ կարծում, թէ շուտով փաստեր կունենանք, որ ապացուցէին մեր այդ ենթադրութիւնը: Հայր Այտընեանը իւր քննական քերականութեան մէջ հետևեալն է ասում, որ մենք առաջ ենք բերում հանգուցեալ Ս. Սարգսեանի «Լեզու և Ուղղագրութիւն» («Մուրճ», 1894, N 2, էջ 264) յօդւածում բերած վկայութիւնից՝ ԺԱ, ԺԲ դարերու մէջ երևան կ'ելլէ նոր ձև բացասական մը էական բայով և ի նախդրով... չեմ ի գալ... Այդ ի նախդիրն հիմա միայն միավանկ բայերու վրայ մնացած է. «չես ի գար...»: Ինչպէս կը նկատէ ընթերցողը վերևը դրած մեր օրինակներից, ԺԱ, ԺԲ դարերում գործածուող այդ ձևերը, հէնց այսօր գործածական են մեր բօշաների մէջ և այն ո'չ միայն միավանկ, այլև բազմավանկ բայերում. չեմ ի առներ, չեմ ի ուզեր և այլն... Այս փաստը թէև մի հատիկ, բայց ցոյց է տալիս, որ մեր բօշաները ԺԱ, ԺԲ դարերում արդէն խօսում էին հայերէն. յայտնի է, որ Արևորդիք էլ նոյն այդ դարերում իրանց անւանում էին քրիստոնեայ և խօսում էին հայերէն... Սա էլ մի փաստ չէ՞ յօգուտ մեր ենթադրութեան: Եթէ Արևորդոց խնդիրն էլ մի կողմ թողնելու լինենք, բօշաների խօսած հայերէնից այն եզրակացութեանն ենք գալիս, որ նրանք Հայաստանում էին և հայերէն էին խօսում դեռ ԺԱ դարում:

Առ այժմ այսքան. այս առթիւ մենք երևի դարձեալ կը խօսենք «Մուրճի» ընթերցողների հետ: Նախքան բօշաների մասին մանրամասն աշխատութեանս տպագրութեան յանձնելը առանձնապէս մենք ցանկացանք նրա այս մի քանի հատւածները նախօրօք լոյս հանել, հմուտ բանասէրների թեր և դէմ կարծիքն իմանալու և լուրջ քննադատութեամբ զտած մաքրած տեսնելու համար:

Մի այլ անգամ մենք կը պատմենք, թէ բօշաները ի՞նչ երևելի մարդիկ են տւել մեզ:

*«Մուրճ», Թիֆլիս, 1894 թ., թիվ 7-8, էջ 1066-1088*

# ՀԱՅԵՐ ԲՈՇԱՆԵՐԻՑ

*(Յարութիւն վարդ. Ալամդարեան, Քերոբէ Պատկանեան, Բոշա Յանէս Օղլի)*

Աշխարհիս երեսին առանց լեզւի և առանց հայրենիքի երկու ազգութիւն կան, որոնք իսկայական տոկունութեամբ շարունակում են պահպանել իրանց գոյութիւնը ցանուցիր բոլոր ազգերի և կրօնների մէջ, առանց սեփական անկախութեան, զուրկ թւական և քաղաքական առաւելութիւններից, ենթակայ ամեն տեսակ հալածանքների... Դոքա հրէաներն ու գնչուներն են: Ո՛չ ասիական բռնութիւնը, ո՛չ միջնադարեան սոսկալի հալածանքը և ո՛չ ժամանակիս մարդասէր կուլտուրան չեն կարողացել լուծել այդ երկու հանելուկ ազգութիւնների խնդիրը, աշխատելով ձուլել նոցա այն ազգութիւնների հետ, որի մէջ ապրում են, ջանալով խեղդել մինի շահախնդիր նիւթասիրութիւնը, միւսի անսանձ անսահման թափառականութիւնը:- Ամեն տեղ, Ասիայում թէ Եւրոպայում, հին թէ նոր աշխարհում, գնչուն մնում է գնչու, հրէան - հրէա:

Բայց հրէան չի խուսափում քաղաքակրթութիւնից. նա իւր գոյութեան հիմնաւոր սիւներից մինը տեսնում է ո՛չ միայն իւր ազգային կրօնի, այլ և տնտեսական ապահովութեան մէջ, որի անմիջական պտուղն է և կուլտուրան.- նա իւր հմուտ և ճարպիկ տնտեսագիտութեամբ այսօր իւր ձեռին ունի աշխարհի բաղդի բանալիներից մեծագոյնը - կապիտալի սոսկալի ոյժը:

Այլ է գնչուն. նա Սիօնի բարձունքից պատգամներ չունի ստացած. նա զուրկ է Եհովայի հզօր հովանաւորութիւնից, նա չունի այն աւանդական հայրենիքը ուր «մեղր և կաթ է բղխում», ո՛չ Մովսէս, և ոչ Դաւիթ ու Սողոմոն... Նա չունի նաև մամոնայի և մամուլի իսկայական ոյժը, որով հրէան իշխում է իւր տիրապետների վերայ... Նա զուրկ է ամեն բանից. նա մի հաստատուն բնակարան անգամ չունի: Բայց նա ապրում է ամենուրեք ինքնուրոյն, անկորուստ. աւելի տարօրինակ և զարմանալի է այս ազգութիւնը քան հրէան. և ամբողջ աշխարհում միմիայն գնչուն է, որ առանց ազգային ամենաէական պայմանների, որպիսիք են լեզուն, պատմական անցեալը, գրականութիւնը, կրօնը, թւական առաւելութիւնը, տնտեսական ապահովութիւնը, կարողանում է յարատևել իբրև ջոկ ազգութիւն... Զարմանալի է այս երկու ազգերի զուգակշիռը. նոքա հալածւած են բոլորից. նոցա անունը ծաղրի և արհամարհանքի առարկայ է ամենուրեք, և գնչու կամ հրէա հաւասար է ժլատ և գձուձ անուններին: Չէնց իրանք երկուսն էլ ամօթ են համարում իրանց ազգութեան անունը

տեղացի Կուճրաթի լեզուին եւայլն:

Յայտնի է թէ ի սկզբան ատրուշան չունէին. մինչեւ որ կարող եղան Պարսկաստանէն սուրբ հուրն բերել: Սակայն տարակոյս չկայ թէ կը պաշտէին արեգակն եւ ամբողջ բնութիւնն, հանդերձ ջրով եւ հրով: Ահաւասիկ իրենց առ ռաճայն տուած տեղեկագիրն՝ իրենց կրօնին նկատմամբ. «Լսէ՛ իշխան հոյակապ, ինչ որ կ'ըսենք նկատմամբ մեր հաւատքին:... Գիտցիր հաստատապէս որ կը պաշտենք զաստուածն եզտան: Մեր հաւատքին պատճառաւ փախանք յանհաւատից:... Մենք Ճամշիտի խեղճ սերունդն ենք: Կը յարգենք զլուսին եւ զարեգակն: Կը պատուենք զերիս այլս, այսինքն զկով, զջուր, եւ զհուր: Կ'աղօթենք առ ամենայն զոր Աստուած ստեղծեր է աշխարհի վրայ»:

Չերկարենք. արդէն միտք ունիմ այս մասին երկարագոյնս գրելու: Առ այժմ կը շատանամ պարզապէս մատնացոյց ընել հնդկական Փարսիներու եւ հայկական Արեւորդւոց մէջ եղած նմանութիւնն: Արեւորդւոց Հայաստան գալու ժամանակն գրեթէ նոյն է Փարսիներու Հնդկաստան գաղթելուն, ինչպէս կարող ենք հետեւցընել Գր. Մագիստրոսի գրութենէն: Արեւորդւոց ջանքն յամենայնի Հայոց նմանելու (ի լեզու եւ ի կրօն), ճիշդ յար եւ նման է Փարսիներու Հնդկաց նմանիլ ջանալուն: Արեւորդւոց կրօնն (պաշտօն արեգական եւ բնութեան), միեւնոյն է Փարսիներու կրօնին հետ. այն տարբերութեամբ՝ որ անշուշտ Արեւորդիք չէին յաջողած պարսկական սուրբ հուրէն ձեռք անցընել. եւ այս է պատճառ որ չունէին ատրուշան:

Այս նմանութիւնն ակնյայտնի է եւ չկայ տեղի տարակուսելու՝ թէ այս երկու ցեղերն միեւնոյն ազգին կը վերաբերին, որոնց մի մասն դէպ յարեւելս եւ միւսն դէպ յարեւմուտս է գաղթեր: Երկու հասարակութիւնք ալ որչափ որ կը ջանան իրենց կրօնն պահպանել, սակայն կը տեսնեն թէ առանց ինչ ինչ կէտերու մէջ տեղի տալու չէ կարելի իրենց գոյութիւնը պաշտպանել. եւ ինչպէս Փարսիները ջանացեր եւ փոխ են առեր հնդկական կրօնական եւ ընտանեկան շատ սովորութիւններ, այսպէս ալ Արեւորդիք ընդուներ են շատ մը քրիստոնէական եւ հայկական սովորութիւններ: Արեւորդւոց պարսկական սերունդ ըլլալուն ապացոյց է պարսկական անուններն իրենց յատուկ գիւղերուն, զորոնք կործանեց Լենկթիմուր:

Հազա՜ր ափսոս, որ մեր մատենագիրք այնչափ քիչ են գրած ասոնց մասին: Հետաքրքրական է իմանալ ընդարձակագոյնս՝ այժմու արեւապաշտից նկատմամբ, եթէ իրաւ են Texierի եւ Հ. Ղ. Ալիշանի գրածները՝ թէ ցայսօր Միջագետաց եւ Կաղզուանայ կողմերը կը գտնուին Արեւորդիք:

Անշուշտ առիթ կ’ունենանք այս մասին ուրիշ անգամ ընդարձակագոյնս գրելու:

ՊԱՅԼԱՒՈՒՆԻ

*«Հանդէս Ամսօրեայ», 1896, թիւ 5, մայիս, էջ 148-150:*

# ԼԵԶՈՒԻ ՄԻ ՀԱՄԵՍՏ ԴԱՍ

*Անցեալ տարուայ «Մուրճ»ի Հոկտեմբեր-Նոյեմբեր համարի մէջ պ. Վանցեանցը ցոյց է տալիս հայոց լեզուի մի թերութիւն եւ իսկոյն դարմանում է նոյնը: Նա իրաւամբ հիացած է, որ օտար լեզուները իգական դերանուններ ունին (*Т*ѵՌ, sie, elle), եւ ափսոսում է, որ հայերէնը այդպիսի շնորհքից զուրկ է: Եւ որովհետեւ այս հանգամանքը օտար լեզուների ճոխութիւն է կազմում, իսկ հայերէնի - աղքատութիւն, ուստի մեր պարոնը աշխատում է գտնել դարմանը եւ... գտնում է: Նա շատ սրամիտ նկատողութիւն է անում, թէ օտար լեզուներում իգական դերանունները աւելի երկար են, քան արականները.*

*արակ.* онъ, er, il,

*իգակ.* она, sie, elle.

*Յետոյ աւելացնում է, թէ որովհետեւ հայերէնը շռայլաբար կարճ եւ երկար դերանուններ է գործածում, առանց անոնց մէջ խտրութիւն դնելու, ուստի մեծ խոհեմութիւն կը լինի մեր կողմից, որ կարճը յատկացնենք արականին եւ երկարը՝ իգականին, որով հայերէն լեզուն խիստ կը ճոխանայ: Այսպէս մենք ունինք անխտրաբար գործածած.*

*կարճ.* նրա, նրանից, նրանով.

*երկար.* նորա, նորանից, նորանով:

Ինչո՞ւ ուրեմն այսուհետեւ կարճը արականի զօրութիւն չունենայ, իսկ երկարը - իգականի: Եւ տեսէք, թէ ինչ գեղեցիկ բան դուրս կուգայ: Եթէ ունենանք այսպիսի նախադասութիւն. «եղբայրն ու քոյրը անտառից դուրս եկան, ես հաւանեցի նորան, կամ ես հաւանեցի նրան»,- եւ եթէ երկար ու կարճ դերանունները անխտրաբար գործածենք, ինչպէս որ հայերէնի մէջ սովորութիւն է դարձել, ո՞վ պէտք է հասկանայ, թէ ի՛նչ է նշանակում նորա կամ նրա դերանունը, արդեօք՝ եղբա՞յր թէ քոյր: Բայց եթէ պ. Վանցեանցի նոր մեթոդով կարճը արական ճանաչուի, իսկ երկարը՝ իգական, այն

ժամանակ անշուշտ նախադասութիւնը կը լուսաբանուի եւ մենք անշփոթ կիմանանք իւրաքանչիւր դերանունով միայն իրա համապատասխան անունը. ուրեմն «ես հաւանեցի նրան» կը նշանակէ թէ հաւանեցի եղբօրը, իսկ «ես հաւանեցի նորան» - կը նշանակէ թէ հաւանեցի քրոջը:- Այս է պ. Վանցեանցի դարմանը:
Մեր պատասխանը հետեւեալն է. լեզուն կենդանի կազմուածք է, լեզուին քմահաճոյ պատուէրներ տալ չի կարելի:- Այսքանը հերիք լինի պ. Վանցեանցի առաջարկութեան պիտանութեան մասին:
Բայց մենք կուզենայինք, որ մեր թարգմանիչները մի ուրիշ բան լաւ ըմբռնէին. թէ պակասութիւնը ոչ թէ հայերէնի մէջ պէտք է փնտռել, այլ մեր թարգմանիչների անհմտութեան մէջ: Երբ որ պ. Վանցեանցը մօտաւորապէս մի այսպիսի թարգմանութիւն է տալիս. «եղբայրն ու քոյրը անտառից դուրս եկան, ես հաւանեցի նորան».- այստեղ պակասութիւնը ոչ թէ հայերէն լեզուի տկարութիւնն է, այլ, կրկնում ենք, թարգմանչի անհմտութիւնը: Կարդացէք մեր հեքիաթները. եթէ պատմուի, թէ a) եղբայրն ու քոյրը անտառից դուրս եկան, ապա շարունակութեան մէջ երբէք էլ չի ասուի, թէ b) ես հաւանեցի նորան: Եւ այս այն պատճառով, որ այսպիսի շարունակութիւնը լեզուի հակառակ կապակցութիւն է. a եւ b չեն միաւորւում հայերէնում, ուրեմն իմաստը ուրիշ հազար կերպ պէտք է ձեւացնել, միայն թէ ոչ այդպէս:
Բայց միթէ միայն հայերէնո՞ւմ այդպէս է: Եթէ անտառից դուրս են գալիս ոչ թէ քոյր եւ եղբայր, այլ երկու արականներ կամ երկու իգականներ,- արդեօք գերմանացին դարձուածքը դարձեալ նոյն նախադասութիւններո՞վ կը կազմէ: Եթէ ուրեմն գերմանացին այսպէս սկսէ.

a) «Լոտխէնն ու Լիսխէնը անտառից դուրս եկան». արդեօք դարձեալ մի եւ նոյն կերպո՞վ կը շարունակէ.

b) «ես հաւանեցի նորան (sie),-

հարկաւ ոչ: Այս դէպքում գերմանացին ամենայն հմտութեամբ կը խուսափէ a եւ b միաւորութիւնից եւ փոխարէնը ուրիշ հազար ու մէկ կանոնաւոր դարձուածքով կը ձեւացնէ:-
Երկրորդ՝ մեր թարգմանիչները այս եւս լաւ պէտք է տպաւորեն իրանց մտքում, թէ հայերէնն էլ ունի իրան միայն յատուկ առաւելութիւններ: Այս ասում ենք ոչ թէ թթու ազգասիրութիւնից դրդուած, այլ այն պարզ միտքը յայտնելով, թէ երկու ծառի պտուղներից մէկը տանձ է, միւսը՝ խնձոր:
Մի ռուս լեզուաբան այսպիսի օրինակ է յիշատակում. «Неужели изъ за страха передъ волкомъ не строить намъ деревни?»: Եթէ

այս նախադասութիւնը մեր թարգմանիչների հայերէնով թարգմանենք, մօտաւորապէս կարող էինք այսպէս ասել. «Միթէ գայլից վախ ունենալով մենք չպէ՞տք է գիւղ կառուցանենք»: Բայց այս 9 երկար բառերում կարծես թէ պակասում է լեզուի ոյժը, ջիղը, արիւնը, կենդանութիւնը: Մենք զգում ենք, որ խօսքը առակաւոր է. իսկ հայերէնը գէթ առակաւոր խօսք պիտի կարողանայ լաւ արտայայտել:

Բանից դուրս է գալիս, որ ռուս հեղինակը այդ նախադասութիւնը թարգմանել է հայերէնից, այն եւս Թիֆլիսի բարբառից: Թիֆլիսցին աւելի կարճ է ասում.

«Գիլի ահու գեղ չշինի՞նք»

(Գայլի ահից գիւղ չշինե՞նք):

Հիմա տեսնենք, թէ մեր արհեստական թարգմանականի եւ բուն հայերէնի մէջ ինչ տարբերութիւններ կան: Մէկը ճապաղ է (9 բառ), միւսը ազդու եւ հատու է (4). թարգմանութիւնը ծանրաբեռնուած է միթէ, մենք, պէտք է, ունենալ, բառերով, որի կարիքը ժողովրդական լեզուն բնաւ չի զգում. մանաւանդ զարմանալի է այն, որ դերանուն չի գործածում (մենք). յետոյ նկատելու արժանի է բառերի ընտրութիւնը - մէկն ասում է վախ, կառուցանել, իսկ միւսը՝ ահ, շինել. բայց աւելի նշանաւոր է լեզուի իդիոտիզմը (յատկաբանութիւնը) - մէկը խիստ տրամաբանական ընթացք բռնելով ասում է՝ «գայլից վախ ունենալով», միւսը իր յատուկ օրէնքի համեմատ ասում է՝ «գայլի ահու», իսկ այս վերջին ոճը մեր տրամաբանական իմաստակութեամբ պէտք է նշանակէ, իբր թէ ահ ունեցողը գայլը պէտք է լինի, եւ ոչ թէ գիւղ շինողը. մինչդեռ ժողովրդական լեզուն այդպիսի ջղուտ ոճ գործածելով՝ բնաւ տարակոյս չի յարուցանում, թէ ինչ է իր ասածի իսկական իմաստը: Մեր լեզուն լիքն է այսպիսի իդիոտիզմներով, որ մեր թարգմանութիւնների մէջ (ուրեմն մեր գրականական լեզուի մէջ) բնաւ չեն երեւում կամ շատ սակաւ են երեւում, որով մեր լեզուն այլ եւս հայերէն չի հանդիսանում, այլ մի տեսակ չիներէն: Մեր պապերից մնացած գանձը մեր տանը ժանգոտւում է, չենք գործածում. ուրիշից մուրալով ենք զբաղուած: Մենք ձգտում ենք հայուն եւրոպականացնել. այս գովելի է: Բայց մենք չուխա հագնողի գլխից փափախը վերցնելով՝ տեղը դնում ենք շապօ. այս ծիծաղելի է:-

Ի դէպ. պ. Աբեղեանը շատ հիմնաւոր կերպով ցոյց է տուել, թէ այս, այդ, այն դերանունները մենք նա դերանուան պէս հոլովելով, մեծամեծ հոմութիւններ ենք առաջացնում մեր լեզուի մէջ. այժմ պ. Վանցեանցը խոստանում է ապացուցանել, թէ այդ բանով հոմութիւն, երկդիմութիւն չի

առաջ գալիս: Եթէ այդ ապացոյցը տայ, նա մեծ ծառայութիւն մատուցած կը լինի: Երանի թէ չմոռանայ խոստումը:

Ս. Մ.

*«Արարատ», պաշտօնական ամսագիր Հայրապետական Աթոռոյ*
*Ս. Էջմիածնի, յունուար 1899 թ., համար առաջին, էջ 40-42*

## «ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ»

Պ. Գրիգոր Վանցեան Թիֆլիզ գրական հաւաքածոյ մը հրատարակեց, «Հայ հեղինակներ» վերնագրով եւ «ընտիր հատուածներ» միջնակարգ դպրոցների համար: Քառածալ 262 երեսէ բաղկացած հատոր մը, ութ մասի բաժնուած՝ Բանաւոր գրականութիւն, Գրականութիւն, Վերածնունդ, Արեւելեան բաժին, Ազգագրութիւն, Պատմական, Ճամբորդական, Բանաստեղծութիւններ:

«Յառաջաբանի տեղ» ծանօթագրութեամբը հեղինակը մեզի կը զեկուցանէ թէ «իր նպատակն է մեր գրականութեան եւ լեզուի զարգացման պատմութիւնը երկու երեք ամփոփ հատորներու մէջ տալ, հանդերձ՝ հեղինակներու կենսագրականներով եւ անոնց լաւագոյն երկերէն նմուշներով, հնագոյն անցեալէն սկսած մինչեւ նորագոյն ժամանակներս»: Կը խոստովանի, թէ «առաջին փորձի մը առաջին հատորը չէր կրնար ո՛չ իբր լիակատար գործ մը ներկայանալ եւ ո՛չ ալ թերութիւններէ զերծ մնալ»: Ու, յայտարարութիւնը կը վերջացնէ առաջարկութեամբ թէ «սիրով եւ հաճութեամբ սպասում ենք մեր պաշտօնակիցների դիտողութիւններին եւ ցուցումներին»: Ուրեմն, մեր «դիտողութիւնները եւ ցուցումները» հրատարակելով, կը յուսանք յարգելի հեղինակին թերեւս ծառայութիւն մը մատուցանել, յաջորդական հատորներուն պատրաստութեանց պահուն. եթէ մեր դատումներուն մէջ չենք սխալիր:

* * *

Առաջին երկու գլուխներուն շուրջը երկարատեւ դեգերման պէտք մը չենք տեսներ: Մեր գրականութեան պատմութիւնը Գողթանի օրերէն մինչեւ Մխիթարին երեւման թուականը, Այտընեան, Ախվերդեան, Մալխասեան, Պալասանեան ստորագրութիւնները կրող յօդուածներով, կարճառօտ մը ամփոփուած է:

Երրորդ բաժինը որ «Վերածնունդ» վերնագիրը կը կրէ, բազմաթիւ

ու պէսպէս դիտողութեանց պատեհութիւն կը հայթայթէ:

Մեր գրական «վերածնունդ»ի նոր շրջանը, տասնեւութերորդ դարուն սկիզբները կը բացուի, Մխիթարեան միաբանութեան հաստատմամբը, որուն պատմութիւնը «Հայ հեղինակներ»ուն մէջ, ռուսական հանդէս[1]* քաղուածով մը կը հաղորդուի: Բայց, բոլորովին մոռցուած են Արեւմտեան Հայոց մտաւորական շարժումին միւս այն երեւոյթները որոնք Պոլիս եւ Իզմիր տեսնուեցան, տպարաններու հիմնարկութեամբ եւ զանազան հրատարակութեանց ի լոյս ընծայմամբ:

Հատընտիրներու Հայաքծոյին մէջ առանց հանդիպելու ո՛ եւ է հատուածի մը որ «վերածնունդ»ի գրականութեան վրայ մեզի գաղափար մը տայ, յանկարծ Ալիշանը եւ Պէշիկթաշլեանը կը գտնենք մեր դէմը. այսինքն, գրագէտներ որոնք Մխիթարեանց վանքին հիմնարկէքէն գրեթէ մէկ ու կէս դար վերջը յայտնուած են: Կարդալու արժանի բան մը չէ՞նք ունեցած այդ երկարածիգ ժամանակամիջոցին: Ի՞նչ վերածնունդ է այն, որմէն բա՛ն մը չի ծնիր: «Ծնունդ» եւ «ամլութիւն» համիմաստ մտքեր չեն բացատրեր: Բայց կ՛ենթադրենք, թէ Պ. Վանցեան շուարած ըլլայ գրաբառ հրատարակութեանց հանդէպ. սակայն անոնցմէ քանի մը էջի աշխարհաբառի վերածումը դժուարին աշխատանք մը պիտի չհամարուէր: Քիչ վերջը, Արեւմտականէն Արեւելական աշխարհաբառին շրջուած պիտի գտնենք Ալիշանին եւ Սրուանձտեանցին քանի մը նկարագրականները. թէեւ առանց հարկի, առանց պէտքի:

Մեր նորագոյն գրականութեան այլեւայլ եղանակ-թուականները իրարմէ թերեւս աւելի ճշգրտագին զանազանած կ՛ըլլանք, եթէ վերածնունդը տասնեւիններորդ դարուն երկրորդ կէսէն սկզբնաւորենք. տասնեւութերորդ դարէն մինչեւ տասնեւիններորդին առաջին կէսը «երկունք վերածնունդի» նկատելով:

Պ. Վանցեան վերածնունդը Ալիշանով ու Պէշիկթաշլեանով բանալէ յետոյ, յանկարծ, նորավազ ոստումով մըն ալ դէպի Դուրեան, Սրուանձտեանց, Պարոնեանը կը ցատկէ, միշտ՝ առանց փոխանցումի: Ժամանակագրական դասակարգութեամբ պատրաստուած «Հատընտիր»ի մը մէջ, առընթեր Ալիշանի եւ Պէշիկթաշլեանի պէտք է ներկայ հանդիսանան, Նահապետ Ռուսինեան, Մատթէոս Մամուրեան եւ ուրիշներ, որոնց շարքը կ՛երկարաձգի դէպի 1870 Դուրեանով, Սրուանձտեանցով, Պարոնեանով:

Կ՛անդրադառնանք, թէ Պ. Վանցեան ինքն ալ զգացած է մէթոտի

1 Ջեռնիասօրէ՞ն գրուած... կը պակսէի՞ն հայ հարազատ աղբիւրներ: - Ծ. Բ. Խ.

պակասութեան անպատեհութիւնները, ուստի եւ զգուշաւորաբար առաջուց կ՚ազդարարէ, թէ հետեւեալ հատորներու մէջ իրենց «արժանաւոր տեղը» պիտի ունենան Արեւելեան եւ Արեւմտեան ուրիշ գրողներ ալ: Մեր միտքը չի զօրեր յետաձգումներու կամ նախապատուութեանց շարժառիթները մեկնել: Արեւելեան գրաբաժնին երկրորդ գլուխ մը վերապահելով, Արեւմտեանին համար առ այժմ կրնանք ենթադրել, թէ Պ. Վանցեան մեր գրական շարժումը բաւական լրջօրէն ուսումնասիրած ըլլալու չէ:

Արեւմտեան հեղինակներէն «իրանց արժանաւոր տեղը կ՚ունենան սրա հետեւեալ հատորներում» Խրիմեան, Այվազովսկի, Չօպանեան, եւ ուրիշներ ալ որոնց անուններուն յիշատակման պէտք չի տեսնուիր: Զուտ գեղարուեստական գրականութեան տեսակէտէն դատելով Պ. Վանցեան այդ անունները կրնար ուրիշներով փոխանակել: «Խրիմեան» անունը ընթերցողին աչքերուն առջեւ «Հայրիկը» կը ցոլացնէ, բայց ոչ՝ Արուեստագէտը: Խրիմեան, գրաբառ «Հրաւիրակ»էն զատ, գրած է խրատականներ, յորդորականներ, ամէնքն ալ իր սրտէն հոգեշունչ ներշնչմամբ ժայթքած քարոզներ, ժողովրդին համար հոգեկան կրթարաններ, որոնց մէջ սակայն չի տեսնուիր, եւ չի փնտռուիր ալ, գեղասէր գրագէտը, որպիսին եղաւ, օրինակ, Ռուսինեան մը: Այվազովսկի Գաբրիէլ եպիսկոպոսն ալ Քրիլովին առակները թարգմանած է Լէնկթիմուրեան տաղաչափութեամբ: Ուրի՞շ: Չօպանեանը Պոլսոյ գրականութեան մէջ ուշ երեւցած մըն է, եւ յիշատակութեան արժանի ստեղծագործութիւն մը չէ թողած հոն. եւ ոչ ալ հիմա Եւրոպա Արեւմտեան գրողներուն շարքը առաջնակարգ տեղը կը գրաւէ, արձակի մէջ՝ իբր գեղարուեստագէտ եւ բանաստեղծութեան մէջ իբր բարձրաթռիչ տաղանդ:

Այսպէս, Պ. Վանցեան եւ ոչ իսկ լսած ըլլալ կը թուի մեր արդի գրականութեան ռահվիրայ Օտեաններու, Ռուսինեաններու, Մամուրեաններու, Չիլինկիրեաններու, Տէմիրճիպաշեաններու անունները: Ու անոնց յաջորդող այն բոլոր գրագէտները որոնք մեր մատենագրութեան ամէն ճիւղերուն տուած են եւ կը շարունակեն տալ, եթէ ոչ հաստաբեստ հատորներ, բայց իսկատիպ ոճով էջեր, որոնց մէջ կրնանք հանդիպիլ նաեւ, մինչեւ իսկ եւրոպացի վարպետներու արժանաւորներ:

*

Անցնելով կենսագրականներուն, նախ կը նշմարենք, թէ Պ. Վանցեան մինչեւ իսկ իրարու կը շփոթէ «պատմող»ն ու «պատմուածք»ը: «Մեր նպատակն է,- կը գրէ,- երկու կամ երեք ամփոփ հատորներում տալ

մեր գրականութեան եւ լեզուի զարգացման պատմութիւնը, հեղինակների կենսագիրներով»: Ու քիչ մը վարը. «Այս հատորում դեռ հնարաւոր չենք համարել դնելու աւելի երիտասարդ հեղինակների կենսագիրները, որոնց տաղանդը դեռ զարգացման մէջ է»: «Կենսագիր» բառը կը ստորագծենք: Պ. Վանցեան անշուշտ «կենսագրական» կամ «կենսագրութիւն» ըսել կ'ուզէ: Այսպէս. այդ հատորին մէջ Լէօ «կենսագիրն» է Պէշիկթաշլեանին, որուն «կենսագրականը» գրած է: «Կենսագիր»ը biographe բառին հայերէնն է, իսկ biographieին «կենսագրական» կը թարգմանուի: «Պատմագիր»ն ու «պատմագրութիւն»ը միեւնոյն նշանակութիւնը չունին:

Բառը ճշտելէ յետոյ, ըսենք թէ Արեւմտեան հայ հեղինակները ծանօթացնող կենսագրականներուն մէջ, սպրդած են սխալ ծանօթութիւններ, որոնք քիչ մը հոգածու ուշադրութեամբ, դիւրաւ պիտի սրբագրուէին: Ու ինչ ինչ մոռացումներ կը թեթեւցնեն շահեկանութիւնը տեղեկութեանց, ինքնին արդէն շա՜տ կրճատ ու համառօտ:

Հ. Ալիշանին ծննդեան թուականը ճշտօրէն 1820 արձանագրուած տեսնելէ յետոյ, մեր աչքերուն առջեւ քահանայ սքեմովը կը ներկայանայ պատանի մը որ տասնվեցը դեռ կամ բոլորած է կամ բոլորած չէ: Մեծանուն վարդապետին կեանքը պատմող ընդարձակ հրատարակութեան վրայ ակնարկ մը տալու փութաջանութիւնը պիտի բաւէր՝ 1836-ը 1840-ով փոխանակել, եւ «միջնակարգ ուսանող պատանիները» չապշեցնել: Ու, շնորհիւ այդ ակնարկին, պիտի յիշատակուէին «Նուագներ»ը, որոնց մէջ՝ «Հայրունի»ն եւ «Տխրունի»ն, այսինքն, բանաստեղծ Ալիշանը, որ հնագէտէն աւելի երկարակեաց պիտի ապրի:

Մոռցուած է Պարոնեանին «Խիկար»ն ալ: «Թատրոն»ին աներեւութացումէն տարիներ ետքը հիմնուած զաւեշտաբան ամսաթերթը, մինչ յաջողութեամբ կը բարգաւաճէր, յանկարծ, կառավարական որոշմամբ խափանուեցաւ, այն բոլոր պարբերականներուն հետ որոնց յատուկ արտօնագիր շնորհուած չէր:

Սրուանձտեանցին «Մանանա»ն եւ «Համով-հոտով»ն ալ չեն յիշատակուիր:

Ծերենցը (Յովսէփ Շիշմանեան), «պատուաւոր դիրք մը» կը գրաւէ սխալներու շարքը: Պ. Վանցեան իր նորատի ընթերցողներուն կը տեղեկացնէ, թէ հանրածանօթ վիպասանը «ճամբորդեց Հայաստան, մանաւանդ Կիլիկիա, դորա համար էլ գրաւեց կառավարութեան ուշադրութիւնը, ուստի եւ աքսորուեց Կիպրոս կղզին: Այնտեղ էլ, գրեթէ 50ամեայ, սկսեց իր առաջին պատմական վէպը»:

Ծիշմանեանին Կիլիկիա ուղեւորմանը եւ Կիպրոս բնակութեանը թուականները իրարմէ մօտաւորապէս տասը տարուան ժամանակամիջոցով մը կը բաժնուին: Հանրածանօթ ազգասէր բժիշկը, 1870էն առաջ Կիլիկիա այցելեց, երկրագործական վարժարան մը հիմնելու նպատակաւ, իբր ներկայացուցիչ բարեգործական ընկերութեան: Ազգային պաշտօնատուն մը, Դրան ուշադրութիւնը հրաւիրելով այս ուղեւորման վրայ, որպէս քաղաքական ծրագիրներու նախաքայլ, ապագայ վիպասանը Պոլիս վերադառնալ, ուր անվրդով կ'ապրէր, երբ իր փափագին համաձայն, կառավարութեան կողմէն Կիպրոսի քաղաքապետական բժշկի թոշակաւոր պաշտօնը յանձնուեցաւ իրեն: Աւելի կամ նուազ հիմնաւոր ամբաստանութեանց երեւէն, Հայերը աքսորի դատապարտելու նորոյթը դեռ քառորդ դար մը առաջ վարչական բարքերու մէջ չէր փայլեր: Ու Ծերենց Պոլիս իսկ տպագրեց այն «Թորոս Լեւոնի»ն, որուն ներկայութիւնը այժմ Պոլիս Հայու մը գրադարանին մէջ, սեփականատէրը Կիպրոսէն շատ անդին, մինչեւ Աքեայի Անյուշը ուղեւորման կը դատապարտէ: Չմոռնանք նաեւ, որ երբ Ծերենց Թիֆլիզէն Հայաստան պտոյտի ելաւ, տարիներ ու տարիներ անցեր էին Կիլիկեան այցելութեան օրերէն ի վեր:

Չենք կասկածիր, թէ սխալները զոր սրբագրեցինք, մոռացումները զոր յիշեցուցինք կրնան ուսանողութեան մտքին վտանգներ սպառնալ: Պզտիկ թերութիւններ են որոնք անհոգութիւն ենթադրել կու տան: Մատնանիշ ընելով այդ թեթեւ պակասները, կը յուսանք, թէ Պ. Վանցեան երբ իր գործին երկրորդ եւ երրորդ հատորները պատրաստել սկսի, մեր այս «ցուցումներից» թերեւս օգտուի, աւելի խղճամիտ խուզարկութեան մը պէտքը ըմբռնելու համար:

* * *

Արեւմտեան հայ գրականութեան առաջին նմուշը զոր Պ. Վանցեան Միջնակարգ ուսանողներուն կը ներկայացնէ, Ալիշանէն նկարագրական մըն է, Արարատեան քերականութեամբ թեթեւ իմն սրբագրուած: Այդ «Նաւասարդի տօներ»ը պարզունակ պատմուածք մըն է եւ ոչ գեղարուեստական էջ մը: Նաւասարդին տօնահանդէսը երգուած է նաեւ «Հայկ դիւցազն»ին մէջ ալ. եւ որովհետեւ Պ. Վանցեան Ալիշանին լեզուն Արեւելեանի վերածած է, իցէ՛ թէ Բագրատունեան նկարագրականն ալ աշխարհաբառելով, Ալիշանականին հարեւանէր: Երկու համանիւթերու միջեւ բաղդատութիւն մը կրնար ի վեր հանել թէ գեղարուեստական գրուածք մը ինչ է եւ պարզ պատմուածք մը ինչ: «Յուշիկք»ները յաճախ աղուոր գրականութեամբ կը գեղափայլին, ինչո՞ւ Պ. Վանցեան անոնց

մտագրաւ էջերէն մէկ քանին առած չէ: Տեղը չկար նաեւ «Ո՞նց գաս»ին քանի մը տուներուն արտատպմանը. գրեթէ ամէն հայ այդ բանաստեղծութիւնը բերնուց գիտէ. մինչդեռ «Հայրունի»էն ու «Տխրունի»էն խել մը դիւթական տաղեր տակաւին ժողովրդականացած չեն:

Այս միեւնոյն դիտողութիւնը կը ներկայացնենք «Ի բիւր ձայնից»ին եւ «Ոհ ինչ անուշ»ին համար ալ, որոնք ամէն հայու բերանը կը պտըտին քառսուն տարիներէ ի վեր: Պէշիկթաշլեանէն քանի մը արձակ էջ իբր նորութիւն կրնային կարդացուիլ:

Դուրեանէն առնուած է ինչ որ վաղամեռ բանաստեղծը ունի:

Պարոնեանին դէմը քիչ մը կանգ առնենք: Բազմաբեղուն երգիծաբանէն քանի մը խեղճուկ էջեր են որ իբր արեւմտեան սրամտութիւն կը ցուցադրուին: Ներկայացուած տիպարները իրենց ոչ-բնական գծերովը մեզի կը խրտչեցնեն: Պոլիս եկող գաւառացի հարուստները այնքան միամիտ չեն որ իրենց սենեակը մտնող ո՛ եւ է խեղճ տղու մը ափը ոսկիներ լեցնեն, յօդուածի կամ ոտանաւորի տպագրութեան համար: Ու, շատ նրբամիտ գիւտ մը չէ, երեւակայել երիտասարդ մը որ դրամաշորթական նպատակաւ, սեղանի մը վրայ ցատկէ եւ հոնկէ ճառէ: Սեղանը արդէն կը գլտորի:

Պարոնեան որ բազմառատ արտադրող մը եղաւ, տիպական նկարներ հրապարակ նետած է, մասնաւորապէս «Ազգային ջոջեր»ուն մէջ. սակայն, նուրբ ճաշակներու միշտ հաճելի հեղինակ մը չէ, ընդհանրապէս «չարշըլըներուն» համար գրած ըլլալով. այսինքն, թէ հեգնաբանը ջանացեր է ախորժելի դառնալ շուկայի այն խանութպաններուն որոնց ջիղերը խոշոր կատակաբանութիւններէ կը գրգռուին միայն:

Ուսանող պատանեկութիւնը, որ խանդավառութիւնն ինքն է, չենք գիտեր թէ ինչ համ կրնայ առնել երկու ողորմելիներու հասարակ խօսակցութիւններէն. ենթադրելով իսկ թէ այդ երկու խեղճուկները իրական տիպարներ ներկայացնէին, քիչ մը չափազանցուած, ըստ պահանջման երգիծաբանութեան: Զգենք «բանաստեղծ»ին ու հարուստին միջեւ փոխանակուած անմիտ, անհամ խօսակցութեանց տգեղութիւնը, նոյն իսկ Պարոնեան շատ քայքայուած ոճով մը կը գրէ ինչ որ ինքը իր կողմէն կը պատմէ: Ահա ինչպէս կը նկարագրէ Աբիսողոմ աղային ներկայացող երիտասարդը. «Հազիւ երեսուն երկու տարեկան կը թուէր: Կապոյտ աչերով, դեղին մազերով, զարդարուած ըլլալով, ունէր նաեւ երկու մատ մօրուք, որ մայրաքաղաքիս մէջ կամ սգոյ նշան է, կամ չքաւորութեան»: Ստորագծումը մենէ: Միթէ այսօրինակ տողե՞րն են եւ ասոնց յարակից

տգեղ խօսակցութիւննե՞րը - բնական կամ անբնական - որոնք ուսանող պատանեակներու գրական ճաշակին ազնուացմանը պիտի սատարեն:

Սրուանձտեա՛նցն ալ իր համբաւին արժանաւոր էջերով ի հանդէս չի գար: «Առաւօտ»ը մեծ մասամբ զուարճալի բառերու շարոց մըն է որ ընթերցողը քիչ մը կրնայ զբօսցնել, բայց խորհող միտք մը չի կրնար հրապուրել: Բառախաղերու կուտակումը աղուոր գրականութեան դէմ մեղանչում է: «Նրանք (աղջիկները) անցնում գնում են առաջ՝ բանջարներ ժողովելու եւ կանչելու, աղջկերքը՝ «քա՜, քա՜», կաքաւները՝ «գո՜ւ, գո՜ւ»: Ու այսպէս, կռունկը «կռո՜ւ, կռո՜ւ» է կանչում. արագիլը՝ «հօ՜դ, հօ՜դ», բուն՝ «վո՜յ, վո՜յ», ձկնկուլը՝ «ձըկ, ձըկ», յոպոպը՝ «յո՜պ, յո՜պ»: Ասանկ արտատպումները Մանկապարտէզի ընթերցարաններու կը յարմարին: Իսկ «իմաստուն ջուլհակ»ի հէքիաթն ալ, գրական յաւակնոտութեամբ չի պանծար: Պառաւի պատմուածք մը:

Գրական շատ տկար «հատընտիր» մըն ալ Ծերենցէն: Արտագրուած վաթսուն տողերուն մէջ, գեղակերտ պարբերութեան մը չենք հանդիպիր: Ու մինչեւ իսկ քերականական կանոնները անգամ յարգուած չեն: Առնենք հետեւեալ տունը: «Ամեն ամրոց, բերդ կամ դղեակ իշխանի մը ստացուածքն էր, որ միշտ Արծրունի, Բագրատունի, Կամսարական, Սիւնի, Պահլաւունի, Մամիկոնեան եւ ուրիշ ասոնց նման սերնդոց կը վերաբերէին, որք ազնուականաց բնական առաքինութեամբք եւ թերութեամբք առաջ կամ ետ կ՚երթային, յօգուտ կամ ի վնաս անձանց եւ Հայութեան»: Արծրունի, Բագրատունի սերունդներու վերաբերողը ո՞վ էր, «ամրոց, բերդ կամ դղեա՞կ»ը, թէ՞ իշխանը: «Որ»ը զո՞վ կը դերանուանէ. եթէ «իշխան»ն է յարաբերեալը, բայն ալ պէտք էր գրուէր եզակի «կը վերաբերէր». իսկ «կը վերաբերէին»ը կ՚ուզէ «որք կամ որոնք»:

Այս պզտիկ դիտողութիւնը կ՚ընենք, ոչ թէ բծախնդրութեամբ, այլ այն նկատումով որ, Ծերենց եւ իր ժամանակակից ուրիշ մէկ քանի գրողներ, ալա թուրքա քերականութեամբ կը գրէին, առանց շատ բարակները փնտռելու, մինչեւ իսկ շատ հաստերն ալ չէին նայեր: Ծերենցին այդ ամբողջ երկայն հատուածը գլուխ-գործոց մըն է քերականական անհոգութեան:

*

Այս մէկ քանի քննադատութիւններով, մեզի նպատակակէտ չենք առաջադրած տկարացնել բազմարդիւն հեղինակներու արժանիքները: Անխնամ ոճով գրուած էջեր հազուադէպ չեն նոյն իսկ մեծ հանճարներու հեղինակութեանց մէջ: Շէքսբիր մը, Հիւկօ մը, Պօսիւէ մը ո՜րքան տափակցած

են տեղ տեղ: Հայաքածոյի մը հեղինակը, որ պատանեկութեան ճաշակին զարգացմանը կ'ուզէ նպաստել, պէտք է գրքէ մը զատէ այն էջերը զորս գրագէտը ինքն ալ գուրգուրական խնամքով յաջողած է գլուխ-գործոցներ ընել: Միթէ կը կարծուի՞ որ Բագրատունիի, Օտեանի, Ռուսինեանի նման արուեստագէտներու բոլոր գրուածները, անխտիր կրնան յանձնարարուիլ ուսանողութեան, իբր ավարտուն արուեստի մը մտատիպար օրինակներ:

Մեր յօդուածը չերկարելու համար, պիտի չուզենք, գոնէ առ այժմ, կարծիքներ յայտնել թէ ինչ ուղղութեամբ պէտք է առաջնորդուիլ, Արեւմտեան Հայոց գրականութեան գործերէն Արեւելեան Հայոց նմուշներ ներկայացնելու աշխատութեան մէջ:

Սակայն չենք կրնար ապշութիւն չյայտնել երբ Արարատեան աշխարհաբառի վերածուած կը տեսնենք, եւ ի՜նչ խառնափնդոր աշխարհաբառ մը, հատուածները այն Արեւմտեան հեղինակներու որոնց գործերը Կովկաս ընդհանրացած են: Չե՞ն հասկցուիր: Րաֆֆիի մէկ վիպակին քանի մը տարի առաջ Արեւմտեան աշխարհաբառով հրատարակմանը առթիւ, «Մշակ» կը հարցնէր, թէ արդեօք այլ եւս իրարու լեզուէ չե՞նք հասկնար: Անշուշտ, կան գրութիւններ որոնք դիւրաւ հասկցուելու համար, պէտք է որ մէկ աշխարհաբառէն միւսին փոխադրուին. բայց Րաֆֆի, Ալիշան, Սրուանձտեանց զուտ տեղական բարբառով մը գրած չեն, եւ ոչ ալ գրաբառնակ:

Ու այս տեսութիւնը փակենք աշխարհաբառէ աշխարհաբառի վերածմամբ մը, որ միանգամայն գաղափար մը կու տայ թէ մեր աշխարհաբառը բան մը չի շահիր, այլ բան մը կը կորսնցնէ երբ կ'արեւմտանայ: «Հատընտիրներ»էն առնենք, Րաֆֆիի քանի մը տողը, էջ 156, եւ վերածենք մեր բարբառին:

## ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՇԽԱՐՀԱԲԱՌ

Ռշտունեաց պարզ երկնքի նման՝ այդ խաղաղ դէմքը յանկարծ մռայլւում է, մթնում է, շանթեր է արձակում երբ եղանակը փոխւում է, եւ տեղի է ունենում փոթորիկը... Այդ միջոցին նա չէ խօսում, այլ որոտում է, եւ այդ որոտման ձայնի մէջ դու լսում ես նախկին հայի ուժեղ բարբառը իր բոլոր կոշտ եւ անտաշ ձեւերով: Բայց այդ կոշտ հնչիւնները քո հոգուդ այնքան ազդու են, քո սրտին այնքան կախարդիչ են որ որքան էլ ընկած լինես դու հոգով՝ յանկարծ ներշնչւում ես մի անբացատրելի ոգեւորութեամբ:

Ռշտունեաց պարզ երկնքին նման՝ այդ խաղաղ դէմքը յանկարծ կը մռայլի, կը մթննայ, շանթեր կ'արձակէ երբ եղանակը կը փոխուի, եւ տեղի կ'ունենայ վերահաս փոթորիկը... Այդ միջոցին ան չի խօսիր, այլ կ'որոտայ, եւ որոտման այդ ձայնին մէջ, դո՛ւն նախկին հայու ուժեղ բարբառը կը լսէ՛ս իր կոշտ եւ անտաշ բոլո՛ր ձեւերովը: Բայց այդ կոշտ հնչիւնները քու հոգիիդ ա՛յնքան ազդու են, քու սրտիդ ա՛յնքան կախարդիչ, որ դուն, հոգիով ինչքան ալ ինկած ըլլաս, անբացատրելի ոգեւորութեամբ մը յանկարծ կը ներշնչուիս:

Ու այս առթիւ այս նմուշ-վերածումը կը յանձնարարենք ուշադրութեանը անոնց որոնք երկու աշխարհաբառներուն ի մի ձուլման փափագը յայտնեցին Կովկասէն:

***

Գահիրէ, Ա 10պրիլ

*«Բազմավէպ», Վենետիկ, Սուրբ Ղազար, 1905, Մայիս, թիւ 5, էջ 233-238*

# ԳՐ. ՎԱՆՑԵԱՆԻ «ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ» ԳՐՔԻ ԱՌԻԹՈՎ

Միջնակարգ դպրոցների համար յօրինուած այս դասագիրքը գալիս է մեր քառորդա դր առաջ նորաբողբոջ, իսկ այժմ վաղաթառամ մանկավարժական գրականութեան մէջ՝ իբրեւ մի նոր երեւոյթ՝ երկու զգալի պահանջ լեցնելու համար. աւելի բարձր նիւթեր տալու հասունացած աշակերտների ընթերցանութեան համար եւ կենսագրական տեղեկութիւններ՝ այդ իսկ նիւթերն արտադրող հեղինակների մասին[1*]: Սկսեալ այն օրից, երբ մեր մանկավարժական աշխարհի հորիզոնը խաւարեց, մենք տարաբախտաբար ձեռնաթափ եղանք եւ լքուած դրութեան մէջ թողինք նաեւ հրատապ հարցերը: Բայց մինչեւ ե՞րբ... Ուստի թող ինձ թոյլ տրուի գէթ այսօր՝ այս ձեռնարկի առիթով՝ դուրս գալ սովորական

1 * Գոնէ ես այդպէս եմ հասկանում այս գրքի կոչումը: - Ծ. Յ.

մատենախօսական ակնարկների նեղ սահմանից եւ աւելի ընդարձակ հորիզոն բանալ ընթերցողի առջեւ:

Ընթերցանութեան դասագրքերի պատմութիւնը մի տեսակ բնորոշ պատմութիւն է պատմական որոշ շրջաններում տիրող իաէդլների, այն սիրելի իաէդլների, որոնցով այս կամ այն դարի առաջաւոր մարդիկ ձգտել են տոգորել նաեւ դեռահաս սերունդը եւ՝ այն մտցնել իրանց փայփայած իաէդլների աշխարհը: Երբ որ նոր արեւ ծագի մեր մանկավարժական հորիզոնի վրայ, այն ժամանակ կը ներկայացնեմ մեր հարցասէր ընթերցողների համար պատրաստածս օտար եւ հայերէն ընթերցարանների համառօտ պատմութիւնը, իսկ հիմա՝ այա դրեւի նշոյլներին ի տես՝ բաւականանում եմ մի քանի թռուցիկ ակնարկներով:

Թերթելով քաղաքակիրթ ու կիսաքաղաքակիրթ ազգերի մանկավարժական պատմութեան էջերը՝ տեսնում ենք, որ ինչպէս նրանց անցեալում, նոյնպէս եւ ժամանակակից յետամնաց ժողովրդների մէջ, սկզբները վարժապետներին բացառապէս կամ աւելի հետաքրքիր են ընթերցանելիք նիւթերի ձեւը՝ քան բովանդակութիւնը: Թէ այս գաղափարը որպիսի խոր արմատներ էր գցել հազարաւոր տարիների ընթացքում, այդ ցոյց են տալիս գերմանական երեւելի մանկավարժներից մէկի՝ Դիստէրվէգի՝ հետեւեալ խօսքերը. «Որովհետեւ ընթերցման մօտաւոր նպատակը նոյնիսկ ընթերցումն է, եւ ո՛չ թէ նախադասութեանց մէջ պարունակուած է ճշմարտութիւնը, ուստի ընթերցարանն այնպէս պէտք է կազմուած լինի, որ աշակերտի ուշադրութիւնը նախադասութիւնների բովանդակութիւնից նրանց ձեւերին դառնայ»: Այս անհաւատալի էր այնպէս չէ՞, ընթերցող. այո՛, բայց եւ այնպէս իրողութիւն է եւ առհաւութեան (ատաւիզմի) մի ուշագրաւ օրինակ:

Նաեւ մանկավարժական աշխարհի ապագայ բարօրութեան համար բարեբաղդաբար գոյութիւն է ունեցել հին, լուսաւոր Յունաստանը իր պանծալի Աթէնքով, որի գրական, գեղարուեստական, փիլիսոփայական ու քաղաքական բարձրագոյն կատարելութեան հրուանդանից ջերմ ու պայծառ շողեր են սփռուել կրթական աշխարհի վրայ: Առաջին անգամ յունական խորաթափանց ոգին էր, որ հասկացաւ թանձրացեալից վերացականին անցնելու բնական պահանջը. ժողովրդի եւ ազգի վեհագոյն զգացմունքների, մեծ մտքերի արտայայտիչ բանաստեղծներն ու իմաստասէրներն է, որ ըմբռնեցին թէ պէտք է դեռահաս սերունդի միտքն ու սիրտը զբաղեցնել ու արգասաւորել: Հռովմայեցիք՝ մինչեւ Յունաստանին տիրելը, ժողովրդական կրթութիւնը գրել կարդալու մէջ

էին տեսնում, իսկ յետոյ միայն՝ յոյն մանկավարժների հետեւողութեամբ՝ Հոմերոս ու Վիրգիլիոս տուին դեռահաս սերունդի ձեռքը եւ նրանց պարապեցրին պատմաբաններով ու ճարտասաններով: Եւ որովհետեւ յոյնի իաէդլը բարձրագոյն, բազմակողմանի կատարելութեան հասած մարդն էր, նա այդպիսի› մարդեր պատրաստելու հետամուտ եղաւ. իսկ հռովմայեցին՝ համաձայն իր իաէդլների՝ պետական, ճարտասան մարդիկ պատրաստեց: Այլ հին ազգերից պարսկականը աւելի ուշադրութիւն է դարձրել ֆիզիքական կրթութեանը. սեմական ազգութիւններից մանկավարժական տեսակէտով իսրայէլացոց կեանքում գերակշռել է կրօնական տարրը, իսկ արաբական իաէդլը գիտութիւնն է եղել: Հին Հայաստանի կրթական ուղղութեան վրայ ամենից շատ դաջած պիտի լինէին, նայելով յարաբերութիւնների սերտութեանը՝ նախ պարսկականը, ապա քրիստոնեայ Յունաստանի կրօնական իաէդլները եւ այնուհետեւ միջնադարեան սքոլաստիքական շկոլան ու մեր վերածնութեան շրջանում էլ՝ եւրոպական եւ գլխաւորապէս գերմանական մանկավարժական հայեացքները, անմիջական կերպով, կամ ռուսականի միջոցով:

Գերմանական նախկին քրիստոնէական ուսումնարաններն էլ կրօնական ուսմունք էին տալիս, իսկ աշխարհիկ ուսմունքը վերապահուած էր ծնողներին[1]: Ընթերցարանների իսկական շրջանը՝ նոյնիսկ Գերմանիայում, մէկ դարից շատ առաջ չէ սկսուել: Ժամանակակից գաղափարով ընթերցարաններ կարող էին երեւան գալ ժողովրդական բանաստեղծութեան, տրուբադուրների շնորհով, որոնք ասպետական շրջանից յետոյ մի առանձին ազդեցութիւն ունեցան գերման ժողովրդի կրթական գործի վրայ: Ռէալական ուղղութեան կարապետներ հանդիսացան Բակոնը Անգլիայում, Ռատկէն Գերմանիայում, Կոմենսկին Բոհեմիայում 16 եւ 17 դարերում. եւ ապա, 18-րդ դարում, Ռուսսօն Ֆրանսիայում Ռոբինզոնի պատմութիւնը մեծ ոգեւորութեամբ ջատագովեց՝ իբրեւ լաւագոյն ընթերցարան, որովհետեւ այս գրքում նա տեսաւ իր սիրելի իդէալները ներկայացրած, քաղաքակրթական պատմական աստիճանները վիպական ձեւով այնպէս գրաւիչ կերպով պատկերացրած: Ապա Ռուսսոյին այս տեսակէտով ջերմաջերմ հետեւորդ հանդիսացաւ Գերմանիայում Հերբարտ-Ցիլլէրեան շկոլան -19րդա դրի առաջին կիսից մինչեւ մեր օրերը: Այս մանկավարժական սիստեմով ուսուցման առարկաները դասաւորւում են *քաղաքակրթական պատմական աստիճաններին* համապատասխան. իւրաքանչիւր տարեշրջանի

1 Ճիշտ հակապատկերը Ամերիկայում եւ այլ մի քանի երկրներում այժմ տիրող ձգտումների:

դասագիրքը *կենտրոնական* դիրք է բռնում դասընթացի մէջ եւ, որքան որ հնարաւոր է, կապակցութեան, առնչութեան մէջ է դրւում վեր առած տարուայ գիտելիքների հետ: Գրական բաժինը պէտք է ժողովրդի գլխի ու սրտի, մտածածի ու բանաստեղծածի լաւագոյն եւ հաւատարիմ պատկերը ներկայացնէ: Բանաստեղծութիւնները պէտք է արձակ գրուածքների հետ *կապակցուեն*՝ իրար լրացնելու եւ պարզաբանելու համար: Փոխանակ շինծու, մտացածին յօդուածների՝ պէտք է տալ ժողովրդական կեանքից նկարագրութիւններ, պատմական հատուածներ ականատեսների կենսալի աղբիւրներից, որ առաջին հրապոյր ունին, հայրենագիտական ու աշխարհագրական նիւթեր, գործնական գիտելիքներից արհեստի, գիւղատնտեսութեան, քաղաքատնտեսութեան վերաբերեալ նիւթեր: Ընթերցարանը այսքան տարրեր ամփոփելով սակայն, չպէտք է ոչ հանրագիտական դառնայ եւ ոչ էլ ստրկական դեր կատարէ այլ եւ այլ գիտութեան վերաբերմամբ: Այս դասագիրքը պէտք է որոշ քաղաքակրթական շրջանի բազմակողմանի արտայայտիչը հանդիսանայ, ընթերցանութեան այնպիսի սիրելի գիրք դառնայ, որ ապագայում էլ, երբ այս օրուայ աշակերտը ընտանիքի հայր դառնայ, սիրով ձեռք առնէ այն:

Մարդիկ երկար ու ձիգ դարերէ ի վեր ուսուցման ինչպէս այլ, նոյնպէս էլ ընթերցարանների նիւթեր ընտրելիս ու դասաւորելիս՝ առհասարակ, ղեկավարուել են նրանց դիւրութեան ու դժուարութեան աստիճաններն ի նկատի ունենալով, որ, ինքն ըստ ինքեան, ուղեցոյց սկզբունքներ չէր կարող տալ մեր ձեռքը: Իսկ երբ որ անցեալ -19րդա  դրում մարդկային իմացականութեանը յաջողուեց վերջապէս խելամտիլ, աւելի խորը թափանցել տիեզերական գաղտնիքների մէջ, երբ նա տեսաւ որ բոլոր մարմինները՝ շնչաւոր թէ անշունչ՝ ենթակայ են եղել *կազմակերպման* (էվոլիւցիա) կամ *կազմալուծման* (դիսսոլիւցիա (անսասան օրէնքին, երբ բնագէտ ու հոգեբան իրանց կողմից մանրակրկիտ զննողութեան ենթարկեցին բուսական ու կենդանական կեանքը, այն ժամանակ նաեւ մանկավարժական աշխարհի վրայ նոր լոյս ծագեց: Կենդանաբանը տեսաւ, որ մարդը՝ կենդանական աշխարհում բարձրագոյն կատարելութեան հասած այս էակը՝ ինքն ըստ ինքեան մի *կարճատեւ կրկնութիւն է կենդանական կեանքի պատմութեան:* Այս կենդանու սաղմը՝ իր գոյութեան առաջին վայրկեանին մեզ ներկայացնում է այն կենդանական վիճակը, որ թագաւորել սկսեց հողագնդի վրայ, հէնց որ հնարաւոր եղաւ այդ: Մարդկային սաղմի հետագայ օրերի եւ ամիսների կազմուածքն ու կեանքը հետզհետէ բարդուելով ներկայացնում են անցեալում ու ներկայումս

գոյութիւն ունեցող կենդանիների հիմնական յատկութիւնները, ամենաստոր դասակարգից մինչեւ ամենաբարձրը: Եւ ահա, երբ գիտութիւնը այստեղ հասաւ, այն ժամանակ արդէն դժուար չէր հոգեբաններին հետամուտ լինել կենդանիների հոգեկան կեանքի համընթաց ուղղութեանը ֆիզիքականի հետ: Այնուհետեւ մանկավարժութեանն էլ մնում էր միայն մի քայլ յառաջ երթալ եւ ասել. բա›ւ է որքան որ այսքան դարեր խարխափեցինք խաւարի մէջ. դեռահաս մարդու մէջ բուռն ձգտում կայ նաեւ հոգւով մի առ մի ապրիլ այն քաղաքակրթական-պատմական կեանքը, որ անցել է մարդկութիւնը չնայելով ահաւոր քայքայումների, մեծամեծ յետաշրջումների:

Այս փրկարար խօսքը լսուեց Գերմանիայում Հերբարտ-Ցիլլէրեան շկոլայից, որի յառաջադիմական իաէդները սակայն սկզբում իբրեւ աղանդ ընդունուեցին պահպանողական մանկավարժական աշխարհից: Բայց այդ երկու մեծ մանկավարժների եռանդուն աշակերտները ոչ միայն չվհատուեցին, այլ գիտութեանց նորանոր յայտնութիւններով զինուած անյողդողդ յառաջ մղեցին այս մանկավարժական սիստեմը, որ ապագայի սիստեմն է: Ցիլլէրականները ի նկատի ունենալով իրանց ժողովրդական ուսումնարանների ա 8մեայ դասընթացը քաղաքակրթական-պատմական նիւթերը 8 շրջանի վերածեցին եւ այնպէս դուրս եկաւ, որ կարծես թէ չափուած ու ձեւուած էր: Համառօտ ուրուագծենք այա դստիճանները, որոնք իսկապէս 7 տիպիքական շրջաններ են ներկայացնում:

*Ա .Առասպելական դարաշրջան:* 5-6 տարեկան մանկական մտքին համապատասխան է (կոնգէնեալ) նախադպրոցական շրջանում կենդանական կեանքից վեր առած առակները (ֆաբլ), ապա հէքիաթները, որոնք շարունակում են նրա ուշք ու միտքը գրաւել նաեւ ուսումնարանական կեանքի առաջին շրջանում 6-7 տարեկան հասակում: Նա սիրում է դեռ մնալ իր վառ երեւակայութեամբ փայփայած առասպելական այդ հմայիչ աշխարհում, որ մարդկութիւնն էլ ստեղծել էր իր մանկական հասակում: Այս բանաստեղծութեանց մէջ դեռ սաղմնային դրութեամբ նիրհում է ազգային բանաստեղծութիւնը իր բազմազան ճիւղաւորութիւններով, այս հէքիաթների մէջ են ամփոփուած ժողովրդական կենդանի լեզուն, նրա պատմութիւնը, հաւատալիքը եւ օրէնքը, որ հետագայ դարաշրջաններում հետզհետէ իրանց արգասաւոր ծիլերն արձակում են բանահիւսութեանց մէջ: Այնուհետեւ մարդկութիւնը մտնում է՝

Բ. *Որսորդական կամ Ռոբինզոնեան շրջանը,* երբ նա՝ պատանի մարդկութիւնը՝ արդէն սկսում է կասկածանքով վերաբերուիլ երեւակայական երեւոյթներին եւ ձգտում է ոտք կոխել բնական երեւոյթների

*պատճառաբանութեանց* աշխարհը: Ռոբինզոնի պատմութիւնը ներկայացնում է մեզ մարդու մղած ահաւոր ու տեւողական կռիւը բնական ոյժերի դէմ եւ վերջնական յաղթանակը՝ շնորհիւ հնարագիտութեանց ու արհեստների: Ռոբինզոնին իսկապէս պէտք էր զրկել կուլտուրական բոլոր միջոցներից, նոյնիսկ յիշողութիւններից եւ ապա թոյլ տալ որ նա ինքնուրոյն կերպով, սեփական ոյժերով իր գլխի ճարը տեսնէր: Ի հարկէ, այդպիսի մի անհատ շատ առաջ չէր գնալ այդպիսի պայմաններում, այս պատճառով էլ երեւի հեղինակը տուել է նրա ձեռքը այդ թէեւ աննշան պատրաստի միջոցները: Որսորդական շրջանին յաջորդում է՝

Գ. *Դիւցազնականը,* որ նախընթացի ու յետագայ պատմական շրջանի միացուցիչ օղակն է կազմում: «Քաղել առանց ցանելու», ահ‹ա այս կեանքի նկարագիրը: Հետեւաբար պէտք է լինէին ցանողներ՝ երկրագործներ ու *երկրագործութիւն:* Բնական (վայրենի) կեանքին հետեւեց դիւցազնականը. վայրի գիշատիչ կենդանիների ոյժը երբեմն հիացման առարկայ դարձած լինելով՝ այժմ այագզ դցմունքը փոխանցուեց անսովոր ֆիզիքական ոյժով օժտուած հսկաներին ու տիտաններին:

Դ. *Նահապետական դարով* բացւում է մարդկութեան պատմական կեանքի դուռը: Հրէաների տիպար նահապետական կեանքը իր պարզութեամբ ու գեղեցկութեամբ ի բնէ հմայել է ժողովուրդները, այդ կեանքին վերադառնալը սիրելի իղձ է դառել նրանց համար: Ժամանակի եւ տարածութեան հեռաւորութեան, բանաստեղծական գրաւիչ նկարագրութեանց շնորհիւ՝ նահապետական այդքան իաէդլականացրած կեանքի բնորոշ յատկանիշն է սակայն ընտանիքի անդամների *անպայման հնազանդութիւնը* մեծին՝ ընտանիքի հօրը եւ մօրը: Այս դարի գլխաւոր պարապմունքն է եղել խաշնարածութիւնը, որի հետ սերտ առնչութիւն ունեն նահապետական կեանքի պայմանները: Բայց հասաւ ժամանակ, երբ հրէական ժողովուրդի անդամները՝ ճակատագրի բերմամբ՝ արդէն Եգիպտոսում սկսեցին միմեանց ընդհանուր շահերով սերտ կապուած զգալ: Այս համայնակեցութիւնը նոր պայմաններ յառաջ բերեց եւ նոր շրջանի՝

Ե. *Դատաւորների դարի* սկիզբը դրեց: Մովսէսը այլեւս հնար չունենալով ամբողջ ժողովրդի մէջ ծագած վէճերը քննելու, դատելու՝ զանազան աստիճանի օգնական դատաւորներ նշանակեց, իրան միայն գլխաւոր գործերի դատավարութիւնը վերապահելով: Եւ ահա ‹այսպէս հիմք է դրւում *պետական կազմակերպութեանը,* որ պահանջում էր հաստատուն բնակութիւն, որ իր հետ բերեց *հողագործութիւնը:* Ազգերի պատմական

կեանքում դատաւորներին յաջորդում են դատաւորների դեր կատարող թագաւորները, որոնցից յետոյ բացւում է իսկական՝

Զ. *Թագաւորի դարաշրջանը:* Ժողովուրդը իր զարգացման այս շրջանում բարձր է լինում ոչ միայն կոյր հնազանդութիւնից, այլ եւ նա գիտակցական հնազանդութիւնից անցնում է լիակատար *ինքնագիտակցութեան* աստիճանին: Նրա համար օրէնքը ճնշում չէ, այլ ներքին ազատութեան աղբիւր: Նա խելամուտ է լինում, հասնում է այն գիտակցութեանը, որ կատարեալ ազատութիւն վայելելու համար պէտք է որ մարդս ինքն էլ մերձաւորի ազատութիւնը, իրաւունքը յարգէ: Սակայն այդ ներքին ազատութիւնը տարաբախտաբար դեռ իաէդլ է համարւում իրական կեանքի մէջ նաեւ մեր լուսաւոր օրերում. տնտեսական արդարութիւնը, որ լցնելու է հարուստի եւ աղքատի մէջ գոյութիւն ունեցող անդունդը, կարծես դեռ անիրագործելի փափաքներ պիտի մնան մեր ժամանակակից կուլտուրական աստիճանում: Թագաւորների դարաշրջանում ծաղկած արհեստին ու արուեստին յաջորդեց՝

Է. *Գործարանական կեանքը.* ազգերը *քաղաքական ազատութեան* հետամուտ եղան: Այս վերջին դարաշրջանը իր հետ բերեց տնտեսական, քաղաքական, քաղաքատնտեսական նորանոր, բազմակողմանի, բարդ պայմաններ, որոնց շնորհով պետական կազմակերպութիւնը նորանոր աւելի արագ էվոլիւցիայի ենթարկուեց: Մենք՝ այս մեծ ու խորհրդաւոր երեւոյթների վկաներս՝ պարտական ենք դեռահաս սերունդը հասցնելով ժամանակակից կուլտուրական աստիճանին՝ մտցնել այդ ձգտումների աշխարհը եւ, որքան որ հնարաւորութիւն ունենք, ուղեցոյց հանդիսանալ ապագայ կուլտուրական փրկաւէտ յոյսերին հասնելու մեծ գործում:

Քաղաքակրթութեան պատմական ընթացքը այսպէս ուրուագծելուց յետոյ, պէտք է դիտել որ, իհարկէ ոչ մի ժողովուրդ եւ ոչ մի ա գզանցած չէր կարող լինել այս դստիճանները առանց մեծամեծ քայքայման, զգալի յետադիմական յեղաշրջումների: Այս ուրուագիծը ներկայացնում է մեզ միջին իաէդլական դրութիւններ. որքան որ մի ա գզաւելի է մօտեցել այս բնական զարգացման աստիճաններին, այնքան աւելի հիմնաւոր ու բարձր կուլտուրայի է հասել:

* * *

Մի ազգ, ինչպէս օրինակ հայոցն է, որքան էլ որ կուլտուրական բուռն ձգտումներ ունեցած լինէր, իր պատմական կեանքի երկար ու ձիգ շրջաններում ահաւոր ցնցումների ենթարկուելու դատապարտուած

լինելով՝ կուլտուրական աստիճանները անսայթաք բարձրանալու հնարաւորութիւնից զուրկ պիտի եղած լինէր: Մեր ազգը՝ ի սէր կուլտուրայի՝ իր չարաբաստիկ անցեալով կարող է մարդկութեան անդամների մէջ քաղաքակրթական զգալի կորուստների, մեծամեծ անկումների ենթակայ եղած տիպար ազգ հանդիսանալ:

Մի երջանիկ օր սկսած, եւ մի անբախտ օր փոշիների մէջ թաղած մանկավարժութեան ընդարձակ ձեռնարկիս ուսուցման նիւթերի բնական հիմունքները գտնելու համար՝ սրանից տասներկու տարի առաջ դիմեցի Paedagogische Studien մանկավարժական հանդէսի միջոցով այն մեզ պէս կիսակուլտուրական ազգերի մանկավարժներին, որոնք ինձ պէս աշակերտել էին նոյն Հերբարտ-Ցիլլերեան շկոլային: Խնդրել էի լուսաբանել, եթէ նրանք երբէք գրաղուել են այն խնդրով, թէ արդեօք ի՞նչպէս պէտք է որոշուէին մեզ պէս ազգերի կուլտուրական աստիճանները, երբ նրանք պատմական անցեալում ահագին ելեւէջների են ենթարկուել. խնդրել էի պարզել, թէ ի՞նչպէս պէտք է այս կիսաքաղաքակիրթ ազգերի պատմական շրջանները առնչութեան մէջ դնել համամարդկային շրջանների հետ: Բաւական ժամանակ սպասելուց յետոյ սակայն, վերոյիշեալ հանդէսի խմբագիրը պատասխանեց, որ իմ առաջարկը ոչ մի արձագանք չգտաւ, եւ որ, քանի որ այս խնդրի սկզբնաւորութիւնը չէ արուած, նախ ես հանդէսին ուղարկեմ իմ խորհրդածութիւնները: Եւ ես հարկադրուեցի վարանմունքս յաղթահարելով՝ ձեռքիս տակ գտնուած պատմական սուղ միջոցներից օգուտ քաղելով՝ մի այդպիսի փորձ անել նախ «Մուրճի» 1895 թ. 4-1 համարներում: Որքան որ ինձ հնարաւոր եղաւ, քաշեցի մեր քաղաքակրթական պատմական կեանքի ուրուագիծը ընդհանրականին համընթաց, շատ անգամ լոկ նմանողութեան (անալոժիայի) վրայ հիմնուելով: Նոյն գրուածքով դիմեցի մեր բանասէրներին աջակցութիւն հայցելով եւ բանը տարաբաղդաբար հէնց այստեղ էլ կանգ առաւ:

Ուշագրաւ երեւոյթ է, որ այս մեծ խնդիրը չէ վրիպել հայ մանկավարժներիս[1] հայեացքից: Այս սկզբունքին գործնականապէս հետեւել են մեզանում Բահաթրեանցը, Աղայեանցն ու Մանդինեանցը իրանց ընթերցարաններով: Առաջինը ներկայացրեց հէքիաթական աշխարհը, վերջինը դիւցազնական ու նահապետական աշխարհները, իսկ

1 Թող ներեն յանդգնութեանս այն հրապարակախօսները, որոնք հայ ազգի մէջ մի «միակ մանկավարժ» տեսան: Մեծ կուրիօզ էր. գերմանական մանկավարժական հանրագիտարանը մի քանի հայ մանկավարժների անուններ էր տալիս, իսկ մերոնք այնքան խստապահանջ դուրս եկան, որ մեզ չընդունեցին: - Ծ. Յ.

Աղայեանցը իր «Ուսումն մայրենի լեզուի» ա. եւ բ. ընթերցարաններում հէքիաթների հետ խառն տալիս է դիւցազներգութեան ու նահապետական կեանքի վերաբերեալ նիւթեր: Այնուհետեւ այս տեսակէտից ուշադրութեան արժանի են Յ. Նազարեանցի «Ընտիր հատուածները». մեր հայրենիքի անցեալի ու ներկայի կուլտուրայից խառն նիւթեր, զետեղուած մի գրքում՝ աւելի հասունացած աշակերտների համար: Տէր Ղեւոնդեանցի ընթերցարանները, որ սկզբներում, եթէ կարելի է այսպէս ասել՝ միջազգային բնաւորութիւն էին կրում, հետզհետէ մօտեցան այն աղբիւրներին, որոնցից որ նիւթերը պէտք է քաղուէին: Նոյն շաւղով ընթացել է նաեւ Յ. Արաբաջեանցը: Աղայեանցը շարունակում է չորրորդ տպագրութեամբ իր «Ուսումն մայրենի լեզուի» ձեռնարկում երրորդ ու յաջորդ տարիների համար տալ զանազան արձակ ու չափածոյ ընտիր նիւթերի հետ նաեւ մեր ժողովրդի կեանքից նկարագրութիւններ, դիւցազներգութիւններ ու հէքիաթներ: Կ. Կուսիկեանցի եւ Լ. Սարգսեանցի «Մայրենի խօսքը»՝ երրորդ եւ չորրորդ տարիների համար կազմուած՝ հմտօրէն ընտրուած այդպիսի նիւթերից զատ պարունակում է իբրեւ կուլտուրայի արտայայտիչ նիւթեր մեր առաջին վերածնութեան շրջանից՝ հինգերորդա դրից՝ եւ նահապետական կեանքից վեր առած հատուածներ եւ հայրենի աշխարհից ու կեանքից նկարագրութիւններ:

Արդ՝ այս ասպարէզում գործողներիս առջեւ դրւում է հետեւեալ խնդիրը. արդեօք ժամանակը չէ՞ հասել մեր ցրուած ոյժերը կենտրոնացնելու մեր ցիր ու ցան եղած կուլտուրական նիւթերը հաւաքելու, ընտրելու, դասաւորելու, իրար հետ բնական առնչութեան մէջ դնելու, որպէսզի մեր դեռահաս սերունդը միջոց ունենար աւելի խորը թափանցելու իր ազգի պատմական անցեալի մէջ, ճանաչել եւ գիտակցօրէն գնահատել սովորէր նրա կեանքի կուլտուրական անընկճելի ձգտումները, յուսալի, խրախուսական, հատու երեւոյթները: Բանասէրների ու մանկավարժների մի ձեռնհաս ընկերակցութիւն, բաղկացած այս մեծ պահանջի կարեւորութեանը խելամուտ եւ այս մտքով ոգեւորուած մարդկանցից[1] կը կազմէր մի մանրամասն ուղեցոյց ծրագիր, աշխատանքը կը բաժանէր մասնագիտական տեսակէտներով եւ այսպիսով հնարաւորութիւն կ›ունենար մի արգասաւոր, գեղեցիկ գործ առաջացնելու: Եւ այն ժամանակ՝ այսպիսի լուրջ եւ միահամուռ աշխատութեան ընթացքում՝ երեւան կը գային

1 Անհաւանական չէ, որ արդէն գոյութիւն ունեցող ընթերցարանների յօրինողներից մի քանիսը այս առաջարկութեան համակրէին եւ միացնէին իրանց աշխատութեան արդիւնքները ընդհանուր գործին, որոշ պայմաններով:

այն նիւթերի զգալի պակասութիւնները, որոնք անհրաժեշտ էին այս կամ այն կուլտուրական պատմական դարաշրջանի արտայայտիչ պատկերը լրացնելու, ամբողջացնելու համար: Կը զգացուէր պահանջ այս կարեւոր պակասորդները անալոգիայի հիման վրայ, այլ ազգերի անցեալից վեր առած նիւթերով լրացնելու: Ինչ դրութեան մէջ էլ որ այսուհետեւ մնան այն ուսումնարանները, ուր հազարաւոր հայ մանուկներ են սովորում, մենք չենք կարող այլեւս անտես առնել կամ յետաձգել այս կարեւոր աշխատութիւնը: Ահա›, իմ համոզմունքը:

* * *

Այժմ դառնալով այս խորհրդածութեանցը առիթ ներկայացնող «Հայ հեղինակներ» ձեռնարկին՝ մեզ առաջնորդող սկզբունքները պարզելուց յետոյ՝ հիմա հեշտ կը լինի որոշել նրա նշանակութիւնն ու դիրքը արդէն գոյութիւն ունեցող ընթերցարանների շարքում եւ ուսուագծածս ծրագրի մէջ: Պ. Վանցեանի գիրքը հետեւեալ հատուածներիցն է բաղկացած. աԲ .1նաւոր գրականութիւն, 2. Գրականութիւն, 3. Վերածնուն.4 ,դ Արեւելեան բաժին, ազգԱ .5գրութիւն, 6. Պատմական, 7. Ճամբորդական եւ աԲ .8նաստեղծութիւններ: Յօրինողը յառաջաբանը այս տողերով է սկսում. «Մեր նպատակն է երկու կամ երեք ամփոփ հատորներում տալ մեր գրականութեան եւ լեզուի զարգացման պատմութիւնը, հեղինակների կենսագիրներով եւ նրանց լաւագոյն երկերից հանած նմուշներով՝ սկսած հնագոյն անցեալից մինչեւ նորագոյն ժամանակները»: Ուրեմն պ. Վանցեանը խոստանում է մեզ՝ այս եւ հետեւեալ գրքերում, ներկայացնել հայ գրականութեան ու լեզուի զարգացման պատմութիւնը: Բայց խնդիրն այն է թէ՝ նա ի՞նչ սկզբունքներով պիտի ղեկավարուի իր ծրագիրը իրագործելու համար: Եթէ գրականութեան ու լեզուի զարգացման պատմութիւն է այս, ապա ուրեմն հետեւեալ հատորներում պէտք է զետեղուած լինին գրականութեան աւելի› բարձր արտադրութիւններ, թէ› բովանդակութեան եւ թէ› ոճի տեսակէտներով: Եւ յօրինողը հետեւեալ հատորներին վերապահել է Խրիմեանի, Այվազովսկու, Սադաթեանի, Չօպանեանի, Մասեհեանի, Նար-Դոսի եւ այլոց երկերից հանուելիք նմուշները: Ալիշանից, Պէշիկթաշլեանից, Դուրեանից, Ռ. Պատկանեանից, Ծահազիզից, Ահարոնեանից... յետոյ վերոյիշեալ հեղինակները տալով՝ արդեօք պ. Վանցեանը հետեւողականութե՞ամբ վարուած կը լինէր: Այս դասաւորութիւնը ինձ համոզիչ չէ թւում: Եւ եթէ վեր առած նմուշները արեւելեան ու արեւմտեան հայաբարբառների զարգացումը ներկայացնելու

համար են, հապա ինչո՞ւ, օրինակ՝ Պարոնեանից վեր առած նմուշները իսկական բարբառով են, իսկ Ալիշանինը, Սրուանձտեանինը՝ արեւելեանի վերածուած:

Գալով այս առաջին հատորի նիւթերի դասաւորութեանը՝ «Բանաւոր գրականութիւնից»[1] յետոյ, ըստ իս՝ պէտք է դրուէին «Գրականութիւն» հատուածի տակ՝ Ա (.առաջին վերածնունդ Ե. դարում, բ.) Անկում, գ.) Նորագոյն վերածնունդ արեւմտեան եւ արեւելեան հայերիս մէջ առանձին-առանձին: Պ. Վանցեանի ստորաբաժանմունքները պարզ ու հետեւողական չեն: 5-րդ «Ազգագրութիւն», 7-րդ «Ճամբորդական» հատուածները թէեւ հետաքրքրական նիւթերից կազմուած, բայց իր սիստեմական նիւթերի հետ անմիջական առնչութիւն չունին. 6-րդ «Պատմական» հատուածը՝ հինգ ու նորից պատմական հատուածներ ու երկու պատմական տեսութիւններ է պարունակում, իսկ 8-րդ եւ վերջին հատուածը մի ժողովածու է մեր նորագոյն կովկասեան բանաստեղծներից՝ բացի Ծանթից, Չարըքից («կիսակովկասցիներից») ու մի քանի՝ օտարազգի գրականութիւնից վեր առած՝ նիւթերից:

Պ. Վանցեանի ձեռնարկի նիւթերի ընտրութեան ու դասաւորութեան վերաբերեալ զուտ գրական խնդիրները վերապահելով աւելի ձեռնհաս բանասէրների քննադատութեանը, ես իբրեւ մանկավարժ՝ այս գրքի մէջ չեմ տեսնում հայ լեզուի ու գրականութեան զարգացման պատմութիւն, այլ միջնակարգ դպրոցների չորրորդ կամ հինգերորդա դասարանների տակաւին տհաս աշակերտների մէջ դէպի ազգային գրականութիւնն եւ հեղինակները հարցասիրութիւն առաջացնող մի ուշադրութեան արժանի աշխատութիւն: Գրականութեան պատմութիւնից մենք կը սպասէինք որ նկարագրուէր հեղինակների ու նրանց երկերի զարգացման ուղին, այն դազակները հայ եւ օտար գրականութիւնից, որոնց շնորհով նրանց երկերը այս կամ այն արտայայտութիւնն են ստացել: Մենք չենք տեսնում համեմատութիւններ, բնորոշումներ եւայլն: Այս՝ իր տեսակում մեր դասագրքերի մէջ միակը՝ ապագայում աւել էլ կը գնահատուէր, եթէ իւրաքանչիւր հատուած աւելի ճոխ ու բազմակողմանի լինէր («Բանաւոր գրականութիւն» եւ «Գրականութիւն» հատուածները, ըստ իս՝ աւելի› կարօտ են կատարելագործման:) Յետոյ՝ մեր հեղինակների կենսագիրները շատ անհաւասար արժէք ունին. մէկինը բաւականին հետաքրքրական, իսկ միւսինը՝ որ պակաս արժէք չունի, չոր ու ցամաք: Այս հեղինակներին դեռ

1 Արեւելեան հացգս մէջ գործածուող «Բանաւոր գրականութիւն» կամ «Անգիր գրականութիւն» դարձուածները աւելի լաւ չէ՞ր լինի «անգիր բանահիւսութիւն»-ով փոխարինել: - Ō. Յ.

անտեղեակ աշակերտների մէջ մնայուն, տեւողական հարցասիրութիւն առաջացնելու համար պէտք էր աւելի պարզ բնորոշել իւրաքանչիւրի գործունէութեան նկարագիրը, բարձրակէտը եւ այս շրջանի արգասիքները. ինչ որ անհնարին է, երբ մի երկու նմուշներ են առաջարկւում, ինչպէս, շատ անգամ, այս ձեռնարկի մէջ:

Գիտեմ որ այս ամենը մի մարդու ոյժերից վեր է, կամ պահանջում է մի անհատից երկար ու ձիգ տարիների ծանր եւ անխոնջ աշխատութիւն: Բոլոր ասածներիցս կարծեմ ակներեւ է, որ հաւաքական ու բազմակողմանի ոյժերը՝ այս ասպարէզում, աւելի կարճ ժամանակի ընթացքում, անհամեմատ աւելի կատարեալ գործ կ›առաջացնէին[1]: Իսկ եթէ այս նիւթերը լրացնելով դասաւորէինք քաղաքակրթական պատմական աստիճաններով՝ մի՞թէ աւելի ազդու չէին լինի նրանց տպաւորութիւնները: Օրինակ՝ «Ոսկեդարի վերածնութիւն» հատուածը կազմէինք «Հայ հեղինակներ», «Գրականութիւն» հատուածից վեր առնելով «Հայոց գրերի գիւտը», «Քրիստոնէական գրականութեան սկիզբն ու բարգաւաճումը», պատմական հատուածից «Վասակի վերջին օրերը», աւելացնէինք սրանց վրայ Ռ. Պատկանեանից «Քաջ Վարդան Մամիկոնեանի մահը», «Եղիշէն» եւ այլն ու այսպէս շարունակէինք *առնչունակ նիւթերը խտացնելով ու կենտրոնացնելով որոշ խաղների, որոշ զգացմունքների աշխարհի շուրջը:*

Այստեղ վերջ եմ տալիս խօսքիս այլեւս հնարաւորութիւն չունենալով մտնել մանր գրախօսական դիտողութեանց մէջ եւ շեշտում եմ, որ պ. Վանցեանի «Հայ հեղինակները» գնահատելի եւ դասատուներին յանձնարարելի աշխատութիւն է: Թո›ղ յօրինողի այս «առաջին փորձը» փորձեն ուսումնարանները եւ տեսնեն, թէ այս գիրքը ո՞րքան հարցասիրութիւն առաջացրեց աշակերտների մէջ դէպի հայ հեղինակներն ու նրանց երկերը:

Յ. Տէր Միրաքեանց

*«Մուրճ», գրական, հասարակական եւ քաղաքական ամսագիր, 1905, ապրիլ, N 4, էջ 174-185*

*Վերջին պարբերությունը տե՛ս Գրիգոր Վանցեան, «Դպրոցական քերականութիւն» (Թիֆլիզ, ա. թ.), Գրիգոր Վանցյան, Երկերի ժողովածու, հ. 2, էջ 556*:

1 Վերջերս Թիֆլիսում այս բանի վրայ մտածողներ եղել են. մի անգամ էլ խորհրդակցել են մի քանի անձեր:

# Գ. Վանցեան. Հայոց պատմութիւն. Թիֆլիս, 1906 թ., 80 եր., գինը 40 կոպ.

Հայոց եկեղեցական-ծխական երկսեռ դպրոցների արշալոյսը ծագելուց յետոյ, այդ դպրոցներում աւանդուելիք գրեթէ բոլոր առարկաների համար նպատակայարմար դասագրքերի կարիքը ներկայումս աւելի քան զգալի է դարձել: Մեր ծխական, միդասեան եւ նոյն իսկ թեմական դպրոցներում աւանդւում են մի շարք առարկաներ, որոնց մեծ մասի համար բոլորովին դասագրքեր չունինք: Եղած դասագրքերը մեծ մասամբ վերաբերում են կրօնին, նրա զանազան ճիւղերին, Հայոց լեզուին, թուաբանութեան եւ այլն: Մեր դպրոցներում աւանդուող այն առարկաները, որոնց համար դասագրքերի կարիքը ներկայումս խիստ զգալի է, հետեւեալներն են. Հայոց պատմութիւն, բնական գիտութիւններ (մարդակազմութիւն, բուսաբանութիւն, կենդանաբանութիւն, բնախօսութիւն, ֆիզիկա եւ աստղաբաշխութիւն) եւ մաթեմատիքական գիտութիւններ (հանրահաշիւ, երկրաչափութիւն եւ այլն):

Հէնց այդ է գլխաւոր պատճառը, որ վերոյիշեալ դպրոցները բացուելուց յետոյ մեր դպրոցական ասպարիզում սկսել են երեւան գալ զանազան դասագրքեր, որոնց մի մասը, դժբախտաբար, աւելի շուտ մեր գրավաճառներին եւ հեղինակներին պէտք է օգուտ տայ, քան դպրոցներում կրթուող մատաղ սերնդին: Մեր խօսքը վերաբերում է այն դասագրքերին, որոնք նոյն իսկ *ամենատարրական* չափով չեն համապատասխանում թէ իրենց կոչման եւ թէ մանկավարժութեան ամենահամեստ պահանջներին, այլ գրուել են միմիայն փող աշխատելու համար:

Այդ օրինակ դասագրքերի գլուխ գործոցը կարելի է համարել պ. Գ. Վանցեանի Հայոց պատմութեան դասագիրքը: Ինչպէս յայտնի է, Հայոց պատմութիւնը թէ հին եւ թէ նոր (կեդրոնական ժողովի է հաստատած) ծրագրով մեր դպրոցներում անցնում են երկու անգամ: Ծխական դպրոցներում համառօտ, իսկ միջնակարգ դպրոցներում մանրամասն կերպով: Պ. Գ. Վանցեանի դասագիրքը որոշուած է ծխական դպրոցների համար: Բայց ի՞նչ է ներկայացնում նա: Փոքրադիր դիրքով 80 երեսանոց մի խղճուկ գրքոյկ՝ աշխարհագրական, տեղագրական եւ մարդկանց չոր ու ցամաք անունների մի կոյտ: Կրճատեցէք Ս. Պալասանեանի Հայոց պատմութեան հանրածանօթ ձեռնարկը բոլորովին անշնորհք կերպով 10 անգամ եւ դուք կը ստանաք պ. Գ. Վանցեանի Հայոց պատմութեան

կմախք դասագիրքը, որի գլխաւոր արժանիքը կազմում է հետեւեալ խոշոր թերութիւնների շարքը:

Այն հասարակ փաստը, որ Հայաստանի աշխարհագրական դիրքը մեծ դգաեցութիւն է ունեցել հայերի պատմական անցեալ կեանքի վրայ, հեղինակի աչքից բոլորովին խուսափել է: Պ. Վանցեանի պատմութեան չոր ու ցամաք բովանդակութիւնը ծխական դպրոցի աշակերտը գոնէ բաւարար չափով ըմբռնելու համար դասագրքի առաջին գլխում համառօտ կերպով պէտք է ծանօթանայ Հայաստանի աշխարհագրական դիրքի եւ նրա պատմական բաժանումների ու տեղերի հետ, որոնք նրդա ասագրքի գրեթէ ամեն երեսում երեւան են գալիս: Պատմական գիտութեան մէջ արդէն վաղուց ընդունուած է, որ իւրաքանչիւր երկրի կամ ազգի պատմութիւն գրողը մի համառօտ հայեացք է ձգում այդ երկրի աշխարհագրական դիրքի եւ նրա պատմական բաժանումների վրայ: Դրա մասին եւ ոչ մի խօսք կարելի է գտնել պ. Վանցեանի դասագրքում: Նրա պատմութիւնը ուղղակի սկսւում է Բաբելոնի սովորական աշտարակաշինութիւնից եւ Հայկ նահապետից:

Պ. Գ. Վանցեանը Հայոց պատմութիւնը չէ բաժանել շրջանների եւ չէ շեշտել հայերի պատմական կեանքի գլխաւոր՝ դարագլուխ կազմող երեւոյթների վրայ, մի բան, որ զգալի կերպով հեշտացնում եւ դիւրըմբռնելի է դարձնում Հայոց պատմութեան ամբողջ դասընթացքի ուսուցումը: Նրա quasi դասագրքում աշակերտը չէ կարող պատմական գլխաւոր փաստերը տարբերել երկրորդական փաստերից: Բայց ամենագլխաւոր պակասութիւնը, որ աչքի է ընկնում, դա հեղինակի խորին լռութիւնը կամ գուցէ տգիտութիւնն է նախահայերի պատմութեան վերաբերմամբ: Եւրոպայի մի քանի գիտնականների, մանաւանդ գերմանացի Կ. Լեմանի եւ Վ. Բելքի պատմական եւ հնագիտական ուսումնասիրութիւնների շնորհիւ արդէն մեզ համար բաւական պարզուել եւ լուսաբանուել է նախահայերի - ուրարտիացիների կամ խալդիացիների պատմութիւնը, որոնց մասին եւ ոչ մի խօսք չէ յիշում պ. Գ. Վանցեանը:

Այն ինչ վերոյիշեալ գիտնականների շնորհիւ մենք արդէն գիտենք, թէ մինչեւ հնդկ-ագերմանական հայերի Հայաստան գաղթելը, ո՞վքեր էին ապրում պատմական Հայաստանում, ի՞նչպիսի տէրութիւն եւ քաղաքակրթութիւն ունէին նախահայերը, որոնց քաղաքական գլխաւոր կենտրոնը Տօսպ-Վանն էր կազմում: Հեղինակը կարող էր դրանց գոնէ մի երես նուիրել իր աննախանձելի դասագրքում:

Բացի դրանից հեղինակը գրեթէ բոլորովին ուշադրութիւն չէ

դարձրել հայոց կուլտուրական պատմութեան վրայ, այլ բաւականացել է միմիայն քաղաքական պատմութեան չոր ու ցամաք փաստերը յիշելով՝ ժամանակագրական կարգով:

Հեղինակը, որ պատմութեան մասնագէտ չէ, եւ եթէ չեմ սխալւում, Հայոց դպրոցներից եւ ոչ մէկում պատմութեան դասատու չէ եղել, բնական է, որ պատմական փաստային սխալներ էլ է զետեղել իր դասագրքում, որ նոյն իսկ ոչ մասնագէտին ներելի չէ, որովհետեւ նդ արանով պղտորում է աշակերտների միտքն ու հասկացողութիւնը: Օր. նրա կարծիքով արաբները իրենց տիրապետութեան ժամանակ հայերին աշխատել են կրօնափոխ անել եւ նրանց մահմեդական դարձնել, այն ինչ այդպէս են վարուել հայերի հետ միմիայն պարսիկները, իսկ արաբները ընդհակառակը, յարգել են հայերի կրօնական եւ ազգային մի քանի արտօնութիւնները եւ աշխատել են նրանցից միմիայն նիւթական օգուտներ ստանալ: Հեղինակը, չը գիտենք ինչո՞ւ, Անահիտին համարում է Արամազդի դուստրը. այն ինչ, աւելի հաւանական է ենթադրել, որ նաև  արամդզաի կինն է եղել: Բացի դրանից տառերի գիւտը պ. Գ. Վանցեանի կարծիքով եղել է 406 թուին, այն ինչ սրանից երկու տարի առաջ՝ 1904 թուին ամբողջ հայութիւնը տօնեց հայոց տառերի գիւտի 1500 ամեակը եւ այլն:

Ինչ վերաբերում է դասագրքի լեզուին, կատարեալ ձանձրալի եւ ճապաղ է, իսկ սրբագրութիւնը կատարեալ *խայտառակութիւն:* Գրեթէ իւրաքանչիւր երեսի վրայ մի քանի տառասխալներ կան, որովհետեւ գիրքը սրբագրուած չէ:

Պ. Գ. Վանցեանի Հայոց պատմութեան դասագիրքը մի անբարեխիղճ, անպէտք եւ վնասակար ձեռնարկ է եւ չարժէ մտցնել մեր դպրոցները:

Ահա մեր եզրակացութիւնը:

Լ. Բաբայեան

*«Երկիր», Թիֆլիս, 16 նոյեմբերի 1906 թ., N 40*

# ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

«Հայ հեղինակներ». Գրիգոր Վանցեան, երկրորդ տպագրութիւն

Մեր առաջն է դրած պ. Վանցեանի այս quasi դասագրքի երկրորդ տպագրութիւնը. առաջինի մասին խօսել են իր ժամանակին «Բազմավէպը», «Հանդէս Ամսօրեան» և «Մուրճը»: Ես այն համոզման էի թէ հետագայ տպագրութիւնները լիակատար դարձնելու համար պ. Վանցեանը լուրջ ուշադրութեան կառնէ քննադատականներում շեշտուած էական թերութիւններն ու սխալները, կուղղէ նրանց և աւելի մշակուած ձևով դուրս կըբերէ. սակայն ակնկալածին բոլորովին հակառակ եղաւ: Դիմենք փաստերին և ցոյց տանք թէ ո՛րքան անճաշակ, ո՛րքան անպէտք և անհետևողական դասագիրք է դա: Դժւար է երևակայել մի այսպիսի կուսակցամոլ ախտերով մկրտուած դասագիրք, աշակերտները հնարաւորութիւն չը պէտք է ունենան որոշ գաղափար կազմելու որևէ հեղինակի մասին ճիշտ տեղեկութիւններով, որովհետև յարգելի կազմողը մէկին արել է աւար, միւսին խաւար. սիրած մարդկանց դուրս է բերել ուռցրած իսկ ատած մարդկանց՝ անգոյն, խղճալի. առաջիններից դրել է շատ հատւածներ ու ծաղրող նմուշներ, այն ինչ վերջիններից՝ շատ քիչ, աննշան - այն էլ յայտնի դիտաւորութեամբ թոյլ, անյաջող կտորներից: Շատերն էլ դուրս են շպրտւած հեղինակների շարքից: Երևի, մեր դժւարահաճ Բելինսկի-Վանցեանները չեն ուզում հեղինակ ճանաչած լինել Վ. Փափազեանին, Ատրպետին, Լ. Մանուէլեանին, Նար-Դոսին, Բ. Այվազեանին, Մոճոռեանին և այլն: Ինչքան քրքրեցի, ման եկայ, չը գտայ նրանց ոտով, գլխով դասագրքի մէջ: Շանթի ա՛յնքան բանաստեղծական խանդով և աւիւնով, ա՛յնքան անկեղծ զգացմանց զեղմունքներով գողտրիկ սէր և բնութիւն երգող «Լեռան Աղջիկը» պօէմայից ոչ մի տող. դրա փոխարէն երկու յօդւած կայ, որից աշակերտը կարծելու է թէ Շանթը - Լևոն Սեղբոսեանը միայն պրօզաիկ-արձակ գրող է, այն ինչ նա միևնոյն ժամանակ ոտանաւոր գրող է, և լիրիկական բանաստեղծ: Մեր շնորհալի վիպագրող Նար-Դոսին էլ խորին մոռացութեան և զանցառութեանն է տւել պ. Վանցեանը: Ալ. Ծատուրեանի միայն թարգմանական մի քանի ոտանաւորներ կան, ինքնուրոյններից ոչ մի նմուշ. այս վարմունքը ինձ աւելի է զարմացնում. դուրս է գալիս, որ Վանցեանի կարծիքով պէտք է ճանաչել Ծատուրեանին միայն ոտանաւոր-թարգմանիչ. այն ինչ նա շնորհալի բանաստեղծ է: Կարդացէք

նրա 2 հատոր բանաստեղծութիւնները և «Գրչի հանաքներ»-ը, կարդացէք նոյն բանաստեղծի մասին պ. Լէօի «Ռուսահայոց գրականութիւնը մինչև մեր օրերը» և իմ «Ռուսահայոց նորագոյն բանաստեղծական դէմքեր» («Գեղունի», 1902, ապրիլ) քննադատականներում և դուք կըգաք այն համոզման, որ նորագոյն ինքնուրոյն բանաստեղծների շարքում առաջնակարգ տեղերից մէկը բռնում է Ծատուրեանը: Բաղդաւոր է դուրս եկել բանաստեղծների մէջ այդ դասագրքի էջերում միայն Յովհ. Թումանեանը, որ Վանցեանի անբաժան ընկերը, մտերիմը, բարեկամն է: Եւ դժւար չէ կարծեմ լուծել այս հանելուկը, թէ ինչո՞ւ անհամեմատ նրանից շատ կտորներ է առաջ բերած, իսկ Յար. Թումանեանից միայն մէկը[1*]: Եթէ նկատի ունենանք այն տխուր հանգամանքը, որ մեր անտէր ու անտիրական գրականութեան խաւերում աւելի դեր կատարողը և բան տեսնողը սրանք են՝ պրօտեկցիան, թայֆայութիւնը, խաթրապահութիւնը և երեսպաշտութիւնը, քան իսկական քննադատութիւնը, անկողմնապահ կարծիքը և գնահատութիւնն ըստ արժանւոյն: Կազմի վերայ հեղինակների անւան ցանկում, յիշւած է Թումանեան, ինչպէս իմանալ ո՞ր Թումանեան, Յարութիւն, Արշակ (Կայծունի), թէ՞ Յովհաննէս, երեքն էլ Թումանեան են, չըշփոթելու համար հարկաւոր է որ դրւէին լիակատար անունները: «Մշակում» առաջին անգամ իր մասին այդ պահանջը դրեց դափնիները հանգիստ չտւող մեր մեծամիտ Յով. Թումանեանը, բայց հիմա լռել է Վանցեանի նոյն վարմունքի դէմ...

Նիւթերի դասաւորութիւնը կատարւած է շատ անփոյթ և անխնամ կերպով, աւելորդ նիւթեր որքան կուզէք, տպագրական և տարեգրական սխալներով լի, որ երբէք թոյլատրելի չէ դասագրքերի մէջ:

Դասագրքերի միակողմանիութիւնը իսկոյն աչքի է զարնում և նորանով, որ ինքը պ. Վանցեանը լինելով ռուսահայ, աւելի տեղ է տւել ռուսահայ գրողներին, իսկ տաճկահայերին մոռացութեան է տւել, բացի չորսից:

Երևում է, դասագիրքը շտապով է կազմւած: Կենսագրականները

1* Առաջին տպագրութեան մէջ երկուսն է եղել, նրանցից մէկը երկրորդում դուրս է ձգել Վանցեանը, ինչո՞ւ: Այժմ հարց, աշակերտը մի հատիկ ոտանաւորով ի՞նչպէս ճանաչէ այդ սիրոյ երգիչ և դիւցազներգու բանաստեղծին: Նա ունի ամբողջական պօէմներ՝ «Դալի Մահրասա», «Մէլիք-Իւսուփ», «Մելիք Բէկլար», «Մուսա» (2 հատոր), ունի Ֆիէրիաներ «Հազարան բլբուլ» և «Արտաւազդ», ունի «Նւագներ» և բանաստեղծութիւններ, այսքան առատ նիւթերից ջոկել միայն մի հատ ոտանաւոր, ի՞նչ է նշանակում և ինչով բացատրել այս: Լաւ կը լինէր, եթէ այդ ոտանաւորն էլ սկի չերևար դասագրքում, այլ դասագիրքը կատարեալ դարձնելու համար՝ նրա տեղ էլի իր բարեկամ Յովհ. Թումանեանի ոտանաւորներից դնէր, որ աջ ու ձախ փռւած են Վանցեանի առաջ այնքան դիւրահաճ հիւրընկալութեամբ...:

քաշքշուկ, խղճալի բաներ են, համառօտ, էական լինելուց այնքան հեռու, որքան երկինքը երկրից, և այնքան անփորձ, որ թւում է աշակերտների ձեռքով կազմւած լինէին նրանք: Մի հեղինակի կենսագրականը կայ, միւսինը՝ ոչ: Չգիտեմ և ի՞նչ հարկ կայ նրանց մեկի տակ դնել ստորագրութիւնը, իսկ միւսի տակ ընդհակառակ, քանի որ գրքի ճակատին արդէն տպւած է «Կազմեց Գրիգոր Վանցեան», պարզ է ուրեմն, որ ստորագրութիւն չըկրող յօդւածների գրողը կամ հեղինակը դասագրքի կազմողն է լինելու և ոչ ուրիշը: Թողնենք այս, անցնենք գլխաւոր կէտերին:

Յառաջաբանում պ. Վանցեանը խոստանում է տալ «լեզւի զարգացման պատմութիւնը սկսած հնագոյն անցեալից մինչև նորագոյն ժամանակները»: Հէնց առաջին քայլից իսկ նա դաւաճանում է իր խոստմանը, սկսելով Աբովեանից, որը ինչպէս յայտնի է, ծնւել է 1805 և վախճանւել է 1848 թւին: Մի՞թէ այս թւերն են կազմում սկիզբը «լեզւի զարգացման պատմութեան հնագոյն անցեալի»: Ո՞ւր է այստեղ ժամանակագրական կարգը, սիստեմի վերածումը, հետևողական լինելը: Մովսէս Խորենացուն, Փաւստոս Բիւզանդացուն, Մխիթար Սեբաստացուն, նրանց ժամանակակից ու նախորդ մատենագիրներին պ. Վանցեանը տեղ է տւել Աբովեանից շատ յետոյ:

Մի խօսքով դասագիրքն ամբողջապէս քաօս է ներկայացնում:

«Անհնարին է, ասում է պ. Վանցեանը, այս դասագրքում աշակերտների ձեռը տալ բնագիրը զանազան բարբառներով գրւած՝ առանց թարգմանութեան կամ փոխադրութեան»: Դրան ի պատասխան՝ «Նոր-Դարի» N 35-ում պ. Յարութիւն Թումանեանը նկատում է, որ Աբովեանի լեզուն և ոճը փոփոխելու կարիք չը կայ. այլ պէտք է դրա փոխարէն տալ փոքրիկ ծանօթութիւններ և բացատրել դժւար հասկանալի բառերը, ինչպէս այդ արել է Մարտինովսկին իր «ՀցրրՍւպ տՌրՌՑ.»ի մէջ: Ես իրաւացի եմ համարում այդ նկատողութիւնը, որովհետև Աբովեանի լեզուն, ոճը, որ մեր ժողովրդի հարազատ զգացմունքների և ճոխացած բառամթերքների մի գեղեցիկ ծով շտեմարան-աշխարհ է ներկայացնում, վերածել գրականի՝ միտք չունի, և դա ասում եմ նրա համար, որ այն համը, այն հոտը, այն շունչ ու ոգին չի ունենայ, ինչ որ իսկական բնագիրն է Քանաքեռի Արարատեան բարբառում: Միթէ աշակերտներին չը պէտք է աշխարհիկ լեզւի քնքուշիկ նրբութիւնների հետ միասին ժողովրդական գաւառաբարբառներին ծանօթացնել, չէ՞ որ ժողովուրդն է լեզւի ստեղծիչը դարերի ընթացքում. լեզուն լաւ ուսումնասիրելու համար պէտք է ժողովրդին դիմել և նրա հանճարի մօտ գնալ աշակերտելու: «Տունը հիմքով է տուն,

ծառը արմատով է ծառ», ասում է Ղևոնդ Ալիշանը: Այո, լեզուի հիմքն էլ, հիմնաքարն էլ, արմատն էլ կազմում է ժողովուրդը, կարելի՞ է ծաղրել, կարելի՞ է արհամարհել, կարելի՞ է քմահաճույքի առարկայ շինել և փոփոխել այդ ժողովրդի բարբառը - Աբովեանի լեզուն: Կարծեմ առաջին փորձ անողը եղաւ Արշակ Չօպանեանը իր «Անահիտ» ամսագրում: Նա Աբովեանի «Ջանգին» վերածեց տաճկահայկական բարբառի: Նրանից վարակւեց «Ծաղիկ» շաբաթաթերթը: Նա էլ փոխադրութիւններ արաւ Ա. Ահարոնեանի և Ալ. Ծատուրեանի գրուածքներից: Փորձ անողներից առաջինը՝ «Մշակից», երկրորդը «Մուրճից» յանդիմանւելով, շուտով գիտակցեցին և զգացին իրանց սխալը ու յետ քաշւեցին այդ անմիտ վնասակար փորձից: Գանք մի րոպէ իր ասածին, համաձայնւելով, որ չի կարելի աշակերտների ձեռը տալ Աբովեանի լեզուն առանց փոխադրութեան, հապա ինչո՞ւ իր սկզբունքին և սովորութեան հաւատարիմ չի գտնւել այլ գրողների և այլ բարբառների վերաբերութեամբ: Օրինակ՝ ինչո՞ւ նոյն փոփոխութեան չի ենթարկել և Գ. Սունդուկեանի «Պէպօն», որ Թիֆլիզի բարբառով է գրուած և համեմուած օտար բառերով: Եթէ Վանցեանին նայենք, դասագրքում մտցրած չորս տաճկահայ գրողների լեզուն էլ, ոճն էլ, ըստ իր վարմունքի, լոգիկայի և հետևողականութեան, պէտք է մեր բարբառի վերածել, չէ՞ որ ռուսահայ դպրոցական աշակերտները դժւարութեամբ են ըմբռնելու այն: Թէ սա ի՞նչ տարօրինակ, հակասական վարմունք է, թողնում ենք միայն հնարագէտ պ. Վանցեանին հասկանալու: Բայց լսեցէք մի այլ կուրիօզ, աւելի մազալու, որ գալիս է աւելի տարօրինակ հակասականութեան չափն աւելի լրացնելու: Կարդացէք «Նոր-Դարի» N 43-ում պ. Վ. Խանամիրեանի հետևեալ խորհուրդաւոր նամակը: «Նոր-Դարի» N 35-ում կարդացի պ. Յարութիւն Թումանեանի քննադատութիւնը պ. Վանցեանի «Հայ հեղինակներ» գրքի մասին: Գիտենալով որ պ. Վանցեանը փոփոխութիւն մտցնող չէ՝ (այդ գիտն ի՞նչպէս արիք) Աբովեանի գրուածքների վերաբերմամբ՝ շատ հաւանական է, որ ես եմ սխալները թողել, որովհետև ես եմ արտագրողը եղել»: Զառանցո՞ւմ էք, ի՞նչ է, պարոն պաշտպան արտագրող (գուցէ գրաշար), եթէ պ. Վանցեանը Աբովեանի գրուածքների վերաբերմամբ փոփոխութիւն մտցնող չէ, ապա ի՞նչն էր ստիպում նրան դուրս գալ «Նոր-Դարի» քննադատի դէմ անհիմն գոռոզութեամբ ու մեծամտութեամբ իր գրած անփաստ և անտեղի պատասխանով[1], որի մէջ, ինչպէս և գրքի յառաջաբանում, պնդեց նորից, որ ինքն է դիտմամբ փոփոխութեան

1 Տե՛ս «Նոր-Դարի» N 41: Նոյն լրագրի N 46-ում պատասխանի պատասխանը գրեց Յար. Թումանեանը աւելի համոզացուցիչ փաստերով, որին և մնաց յաղթական վերջին խօսքը:

ենթարկել Աբովեանի լեզուն: Երևում է դասագրքի սխալները պ. Յար. Թումանեանի բռնելուց յետոյ Վանցեանը զգացել է պաշտպանութեան կարիքը, ապա թէ ոչ՝ ինչը դրդեց և ձեզ պ. անկոչ պաշտպան հանդէս գալ, և այդ տեսակ արջի ծառայութիւն մատուցանել: Ընթերցողին ի՛նչ փոյթն է, թէ ո՛վ է եղել արտագրողը կամ սրբագրողը, պատասխանատուն միայն ինքը կազմողն է: Երբ Վանցեանը ուզում է իմանալ թէ որքան իրաւունք ունի Աբովեանի լեզուն շտկելու, թող հարցնէ նոյն իսկ իր բարեկամ Յով. Թումանեանին, որը «Մշակում» ահագին վիճաբանութեան մէջ մտաւ Ն. Տէր-Ղևոնդեանի հետ, երբ վերջինս թոյլ էր տուել իր «մայրենի լեզու»ի դասագրքում նրա «Շուն և կատու» Լօռւայ բարբառով գրած ոտանաւորը փոփոխելու: Թումանեանը սաստիկ բողոքեց և պատուիրեց իր գրուածքների հետ այլ ևս այդպէս չը վարուեն: Այդ հիման վրայ եթէ Աբովեանը վերակենդանացած լինէր գերեզմանից և իր աչքով տեսնէր թէ ինչպէս են իր գրուածքները աղաւաղում, որքան նախատինք կը թափէր պ. Վանցեանի գլխին: Մենք խորհուրդ կը տայինք Վանցեանին միշտ սրբութեամբ ու զգուշաւորութեամբ մօտենալ Աբովեանի պէս պատկառելի գրողների գրուածքներին և նրանց լեզւին:

Անցնենք այժմ «Հայ հեղինակների» բանաւոր գրականութեան բաժնին: Այդ բաժինն էլ շատ թերի է և ծաղաղ: Այդտեղ էլ դաւաճանութիւն կայ: Ահա թէ ինչպէս. թոյլ տանք «Նոր-Դարի» քննադատին խօսելու. «կամենալով ծանօթացնել «Սասունցի Դաւիթ» ժողովրդական վէպի հետ, պ. Վանցեանը տալիս է նրա փոխադրութեան միմիայն մի մասը, այն էլ անյաջող փոխադրութեամբ, իսկ այդ վէպի լիակատար և աւելի յաջող փոխադրութիւնը, որ գրել է պ. Բալասանեանը, անյայտ է մնացել պ. Վանցեանին: Ինչ վերաբերում է միւս նմուշներին, պէտք է նկատենք, որ պ. Վանցեանը չը գիտէ լաւ ընտրութիւն անել» (N 46): Պ. Վանցեանը, բողոքելով այս տողերի դէմ, իր պատասխանի մէջ աշխատում է իր հաւանած Յով. Թումանեանի «Սասունցի Դաւթի» արժանիքը մի կերպ բարձրացնել: Պարոնը «հազիւ մի երկտող չոր ու ցամաք ու ոչ մի բան չը ներկայացնող» ծանուցման մէջ առանց ապացոյցի, առաձգական խօսքով պ. Յովի. Թումանեանի պօէմը «հրաշալի» է համարել և միևնոյն ժամանակ մոռացութեան է տուել Մ. Աբեղեանին, Գարեգին սարկաւագին, Ա. Աբեղեանին, Բ. Խալաթեանին, Ս. Հայկունուն, Ս. Մանդինեանին, Յ. Ճաղարբէկեանին, Ն. Տէր-Ղևոնդեանին, Լ. Մանուէլեանին, և նրանց գրած Սասմայ փահլիւանների պատմութեան բոլոր վարիանտները: Հետաքրքիր է կարդալ պ. Վանցեանի հաւանած «Սասունցի Դաւիթ» գրուածքի մասին

աւելի հեղինակաւոր մարդկանց յայտնած կարծիքները:

Յայտնի մանկավարժ Սեդրակ Մանդինեանը 1904 թ. «Տարազ» N 7-ում գրում է. «վերջապէս նա (իմա՛ Յովհ. Թում.) փորձեց իր արուեստի տակ դնել ժողովրդական ամենագեղեցիկ և անմշակ հանքը՝ «Սասունցի Դաւիթ»… Բայց շատ անյաջող կերպով… ճշմարիտ է, որ «Սասունցի Դաւթի» խոշոր խոշոր թերութիւնները զարմանք են պատճառում: Ահա զորօր. մի կռւի նկարագրութիւնը, որ անհաւատալի է թւում, թէ Յով. Թումանեանի գրչի արտադրութիւն է: Կարծես թէ խցի մէջ նստած մի աբեղայ չոր ու ցամաք տարեգրութիւններ է արձանագրում: Ո՞չ ապաքէն պէտք է ենթադրել, թէ բանաստեղծի երևակայութիւնը շատ աղքատ է եղել, որ չէ կարողացել կենդանացնել բուն եղելութիւնը բանաստեղծական ազատութեամբ, այլ շատացել է աբեղայի սուղ բառերը տաղտկալի կերպով կրկնելու: Մեր կարծիքով անյաջողութիւնը ծագել է նախ՝ ստեղծագործութեան համար անյարմար տրամադրութիւնից, տարաժամութիւնից… Մի՞թէ հարկաւոր է ծածկել, նրան պակասում են ոչ թէ երևակայութիւնը, ոչ թէ բանաստեղծական աշխուժի թարմութիւնը, այլ լաւ դպրութիւնը, ճաշակի զարգացումը: Այդ թերութեամբ պէտք է բացատրի, որ նա շատ անգամ չի կարողանում ոսկի շրջանով ճարտարել իր անթրաշ ալմաստների համար և այլն…:

Ահա՛ և Լէօի կարծիքը նոյն պօէմի մասին 1904 «Մշակ» N 1-ում… «Նոր բան չի յաջողում պ. Յովհ. Թումանեանին: Նոյն իսկ ժողովրդական աւանդութիւններից մի բան ստեղծելու վաղեմի ընդունակութիւնը այժմ դաւաճանել է նրան: Ապացոյց է «Սասունցի Դաւիթը», որի մէջ պ. Թումանեանը ստեղծագործական ինքնուրոյնութեան նշոյլ անգամ չի ցոյց տուել: Նա միայն տնատողի դեր է կատարել, արձակը ոտանաւորով պատմող է, որ չի ըմբռնում ժողովրդական հիւսածքի ներքին միտքը, բովանդակութիւնը: «Սասունցի Դաւթի» բազմաթիւ վարիանտների մէջ ընտրութիւն անել չի կարողացել պ. Թումանեանը, և այդ պատճառով այս պօէմի մէջ կան արտաքին հանգամանքների, դէպքերի կոյտեր, բայց վայրիվերոյ, քաօսական, առանց ներքին կապի և ընդհանուր, ղեկավարող մտքի: Աւելացնենք և այն, որ պօէմը չի վերջացած: Չըգտնելով այդտեղ հեղինակական ոչ մի ինքնուրոյնութիւն, մենք այդ պօէմը, որ բռնում է 40 երես, չենք դնում պ. Թումանեանի ինքնուրոյն գործերի շարքում և այլն և այլն…»[1]: Ուրեմն խոստովանեցէք, պ. Վանցեան, որ ինչքան ցանկալի, նոյնքան էլ անկարելի և անհնարին է աշակերտներին յանձնարարել ոչ

1 Տե՛ս նաև աննպաստ կարծիքներ «Գեղունում» (Լէօ) և «Բազմավէպում» (Պոտուրեան):

թէ Աբովեանի չնաշխարհիկ, մեղրածորան լեզուն և ոճը, այլ «անյաջող խոշոր խոշոր թերութիւններով զարմանք պատճառող» (Կ. Մանդինեան) և «հեղինակական ոչ մի ինքնուրոյնութիւն չունեցող, չը վերջացած» (Լէօ) այդ պօէմը, որի մէջ բացակայում են Դաւթի կեանքի գլխաւոր արկածները, նրա մանկութիւնը Մուսուլ աշխարհում, այնտեղից վերադարձը Սասուն, հետաքրքիր կռիւները և արած քաջագործութիւնները զանազան անւանի հերոսների դէմ, Խանդուդ Խաթէնի սէրը, Դաւթի մահը և այլն: Աշակերտները ի՞նչպէս կարող են գաղափար կազմել թէ իսկապէս ի՞նչ տիպ, ի՞նչ ոյժ է ներկայացնում Դաւիթը, ով է եղել նրա նախնիքը, ինչ հունարի տէր է եղել նրա հայր Առիւծաձև Միհերը և ինչո՞ւ է նա Առիւծաձև կոչւում, ի՞նչպէս են նրա պապ Սանասարը և վերջինիս եղբայր Ասլի Մէլիքը Սասունի հիմնադիրներ հանդիսացել և այլն և այլն[1]:

Գրիգոր ԲԱԼԱՍԱՆԵԱՆ

Գ. Բ.

*«Յոյս», պատկերազարդ շաբաթաթերթ, 1906, N 14 և N 16*

## Գ. Վանցեան. Գրպանի ուղղագրութիւն: Հրատարակութիւն Ս. Ս.-ի. Թիֆլիս, տպարան Մ. Վարդանեանցի. 1906. գինն է 5 կօպ.

Այս փոքրիկ, 25 փոքրադիր երեսներից կազմուած գրքոյկով պ. Գ. Վանցեանը մի շատ սրամիտ միջոց է գտել մեր անգրագէտ գրականագէտներին փոքր ի շատէ ուղիղ հայերէն գրելու դիւրութիւններ տալու: Ո՞վ չը գիտէ, որ մեր գրականագէտներից, նամանաւանդ պարբերական մամուլի մէջ գրողներից մեծ մասը հայերէն գրելու մէջ սաստիկ բոբիկ է եւ մեր սրբագրիչներն ու խմբագիրները ուղղակի տաժանակիր աշխատանքի են դատապարտուած: Նրանք ստիպուած են ոչ միայն գրաշարների սխալ շարուածքները ուղղելու, այլ եւ բնագրի անչափ սխալները եւ նոյն իսկ գրուածքի ոճը:

1 Այդ բոլոր հերոսների կեանքի արտայայտութիւնները ես հրատարակած ունիմ առանձին առանձին գրքոյկներով, այն է՝ Ռոստոմ և Սալման, Առիւծաձև Միհր, Երկու պահլաւան, Ասլի Մելիք և Սանասար, արտատպած «Լումայից». Սասունցի Դաւիթ (երկու հատոր) և պստիկ Միհր:

Շնորհիւ այն պարզ հանգամանքի, որ պետական միջնակարգ ուսումնարաններից մեր մայրենի լեզուն կամ բոլորովին դուրս էր վանուած եւ կամ աւանդւում էր միմիայն անուանական կերպով. մեր ինտելիգենցիայի մեծագոյն մասը, որ նախ այդ ուսումնարանները եւ ապա համալսարաններ է աւարտում, երկար տարիների ընթացքում համարեա թէ բոլորովին հայ գրականութեամբ չէր զբաղվում ու նրա մէջ չէր մասնակցում, վախենալով ծաղրի առարկայ դառնալ՝ հայերէնի մէջ իր բոբիկութիւնը ցոյց տալով: Ճիշտ այդ պատճառով մեր գրականութիւնը ամբողջապէս, շատ չնչին բացառութեամբ, մեր թեմական դպրոցներում եւ ճեմարաններում (Լազարեան եւ Գէորգեան) աւարտածների բաժինն էր դառել: Դրանք էին գլխաւորաբար մեր հայագէտները եւ դրանք միայն համարձակութիւն ունէին հայ գրականութեամբ զբաղուելու եւ մայրենի լեզուով սերունդներ կրթելու:

Ես կարծում եմ, բոլորովին սխալված չենք լինի, եթէ ասենք, որ հէնց այդ հանգամանքի շնորհիւ էր եւ է, որ մեր գրականութիւնը մի ընդհանուր տիրացուական եւ տափակութեան կնիք է կրում եւ նրանից չափազանց խիստ շօվինիզմ է բուրում:

Թէեւ մեր այդ գրականագէտների մէջ բարձրագոյն կրթութեան տէր մարդիկ էլ կային, բայց դրանք էլ, դարձեալ իրանց միջնակարգ կրթութիւնը թեմական դպրոցներում եւ ճեմարաններում ստացած լինելով, այնչափ շաղախուած էին լինում տիրացուական ու թթու ազգասիրական ոգով, որ համալսարանը նրանց վրայ ոչ մի բարերար ազդեցութիւն չէր կարողանում ունենալ: Այդ մարդիկը բարձրագոյն ուսումնարան էին գնում ոչ թէ իրանց մտաւոր հորիզոնը ընդլայնելու եւ մտածողութեան նոր ձեւեր ու եղանակներ սովորելու համար, այլ ընդհակառակը, նրանք Ռուսաստանի եւ արտասահմանեան համալսարաններում գիտական յատուկ զէնքեր էին որոնում իրանց միջնադարեան ու փտած գաղափարները աւելի լաւ կերպով պաշտպանելու համար: Եւ այդ էր պատճառը, որ հանգուցեալ Գ. Արծրունին շատ իրաւամբ ասում էր, որ մեր ուսանողները Գերմանիայում աւելի թունդ պահպանողականներ եւ Բիսմարկի կողմնակիցներ են դառնում, քան իրանք գերմանական պահպանողականները եւ քան հէնց ինքը Բիսմարկը:

Սակայն ժամանակները հետզհետէ փոխուեցին. մեր ազգային վերածնութեան հոսանքը մի կողմից եւ կառավարութեան փոքր ազգերին կլանելու, ռուսացնելու բացարձակ քաղաքականութիւնը միւս կողմից այն ազդեցութիւնը ունեցան, որ պետական դպրոցներում աւարտած մեր

երիտասարդութիւնն էլ սկսեց ինքնուրոյն կերպով իր մայրենի լեզուով պարապել, մեր գրականութեամբ հետաքրքրուել եւ նոյն իսկ նրա մէջ մասնակցութիւն ցոյց տալ: Այժմ այս վերջինների թիւը բաւականին մեծ % է կազմում եւ նրանց բարերար ազդեցութիւնը մեր գրականութեան վրայ բաւականին զգալի է:

Սակայն, չը պէտք է ուրանալ, որ այդ կարգի, մեծ մասամբ համալսարանական նստարանների վրայ եղած ժամանակ մայրենի լեզուն սովորած գրականագէտները, ինչպէս վերեւում ասացինք, միշտ շատ տկար են լինում հայերէնի ուղղագրութեան մէջ եւ յաճախ բառարանների օգնութեամբ են կատարում իրանց գրական աշխատութիւնները: Եւ հէնց այդ կարգի գրողներին պ. Վանցեանի «Գրպանի ուղղագրութիւնը» բաւական մեծ ծառայութիւն կարող է մատուցանել ու դիւրութիւն տալ փոքր ի շատէ անսխալ գրելու:

«Գրպանի ուղղագրութիւնը» քերականական կանոններ չէ պարունակում իր մէջ, այլ նա մի փոքրիկ բառգիրք է, որի մէջ ամփոփուած են այն բոլոր արմատական բառերը, որոնց ուղղագրութիւնը ամենից շատ դժուարութիւններ է ներկայացնում մեր գրողների համար:

«Հայերէնի սխալները,- շատ իրաւամբ ասում է պ. Վանցեանը,- առաջ են գալիս գլխաւորապէս է եւ ե, ո եւ օ, յ եւ հ, վ եւ ւ տառերի մէջ: Ներկայ գրքոյկը պարունակում է գրեթէ բոլոր արմատական բառերը, որոնք պահանջում են է, օ, կամ յ: Այն բառը, որ այստեղ չը կայ, կը նշանակէ այս տառերով գրելը սխալ է»:

Եւ այդ բառերը շատ հեշտութեամբ գտնւում են պ. Վանցեանի գրքոյկի մէջ: Իսկ գրողը, մի քանի անգամ միեւնոյն բառը փնտռելուց ու գրելուց յետոյ, շատ աւելի շուտ կարող է նրա ուղղագրութեան հետ ընտելանալ, քան եթէ նա վերցնի եւ երկար ու ձիգ քերականական կանոնները անգիր սովորի: Նաեւ ի նկատի ունենալով այն հանգամանքը, որ տարիքաւոր մարդիկ համարեա թէ երբէք յանձն չեն առնում քերականական կանոններ սովորելու վրայ ժամանակ կորցնել, ուստի պէտք է ենթադրել, որ պ. Վանցեանի «Ուղղագրութիւն» գրքոյկը մեծ յաջողութիւն պիտի գտնի:

Խ.

*«Մշակ», 1906, N 193*

*Փոքրիկ հատվածներ տե՛ս Գրիգոր Վանցեան, «Դպրոցական քերականութիւն» (Թիֆլիզ, ա. թ.), Գրիգոր Վանցյան, Երկերի ժողովածու, հ. 2, էջ 558*:

## Գր. Վանցեան՝ Պատմական քերականութիւն արեւելեան հայոց լեզուի, Թիֆլիս, 1906, գ. 75 կ.

Մեր այն ուսուցիչները, որոնք ուզում են հայոց քերականութիւն աւանդելիս ունենալ պատմական-փիլիսոփայական որոշ նախապատրաստութիւն մեր նոր լեզուի մասին, մեծ օգուտ կը ստանան պ. Գր. Վանցեանի այս աշխատութիւնից, որի մասնագիտական քննադատութիւնը մեր նպատակներից դուրս է: Մենք միայն յանձնարարում ենք մեր ուսուցիչների ուշադրութեան այդ գիրքը, որի մէջ ի մի են ամփոփուած շատ նիւթեր արեւելահայ լեզուի մասին, եւ որոշ սիստեմի են վերածուած: Այս գրքոյկը կարող է լրացնել անցեալ համարում մատնանիշ արած պ. Մ. Աբեղեանի քերականութիւնը:

N.

*«Մուրճ», 1906, N 9*

*Գրիգոր Վանցեան, «Դպրոցական քերականութիւն» (Թիֆլիզ, ա. թ.), Գրիգոր Վանցյան, Երկերի ժողովածու, հ. 2, էջ 557:*

*Գրիգոր Վանցեան,«Գրպանի ուղղագրութիւն», Բ. տպագրութիւն, (Թիֆլիզ, ա. թ.), Գրիգոր Վանցյան, Երկերի ժողովածու, հ. 2, էջ 558:*

## ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

«Հայ հեղինակներ» Գ. Վանցեանի, երկրորդ տպագրութիւն, Թիֆլիս, 1906 թ.

Պ. Վանցեանի նպատակն է, ինչպէս ինքը յայտնում է գրքի առաջին տպագրութեան յառաջաբանում, «տալ մեր լեզուի զարգացման պատմութիւնը, հեղինակների կենսագիրներով և նրանց լաւագոյն երկերից հանած նմուշներով՝ սկսած հնագոյն անցեալից մինչև նորագոյն ժամանակները»: Երկրորդ տպագրութեան յառաջաբանումն էլ պարոնը յայտնում է, որ այդ գրքում պահում է մի անգամ արդէն բռնած ուղղութիւնն ու ընթացքը: Առաջին տպագրութիւնը կովկասեան ուսումնական շրջանի հոգաբարձական խորհրդի կողմից թոյլատրուած է

գործ ածելու դպրոցներում, ուր վաղուց զգացւում է հայոց գրականութեան ձեռնարկի պակասը: Իսկ երկրորդ տպագրութեան գործածութիւնը դեռ ևս պաշտօնապէս թոյլատրուած չէ: Գրքի առաջին տպագրութիւնը, չնայելով իւր մի քանի թերութիւններին, կարող էր ծառայել յօրինողի նախագծած նպատակին: Իսկ նոր հրատարակութիւնը, որ պիտի աւելի կատարելագործուած լինէր, ընդհակառակը հարստացել է նոր թերութիւններով:

Նախ նկատենք, որ պ. Վանցեանը, հակառակ իւր խոստումին, մի կողմ է թողնում «մեր լեզուի զարգացման պատմութիւնն ու հնագոյն անցեալը» և սկսում է իւր գիրքն ուղղակի Աբովեանով, որին յաջորդում են մեր նոր ու նորագոյն գրողները: Ապա գալիս են պատմական, ճամբորդական և ազգագրական բաժինները, իսկ այդ բոլորից յետոյ է յօրինողը ծանօթացնում մեզ մեր բանաւոր գրականութեան հետ, սկսած Գողթան մեր հին երգերից: Գրականութիւն սովորելու համար սովորաբար սկսում են բանաւոր գրականութիւնից և ժամանակագրական կարգով անցնում են գրաւորին: Իսկ պ. Վանցեանը որ ուզում էր «հնագոյն անցեալից սկսել» և հասնել «մինչև նորագոյն ժամանակները», ընդհակառակն է արել:

Բացի դրանից, պ. Վանցեանը ոչ միայն չի տալիս մեր լեզուի զարգացման պատմութիւնը, այլ և փոփոխութեան է ենթարկել Խ. Աբովեանի լեզուն: Մի՞թէ կարելի է փոփոխել այն լեզուն, որն իբրև հիմք մեր աշխարհաբար գրականութեան, կարևոր նշանակութիւն ունի և առանձին հետաքրքրութիւն է ներկայացնում ամեն մի հայ գրականութիւն սովորողի համար: Աբովեանի լեզւում օժանդակ բայի 3 դէմքի ա-ն փոխել է է-ի, իսկ «խիստ անհասկանալի թուրքերէն» բառերը փոխարինել է հայերէն բառերով: Վերցնենք մի նմուշ. 9 երեսում հլայ բառը նա շինել է դեռ, ենթադրելով որ հլայ-ն «խիստ անհասկանալի» թուրքերէն բառ է: Ո՞ր հային ասես հլա կամ հալա, որ չհասկանայ: Եթէ «աշակերտների դիւրութեան և նիւթի հեշտ իւրացման» համար է մտածել պ. Վանցեանը, այն ժամանակ ինչո՞ւ նա չի փոխարինել հայերէնով փանջարա, թօփխանա, թամարզլու և այլ սրանց նման բառերը, որոնք աւելի «խիստ անհասկանալի» են, քան թէ հլայ-ն: Մի կողմը թողած այն, որ պ. Վանցեանն իրաւունք չունէր փոփոխելու Աբովեանի լեզուն, բառերը փոփոխելիս՝ նա չի զանազանել հասկանալին անհասկանալիից, ինչպէս տեսանք այդ վերև: Բացի դրանից պ. Վանցեանը մինչև անգամ կրճատել ու խեղաթիւրել է Աբովեանի նախադասութիւնները: Օրինակ, Աբովեանը գրում է.

«Թող ինձ այսուհետև տգէտ կոչեն. լեզուս բաց ա էլել, իմ ընտիր, ազիզ, իմ սրտի սիրեկան ազգ: Թող տրամաբանութիւն գիտեցողը իրան համքեարի համար գրի, ես, քո կորած, շվարած որդին քեզ համար»:

Այս կտորը պ. Վանցեանն այսպէս է փոխել.

«Հայե՛ր, թո՛ղ ինձ այսուհետև տգէտ կանչեն... Թո՛ղ տրամաբանութիւն գիտեցողը իրան համքեարի համար գրի, ես՝ ձեզ համար»:

Ինչպէս տեսնում ենք, Աբովեանի գրածից պ. Վանցեանը դէն է գցել վերևի ընդգծած բառերը և աւելացրել է հայեր բառը, որ չգիտենք՝ թէ որտեղից դուրս պրծաւ: Այդ բառի խաթրու էլ քեզ համար-ը ձեզ համար է շինել:

Շատ տարօրինակ է թւում, թէ ինչո՞ւ պ. Վանցեանը փոփոխել է Աբովեանի լեզուն, իսկ Սունդուկեանի «Պէպօ»-ի հատուածը, որ գրուած է Թիֆլիսի բարբառով ու համեմուած օտար բառերով, թողել է անփոփոխ: Աւելի լաւ կանէր պարոնը, եթէ մեր գրողների երկերի նմուշների տակ դնէր փոքրիկ ծանօթութիւններ ու բացատրէր անհասկանալի բառերն ու ժողովրդական ոճերը, ինչպէս այդ արել է Մարտինովսկին իր «ՅցրրՍւց տՌրՈՑպսՌ» (Ռուս գրողներ) գրքում: Բացի բառերի ու ոճերի բացատրութիւններից, անհրաժեշտ է և իւրաքանչիւր յօդուածի կամ ոտանաւորի համար տալ տեղեկութիւններ նրա իմաստի, բնաւորութեան ու գրուելու շարժառիթի մասին: Այն ինչ «Հայ հեղինակներում» մենք միայն գտնում ենք չոր ու ցամաք գրական նմուշներ, որոնք յաջորդում են իրար առանց սիստեմի ու, սակաւ բացառութեամբ, առանց կարևոր բացատրութիւնների:

Պ. Վանցեանի տուած կենսագրականներից կան այնպիսիները, որոնք գրուած են ոչ թէ յօրինողի, այլ ուրիշների ձեռքով: Օրինակ, Սմբատ Շահազիզի մասին զետեղուած է Լէօի գրածը, իսկ Գ. Բարխուդարեանցի մասին՝ Ի. Յարութիւնեանի գրածը: Բայց գրականութեան դասագիրք յօրինողներն առհասարակ իրենք են կազմում գրողների կենսագրականները, ոչ թէ օգտւում են ուրիշի պատրաստածից: «Հայ հեղինակներում» կան և այնպիսի կենսագրականներ, որոնց տակ մենք տեսնում ենք պ. Վանցեանի ստորագրութիւնը: Իսկ մի քանիսն էլ զետեղուած են առանց ստորագրութեան:

Եթէ ենթադրենք, որ այս վերջինները կազմել է ինքը՝ պ. Վանցեանը, այն ժամանակ էլ ինչո՞ւ է նա մէկի տակին ստորագրում իր անունը, իսկ միւսը թողնում առանց ստորագրութեան: Իսկ եթէ ուրիշներն

են գրել, ո՞ւր է նրանց ստորագրութիւնը: Ինչո՞ւ Լէօի և Յարութիւնեանի կազմած կենսագրականների տակ կայ ստորագրութիւն, իսկ միւսների կազմածը մնացել է առանց ստորագրութեան: Մեզ թւում է, որ բոլոր կենսագրականները պիտի կազմէր ինքը պ. Վանցեանը և թողնէր նրանց առանց ստորագրութեան, որովհետև առանց այն էլ գրքի ճակատին մի անգամ արդէն գրուած է «Գ. Վանցեան»: Տարօրինակն այն է, որ պ. Վանցեանը, զետեղելով իր գրքում մեր նոր ու նորագոյն գրողների երկերից նմուշներ, բոլորովին մոռացութեան է մատնել պ. պ. Նար-Դոսին, Լևոն Մանուէլեանին և այլոց, որոնք պատուաւոր տեղ են բռնում գրականութեան մէջ և որոնց երկերի նմուշները վաղուց ընդունելութիւն են գտել ուրիշ դասագրքերի մէջ: Կենսագրութիւնների և արևելահայ գրական շարժման էութիւնն ու ամբողջութիւնը լաւ հասկանալու համար, պ. Վանցեանը իր գրքի յառաջաբանում խորհուրդ է տալիս ուսուցիչներին իր տպագրուող «Պատմաքննական քերականութիւնը»: Գուցէ պ. պ. Նար-Դոսը, Լ. Մանուէլեանը և միւսները մտել են այդ նոր լոյս տեսնող գրքի մէջ. բայց աշակերտներին ի՞նչ... Չէ՞ որ պ. Վանցեանը միայն ուսուցիչներին է խորհուրդ տալիս այդ գրքին դիմելու: Աշակերտներն ի՞նչ մեղք են գործել, որ պ. Վանցեանը զրկում է նրանց և չի ծանօթացնում մեր տաղանդաւոր գրողների հետ:

Զետեղելով իր գրքում պ. Ա. Ծատուրեանի թարգմանած ոտանաւորները, պ. Վանցեանը ոչ մի նմուշ չի տալիս նրա ինքնուրոյն բանաստեղծութիւններից: «Հայ հեղինակների» յօրինողը երևի Ա. Ծատուրեանին բանաստեղծ չէ համարում, այլ սոսկ թարգմանիչ: Կամենալով ծանօթացնել «Սասունցի Դաւիթ» ժողովրդական վէպի հետ, պ. Վանցեանը տալիս է նրա փոխադրութեան միմիայն մի մասը, այն էլ անյաջող փոխադրութեամբ: Իսկ այդ վէպի լիակատար և աւելի յաջող փոխադրութիւնը, որ գրել է պ. Գ. Բալասանեանը, անյայտ է մնացել պ. Վանցեանին: Ինչ վերաբերում է միւս նմուշներին, պէտք է նկատենք, որ պ. Վանցեանը չգիտէ լաւ ընտրութիւն անել: Պ. Պռօշեանից միայն տալիս է տարուայ չորս եղանակների փոքրիկ նկարագրութիւնները, իսկ նրա «Սօս և Վարդիթերից», «Հացի խնդրից» և այլ նշանաւոր երկերից ոչինչ չի տալիս: Րաֆֆուց տալիս է միայն չորս փոքրիկ հատուածներ, որոնք բռնում են 7 1/2 երես: Եւ այդ 7 և կէս երեսով է ուզում պ. Վանցեանը գաղափար տալ Րաֆֆու մասին: Այն ինչ Մուրացանից տալիս է նա ամբողջ 17 երես: Պ. Ղ. Աղայեանից էլ շատ քիչ բան է տալիս: Ցանկալի էր զետեղել «Հայ հեղինակների» մէջ նրա «Անահիտ», «Տորք Անգեղ» և այլ նշանաւոր

երկերից:

Որպէսզի իւր գրքում լինի ամեն չէշուդից, պ. Վանցեանը վերջում զցել է մի առանձին բաժին «Ռուս գրականութիւնից» վերնագրով: Այստեղ մտնում են միայն 4 կտոր փոքրիկ թարգմանութիւններ, ընդամենը 8 երես: Այդ թարգմանութիւններից երեքի տակին ստորագրուած է հեղինակի անունը, իսկ մէկի տակին ստորագրուած է միայն «Թարգ. ռուս.»: Չգիտենք՝ թէ ինչո՞ւ է պարոնն այդպէս խնամքով թաքցնում հեղինակի անունը, կամ ի՞նչ հարկ կար տակին ստորագրելու «Թարգմ. ռուսերէնից», քանի որ ընդհանուր վերնագրից («Ռուս գրականութիւնից») այդ արդէն յայտնի է: Եթէ գրքի վերջում պ. Վանցեանը պիտի դնէր առանձին ռուսական բաժին, էլ ինչո՞ւ է նա Պուշկինի «Թէ շրջում եմ», «Մարգարէ», Լերմոնտովի «Հրեշտակ» և «Երբ մեղմ ծփում է» ոտանաւորների թարգմանութիւնները զցել պատմական, ճամբորդական, ազգագրական, ժողովրդական բանահիւսութեան և այլ բաժիններից առաջ: Այդ ի՞նչ սիստեմ է: Կարելի էր մի փոքր աւելի երկար խօսել «Հայ հեղինակների» մասին, բայց շատանանք միայն այսքանով:

Յարութիւն ԹՈՒՄԱՆԵԱՆ

*«Նոր-Դար», 1906 թ., 24 փետրուարի, N 35*

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

«Նոր-Դար»-ի ներկայ տարուայ 35 N լոյս տեսաւ մի ընդարձակ քննադատութիւն իմ յօրինած «Հայ հեղինակներ» գրքի մասին, ուր յօդուածագիր պ. Թումանեանը հետևեալ նկատողութիւնն է անում. գրքի «նոր հրատարակութիւնը որ պիտի աւելի կատարելագործուած լինէր, ընդհակառակը հարստացել է նոր թերութիւններով» (ընդգծումը մերն է): Պատասխանում ենք թուերով. առաջին հրատարակութիւնը բաղկացած էր 262 երեսից, երկրորդը 320. ուրեմն պլիւս 58 երես. հին գրականութեան բաժինը, որ կար առաջինում, հանուած է երկրորդ հրատարակութիւնից, հետևեալ դեռ լոյս չտեսած հատորների մէջ զետեղուելու համար 42 երես. 58 + 42 = 100: Աւելացած նիւթեր են.- Ալիշանի, Ծերենցի, Դուրեանի, Նալբանդեանի, Շահազիզի, Մուրացանի, Սիպիլի, Արփիարեանի, Ծատուրեանի, Յովի. Թումանեանի, Շանթի, Տմբլաչի Խաչանի գործերից. նախկին նիւթը մնալով հանդերձ, աւելացել է հարիւր երես նոր նիւթ մեր լաւագոյն հեղինակներից...

Կարո՞ղ է ուրեմն խօսք լինել թերութեան մասին:

Մի անբարեխիղճ մանեօվր է բանեցրել պր. Թումանեանը՝ քննելով երկու հրատարակութիւնը միաժամանակ. գրական մի տարրական օրէնք է, որ վերջին հրատարակութիւնը նշում է առաջինին, ուստի ես կպատասխանեմ այն կէտերին, որ վերաբերում են վերջինին.- նա գտնում է, որ նիւթը պէտք է դասաւորուէր ժամանակագրական կարգով, ինչպէս առաջին հրատարակութեան մէջ: Դա կարդալու գիրք չէ՚, այլ դասագիրք է. ուսուցիչներին է թողնւում նիւթերից օգտուելու յարմարութիւնը. ի՞նչ մի դժուար բան է սկսել օրինակ 50 երեսից և ապա վերադառնալ 10, 20, կամ 100 երեսներին: Ես այդ արել եմ մի քանի ուսուցիչների խնդիրքով և այն հասարակ գիտակցութեամբ, որ նախ պէտք է մեր արևելահայ ուրեմն մայրենի լեզուի հետ ծանօթանալ և ապա արևմտեան ու գրաբար: Մի՞թէ մանկավարժական այս տարրական օրէնքը հասկացնելու հարկ կայ: Խնդիրն այն է, որ ձեր ուզած նիւթը կայ. առաջին երեսումն է նա թէ վերջին՝ այդ կարծեմ կարևոր չէ: Ինչպէս որ մի քաշքշուկ է այն հարցը, թէ ինչո՞ւ յօդուածներից մի քանիսի տակը Վանցեանի ստորագիրը կայ, իսկ միւսներին ոչ: Բոլոր յօդուածներն առհասարակ ստորագրուած են, շատ կրկնութեամբ աշակերտների մէջ տպաւորելու հեղինակի անունը: Իմ գրածներից մանրները չե՛մ ստորագրել ձանձրալի չդառնալու համար, իսկ մեծ և պատասխանատու կենսագրականները չէի կարող առանց ստորագրութեան թողնել, ուր մանաւանդ գնահատումն և բնորոշումն կայ և այն էլ գրեթէ առաջին անգամ մեր գրականութեան մէջ:

Թէ ինչու այս կամ այն հեղինակից նիւթն աւելի է և ինչո՞ւ ոմանք մեր հեղինակներից չեն մտած այստեղ, առ այժմ անկարող եմ ասել, միայն սրա միւս հատորները լրիւ դուրս գալուց յետոյ կարող է պարզուել: Րաֆֆին յատկապէս մեծ մասամբ պահուած է երկրորդ հատորի համար: Այլ հեղինակներ կարող են մտնել III հատորի մէջ: Մեր ծրագիրը շատ լայն է և ընդարձակ, հրաւիրուած են մասնագէտ անձեր աջակցութեան. մինչև բոլոր հատորները լրիւ լոյս չտեսնեն, մենք չենք կարող գոհացում տալ բոլոր պահանջներին:

Գանք հիմա լեզուի փոփոխութեան հարցին. ես կազմում եմ մանուկների համար դասագիրք և հետևելով այդ սխալ հասկացած սկզբունքին՝ վերցնում եմ հէնց այս սոյն հեղինակները.- Եղիշէ և Փարպեցի - գրաբար, Քուչակ - միջնադարեան ռամկօրէն, Աբովեան - Քանաքեռի բարբառ, Ալիշան - գրաբար և արևմտեան հայերէն, Պատկանեան - Նոր Նախիջևանի բարբառ, Սունդուկեան և Սայաթ-Նովա - հին ու նոր Թիֆլիսի բարբառ, Սրուանձտեան - Սասունի, Մուշի, Վանի և Արաբկիրի

բարբառներ (Սասունցի Դաւիթ, Յալունի թուրը և այլն), Տմբլաչի Խաչան - Ղարաբաղի բարբառ, Գաբր. եպ. Այվազեան - Խրիմի բարբառ, ապա միւս հատորներում նաև միջնադարեան մեր աշուղներն ու գրողները իրենց բազմատեսակ բարբառներով, մեր ժողովրդական երգերն ու լէլէները ամեն բարբառով, և ստորին դարի գրաբարը: Ասացէք խնդրեմ, կա՞յ մի որևէ ուսուցիչ կամ նոյն իսկ մասնագէտ լեզուաբան, որ կամենայ տիրապետել այդ ամենին և կամք ու համբերութիւն ունենայ՝ չե՛մ ասում աւանդելու, այլ կարդալու և հասկանալու այդ ամենը:- Ո՛չ, պր. Թումանեան, եթէ դուք Ալիշանի պարզ ու գեղեցիկ «Աւարայրի բլբուլը» հասկանալու համար կարիք զգացիք դիմելու պ. Աղայեանին կամ Նուաստիս աջակցութեանը, եթէ դուք առաջարկում էք «Սասունցի Դաւիթը» տալ ձեր հաւանած պ. Բալասանեանի թարգմանութեամբ, խոստովանեցէք ուրեմն, որ ինչքան ցանկալի, նոյնքան անկարելի և անհնարին է այս դասագրքում աշակերտների ձեռը տալ բնագիրները զանազան բարբառներով գրուած, առանց թարգմանութեան կամ փոփոխութեան: Չը կայ մեզ համար մի աւելի դիւրին բան անփոփոխ արտատպել տալ պատրաստի նիւթերը. եթէ մենք յանձն ենք առել մի ծանծրալի և պատասխանատու գործ, մատչելի դարձնել հայ հեղինակներին հայ կամ օտար դպրոցներում, դա արդիւնք է մեր երկարամեայ փորձի: Նախ պէտք է մենք ընտիր նիւթով պատուաստենք և մայրենի լեզու դարձնենք մեր գրական՝ ամեն արատներից մաքրած ու զտած լեզուն, ապա դրա միջոցով անցնենք բնագիրներին, որ արդէն ամեն ուսուցիչ պարտաւոր է առաջարկել ու ծանօթացնել դասարանին, որովհետև մի դասագիրք չի կարող փոխարինել մի ամբողջ գրականութեան: Յետևեալ հատորներում, երբ աշակերտն աւելի հասունացած կը լինի, հնարաւոր է անփոփոխ բնագիրը տալ:- Աբովեանից թողնուած մի քանի բառերի մասին այն պիտի ասենք, որ արտագրուած բնագիրը՝ գնացած լինելով ցենզուրայի մօտ՝ չկարացի ստուգել. արտագրողի՞ մեղն է դա թէ՞ սրբագրողի. հետևեալ հրատարակութեան մէջ դա կուղղուի: Պ. Թումանեանը սակայն պիտի նկատի ունենար, որ առաջաբանում ես յիշել և դիտմամբ շեշտել եմ այն փոփոխութիւնները, որոնք կատարուած են գիտակցօրէն, և որևէ այլ թերութիւն նա իրաւունք չունէր անուանելու «կրճատում կամ խեղաթիւրում»:

Իսկ թէ ինչո՞ւ մի քանի հեղինակներ, ևս առաւել մի քանի կարևոր նիւթեր չեն մտել դասագրքի մէջ, այդ շատ լաւ յայտնի պիտի լինէր պ. քննադատին, քանի որ այս գիրքը մի քանի տարի դեգերուել է այստեղ, Պետերբուրգ և Մոսկուա ցենզուրաների ձեռին. այլև հազիւ հնարաւոր է եղել ստանալու դպրոցական վարչութեան թոյլտուութիւնը:- Յիմա, փառք

Աստուծոյ, համեմատաբար ազատ ենք այդ արգելքներից և պակասը հետզհետէ կը լրացուի:

Ամփոփենք մեր ասելիքը.- այս հրատարակութիւնն աւելի է առաջինից 100 երես. կենսագրականները վերստին մշակուած և ստուգուած են. գինը 1 ր. 35-ից ճամբու ծախսով՝ իջել է 1 րուբլու. հետևաբար՝ եթէ պր. Թումանեանն ընդունում էր առաջինի լաւութիւնը, որ նա վկայել է պաշտօնական զեկուցմամբ առևտրական դպրոցի տեսչին, պիտի խոստովանի, որ նա կամ անցեալ տարի էր ճշմարտութեան դէմ մեղանչել և կամ այս տարի:

Եւ ի՞նչ է դրա պատճառը,- մի փոքրիկ և աննշան ոտանաւոր պր. Յարութիւն Թումանեանի գրածներից, որ այս անգամ բաց ենք թողել, նրա տեղը տալով 100 երես աւելի նիւթ մեր լաւագոյն հեղինակներից:

Բայց կայ մի հանգամանք, որի համար մենք բառ չե՛նք գտնում պախարակելու, այլ յանձնում ենք հասարակաց դատաստանին.- Յիշելով որ առաջին տպագրութիւնը թոյլ է տրուած կովկասեան հոգաբարձուի կողմից գործադրելու դպրոցներում, պր. Թումանեանը պոլիցիականի աչալրջութեամբ շեշտում է, որ «Երկրորդ տպագրութեան գործածութիւնը դեռ ևս պաշտօնապէս թոյլատրուած չէ»: Նա գիտէր, որ առաջին տպագրութիւնն սպառուած է լիովին, և որպէսզի երկրորդի տարածմանը հարուած հասցնի, իսկոյն կռչում է. ԽՈՐՈցսՕ, թոյլատրուած չէ:- Ո՞վ ասաց, ո՞րտեղից գիտէք, թէ թոյլատրուած չէ՛: Մի բան որ դեռ ինձ, և աշխարհիս երեսին դեռ ո՛չ մի մարդու յայտնի չէ՛, քանի որ դեռ մերժում չի եկած, ժողով չի եղած: Դուք ո՞րտեղից գիտէք, պր. Թումանեան. այդ շատ բնորոշ և վերին աստիճանի կարևոր մի հարց է. Ի՞նչ է ձեր մտադրութիւնը... զգուշացնել պետութիւնը վտանգի՞ դէմ, թէ՞ գիրքը պահել միայն նախկին, ձեր պոլիցիական հաւանութեան արժանացած սահմաններում, երբ երեք վարչութիւններ կոկորդիս նստած խեղդում էին և թոյլ չէին տալիս մի հայ խրեստոմաթիա հրատարակելու չնայելով նրա բացարձակ լոյալ բնաւորութեանը...

Փառք Աստուծոյ հայ դպրոցներ կան և Ներսիսեան, Յովնանեան և այլ դպրոցների ընդունելութիւնն ու վեց ամսուայ ընթացքում առաջին հրատարակման սպառումը լաւագոյն պատասխանն է ձեր վարմունքին, որին անուն տալը թողնում ենք ընթերցող հասարակութեանը:

Գ. ՎԱՆՑԵԱՆ

*«Նոր-Դար», 1906, 5 մարտի, N 41*

# ՆԱՄԱԿՆԵՐ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

«Նոր-Դար»-ի N 35-ում կարդացի պ. Յ. Թումանեանի քննադատութիւնը պ. Վանցեանի՝ ,Հայ հեղինակներե գրքի մասին: Գիտենալով, որ պ. Վանցեանը փոփոխութիւն մտցնող չէ իւր գրքի մեջ՝ Աբովեանի գրուածների վերաբերմամբ, շատ հաւանական է, որ ես եմ սխալները թողել, որովհետև ես եմ արտագրողը եղել:

Վ. Խանամիրեան

*«Նոր-Դար», 9 մարտի, 1906, N 43*

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

«Նոր-Դար»-ի N 35-ում ցոյց տալով պ. Վանցեանի «Հայ հեղինակներ» կոչուած դասագրքի անպէտքութիւնը, ի միջի այլոց յայտնել էի, որ այդ գրքի երկրորդ տպագրութիւնը դեռ ևս պաշտօնապէս հաստատուած չէ ուսումնական վարչութեան կողմից: Պ. Վանցեանը «Նոր-Դար»-ի N 41-ում կամենալով բարձրացնել իւր գրքի արժանիքը, զանազան բառախաղութիւններով աշխատում է մոլորեցնել ընթերցողներին և դիմում է ինձ անուանարկելու միջոցին:

Ես գրել էի, որ պ. Վանցեանը, խոստանալով ծանօթացնել մեզ «մեր լեզուի զարգացման պատմութեան» և մեր գրողների հետ, «սկսած հնագոյն անցեալից մինչև նորագոյն ժամանակները», դաւաճանել է իւր խոստումին և գիրքն սկսել է Աբովեանով, իսկ «հնագոյն անցեալը» դեռ շատ յետոյ է գցել: Պարոնը պատասխանում է, որ իւր գիրքը «կարդալու գիրք չէ, այլ դասագիրք է... Ի՞նչ դժուար բան է սկսել օրինակ 50 երեսից և ապա վերադառնալ 10, 20 կամ 100 երեսներին»: Պ. Վանցեանի ասածից երևում է, որ նիւթերը միայն «կարդալու գրքում» պիտի սիստեմաբար դասաւորեն, իսկ «դասագրքում» կարող են նրանք յաջորդել իրար անկանոն և վայրի վերոյ: Այս այնպիսի մի նոր տեսակի մանկավարժութիւն է, որին կընախանձէր մինչև անգամ ինքը Պեստալոցցին, մանաւանդ եթէ տեսնէր՝ թէ ինչպիսի հեղինակաւորութեամբ է պնդում իւր ասածը պ. Վանցեանը: Պարոնը համ խոստանում է սիստեմաբար դասաւորելու իւր նիւթերը, համ չի կատարում իւր խոստումը, համ էլ պնդում է, որ կարիք չկայ սիստեմաբար դասաւորելու, որովհետև իւր գիրքը դասագիրք է:

Յետոյ: Ես գրել էի, որ պ. Վանցեանը՝ զետեղելով իւր գրքում մեր նոր ու նորագոյն գրողներից նմուշներ, բոլորովին մոռացութեան է մատնել պ. պ. Նար-Դոսին, Լեոն Մանուէլեանին և այլ մեր տաղանդաւոր գրողներին: Պարոնը պատասխանում է. «թէ ինչո՞ւ ոմանք մեր հեղինակներից չեն մտած այստեղ, առ այժմ անկարող եմ ասել...»: Այդ ի՞նչ տարօրինակ գաղտնիք է, որ պ. Վանցեանը «առ այժմ անկարող է ասել»: Աբովեանի լեզուն փոփոխելու ու նախադասութիւնները խեղաթիւրելու համար էլ, որի մասին ես նկատողութիւն էի արել իմ յօդուածում, պ. Վանցեանը պնդում է, որ «անհնարին է այս դասագրքում աշակերտների ձեռը տալ բնագիրը զանազան բարբառներով գրուած՝ առանց թարգմանութեան կամ փոփոխութեան»: Եթէ այդպէս է, կրկնում ենք, պարոնն ինչո՞ւ չէ փոփոխել Սունդուկեանի «Պէպօ»ի հատուածը, որ գրուած է Թիֆլիսի բարբառով ու համեմուած օտար բառերով: Ինչո՞ւ մի հեղինակի գաւառաբարբառը փոփոխում է, իսկ միւսինը թողնում է անփոփոխ: Իսկ ես պնդում եմ, որ աշակերտների ձեռը տալ բնագիրները զանազան բարբառներով ոչ թէ «անհնարին է», այլ անհրաժեշտ է, քանի որ պ. Վանցեանը նպատակ է դրել ծանօթացնել «մեր լեզուի զարգացման պատմութեան» և մեր գրողների հետ: Եթէ այդպիսի նպատակ էլ չունենար, դարձեալ նա իրաւունք չունէր փոփոխութեան ենթարկելու մեր հեղինակների լեզուն: Այլ դրա փոխարէն նա պիտի, ինչպէս ասել էի, յօդուածների և ոտանաւորների տակ ծանօթութիւններ դնէր ու բացատրէր ժողովրդական ոճերն ու անհասկանալի բառերը: Պ. Վանցեանը գրում է. «Աբովեանից թողնուած մի քանի բառերի մասին այն պիտի ասենք, որ արտագրուած բնագիրը՝ գնացած լինելով ցենզուրայի մօտ՝ չկարացի ստուգել. արտագրողի՞ մեղն է դա թէ՞ սրբագրողի...»: Ոչ, պ. Վանցեան, ձեր մեղն է, ոչ թէ արտագրողի կամ սրբագրողի: Դասագրքի պատասխանատուն յօրինողն է: Եթէ պ. Վանցեանը «չի կարացել ստուգել», ո՞վ ինչ անի: Ապա պ. Վանցեանը շեղուելով հարցից, աւելացնում է. «յառաջաբանում ես յիշել և դիտմամբ շեշտել եմ այն փոփոխութիւնները, որոնք կատարուած են գիտակցօրէն»: Կարծես, թէ ես ասել եմ, որ պ. Վանցեանը «դիտմամբ ու գիտակցօրէն» չէ կատարել փոփոխութիւնները: Հէնց բանն էլ այն է, պ. Վանցեան, որ դուք իրաւունք չունէիք «դիտմամբ ու գիտակցօրէն» փոփոխելու մեր հեղինակների լեզուն:

Պարոն Վանցեանը պարծենկոտութեամբ ասում է, որ ես Ալիշանի «պարզ ու գեղեցիկ» ոտանաւորը (Բլբուլն Աւարայրի) հասկանալու համար կարիք եմ զգացել դիմելու իւր և Ղ. Աղայեանի աջակցութեան: Ճիշտ

է: Պ. Վանցեանն իւր գրքի առաջին հրատարակութեան մէջ այսպէս էր խեղաթիւրել Ալիշանի ոտանաւորը.

Ձայս մաշած շընչիս վերջին հառաչանք
Ձըգեցի հայոց սրտից արձագանք:

Այս տողերը, որոնք՝ շնորհիւ պ. Վանցեանի խեղաթիւրումին՝ կարող են մրցել եգիպտոսի յերօգլիֆների հետ, ես չկարողացայ հասկանալ և դիմեցի հայերէնագէտ պ. Ղ. Աղայեանի օգնութեան: Պ. Աղայեանն էլ բերաւ Ալիշանի բնագիրը և սկսեցինք միասին համեմատել: Յօրինուեց որ բնագրում ասուած է.

Ձայս մաշած շընչիս վերջին հառաչանք
Ձգել ի հայոց սրտից արձագանք:

Եթէ պ. Վանցեանն այս «պարզ ու գեղեցիկ» տողերը չդարձնէր պղտոր ու տգեղ, ես կարիք չէի ունենալ դիմելու ուրիշի աջակցութեան: Կարիք եղած ժամանակ էլ ես մի բան հասկանալու համար բնաւ չէի քաշուիլ դիմելու ուրիշի աջակցութեան:

Ապա պարոնը նկատում է, որ ես՝ ընդունելով նրա գրքի առաջին տպագրութեան լաւութիւնը, այդ վկայել եմ պաշտօնական զեկուցմամբ առևտրական դպրոցի տեսչին: Իմ պաշտօնական զեկուցման մէջ պ. Վանցեանի գրքի համար մի առանձին հրճուանք ու հիացմունք չեմ յայտնել, այլ միայն ասել եմ, որ գոյութիւն ունեցող հայ խրիստոմաթիաների մէջ «Հայ հեղինակները» կարելի է համարել լաւագոյն: Հէնց իմ նախկին յօդուածումն էլ վատ կարծիք չեմ յայտնել առաջին հրատարակութեան մասին: Ի՞նչ արած. քանի որ աւելի լաւը չունէինք, պէտք էր եղածով եօլա գնայինք: Մենք յոյս ունէինք, որ պ. Վանցեանի գրքի երկրորդ հրատարակութիւնը աւելի կատարելագործուած կըլինէր, բայց մեր յոյսերը զուր անցան, երբ տեսանք նոր տպագրութիւնը: Առաջինի մէջ, մի կողմը թողած միւս պակասութիւնները, գոնէ նիւթերը դասաւորած էին սիստեմաբար և ուղղագրութեան մէջ ընդունուած էր Աղայեանի Ի-ը*: Իսկ երկրորդ տպագրութեան մէջ ոչ միայն բաբելոնեան խառնակութիւն է տիրում, այլ փոփոխուած է ուղղագրութիւնը: Այն դպրոցներում, ուր գործ են ածւում Ղ. Աղայեանի դասագրքերը, պ. Վանցեանի այս նոր հրատարակութիւնը՝ շնորհիւ իւր տարբեր ուղղագրութեան, չի կարող ուղղագրական ներքին կապ ունենալ Աղայեանի գրքերի հետ և սրանց

շարունակութիւնը կազմել: Ձո՜ւր է պ. Վանցեանը գովում իր երկրորդ հրատարակութիւնը և պարծանքով երկու տեղ յիշում, որ այս անգամ աւելացրել է 100 երես: Բանը քանակում չէ, այլ որակում:

Այս բոլորից յետո՞յ էլ պ. Վանցեանը կըպնդի, որ ես իմ ոտանաւորներից մէկը «Հայ հեղինակներից» հանուելու պատճառով եմ վատ կարծիք յայտնել նրա գրքի մասին: Եթէ իմ ոտանաւորներից մի հինգ հատ էլ աւելացնէր պարոնն իր երկրորդ հրատարակութեան մէջ, դարձեալ այդ գրքի մասին կըգրէի այն, ինչ որ գրել եմ:

Ես յայտնել էի ի միջի այլոց, որ «Հայ հեղինակների» երկրորդ հրատարակութեան գործածութիւնը դեռ ևս պաշտօնապէս թոյլատրուած չէ: Պ. Վանցեանը՝ իմ արածն անուանում է «պօլիցիականի աչալրջութիւն» և հարցնում. «ո՞վ ասաց, ո՞րտեղից գիտէք՝ թէ թոյլատրուած չէ... Ի՞նչ է ձեր մտադրութիւնը. զգուշացնել պետութիւնը վտանգի՞ դէմ, թէ գիրքը պահել միայն նախկին ձեր պօլիցիական հաւանութեան արժանացած սահմաններում...»: Պ. Վանցեանը շատ լաւ գիտէ, որ պետական դպրոցներում գործ ածուող բոլոր դասագրքերն անպայման պիտի թոյլատրուած լինեն վարչութեան կողմից: Իսկ մի որևիցէ դասագրքի թոյլատրուած լինելն ու չըլինելն իմանալու համար իմաստութիւն չէ պահանջւում: Բաւական է միայն մտնել Կովկասեան դպրոցների պ. հոգաբարձուի գրասենեակը և հարցնել: Այդպէս էլ ես եմ արել իմ տեսչի հրամանով ու իմացել. թո՛ղ պ. Վանցեանն երկմիտ չմնայ, թէ ո՞րտեղից եմ իմացել և ո՞վ ասաց: Պ. Վանցեանն ինքն է վկայում, որ իր գրքի երկրորդ հրատարակութեան գործածութեան համար դեռ մերժում չի եկել վարչութեան կողմից և դեռ ժողով չի եղել: Եթէ մերժում չի եկել և դեռ ժողով չի եղել, էլ ինչո՞ւ է նեղանում պարոնը, երբ ես, իմ քննադատած գրքի մասին աւելի բազմակողմանի տեղեկութիւններ տալու նպատակով ասում եմ, որ նա դեռ ևս պաշտօնապէս թոյլատրուած չէ: Ճիշտ է, մերժում չի եկել, պ. Վանցեան, բայց չէ՞ որ հաւանութիւն էլ չի եկել: Ինչո՞վ ենք երաշխաւոր, որ երկրորդ հրատարակութիւնը հաւանութիւն կըգտնի, քանի որ նա նորանոր փոփոխութիւնների է ենթարկուած: Ուրիշ բան է, եթէ առաջին հրատարակութիւնը, որ արդէն թոյլատրուած է, նոյնութեամբ հրատարակուէր և երկրորդ անգամ: Այն ժամանակ էլ չէինք կասկածիլ գրքի երկրորդ թոյլտուութեան համար: Վերջացնելով խօսքս, ընթերցողի ուշադրութիւնն եմ հրաւիրում այն տգեղ բանաձևի վրայ, որ գործ է դնում պ. Վանցեանը, իր գրքի պաշտպանութիւնը որոնելով ուրիշին անուանարկելու մէջ**:

Յարութիւն ԹՈՒՄԱՆԵԱՆ

* Այդ ւ-ը ուղղագրութիւնն աղաւաղում է և արտասանութիւնը փչացնում: - Խմբ.

** Առ հասարակ մատենախօսութեան դէմ հերքումն չենք հրատարակում, բայց որովհետև պ. Վանցեանի «Հայ հեղինակներ» դասագրքի մատենախօսութիւնը խմբագրական չէ և պատասխանատուն ինքը քննադատն է, պարտաւորուեցանք տեղ տալու և հեղինակի պատասխանին: Այսպիսով բացւեց ոչ ցանկալի բանակռիւ և մենք վերջին անգամ տեղ ենք տալիս պ. Յ. Թումանեանի պատասխանին և աւելացնում, որ քննադատութիւնն միայն այն ժամանակ քննադատութիւն է և գրական արժէք ունի, երբ նա անձնական միտումներով չէ թելադրուած և չէ դուրս գալիս լուրջ և քննադատութեան առարկայի շրջանից: - Խմբ.

*«Նոր-Դար», 1906, 12 մարտի, N 46*

## Գրպանի ուղղագրութիւն Գ. Վանցեանի, 1906, Թիֆլիս, գինն է 5 կոպ.

«Մի սխալ մեթօդի շնորհիւ, ցարդ տանջւել են թէ ուսուցիչները եւ թէ աշակերտները, ստիպւած լինելով անգիր իմանալու բոլոր հայերէն բառերի ուղղագրութիւնը», գրում է պ. Վանցեանն իր գրքոյկի յառաջաբանում: Մենք առաջին անգամն ենք լսում, որ ուղիղ գրելու համար մինչեւ այժմ ստիպւած ենք եղել անգիր իմանալու բոլոր հայերէն բառերի ուղղագրութիւնը, ինչպէս այդ հաւատացնում է մեզ «Գրպանի ուղղագրութիւն» կազմողը: Որքան յայտնի է, ուղիղ գրելու համար մենք միշտ ղեկավարւել ենք քերականական որոշ կանոններով. իսկ քերականական կանոններին չենթարկւող բառերի ուղղագրութիւնը սովորել ենք գործնականապէս:

Չը գիտենք՝ թէ պ. Վանցեանն ո՞րտեղից գտաւ այն «սխալ մեթօդը», որի շնորհիւ «ցարդ տանջւել են թէ ուսուցիչները եւ թէ աշակերտները»: Զարմանալին այն է, որ մեր նոր ուղղագրագէտը, կամենալով «բոլոր հայերէն բառերի ուղղագրութիւնն անգիր» անողներին փրկել տանջանքից, առաջարկում է իր գրքոյկը: Այդպիսով հարցն արդէն լուծւած համարելով, պ. Վանցեանն ինքնավստահ կերպով իր «ուղղագրութեան համար գրում է, որ «ամեն աշակերտ կարող է եւ պէտք է ձեռին ունենալ»: Որ ամեն մի աշակերտ «կարող է» ձեռին ունենալ պարոնի գրքոյկը, այդ հասկանալի է. իսկ հարկադրել ու ասել, որ ամեն մի աշակերտ «պէտք է» այն ձեռին

ունենայ, շատ տարօրինակ է թւում, մանաւանդ որ այդ հարկադրանքը, ոչ թէ քննադատի կամ ուրիշների կողմից է, այլ գրքոյկ յօրինողի: Բացի այդ հարկադրանքից, պ. Վանցեանը պնդում է, որ նրա գրքոյկը գործ ածող «թէ մեծը եւ թէ փոքրը ապահով է սխալներից»... Այդ դեռ հարց է, պ. Վանցեան:

«Գրպանի ուղղագրութիւն» կազմողի բուն նպատակն է, ինչպէս ինքն է յայտնում յառաջաբանում, տալ մեզ այն փոքրաթիւ բառերը, որոնք սխալ են պատճառում եւ որոնց շնորհիւ մենք կ'ընտելանանք բոլոր բառերի ուղղագրութեան: Սակայն պարոնը մոռանալով իր ասածը, շեղւում է իր բուն նպատակից ու մի շարք բառերի հետ միասին՝ տալիս է մեզ նաեւ ուղղագրական «կանոններ»: Յիշելով մեծատառի գործածութեան դէպքերը, պ. Վանցեանը յանկարծ, չը գիտենք ինչից դրդուած, բացատրում է չակերտի գործածութեան կանոնները. իսկ կէտադրութեան բոլոր միւս նշանների մասին խորին լռութիւն է պահպանում: Իսկ թէ ինչո՞ւ պարոնը՝ բացատրելով միմիայն չակերտի կանոնները, լռում է միւս նշանների մասին - այդ մեզ համար մի հանելուկ է մնում: Չակերտի մասին էլ ասում է. «լրագիրների կամ մանաւանդ գրքերի անունները որեւիցէ յօդւածի մէջ յիշելիս, չակերտների մէջ են առնում»: Պ. Վանցեանը կամ մոռանում է, կամ չը գիտէ, որ լրագիրների ու գրքերի անունները յօդւածների մէջ յաճախ ընդգծելով կամ տպագրելով շղատառով՝ գործ են ածում նաեւ առանց չակերտների: Ապա պարոնը 7 երեսում գրում է. «Է-ի կանոն. 1) է գործ է ածւում երեք անգամ քիչ, քան ե: Կասկածելի դէպքում, ուրեմն, պէտք է գրել ե»: Եւ այս անորոշութիւնը պ. Վանցեանն անւանում է «կանոն»: Այդ «կանոնների» հիման վերայ, աշակերտը կասկածելի դէպքում իրաւունք ունի է-ի տեղ գրել ե. հո՞գ չէ թէ սխալ կը լինի... Ահա այսպիսի անհեթեթութիւններով է ուզում պ. Վանցեանը փրկել մեզ ուղղագրական տանջանքներից: Ապա պարոնը բերում է մի շարք բառեր, որոնց վերջին պէտք է գրել է, օրինակ եթէ, երէ, ի սկզբանէ, իբրեւ թէ, իցէ թէ, արժէ, Սերովբէ, րոպէ, եւ այլն: Եւ այս փոքրաթիւ բառերը նա այն պատճառով է տալիս մեզ, որ այլ եւս «կարիք չունենանք բոլոր բառերի ուղղագրութիւնն անգիր իմանալու», ինչպէս ինքն է գրում իր գրքոյկի յառաջաբանում: Լեզւագիտական տափակութիւն շատ էինք տեսել, բայց ոչ այս աստիճանի: Պ. Վանցեանը, իբրեւ հայերէնի ուսուցիչ, պարտաւոր էր իմանալ, որ բառերի վերջին ե չի գրւում, այլ միշտ գրւում է է: Աւելի լաւ չէ՞ր լինիլ, եթէ պարոնը, մի շարք բառերի փոխարէն, ուղղակի յիշէր այդ կանոնը:

8 երեսում նա ասում է. «է երբէք չի գրւում... ց, փ տառերից առաջ»: Հետաքրքիր է թէ մեր ուղղագրագէտը «օրէցօր» եւ «Յովսէփ» բառերի մէջ ց եւ փ տառերից առաջ ի՞նչ տառ կը դնէր:

Պ. Վանցեանը, կամենալով մեզ փրկել ուղղագրական տանջանքներից, իր գրպանային ուղղագրութեան մէջ տալիս է մեզ նաեւ հետեւեալ անգործածական բառերը. նէ, նէրա, սէ, սէրա: Պարոնը մոռանում է, որ այս ձեւերը գոյութիւն չունեն մեր ներկայ գրական լեզւի մէջ: Ճիշտ է, տաճկահայ լեզւում փորձեցին տարածել նէ, նէրա... սակայն այդ ձեւերը բոլորովին ընդունելութիւն չը գտան եւ չը տարածւելով՝ մնացին անգործածելի: Եւ քանի որ այդ բառերը չեն գործ ածւում, պ. Վանցեանն էլ ինչո՞ւ է տալիս նրանց ուղղագրութիւնը:

14 երեսում պարոնը բացատրում է «օ-ի կանոնը» այսպէս.

«օ հայերէնում երեք անգամ քիչ է գործ ածւում ո-ից. կասկածելի դէպքերում ուրեմն լաւ է գրել ո, քան օ»: Դարձեա՜լ կասկածելի դէպքեր ու անորոշութիւններ: Եւ մեր ուղղագրագէտի կարծիքով՝ սա «օ-ի կանոն» է: «Միայն 70 արմատական բառ օ-ով են գրւում,- շարունակում է նա,- այն էլ մեծ մասամբ լեզւաշրթնային տառերից առաջ. օր. տ, թ, ր, ն, ս, շ»: Տարօրինակն այն է, որ պ. Վանցեանի յիշած այս տառերից ոչ մէկն էլ լեզւաշրթնային չէ: Ո՞վ գիտէ, գուցէ պ. Վանցեանն այնպիսի սովորութիւն ունի, որ այդ տառերը հնչելիս՝ ամեն անգամ, լեզուն կպցնում է շրթունքին:

20 երեսում ասած է.

«Բազմավանկ բառերի վերջը յ չի հնչւում»: Վա՜հ, ղո՞րթ... եթէ այդպէս է, հապա պ. Վանցեանն ի՞նչպէս կը հնչէր՝ Արփաչայ, Գեօկչայ, տաճկահայ, մակբայ, դերբայ... Ճիշտ է, կան բառեր (օր. քահանայ, երեխայ եւ այլն), որոնց վերջին յ չի հնչւում, բայց այս հանգամանքը իրաւունք չի տալիս բացարձակապէս ասելու՝ թէ բազմավանկ բառերի վերջին յ չի հնչւում:

«Ա եւ ո-ից յետոյ, բառերի վերջը, միշտ գրւում է յ», ասում է պ. Վանցեանն ու յետոյ աւելացնում. «դերանունների եւ հրամայականի վերջը յ չի գրւում. օր. սա, դա, նա, սրա, դրա, նրա, ասա’, գնա’, թո’ղ մնա, թո’ղ բանա»: Պ. Վանցեանը, որ յաւակնութիւն ունի ուրիշներին ուղղագրութիւն սովորացնել, նախ ինքը պիտի սովորէր հայերէն ուղիղ գրել: Պարոնը մինչեւ այժմ չը գիտէ, որ թո’ղ մնայ, թո’ղ բանայ բառերի վերջին անպատճառ յ պիտի լինի: Բացի դրանից նա չը գիտէ, որ յատուկ անունների եւ օտար բառերի վերջին ա-ից յետոյ յ չի գրւում. օրինակ. Աննա, Մոսկւա, Յուդա, բօշա, փաշա, լուլա եւ այլն:

Փոքրաթիւ բառերի միջոցով բոլոր բառերի ուղղագրութեան ծանօթացնելու համար բաւական է միայն վերցնել արմատական բառերը: Այն ինչ պ. Վանցեանն իր բառարանում շատ տեղ զետեղել է աւելորդ բառեր: Օրինակ, 22 երեսում զետեղած յետ (ետեւ), յետին, յետնորդ, յետոյ բառերից կարեւոր է միայն առաջինը (յետ), որ կազմում է միւսների արմատը: Նոյնը պիտի ասենք եւ 23 երեսում զետեղած յօդ, յօդացաւ, յօդակապ բառերի մասին, որոնցից վերջին երկուսը միանգամայն աւելորդ են:

Տալով մի շարք յ-ով սկսող բառեր, պ. Վանցեանը նրանց մէջ գցել է նաեւ Յակովբ, Յարութիւն եւ Յիսուս յատուկ անունները. բայց յետոյ մոռանալով, որ այդ բառերն արդէն յիշած են, գլխի վերջում նորից գրում է. «Յատուկ անուններից յ-ով սկսւում են. Յակոբ, Յարութիւն, Յիսուս...»: Եթէ պ. Վանցեանի յիշողութիւնն այդպէս չարաչար կերպով դաւաճանում է իրան, էլ ինչո՞ւ է նա յանձն առնում մեզ համար «գրպանի ուղղագրութիւն» կազմելու: Աւելի լաւ չէ՞ր լինիլ, եթէ նա իր ուղղագրութիւնը մինչեւ վերջ գրպանումը պահէր ու բնաւ լոյս աշխարհ չը հանէր...

Պարոնը յիշելով ընդամէնը յ-ով սկսող 9 յատուկ անուն (Յակոբ, Յարութիւն, Յիսուս, Յովսէփ, Յովհաննէս, Յուդա, Յուլիանոս, Յասմիկ, Յաբէթ), վերջակէտ է դնում, կարծելով, որ փոքրաթիւ բառերի միջոցով, ինչպէս ինքն է յայտնել գրքոյկի յառաջաբանում, ծանօթացնում է բոլոր բառերի ուղղագրութեան: Հետաքրքիր է թէ Հայկ, Հայրապետ, Համբարձում, Հմայեակ, Հրանտ, Հրայր, Հրաչեայ... ի՞նչպէս կը գրէր պ. Վանցեանը Յ-ով թէ՞ Հ-ով: Ինչո՞ւ պարոնը Յ-ով սկսող յատուկ անունների մէջ չի յիշել Յուսիկ, Յուդիթ, Յուստիանոս բառերը: Չը լինի՞ թէ սրանք Հ-ով են գրւում: Պ. Վանցեանն իր բառարանի մէջ զետեղելով յուռութ, յանգէտս ու սրանց նման սակաւ գործ ածւող յ-ով սկսող բառեր, բոլորովին մոռացութեան է տւել յաճախ գործ ածւող յունւար, յունիս, յուլիս բառերը: Իսկ 24 երեսում մեր գրպանային ուղղագրագէտը, բացատրելով «ւ, վ, ու-ի կանոնը», ասում է.

«Ա, ի, ե տառերից յետոյ, եթէ լսենք վ, պիտի գրենք ւ»:

Մեզ յայտնի է, որ վ եւ ւ հնչւում են միատեսակ: Ուրեմն ի՞նչ է նշանակում. «եթէ լսենք վ, պիտի գրենք ւ»: Իսկ եթէ լսենք ւ, այն ժամանակ ի՞նչ պիտի գրենք, պ. Վանցեան:

«Բաղաձայններից յետոյ, ձայնաւորից առաջ գրւում է ու, կարդացւում է վ», շարունակում է պ. ուղղագրագէտը:

Նախ եւ առաջ շատ տարօրինակ է թւում, թէ ինչո՞ւ ու հնչւում է

ինչպէս վ եւ ոչ թէ ինչպէս ւ: Մի՞թէ վ հնչմունքով տարբերւում է ւ-ից: Ո՞վ գիտէ պ. Վանցեանը ւ ուրիշ տեսակ է հնչում: Ինչպէս որ նա տ, թ, ր, ն, ս, շ հնչելիս՝ լեզուն դուրս է գցում բերանից, կպցնում շրթունքին ու այդ տառերը լեզւաշրթնային դարձնում, այնպէս էլ գուցէ ւ տառն է ուրիշ տեսակ հնչում ու գլխին մի օյին բերում: Ապա եթէ ու-ն ձայնաւորի առաջ հնչում է վ, ինչպէս հաւատացնում է պ. Վանցեանը, էլ ինչո՞ւ չէ նա ուղղակի վ գրում: Իսկ եթէ պարոնը ուզում է մեր գրաբարի ուղղագրութիւնը պահպանել, այն ժամանակ ու-ի գլխին պիտի դնէր թաւ նշանը, որպէս զի ու-ն ձայնաւորից առաջ հնչենք Վ (v): Աշխարհաբարում ու-ի գլխից դէն ձգելով թաւ նշանը, մենք պիտի դէն գցենք եւ ո տառը, որպէս զի իրաւունք ունենանք հնչելու ւ, որովհետեւ ու առանց թաւի ու է, ոչ թէ ւ կամ, ըստ Վանցեանի, վ: Բայց այս խմորը ջուր շատ կը տանի: Այս մասին մանրամասն կը խօսենք մի այլ անգամ:

Վերջացնելով մեր խօսքը «Գրպանի ուղղագրութեան» մասին, չենք կարող կանգ չառնել մի տգեղ երեւոյթի վրայ: Պ. Վանցեանն իր գրքոյկի վերջում բոլորովին անտեղի՝ զետեղելով իր «Հայ հեղինակներ» կոչւած գրքի մասին հայ եւ ռուս թերթերի մէջ տպագրւած մի քանի կցկտուր ու անփաստ նպաստաւոր կարծիքներ, խորամանկութեամբ լռութիւն է պահպանում այն բոլոր աննպաստ ու փաստերի վերայ հիմնւած կարծիքների մասին, որոնք յայտնել են այս տարւայ «Նոր-Դարի» NN 35-46-ում եւ «Յոյսի» NN 14-16-ում: Եթէ պարոնն ուզում է գաղափար տալ իր «Հայ հեղինակների» մասին, անխտիր պիտի ընթերցողների դատաստանի առաջ դնէր բոլոր թերթերի մէջ յայտնւած թէ նպաստաւոր ու թէ աննպաստ կարծիքները: Իսկ երբ պ. Վանցեանն իր ապրանքը գովելու համար՝ միմիայն նրա մասին եղած նպաստաւոր «կարծիքներն» է զետեղում, այդ շատ անախորժ տպաւորութիւն է թողնում: Ի՞նչ հարկ կար «Գրպանի ուղղագրութեան» մէջ զետեղել մի այլ գրքի մասին ռեկլամներ: Շատ պարզ է, որ պ. Վանցեանն իր գրպանային ուղղագրութիւնն կազմելիս՝ առաջնորդւել է միմիայն գրպանային յետին մտքերով:

ՅԱՐՈՒԹԻՒՆ ԹՈՒՄԱՆԵԱՆ

*«Զարկ», շաբաթաթերթ, Թիֆլիս, 3 դեկտեմբերի 1906, N 5, 10 դեկտեմբերի, N 6*

# ՊԱՏՄԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ԼԵԶՈՒԻ[1]
## գրեց ԳՐ. ՎԱՆՑԵԱՆ

Մինչդեռ արեւմտեան հայերէնը՝ իբրեւ յղկուող ադամանդ մը՝ հետզհետէ նոր ճաճանչներ կը փողփողէ, եւ մատաղ տունկի մը նման կ՚աճի գրաբարի նեցուկին խաղապատուած, հեռուն՝ կովկասեան բարձունքներու մէջ՝ իրեն ախոյեան կանգնած է ուրիշ մատենագրութիւն մը, ուրիշ հայերէն մը որ հազիւ ԺԹ դարուն սկիզբները՝ կովկասեան գաւառաբարբառներով կազմուած, եւ հաստատուած հոն՝ լեռներու մէջ,- հետեւաբար հեռու շփման եւ զարգացման պայմաններէն,- արդէն իսկ՝ շուտով հսկայացած մանուկի մը նման՝ կը ներկայանայ հզօր կուսակցութիւն մը՝ հակակշիռ արեւմտեանին:

Ո՞վ եղաւ Կովկասեան հայերէնի հիմնադիրը.- Անանուն ամբոխէն զատ՝ որ լեզուի մ՚առաջին հեղինակն է միշտ՝ Ներսէս Աշտարակեցին:

«Արեւելեան լեզուն,- կ՚ըսէ Վանցեան,- Ներսիսեան դպրոցին շնորհիւ հաստատուեցաւ»:

Ուրիշ տեղ մը. մեր «լեզուն ուրեմն, լաւ թէ վատ, ստեղծուեց Ներսիսեան դպրոցում»:

Արդ՝ իբրեւ յուշարար անցեալ դարու արեւելահայ գրական պատմութեան՝ Գր. Վանցեանի «Պատմական քերականութիւնը» յետ խօսելու ընդհանրապէս լեզուի ծագման վրայ, եւ գլխաւորապէս մի քանի գաւառաբարբառներու (արարատեանի, զօկերէնի, Ղարաբաղի), յետ երբեմն թեւածելու գրաբարին շուրջը,- դարաւոր բունը՝ ուսկից կը ճիւղաւորին գաւառաբարբառները,- կը ծոխանայ իննեւտասներորդ դարու Կովկասահայ մատենագրութեան եւ անոր ներկայացուցիչներուն վրայ, որ դիւցազներն են իր պատմութեան. եւ ասոնց ոճին եւ լեզուին վրայ գաղափար մը տալու համար՝ այլեւայլ նմոյշներ ի մէջ կը բերէ:

Կը խօսի մանրամասն Ներսիսեան դպրոցի, Լազարեան ճեմարանի, Դորպատի վրայ. անոնց կրկնել տալով, ընթերցողին աչքին առաջ, իրենց՝ պատմութեան մէջ կատարած դերը:

Լեզուաբանականին հաւասար տեղ կը բռնէ՝ Վանցեանի երկին մէջ՝ պատմական բաժինը, ըլլալով նոյնքան խնամուած եւ օգտաշահ:

---

1 Տպագրուած ի Թիֆլիս, տպ. Մ. Վարդանեանի Գան. Փ. N 3, 1906: Այս իր երկը կը բաժնուի քսանուերկու երկայն գլուխներու եւ 242 էջերէ կը բաղկանայ:

Այս իր երկը, հայրենասիրական զգացումով ոգեվառ, ոչ միայն իբրեւ շարժանկարի (սինէմաթոկրաֆ) տեսարաններ կ՚անցընէ ընթերցողի առջեւէն Կովկասահայ մտքի յաղթանակները՝ այլ Պ. Վանցեան միանգամայն իբրեւ անաչառ դատաւոր՝ համեմատութեան դնելով Պոլսահայ եւ Կովկասահայ մատենագրութիւնը, չի վարանիր յափշտակուած նայուածք մ՚ուղղել առաջնոյն եւ վերջնոյն ստորնութիւնը խոստովանիլ,- եթէ ոչ ամէն մասի՝ գէթ ճաշակի մէջ.

«Մանաւանդ,- կ՚ըսէ,- եթէ մեր բանասէրները մի քիչ փոխ առնեն արեւմտեան Հայերի հմտութիւնն ու ճաշակը՝ լեզուի մէջ»:

Այս յայտնի է, իրաւցնէ, որ Կովկասահայք չունեցան մինչեւ մեր օրերը՝ գրեթէ՝ լեզուին այն անոյշ ձեւերը, դարձուածքները, փափկութիւնները եւ նրբութիւնները, որով պոլսահայ բարբառը այնքան հրապոյր ու շնորհք կը զգենու:

«Մի ուրիշ տարօրինակութիւն արեւելեան բարբառների այն է որ ձեւափոխուելու եւ զարգանալու յայտնի ձգտումների հետ՝ զուրկ է նրբութեան եւ կոկութեան զգացումներից»:

Որոշ է դարձեալ որ գրաբարի ցանկապատէն դուրս ոստողները առաջին անգամ Տաճկահայք եղան, որոնք անմիջապէս շփուելով լատին ազգերու հետ, առին անոնցմէ գրական ճաշակը, գաղափարներու շնորհաձեւ արդուզարդեր, վերջապէս ձեւեցին աշխարհաբարը անոնց կաղապարին վրայ:

Ընդհակառակն Կովկասահայք, աւելի ուշ իմացան «որ ժամանակ է թօթափելու գրաբարի ծանր ու կաշկանդիչ կապերը» եւ ապա շփուելով գերման ցեղին հետ, ինչպէս դիտուած է յաճախ, ստացան անոնցմէ աշխատանքի տոկունութիւնը: Բայց գերման լեզուն նշանաւոր չէ փափկութեամբ, ինչպէս իր գրագէտները՝ ճաշակով: Ռուսահայք ալ զրկուեցան անոնցմէ շատ տարիներ.

«Ի նկատի ունենալով նուագայնութեան օրէնքը, մեր արեւմտեան լեզուն մի փափուկ ցածր եւ համեմատաբար արագ խօսելու, հետեւաբար սալօնի լեզու է: Մինչ արեւելեանը բարձր եւ կոպիտ խօսելու, ուրեմն լեռնային լեզու է»:

Բայց Ռուսահայք ծանօթանալով արեւմտեան հայերէնի, ու նաեւ ուղղակի, ֆրանսական ձգիչ մատենագրութեան հետ, սկսան նրբանալ նաեւ ճաշակի մէջ: Այսպէս ուրեմն հայութեան երկու մեծ զանգուածները տարբեր ճամբաներու հետեւելով, յարեցան լատին եւ սլաւ կամ գերման ցեղերու, բնականաբար առանց զերծ մնալու կլիմային անխուսափելի

ազդեցութենէն:

Արեւմտեան հայք, նախ եւ առաջ, դեռ բուն գրական գործին ձեռք չի զարկած, սկսան լեզուական օրէնքներ աւանդել եւ անոնց համեմատ հայացնել օտարազգի գլուխ գործոցներ:

Կովկասահայք, ընդհակառակն, անմիջապէս եւ բուռն եռանդեամբ գործնականին մէջ մտան, գրաբարի կաշկանդիչ կապերէն ազատուելու համար, ինչպէս կ'ըսէ Վանցեան: Բարեբախտաբար շնորհիւ տաղանդաւոր անձինքներու չկասեցան ծանր գործը առաջ տանելէ, եւ յաջողեցան հաստատուն ուղղութիւն մը տալու լեզուին եւ մատենագրութեան:

Պր. Վանցեանի երկը շահեկան է ոչ միայն արեւելեան լեզուի, այլ եւ գրաբարի պատմութեամբ հետաքրքրուողներուն. նա կը ջանայ ցուցնել գրաբարէն ալ հին հայերէն մը՝ մեր արդի գաւառաբարբառներուն մէջ: Այս խնդիրը կարեւոր է յոյժ եւ կ'արժէ իր փաստերը մէջ բերել.

Ի՞նչ էր արդեօք Հայերէնի վիճակը հնումը. ունէ՞ր նա արդեօք որ եւ է բարբառ, հաստատ վկայութիւն չ'ունինք:- Թէպէտ ընդհանուր լեզուաբանական օրէնքով եւ ներկայի դեդուկցիայով դա անկասկածելի է թւում եւ Կորիւնի խօսքերը գրեթէ հաստատում են այդ եզրակացութիւնը. «Հրաման առեալ ի թագաւորէն սկիզբն առնելոյ զխուժադուժ կողմանսն Մարաց, որք... վասն խեցբեկագոյն եւ խոշորագոյն լեզուին դժուարամատոյցք էին... առեալ պարզախօսս, հռետորաբանս կրթեալս... կացուցանէին...»:

Այդպիսի բարբառների գոյութիւնը որքան անկասկած, նոյնքան էլ ցաւալի է, որ ոչինչ չէ հասած հնութիւնից մեր ձեռը գրական լեզուից դուրս, որ մի գաղափար տար ժամանակակից որ եւ է բարբառի մասին: Ներկայ բարբառներումն էլ ինչպէս հմտօրէն ցոյց է տուել Այտընեանն իր քերականութեան մէջ չկայ մի ձեւ, որ իր սկիզբը չունենար գրաբարում:

Հայ բարբառների նորագոյն ուսոյթները սակայն ցոյց տուին, որ այդ կարծիքը լիովին ճիշտ չէ: Առաջին անգամ մենք մատնանիշ արինք մի այդպիսի երեւոյթ զօկերէնում, որ չէր կարող գրաբարից ելած լինել[1]:

Այսպէս՝ յայտնի է, որ գրաբարի այ երկբարբառը կենդանի բարբառներում երեւան է գալիս ա, է, կամ ի ձեւով. այս - աս, էս, էսիկ, իսիկ. գայլ - գալ, գէլ, (գիլու). այլ - ալ, էլ. սայլ - սալ. հայր - հար, հէր, եւ այլն:

Զօկերէն այդ կանոնին չի' ենթարկուել եւ այ պահել է գրաբարի

1 «Հանդէս Ամսօրեայ», 1899, N 5. 1901 թ., N 5, 6. «Նախահայերէնի հետքեր զօկերէնում»:

անարատութեամբ. ինչպէս օր. մայր, հայր, եւ այլն... իսկ մի շարք այլ բառերում նոյն իսկ գրաբարի կարճ եւ ամփոփ ձեւը նրանում լայնացել, երկարացել է. տէր - զօկերէն տայր, միս - մայս, սպիտակ - սպայտակ, սիրել - սայրիլ, եւ այլն:

Ենթադրել թէ զօկերէնը միւս բարբառներին հակառակ զարգացման ընթացք է ունեցել՝ անկարելի է, որովհետեւ նրա մնացեալ տարրերում ամփոփման կանոնը կատարելապէս պահպանել է իր զօրութիւնը, այն էլ շատ ազդու կերպով. գնալ - դարձել է նօլ լեզուի զարգացման ընթացքի համեմատ, այն ինչ քիթ - դարձել է քայնթ, նոյն ընթացքին հակառակ:

Ո՞րն է սրանցից հինը. քիթ հին ձեւից չէր կարող դուրս գալ քայնթ. ընդհակառակը քայնթ ձեւից - քանթ, քէնթ-քէթ, քինթ[1] եւ քիթ ամենայն դիւրութեամբ: Ուրեմն զօկերէնն աւելի հին է քան գրաբարը:

Որպէս զի մեր ասածն առանց տարակոյսի հաստատել կարենանք, հարկաւոր է նաեւ գրաբարի վկայութիւնը: Տէր բառը գրաբարում զարտուղի հոլովում ունի: Տե-առն, ի տե-առնէ, տե-արք եւ այլն: Այս հոլովներից երեւում է, որ սա մի պարզ բառ չէ, այլ կազմուած է տե կամ տի մասնիկից եւ այր (առն - արք) բառից, ինչպէս տի-կին, տի-եզերք բառերը[2]: Արդ՝ այս հոլովներից պարզ է եզրակացնել, որ տէր-ի նախնական ձեւը պիտի լինէր տիայր կամ տայր: Զօկերէնում հէնց այսօր էլ պահուած է այս վերջինն անարատ, որից ամփոփուելով ծագել է նորագոյն գրաբար ձեւը՝ տայր - տար - տէր: Այս ձեւի հնութիւնը զօկերէնում ենթադրութիւն չէ, այլ հէնց գրաբարից վկայուած մի իրողութիւն: Այդ վկայութիւնն աւելի ամրանում է նրանով, որ Ղարաբաղի եւ Թիֆլիզի բարբառներն էլ, պահել են այդ ձեւերի միջին աստիճանը, օրինակ.

1) Զօկ. 2) Ղարաբաղ 3) Գրաբար

տայկ տէկ տիկ
մայս մէս միս
(սայրտ) սարտ սէրտ սիրտ
մայտք մէտք միտք
ծայծ ծէծ ծիծ

1 Քէթ պահուած է Ղարաբաղի բարբառում, քինթ - Թիֆլիզի բարբառում:

2 Տի մասնիկն ինչպէս երեւում է, նշանակում էր մեծ, զօրաւոր. տի-կին = մեծ կին, իշխանուհի, թագուհի. տի-այր = մեծ մարդ, իշխան, տէր. տի-եզերք = մեծ եզերք, անեզերք:

կնայկ կնէգ կնիկ[1]
կծայկ կծէկ կծիկ
քայնթ, քինթ (Թիֆլ.) քէթ քիթ

Այսպէս հին են. մայրուք - միրուք (Էրզրում) – մօրուք. մաջին - միջին, (ուրեմն մէջ = մայջ). հայնգ - հինգ. մտայկ - մտիկ, կռայւ - կռիւ. պղայնձ – պղինձ. պայտք - պէտք. սպայտակ - սպիտակ. թայն – թի. հայն - հին, եւ այլն:

Այստեղից ծագող եզրակացութիւնները խիստ հարցասիրական են. մենք տեսնում ենք, որ գրաբար եւ մեր մնացեալ բարբառների է եւ ի համապատասխանում են նախահայերէն այ երկբարբառին. օր. գաւառական խէթ - խիթել, ենթադրում է մի նախորդ որ է, ի ինչիւնների տեղ այ պիտի ունենար, խայթխայթել. իրօք, այդ բառերը պահուած են գրաբարում իրանց նախնի նշանակութեամբ:

Գրաբարի տէրը - տեսանք ծագում է տայր բառից, իսկ տիրել, անտարակոյս ենթադրում է մի տայրել նախորդ, որն աւելի ամփոփ գտնում ենք գաւառական տարել (տարեցի, gagner-gewinnen Էրզրումի բարբառ) բայի մէջ: Չօկերէնի սարը հարկաւ ենթադրում է մի սայր գոյական, որից ելած է «սէր», ծայծ-ծիծ-ծծել, ենթադրում է եւ մի նախորդ «ծայծել»:

Գրաբ. կին - պէտք է լինէր կայն, որ երեւում է յոգնակի - կանայք ձեւից:

Գր. Վանցեանի հետ կը շրջինք ո՛չ միայն մերձաւոր անցեալին, այլ եւ խորագոյն հնութեան մէջ: Իր գիրքը կրթութիւն մ՛է եւ զբօսանք. հաճոյական է ինչպէս դալարագեղ դաշտի մը մէջ հնախօսական պեղում մը:

**

*«Բազմավէպ», 1907 թ. յունիս, թիւ 6, էջ 273-276*

*Գ. Վանցեան, Հայոց պատմութիւն ծխական դպրոցների համար (Բ. տպագրութիւն, պատկերազարդ Թիֆլիս, 1908), Գրիգոր Վանցյան, Երկերի ժողովածու, հ. 2, էջ 488-490*:

1 Այս երկու բառերից էլ երեւում է, որ իկ եւ ակ փաղաքշական մասնիկը մի եւ նոյն ծագումն ունին եւ նախնի այկ մասնիկի ամփոփումն են:

## Գ. Վանցեան.- Հայ հեղինակներ. Գ, տպ. Տփղ. 1909. էջ 382: Գինը՝ 1 րբ.:

Յանգուցեալ Գ. Վանցեանի «Յայ հեղինակներու» երրորդ տպագրութիւնս անշուշտ առհաւատչեայ մըն է բարձրաքարոզ անոր մեծ գնահատման հասարակութենէ: 1905-ին ընդունած իր ծնունդն՝ այսօր Գ. տպագրութեան կ'արժանանայ, «բարեփոխած եւ հարստացրած», ինքնին հաւաքչի ձեռօք: Առաջին երկու տպագրութեանց մէջ հաւաքչին նպատակն եղած էր պարզապէս ծանօթացընել հայ ուսանողութիւնն իր ազգային թէ՛ Արեւելեան եւ թէ՛ Արեւմտեան նշանաւոր հեղինակներուն հետ, նախ անոնց կենսագրութիւնը համառօտիւ գծելով, եւ ապա միտքն ու գաղափարը փոքր ի շատէ ցոլացընելով անոնց գրութիւններէն քաղուածոյ հատուածներով: Գ. տպագրութեանս «բարեփոխած եւ հարստացրած» ըլլալու առաւելութիւնը առաջնոյն վրայ յայնմ է որ աւելի նպատակայարմար եղանակաւ ծոխացուած է՝ հատուածներուն ստորեւ նիւթին վերաբերմամբ աշակերտ պատանեաց ուղղուելով հարցումներ իրահանգի համար. մերթ համեմատել կը տրուի հեղինակի մը այս ինչ արձակ կամ ոտանաւոր գրուածքը ուրիշ հեղինակի մը նման գրուածքին հետ, մերթ յառաջ բերուած հատուածներուն վրայէն շարադրութեան նիւթեր կը մատակարարուի անոնց: Բաց աստի, թէպէտ «Յայ հեղինակներ» անունը կը կրէ, սակայն արդեամբք ըլլալու էր յարակից նա եւ «Յայ թարգմանիչներ», ինչպէս ինքն իսկ աշխատասիրողը դիտել կու տայ յառաջաբանին մէջ. որով պատանեաց թարմ մտքին ճաշակ կը կտրուի ո՛չ միայն իր հարազատ ազգակիցներուն հետ մտածելու, այլ նաեւ օտար կիրթ մտքերն ալ հայացնելու, եւ այս ահա՝ երկրորդ առաւելութիւնն է: Գովելի է եւ երրորդը. բաց ի նորագոյն հեղինակներէն կան թարգմանաբար յառաջ բերուած կտորներ - թէ եւ սակաւաթիւ - մեր հնագոյն պատմական մատենագրութիւններէն ալ «աւելի հասկանալի լինելու... աշակերտների դիւրութեան եւ նիւթի հեշտ իւրացման համար» (էջ 4): Ըստ այսմ, «Յայ հեղինակներ»ը այս վերջին տպագրութեամբ աւելի բարձրագոյն դասընթացքներու յարմարելու կը ձգտի: Կը մաղթենք ազնիւ հրատարակչին՝ այրի Մ. Վանցեանի գործոյն չորրորդ եւ աւելի տպագրութիւններ ալ, եւ մանաւանդ պայծառ լոյս «Յայ հեղինակներ»ու Բ. հատորին, որ «տպագրութեան պատրաստ» կը յայտարարուի:

Ի. Ա.

*«Յանդէս Ամսօրեայ», 1909, դեկտեմբեր, թիւ 12, էջ 383*

# Գ. Կ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՈՒՂՂԱԳՐԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆՆԵՐ

Հայ բառարանագրության մեջ առանձնակի տեղ են գրավում ուղղագրական բառարանները, որոնց նպատակն է սովորեցնել թե՛ հայերեն և թե՛ փոխառյալ օտար բառերի ճիշտ ու անսխալ գրելը:

Ուղղագրության հարցը ուսման ընթացքի ամենակարևոր խնդիրներից մեկն է հանդիսանում: Ամեն մի աշակերտից, ուսանողից, գրողից ու աշխատողից պահանջվում է լավ իմանալ ուղղագրությունը: Մեր ուսումնական հաստատությունները միշտ էլ հատուկ ուշադրության առարկա են դարձրել ուղղագրությունը ընդհանուրի սեփականությունը դարձնելու հարցը:

Ուղղագրություն ուսուցանելու, ճիշտ գրված բառի տեսողական-ճանաչողական ամենակարևոր օժանդակ միջոցը բառարանի օգտագործումն է:

Հայերեն լեզվի ուղղագրական բառարանի ակունքները գալիս են միջնադարից, հայտնի է Արիստակես գրիչի բառարանը, որի բազմաթիվ օրինակները տարածված են միջնադարյան շատ ձեռագրերում:

Բոլոր բառարաններն էլ անկախ իրենց բնույթից, լինեն բացատրական թե թարգմանական, հատուկ ուշադրություն են դարձրել նաև ուղղագրության, հաճախ նաև ուղղախոսության խնդիրների վրա, իսկ առանձին դպրոցական-ուսուցողական ուղղագրական նպատակներ հետապնդող բառարանային աշխատանքներ հրապարակ եկան 1900-ական թվականներից հետո և այդ բնական էր, քանի որ այդ ժամանակաշրջանում դպրոցական ցանցը, կրթությունը ավելի լայն տարածում էր ստացել:

Հայերեն աշխարհաբար գրական լեզվի ուղղագրական առաջին բառարանը՝ «Գրպանի ուղղագրությունը» կազմել է Գրիգոր Վանցյանը: «Գրպանի ուղղագրությունը» սահմանափակ բառաքանակով աշխատություն է, բաժանված 4 հիմնական մասի, առանձին-առանձին տրված է Է, Օ, Յ և Ռ տառերի ուղղագրությունը: Յուրաքանչյուր բաժնից առաջ տրված է համառոտ կանոն՝ բնորոշում և ապա Է-ով գրվող բառեր՝ ալէխառն, ալէկոծ, աղէտ - 178 բառ, Օ-ով գրվող բառեր՝ ակօս, աղօթք, աղօթասէր, աղօն... - 186 բառ, Յ-ով գրվող բառեր՝ յագենալ, յագուրդ,

յախճապակի, յախուռն... - 107 բառ, Ռ-ով գրվող բառեր՝ ագռաւ, աթոռ, աթոռակալ, ախոռ, ականակուռ, ամառ - 230 բառ, ընդամենը 701 բառ: Գր. Վանցյանը գրում է. «Որքան ավելի աչքը դիտե և ձեռքը կրկնե այս փոքրիկ բառարանը, այնքան թե մեծը և թե փոքրը ապահով է սխալներից»[1]:

Գ. Վանցյանի «Գրպանի ուղղագրությունը» լավ ընդունելություն գտավ և ունեցավ մի քանի հրատարակություն:

«Գրպանի ուղղագրության» մասին «Մշակ» թերթը գրում է.

«Գրիգոր Վանցյանը մի շատ սրամիտ միջոց է գտել մեր անգրագետ գրականագետներին մի փոքր ի շատե ուղիղ հայերեն գրելու դյուրություններ տալու:

«Գրպանի ուղղագրությունը» բավական մեծ ծառայություն կարող է մատուցանել ու դյուրություն տալ փոքր ի շատե անսխալ գրելու: Դա մի փոքրիկ բառգիրք է, որի մեջ ամփոփված են այն բոլոր արմատական բառերը, որոնց ուղղագրությունը ամենից շատ դժվարություն է ներկայացնում մեր գրողների համար: Եվ այդ բառերը շատ հեշտությամբ գտնվում են պ. Վանցյանի գրքույկի մեջ»[2]:

Գ. Վանցյանի համառոտ աշխատանքը չէր կարող բավարարել ժամանակի աճող պահանջները:

Արտաշես Աբեղյանը 1909 թ. հրատարակում է «Ուղղագրական բառգրքույկը» շուրջ 10000 բառաքանակով, որն ունեցավ մի քանի հրատարակություն: Ա. Աբեղյանի բառգրքույկը հայերենի հին ուղղագրության համար ընդունված, հաջող ուղղագրական բառարանն էր և օգտագործվում էր արևելահայ գրական լեզվում մինչ 1922 թ. ուղղագրական ռեֆորմը, իսկ արտասահմանում՝ առայսօր: Բառարանի IV հրատարակությունը լույս է տեսել 1948 թ. Շտուտգարդում:

1922 թ. երբ տեղի ունեցավ հայերենի ուղղագրական ռեֆորմը, պահանջ զգացվեց ուղղագրական նոր բառարանի, այդ աշխատանքին լծվեց Գևորգյան ճեմարանի նախկին սան Նշան Ալավերդյանը: Բառարանագրին աջակցում էին Մանուկ Աբեղյանը, Հրաչյա Աճառյանը:

Նշան Ալավերդյանի «Նոր ուղղագրական բառագրքույկը» պարունակում է 4400 բառ, նոր ուղղագրության բոլոր անհրաժեշտ կանոններով և դժվար ըմբռնելի բառերի հակիրճ բացատրությամբ:

Նշան Ալավերդյանի բառարանին զուգընթաց շրջանառության մեջ էր Գիսակ Հովհաննիսյանի «Ռ» տառի ուղղագրությունը, այսպես կոչված

---

1 Գ. Վանցյան, Գրպանի ուղղագրություն, Թիֆլիս, 1906, էջ 2:

2 «Մշակ», 1906, N 193:

ուղղագրական մասնակի բառարանը: Անհրաժեշտ ենք համարում նշել, որ այդ ժամանակներում, ռուսական բառարանագրության մեջ նույնպես կազմվում էին ուղղագրական նեղ բնույթի բառարաններ, ինչպես՝ «Употребление буквы ё» (Составители Խ. Լ. Белинский, Ի. Ժ. Крючков, Ծ. Թ. Светлаев).

1940 թ. արևելահայ գրական լեզվի ուղղագրությունը մասնակի բարեփոխման ենթարկվեց, այբուբենի մեջ իրենց ավանդական տեղը գրավեցին Է, Օ տառերը, վերականգնվեցին այդ տառերի գործածության որոշ իրավունքները և ահա այդ պատճառով պահանջ զգացվեց ուղղագրություն ուսուցանող բառարանային նոր աշխատության:

Արարատ Ղարիբյանը 1940 թ. հրատարակեց «Ուղղագրական համառոտ բառարանը» չափազանց սահմանափակ բառապաշարով: Հետագայում՝ հեղինակը, հաշվի առնելով հայերենի զարգացման ընթացքը, ինչպես նաև բառարանի մասին եղած քննադատությունները, մշակեց, ընդարձակեց իր բառարանը և երբեմն առանձին (1945, 1947), երբեմն հեղինակակցությամբ (1956, 1959 թթ. Գ. Պարիսի, 1965 - Գ. Ծեկյանի) հրատարակեց «Հայերենի ուղղագրական նոր բառարան»-ներ 12-17 հազար բառերով:

Ա. Ղարիբյանի ուղղագրական բառարանները պարունակում են ուղղագրական մանրամասն կանոններ՝ հաստատված տերմինաբանական կոմիտեի կողմից:

Ա. Ղարիբյանը, իր բառարաններում, ուղղագրական խնդիրներին զուգընթաց փորձ կատարեց ուղղախոսական նորմաներ սահմանելու: 1956 թ. հրատարակված «Դպրոցական ուղղագրական բառարանին» հավելվածային կարգով կցեց «Ուղղախոսական համառոտ բառարան» (616 բառ): Նշենք, որ ուղղախոսական բառարան կազմելն անհամեմատ ավելի դժվար գործ է, քան ուղղագրական բառարան կազմելը:

Հայերենի ուղղագրական բոլոր բառարաններն էլ ունեցած փոքր թերություններով հանդերձ մեծ օժանդակություն են ցույց տվել հայերեն անսխալ ու ճիշտ գրելու գործին:

Ա. Ղարիբյանի ուղղագրական բառարանները քառորդ դար է, ինչ կատարում են իրենց շնորհակալ դերը:

Ղարիբյանը ուղղագրական բառարանից դուրս կազմել է «Краткий курс армянского языка» աշխատությունը, ուր, հատկապես վերջին հրատարակության մեջ, մեծ տեղ են գրավում գործնական բնույթ կրող ռուս-հայերեն և հայ-ռուսերեն բառարանները:

*

Վանցյան Գրիգոր
ԳՐՊԱՆԻ ՈՒՂՂԱԳՐՈՒԹՅՈՒՆ
I հրատ., Թիֆլիս. 1906:
II հրատ., Թիֆլիս:
III հրատ., Թիֆլիս, 1914, էջ 32, պարունակում է 700 բառ:

*Գ. Կ. Գասպարյան, «Հայ բառարանագրության պատմություն», Երևան, 1968, էջ 463-466 և 522*

Հավելված 1.[1]

**Գրիգոր Վանցեան, «Դպրոցական քերականութիւն», Թիֆլիզ, ա.թ., էջ 61-63**

# ՄԱՄՈՒԼԻ ԿԱՐԾԻՔ ԳՐ. ՎԱՆՑԵԱՆԻ ԵՐԿԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

«Ծեշտում եմ, որ պ. Վանցեանի «Հայ հեղինակները» գնահատելի և դասատուներին յանձնարարելի աշխատութիւն է: Թո՛ղ յօրինողի այս «առաջին փորձը» փորձեն ուսումնարանները և տեսնեն թէ այս գիրքը ո՞րքան հարցասիրութիւն առաջացրեց աշակերտների մէջ դէպի հայ հեղինակներն ու նրանց երկերը»:

*«Մուրճ», 1905, N 4 թ., Յ. Տէր-Միրաքեան*

«Պարոն Վանցեանի այս աշխատութիւնը գալիս է լրացնելու դպրոցական ձեռնարկների մէջ մի շատ խոշոր բաց: Մինչև այժմ կազմուած այդ տեսակի ընտիր հատուածների ժողովածուներից և ո՛չ մէկը չի համապատասխանում իւր նշանակութեանը. կազմողները մեծ մասամբ եղել են կամ հայ գրականութեան ոչ բաւականաչափ ծանօթ անձինք, կամ անճաշակ, կամ միակողմանի և կուսակցական հայեացքների տէր:

Պ. Վանցեանն աշխատել է լինել բազմակողմանի և անկախ որևէ բռնազբօսիկ տենդենցիայից և այս կարելի է ասել յաջողուել է նրան: Նրա գիրքը, որ բաղկացած է 320 մեծադիր էջերից, պարունակում է հատուածներ ռուսահայ գրեթէ բոլոր հայ հեղինակներից, սկսած ամենայայտնիներից մինչև անյայտները: Կան հատուածներ և տաճկահայ գրողների գրուածքներից»:

*«Լումայ», N 1, մարտ, 1905*

«Մեր առաջին է պ. Վանցեանի 320 երեսներ բռնող «Հայ

1 Սույն հավելվածում բերված են Գ. Վանցյանի գրքերի մասին ժամանակի մամուլում տպագրված այն մատենախոսությունները, որոնք հավելվածների տեսքով զետեղվել են հեղինակի մի շարք գրքերում:

հեղինակներ»-ի ստուար հատորը, որը պարունակում է իր մէջ հայ ընտիր հեղինակների ընտիր գրուածքներ: Դրանք ռուսահայ 15 սիրելի հեղինակների և 7 թուրքահայ մեր յայտնի գրողների մի սիրուն, համով, հոտով կազմուած գրական ծաղկափունջ է, որը ոչ միայն որպէս ձեռնարկ, մեր միջնակարգ դպրոցների աշակերտների համար՝ նոյն իսկ հայ ընտանիքներում՝ որպէս ընթերցանութեան նիւթ հետաքրքրական է, և մանաւանդ որ, կազմողը տուել է նմուշների հետ միասին դրանց հեղինակների համառօտ, բայց էական կենսագրութիւնն ու գրական դէմքը: Թէ հատուածների ընտրութիւնը և թէ նիւթերի դասաւորութիւնը արուած է խնամքով և, հէնց դրանով պէտք է բացատրել մեր գրական աշխարհում բաւական հազուագիւտ այն երևոյթը, որ վեց ամսում պ. Վանցեանի «Հայ հեղինակները» ունեցել է երկրորդ տպագրութիւն: Դա գրքի համար ամենալաւ վկայականն է, ուստի և ցանկալի է, որ «Հայ հեղինակները» տարածուին նաև հայ դպրոցների պատերից դուրս՝ հայ ընտանիքներում, ուր «Հայ հեղինակների» իսկական երկերը շատ էլ ընդունուած չեն»:

*«Աշխատանք», N 12*

## ՊԱՏՄԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ԼԵԶՈՒԻ

«Գրիգոր Վանցեանի այս երկը ոչ միայն յստակ գաղափար մը կընծայէ ռուսահայ լեզուի, կազմութեան, քերականութեան, շեշտերուն, այլ և կը պարունակէ հետաքրքիր և նոր տեսութիւններ հայ լեզուի կենսական խնդիրներու վրայ. ըստ հեղինակին՝ Զօկերէնը և Այրարատեան գաւառաբարբառը աւելի հին են, քան գրաբարը. ի մէջ բերած բառերը համոզիչ օրինակներ են»:

*«Բազմավէպ», 1907, մարտ*

«Մեր այն ուսուցիչները, որոնք ուզում են հայոց քերականութիւն աւանդելիս ունենալ պատմական-փիլիսոփայական որոշ նախապատրաստութիւն մեր նոր լեզուի մասին - մեծ օգուտ կստանան Պր. Գր. Վանցեանի այս աշխատութիւնից, որի մասնագիտական քննադատութիւնը մեր նպատակներից դուրս է: Մենք միայն յանձնարարում ենք մեր ուսուցիչների ուշադրութեան այդ գիրքը, որի մէջ ի մի են ամփոփուած շատ նիւթեր արևելահայ լեզուի մասին և որոշ սիստեմի են վերածուած»:

*«Մուրճ», 1906, N 9*

# ԳՐՊԱՆԻ ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆ

«Գրիգոր Վանցեանը մի շատ սրամիտ միջոց է գտել մեր անգրագէտ գրականագէտներին մի փոքր ի շատէ ուղիղ հայերէն գրելու դիւրութիւններ տալու: Ո՞վ չ'գիտէ, որ մեր գրականագէտներից մանաւանդ պարբերական մամուլի մէջ գրողներից մեծ մասը հայերէն գրելու մէջ սաստիկ բոբիկ է... «Գրպանի ուղղագրութիւնը» բաւական մեծ ծառայութիւն կարող է մատուցանել ու դիւրութիւն տալ փոքր ի շատէ անսխալ գրելու: Դա մի փոքրիկ բառգիրք է, որի մէջ ամփոփուած են այն բոլոր արմատական բառերը, որոնց ուղղագրութիւնը ամենից շատ դժուարութիւն է ներկայացնում մեր գրողների համար: Եւ այդ բառերը շատ հեշտութեամբ գտնւում են պ. Վանցեանի գրքոյկի մէջ: Իսկ գրողը մի քանի անգամ միևնոյն բառը փնտռելուց ու գրելուց յետոյ, շատ աւելի շուտ կարող է նրա ուղղագրութեան հետ ընտելանալ, քան եթէ նա վերցնի և երկար ու ձիգ քերականական կանոններ անգիր սովորի»:

*«Մշակ», 1906 թ., N 193*

***

**Գրիգոր Վանցեան, «Գրպանի ուղղագրութիւն», Բ. տպագրութիւն, Թիֆլիզ, ա.թ., էջ 33**

Նոյն հեղինակի

ՅԱՄԱՌՕՏ «ԴՊՐՈՑԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ». կազմուած է վերջերս մշակուած ծրագրի համեմատ, յատկապէս ծխական և պետական դպրոցների համար. գինն է 25 կ.:

Պատմական քերականութիւն արևելահայ լեզուի,
Թիֆլիզ, 1906 թ.

Գ. ՎԱՆՑԵԱՆԻ. գինն է 75 կոպ.

Մեր այն ուսուցիչները, որոնք ուզում են հայոց քերականութիւն աւանդելիս ունենալ պատմական-փիլիսոփայական որոշ նախապատրաստութիւն մեր նոր լեզուի մասին - մեծ օգուտ կստանան Պր. Գր. Վանցեանի այս աշխատութիւնից, որի մասնագիտական քննադատութիւնը մեր նպատակներից դուրս է: Մենք միայն յանձնարարում ենք մեր ուսուցիչների ուշադրութեան այդ գիրքը, որի մէջ ի մի են

ամփոփուած շատ նիւթեր արևելահայ լեզուի մասին և որոշ սիստեմի են վերածուած:

*«Մուրճ», 1906, N 9*

***

**Գ. Վանցեան, «Գրպանի ուղղագրութիւն», Գ. տպագրութիւն, Թիֆլիս, 1914, էջ 28-32**

## «ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ»

Երկրորդ բարեփոխուած եւ հարստացրած տպագրութիւն. դասագիրք ծխական եւ պետական դպրոցների համար. մեր բոլոր յայտնի հեղինակների եւ թարգմանիչների կենսագրութեամբ. թոյլատրուած է Կովկասեան Հոգաբարձուից: Գինն է 1 րուբլի

## ՄԱՄՈՒԼԻ ԿԱՐԾԻՔԸ «ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻ» ՄԱՍԻՆ

«Ծեշտում եմ, որ պ. Վանցեանի «Հայ հեղինակները» գնահատելի եւ դասատուներին յանձնարարելի աշխատութիւն է: Թո՛ղ յօրինողի այս «առաջին փորձը» փորձեն ուսումնարանները եւ տեսնեն թէ այս գիրքը ո՞րքան հարցասիրութիւն առաջացրեց աշակերտների մէջ դէպի հայ հեղինակներն ու նրանց երկերը»: – «Մուրճ», 1905 թ., No 4, Յ. Տէր Միրաքեան:

«Պարոն Վանցեանի այս աշխատութիւնը գալիս է լրացնելու դպրոցական ձեռնարկների մէջ մի շատ խոշոր բաց: Մինչեւ այժմ կազմուած այդ տեսակի ընտիր հատուածների ժողովածուներից եւ ոչ մէկը չի համապատասխանում իւր նշանակութեանը. կազմողները մեծ մասամբ եղել են կամ հայ գրականութեան ոչ բաւականաչափ ծանօթ անձինք, կամ անճաշակ, կամ միակողմանի եւ կուսակցական հայեացքների տէր:

Պ. Վանցեանն աշխատել է լինել բազմակողմանի եւ անկախ որեւէ բռնազբօսիկ տենդենցիայից եւ այս կարելի է ասել յաջողուել է նրան: Նրա գիրքը, որ բաղկացած է 320 մեծադիր էջերից, պարունակում է հատուածներ ռուսահայ գրեթէ բոլոր հայ հեղինակներից, սկսած

ամենայայտնիներից մինչեւ անյայտները: Կան հատուածներ եւ տաճկահայ գրողների գրուածքներից»: – Շիրվանզադէ

*«Լումայ», մարտի No 1. 1905*

«Մեր առաջին է պ, Վանցեանի 320 երեսներ բռնող «Հայ հեղինակներ»-ի ստուար հատորը, որը պարունակում է իր մէջ հաայ ընտիր հեղինակների ընտիր գրուածքներ: Դրանք ռուսահայ 15 սիրելի հեղինակների եւ 7 թուրքահայ մեր յայտնի գրողների մի սիրուն, համով, հոտով կազմուած գրական ծաղկափունջ է, որը ոչ միայն որպէս ձեռնարկ՝ մեր միջնակարգ դպրոցների աշակերտների համար, նոյն իսկ հայ ընտանիքներում որպէս ընթերցանութեան նիւթ հետաքրքրական է, եւ մանաւանդ որ, կազմողը տուել է նմուշների հետ միասին դրանց հեղինակների համառօտ, բայց էական կենսագրութիւնն ու գրական դէմքը: Թէ հատուածների ընտրութիւնը եւ թէ նիւթերի դասաւորութիւնը արուած է խնամքով եւ, հէնց դրանով պէտք է բացատրել մեր գրական աշխարհում բաւական հազուագիւտ այն երեւոյթը, որ վեց ամսում պ. Վանցեանի «Հայ հեղինակները» ունեցել է երկրորդ տպագրութիւն: Դա գրքի համար ամենալաւ վկայականն է, ուստի եւ ցանկալի է, որ «Հայ հեղինակները» տարածուին նաեւ հայ դպրոցների պատերից դուրս հայ ընտանիքներում, ուր «Հայ հեղինակների» իսկական երկերը շատ էլ ընդունուած չեն»:

*«Աշխատանք», No 12*

Изданіе хрестоматіи, какъ учебнаго пособія, требуетъ отъ составителя уменія систематизировать литературный матеріалъ такъ, чтобы ученикъ по избраннымъ образцамъ изящной литературы могъ легко ознакомиться съ характеромъ творчества авторовъ и вместе съ темъ усвоить литературное знаніе языка. Этому требованію въ достаточной степени удовлетворяетъ вышедшій вторымъ изданіемъ сборникъ Гр. Ванцяна “Армянскіе авторы”, въ которомъ нашли место отрывки изъ произведеній корифеевъ армянской литературы съ краткимъ біографическимъ очеркомъ последнихъ, что такъ необходимо для полноты знанія ученика жизни и деятельности изучаемыхъ авторовъ.

Сборникъ г. Ванцяна можетъ служить для учениковъ армянъ полезнымъ учебнымъ пособіемъ по классу армянскаго

языка и словесности, который до последняго времени у насъ не существовалъ.

Т. Л., No 47. 1906 г.

Приветствуя появленіе въ светъ подобнаго руководства, въ которомъ чувствуется крайняя необходимость какъ въ правительственных учебныхъ заведеніяхъ, такъ и въ арм. школахъ при преподаваніи родного языка, мы не можемъ не указать на те достоинства, благодаря которымъ учебникъ этотъ получилъ такое широкое распространеніе, что пришлось издать его черезъ несколько месяцевъ 2-мъ изданіемъ. Учебникъ этотъ содержитъ богатый матеріалъ для чтенія и изученія произведеній лучшихъ арм. писателей, а также для характеристики литературной деятельности последнихъ, чему много способствуютъ также составленные г. Ванцяномъ кратко и популярно біографическіе очерки писателей. Подборъ же статьей и стихотвореній какъ по языку, такъ и по содержанію вполне удовлетворительный, что делаетъ этотъ учебникъ ценнымъ вкладомъ въ арм. педаг. литературе.

"Новое Обозреніе", No 33. 1906 г.

***

**Գ. Վանցեան, «Հայոց պատմութիւն», Բ. տպագրութիւն, Թիֆլիս, 1908, էջ 152**

Григорій Ванцянъ. "Армянскіе авторы". Второе изданіе дополненное. Тифлисъ, 1906 г.

Изданіе хрестоматіи, какъ учебнаго пособія, требуетъ отъ составителя уменія систематизировать литературный матеріалъ такъ, чтобы ученикъ по избранным образцамъ изящной литературы могъ легко ознакомиться съ характеромъ творчества авторовъ и вместе съ темъ усвоить литературное знаніе языка. Этому требованію въ достаточной степени удовлетворяетъ вышедшій вторымъ изданіемъ сборникъ Гр.

Ванцяна “Армянскіе авторы”, въ которомъ нашли место отрывки изъ произведеній корифеевъ армянской литературы съ краткимъ біографическимъ очеркомъ последнихъ, что такъ необходимо для полноты знанія ученика жизни и деятельности изучаемыхъ авторовъ.

Сборникъ г. Ванцяна можетъ служить для учениковъ армянъ полезнымъ учебнымъ пособіемъ по классу армянскаго языка и словесности, который до последняго времени у насъ не существовалъ.

“Тифл. Листокъ”

# ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՈՒՄ

Զայնակցելով մեր հրաւէրին՝ ուսանողների մասին ստատիստիկական տեղեկութիւններ տալ՝ մեր աշխատակից պ. Գրիգոր Վանցեան ուղարկել է մեզ ցուցակներ ձմեռուայ կիսամեակի հայ ուսանողների Բերլինի, Հալլէի, Ստրասբուրգի եւ Մարբուրգի համալսարաններում եւ Դարմշտատի պոլիտեխնիկումի՝ նոցա վերաբերեալ եօթ հարցերի պատասխաններով: Թողնելով այդ ցուցակների հրատարակումը գալ անգամին՝ առայժմ տալիս ենք հետեւեալ թուանշանները. Հայ իսկական ուսանողների թիւն է Բերլինում 26, Հալլէում 3, Ստրասբուրգում 1, Մարբուրգում 1, Դարմշտատում 3: Իսկ Լայպցիգում, որպէս տեղեկացնում է մեզ մեր աշխատակից պ. Ատոմ Ճաhէն, հայ ուսանողների թիւը այժմ 7-ն է, որից 6-ը իսկական ուսանող: Սոցա մասին մանրամասնութիւնները յետոյ ենք թէ կուղարկուեն:

*«Մուրճ», 1898, N 4, էջ 583*

# ՎԱՀԱՆ ՏԵՐ-ԱՌԱՔԵԼՅԱՆ

# ԱՆՀԻՇԱՉԱՐ ՄԱՐԴԸ

Կոմիտասի հետ կապված իմ հիշողությունները մեկը մյուսից ավելի վառ ու գունեղ են, որովհետև Էջմիածնի գորշ իրականության մեջ նա այնպիսի պայծառ մի դեմք էր, որի ցայտուն գծերը երբեք աղոտացնել չի կարող ժամանակը:

Պետք է ասեմ, որ ճեմարանի ամբողջ աշակերտությունը սրտանց սիրում էր պարզ ու կենսուրախ Կոմիտասին և լիովին վայելում էր նրա ջերմ սերն ու ընկերական վերաբերմունքը, գիշերօթիկ սաների հատուկ խանդավառությամբ համախմբվելով նրա շուրջը և լսելով նրա մտերմական կատակներն ու սրախոսությունները:

Այդպիսի սիրաշող շրջանակների մեջ դնելով իր փոխհարաբերությունները ճեմարանի աշակերտության հետ ընդհանրապես, Կոմիտասն առանձնապես գուրգուրում էր ձայնեղ և երաժշտասեր տղաներին: Վերջիններիս թվին էր պատկանում նաև տողերիս գրողը: Եվ ամեն անգամ, երբ նա գրի էր առնում և մշակում

ժողովրդական որևէ երգ կամ եկեղեցական մոտիվ, գալիս էր ճեմարանի հանդիսարանը կամ կանչում էր մեզ իր մոտ, երգել էր տալիս մեզ և տեղն ու տեղը ուղղումներ անում:

Կոմիտասի արտասահմանից վերադառնալուց անցել էր 6-7 ամիս: Այդ ժամանակամիջոցում նրա ցուցաբերած աշխատանքն արդեն որոշակի հմայք ու համբավ էր ստեղծել նրա շուրջը. նրա համեստ խուցը դարձել էր հայ երաժշտական արվեստի ուխտատեղի բոլոր նրանց համար, որոնք այցելության էին գալիս Էջմիածին: Նրա ոգևորությունը և ստեղծագործական թափը խփում էր զորեղ շատրվանի պես: Սակայն, Էջմիածնի սևագլուխ կղերն այնքան էլ հաշտ աչքով չէր նայում «յար» և «սեր» երգող «վանականին», որի քառաձայն պատարագից «լութերականության հոտ էր փչում»:

Մինչ այդ, մեր մամուլի մեջ լույս տեսավ մի հոդված, որտեղ խոսելով Կոմիտասի մասին, կեղծ-անվանի հոդվածագիրը եզրակացնում էր. «Երեք ու կես տարում կոշկակարություն սովորել չի կարելի, չէ թե երաժշտություն»:

Էջմիածնի վեղարավոր ագռավների վայրահաչությունը Կոմիտասը չլսելու էր տալիս, բայց արտառոց հիշյալ հոդվածը լուրջ վիշտ պատճառեց նրան, թեև նա ձևացնում էր, իբր հաշվի չի առնում հոդվածագրի խոսքերի պարունակած թույնը:

Անցան օրեր, շաբաթներ: Ապրիլ ամսին, մի կիրակի, պատարագից հետո Կոմիտասն ինձ ու Մ. Քրիշչյանին կանչեց իր մոտ՝ լսելու «Ծիրանի ծառ, բար մի տար» ժողովրդական մեներգը, որ նա պատրաստել էր խմբի երգակցությամբ:

Տաճկական սև սուրճով մեզ հյուրասիրելուց հետո մենք գործի անցանք, երբ դուռը ծեծեցին:

- Herin (մտեք),- հնչեց նրա դուրալի տենորը:

Ներս մտավ վիպասան Վրթանես Փափազյանը, ձեռքին ջութակի ֆուտլյար և կարճահասակ գիրուկ մի մարդ, որին ներկայացրեց Փափազյանը Կոմիտասի հետ ողջագուրվելուց հետո, ասելով.

- Հայ բոշաների բանասեր Գրիգոր Վանցյան:

Վերջինս կարմրեց և իր մազոտ աջով ամուր սեղմեց մեր ձեռքը, մնալով կանգնած՝ մի տեսակ շփոթված դրությամբ:

Կոմիտասը եկվորներին ևս սուրճ հրամցնելուց հետո՝ նրանց խնդրանոք նստեց ֆիզհարմոնիայի[1] դիմաց, սկսեց նվագել և երգել իր

1 Կոմիտասը դաշնամուր չուներ և իր աշխատությունները գրելուց հետո գալիս էր ճեմարանի

ներդաշնակած ժողովրդական «Լե-լե»-ներից ու եկեղեցական երգերից զանազան կտորներ, մեծ հիացմունք պատճառելով նրանց:

Ընդհատելով երգն ու նվագը, Կոմիտասը դարձավ Փափազյանին.

- Վրթանես ջան, մի բան էլ դու չալիր, ես լսեմ:

- Ուրախությամբ: Հենց այդ նպատակով էլ ես ջութակս բերի հետս, որ նվագեմ քեզ համար քրդական «Լուր-դա-լուր»-ը: Դա Տաճկաստանում ապրող քրդերի մեջ չափազանց տարածված ու սիրված մի լեգենդ է, որը ես մշակել եմ և շուտով հրատարակելու եմ:

Նստած մեր տեղերում, մենք դարձանք լարված ուշադրություն:

Կոմիտասը կանգնեց իր բարձր գրասեղանի դիմաց, հյուրերից աննկատելի կերպով վերցրեց մի թերթ սպիտակ թուղթ, մատիտ և ծնոտը հենած ձախ ձեռքի բռունցքին ու աչքերը հառած Փափազյանին, լսում էր նրա նվագը և միաժամանակ՝ հայկական ձայնանիշներով գրի էր առնում «Լուր-դա-լուր»-ը:

Նա աչքը գցում էր թղթին միայն այն մոմենտներին, երբ պետք էր որոշել նոր տողի սկիզբը:

Փափազյանը նվագում էր սրտախտիտ ջերմ զգացումով: Քրդական մեղեդին, օդի մեջ փողփողող երկար ժապավենի պես, մե՛կ շեշտակի ձգվում էր դեպի վեր, մե՛կ գլխապտույտ արագությամբ իջնում էր վար, թավահնչյուն մրմնջում, քթքթում և ապա նորից սահիկ ոլորտով տարածվում էր դեպի բարձրերը: Այստեղ «Լուր-դա-լուր»-ը իրար հետևից վազող թեթև ալիքների շարժումով մղկտաց և հուսակտուր ճիչով մեկից ընդհատվեց, համակելով մեզ թախծի ու անձկության խորին հույզով:

- Ինչպե՞ս է, Կոմիտաս, հավանեցի՞ր,- հարցրեց Փափազյանը, ջութակը վերցնելով կրծքից:

- Հիանալի է: Հավանեցի ու սիրեցի: Այժմ ես նվագեմ, դու լսիր:

Այս ասելով, Կոմիտասը վերցրեց իր գրասեղանից թերթը, մոտեցավ ֆիզհարմոնիային, նստեց ու սկսեց նվագել և երգել «Լուր-դա-լուր»-ը, որ նա նոր ձայնագրել էր տեղն ու տեղը:

Ֆիզհարմոնիայի ծորուն հնչյունները դժվարությամբ էին արտահայտում քրդական մեղեդու արագընթաց տեմպն ու ճկուն

---

հանդիսարանը, որտեղ դրված էր մի փոքրիկ դաշնամուր, ու ձմեռ ժամանակ ծնկները փաթաթած պլեդի մեջ (հանդիսարանի վառարանները չէին վառվում)՝ նա նվագում, ջնջում և ուղղում էր տանը կատարած իր ներդաշնակությունները:

Այս դեպքից երեք թե չորս տարի հետո Ա. Մանթաշյանը նրան նվիրեց համերգային մի լավ դաշնամուր:

ոլորտները, սակայն աներկբա էր, որ եղանակի վերարտադրությունը լիովին ճիշտ էր և հարազատ:

Մենք ամենքս զարմանքով նայում էինք այդ հմայիչ մարդուն, չիմանալով ինչպես արտահայտել մեր հիացմունքը: Փափազյանն ուղղակի ապշել, քարացել էր:

- Կոմիտաս, «Լուր-դա-լուր»-ը դու առաջուց ձայնագրա՞ծ ունեիր:

- Ո՛չ, ձայնագրեցի, երբ դու նվագում էիր:

- Չէ՞ որ դուք կանգնած լսում էիք Վրթանեսի նվագը,- բացականչեց Վանցյանը մի տեսակ արտասովոր տարակուսանքով:

- Ի՞նչ կա որ, ականջս լսում էր, ձեռքս գրում: Ահա. տեսեք:

Նա վերցրեց ֆիզիարմոնիայի վրա դրված թերթը և ցույց տվեց ծուռումուռ տողերով գրի առնված «Լուր-դա-լուր»-ը:

- Չէ՛, ջանըս, այստեղ մի օյին կա, կամ…

- Կամ՝ ի՞նչ, Փափազ:

- Կամ կախարդ ես դու:

- Բոշ բաներ մի խոսիր, կախարդս ո՞րն է:

- Բայց չէ՞ որ չափազանց դժվար է ձայնագրել քրդական եղանակները, որոնք լեցուն են կոտորակային ձայնամիջոցներով:

- Մի՞թե դու կդժվարանայիր ճշտությամբ գրել քեզ արած հայերեն թելադրությունը, որքան էլ բարդ լիներ այն:

- Հարկավ ոչ: Սակայն մեծ տարբերություն կա թելադրության միջև, Կոմիտաս:

- Ինձ համար ոչ մի տարբերություն չկա, այ վարժապետ Փափազ,- «հանգաբանեց» Կոմիտասը զվարթ քրքիջով:

Փափազյանը շեղակի, բայց շեշտակի հայացք նետելով Վանցյանի կողմը, ձայնեց.

- Մի՞թե անբարեխիղճ, անամոթ չէ այն մարդը, որ առանց ծանոթանալու Կոմիտասի հետ, առանց գաղափար ունենալու նրա շնորհքի ու ընդունակությունների մասին, հրապարակով քննադատում է նրան և գրում. «երեք ու կես տարում կոշկակարություն սովորել չի կարելի, չէ թե երաժշտություն»…

- Այդ անամոթ մարդը ես եմ, Կոմիտաս, և ներողություն եմ խնդրում իմ անբարեխղճության համար,- թոթովեց Վանցյանը խեցգետնի պես կարմրելով և ձեռները մեկնելով Կոմիտասին:

Հանկարծակիի եկած Կոմիտասի դեմքը մթագնեց անհաճո զգացումից, բայց վայրկենական այդ մութ ստվերին հաջորդեց լայն ու

պայծառ ժպիտը, և նա սեղմելով իրեն պարզած ձեռները, մանկական անհիշաչարությամբ ասաց.

- Երկու կոպեկ տուր, հոդվածի դառնությունը տանք քամուն:

- Հայր սուրբ ջան, երկու էլ, տասներկու էլ կտամ, միայն ներեք ինձ:

- Ո՚չ, ճիշտ երկու կոպեկ:

Մի քանի տարվա ընթացքում այդպես հավաքած երկու կոպեկներով Կոմիտասը Պարիզում հրատարակեց «Հայ քնար» գեղջուկ երգերի իր առաջին ժողովածուն:

*«Կոմիտաս», ժողովածու՝ նվիրված Կոմիտասի ծննդյան 60-ամյակին, Երևան, 1930, էջ 96-101*

# ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

Այս կորովի ոյժը պարտուած կեանքի դառնութեան անյայտ հոսանքէ մը, Մայիս 5-ին իր եւ կեանքի մէջ եղած յարաբերութիւնը կը խզէ 40 տարեկան հասուն հասակին մէջ:

Գ. Վանցեան ազգային կրթուած դէմքերէն էր. Ներսիսեան վարժարանը աւարտելով յաջողած էր եւրոպա իր ուսումը կատարելագործելու անցնիլ, ուսկից դառնալով՝ Տփղիսի առեւտրական դպրոցի մէջ հայերէն լեզուի դասատուութիւն կ՚ընէր: Հայ ուսուցչութեան յառաջադիմութեան բարեխիղճ մարդիկներէն էր, որուն կորուստը նոր կազմակերպիլ սկսած միութեան զգալի վնաս մըն էր:

Գ. Վանցեան հայ գրականութեան մէջ ալ ձեռնհաս ոյժ մըն էր. ահա իր գրուածոց ցանկը.

1. Դպրոցական քերականութիւն. Ալեքսանդրապոլ, 1906, Բ. տպ. Տփղիս, 1907.

2. Հայ հեղինակներ. Տփղիս, 1905. Բ. տպ. անդ 1906.

3. Հայոց պատմութիւն. Տփղիս, 1906. Բ. տպ. 1908.

4. Պատմական քերականութիւն. Տփղիս, 1906.

5. Գրպանի ուղղագրութիւն. Տփղիս, 1906.

6. Հայ լեզու (պատկերազարդ այբբենարան), Տփղիս, 1907.

7. Армянскіе цыганы. Тифлисъ, 1901.

Բաց ի իր այս գրութիւններէն աշխատակցած է նաեւ այլեւայլ թերթերու՝ ինչպէս եւ «Հանդ. Ամսօրեայ»իս: «Մշակ»ի մէջ իր կենաց վերջի օրերուն տուած յօդուածը առանձին համակրանքի արժանի է, ուր թերեւս կարելի ըլլայ իր կեանքի հրատապ պատկերը նշմարել:

Հ. Ա. ԱՒԵՏԻՍԵԱՆ

«Հանդէս Ամսօրեայ», բարոյական, ուսումնական, արուեստգիտական, ԻԲ. տարի, 1908, թիւ 7, յուլիս, էջ 224

* * *

Մայիսի 5-ին Թիֆլիսում ինքնասպանութեամբ վերջ դրեց իր կեանքին եւ 9-ին խուռն բազմութեամբ ու պսակներով թաղուեցաւ Խոջիվանքի գերեզմանատանը հայ երիտասարդ գրագէտներից մէկը -

Գրիգոր Վանցեանը:- Ներսիսեան դպրոցն աւարտելով հանգուցեալը ուսել էր Գերմանիայում 4 տարի եւ վերադառնալով Թիֆլիս անձնատուր եղել մանկավարժական ասպարէզին, ստանձնելով հայերէնի դասեր Թիֆլիսի Առեւտրական դպրոցում: Նա յայտնի էր եւ պարբերական մամուլի մէջ իր գլխաւորապէս հայերէնի վերաբերեալ լուրջ յօդուածներով ու հայկական կեանքի ուսումնասիրութիւններով, որոնց գլուխ գործոցն է նորա «Հայ բօշաներ» աշխատութիւնը:

Հանգուցեալը կազմել է նաեւ մի շարք դասագրքեր մեր դպրոցների համար, որպէս՝ «Հայ հեղինակներ», «Համառօտ հայոց պատմութիւն», «Պատմական քերականութիւն», «Դպրոցական քերականութիւն», «Գրպանի ուղղագրութիւն» եւ այլն:

Հանգուցեալի եղերական մահը ամէնքին ցաւ է պատճառել. նա թողել է մի նամակ, որով խնդրում է իր մահուան համար ոչ ոքի չմեղադրել:

«Արարատ», պաշտօնական ամսագիր Հայրապետական Աթոռոյ Ս. Էջմիածնի, 1908-ՌՅԾԷ, մայիս-յունիս, համար Ե.-Զ., էջ 600-601

* * *

Սրտի կսկիծով մի անսպասելի եւ ցաւալի լուր ենք հաղորդում: Մայիսի լոյս 5-ի գիշերը ինքնասպանութիւն գործեց գրագէտ եւ Թիֆլիսի առեւտրական դպրոցի ուսուցիչ Գրիգոր Վանցեանը: Հանգուցեալը մի նամակ է թողել, որով խնդրում է ոչ ոքի չը մեղադրել:

*«Մշակ», 1908 թ. մայիսի 6, N 97*

* * *

## Ց. ԽԱՆԶԱԴՅԱՆԻՆ

*<1908, 4-8 մայիսի, Թիֆլիս>*

Սիրելի Ցոլակ

Այսօր գնացել էի Հովի. Թումանյանի մոտ «Իլիա Մուրոմեց»-ի թարգմանությունը վերցնելու և մի բան հարցնելու: Որովհետև պատահմամբ ընկա նրա մոտ, ուստի ոտանավորներս էլ հետս էին: Նա հետաքրքրվեց,

և կարծում եմ նրա կարծիքները քեզ համար անհետաքրքիր չեն լինի, ուստի ուզում եմ համառոտ կերպով քեզ հայտնել մեր խոսակցության բովանդակությունը: Նախ և առաջ ընդհանուր տպավորությունը. մտնում ես մի շքեղ կաբինետ, ուր երեք շկաֆ կա և մի գրքակալ լիքը գրքերով և ընտիր գրքերով: Կաբինետը ճաշակավոր է և տպավորիչ, մանավանդ որ չես սպասում մի այդպիսի բանի հանդիպելու հայ գրողի-բանաստեղծի մոտ:

Գնացել էինք Սաթենիկի հետ:

Ընդունեց շատ սիրալիր: Մոտս էր Հովհաննիսյանի «Բանաստեղծությունները», որի մասին խոսեցինք: Ես հայտնեցի այն միտքը, որ ես ավելի լավ կարծիքի էի այդ բանաստեղծի մասին նախքան այդ ժողովածուն կարդալս: Նա համաձայնեց:

Ապա տեսնելով ոտանավորներիս տետրը՝ ասաց, որ իրան ավելի է հետաքրքրում այդ «նոր բանաստեղծի տետրը»:

Պետք է նկատեմ, որ ես քաշվում էի, մանավանդ որ, չնայած իր պարզության, նա իմ վերա տպավորություն գործեց: Ինչ-որ գյոթեական բան կա նրա մեջ: Գուցե հասա՞կը, կամ հենց այն հանդարտ պարզությո՞ւնը - չգիտեմ:

Նա սկսեց թերթել տետրս: Սաթենիկը շուտով գնաց, որովհետև ասացին, որ Օնիկը եկել է (իսկ նա ինչ-որ խաղ է սկսել վերջինիս հետ): Մնացինք ես ու Թումանյանը:

«Մի բան, որ իմ առաջին պահանջն է ամեն մի սկսնակ գրողից,- ասաց նա,- դա այն է, թե արդյոք մի ինքնուրույն - նոր բան բերո՞ւմ է այդ մարդը կամ ցույց տալի՞ս է նշաններ այդ ունենալու: Ձեր վերաբերմամբ պետք է պատասխանել դրականապես: Դուք բանաստեղծ եք: Դա ամենագլխավորն է: Դուք խոսքերի հետ չեք խաղում: (Օրինակ է բերում Ահարոնյանին, որը խոսքերի հետ խաղում է և դրանով կորցնում է երեք քառորդը իր ունեցածի): Հետո խոսում է արվեստի վերա ունեցած իր կարծիքների մասին և վերջացնում է նրանով, որ ասում է. «Ես ուրախությամբ ողջունում եմ Ձեր մուտքը գրական ասպարեզ - բարո՚վ եկաք»:

Ապա խորհուրդ է տալիս նշանակություն չտալ զանազան թերթերի խոսքերին՝ գովասանական, թե վատաբանական լինեն նոքա - միևնույն է:

Դուք, ասում է նա, ավելի լավ եք սկսում, քան մենք: Ես նկատում եմ, որ այստեղ մեղավորը ժամանակն ու պայմաններն են: Ընթերցողի համար դա նշանակություն չունի, նկատում է նա, երբ ես իբր ընթերցող վերցնում

եմ մի գիրք, ուզում եմ, որ նա բավարարություն տա իմ պահանջներին, ես պարտավոր չեմ հաշվի առնելու նրա ստեղծագործության պայմանները: Հետո խոսեցինք այլ խնդիրների մասին, որ կհաղորդեմ բերանացի: Մի քանի տեղին և նուրբ նկատողություններ արեց, որ ես աչքի առաջ կունենամ, իհարկե:

Համենայն դեպս երևում է, որ խելացի և տաղանդավոր մարդ է:

Ի միջի այլոց խոսեցի մեր Ալմանախի մասին, և երևակայիր, ասում է, որ իրանց մեջ էլ միտք է հղացել մի այդպիսի գործ սկսելու և արդեն կազմել են պոլսեցի և ռուսահայ գրողների ցուցակը, որ պիտի մասնակցեն: Արդյոք սա չի՞ խանգարի մեր գործին: Համենայն դեպս այստեղ կոնկուրենցիայի խնդիր է ծագում:

Հա, ասում է, որ նա (Թումանյանը) իր գրքից մի օրինակ հանձնել է մեկին՝ Ծատուրին ուղարկելու և մեկը՝ Յարճանյանին, սակայն նորերս մեկ ուրիշից լսել է, իբր թե նա, ում հանձնված է եղել գիրքը, առաջին թերթը պատռել է (ուր մակագրություն է եղել) և ծախել՝ այնպես որ հիմա չգիտե՝ արդյոք Ծատուրը ստացե՞լ է գիրքը, թե՞ ոչ. այսինքն արդյոք ուղի՞ղ է իրան հասած այդ լուրը, թե՞ ոչ: Հարցրեց Կուսիկյանի մասին: Հյուրասիրեց թեյով:

Շտապում էի, այնպես որ շատ չնստեցի, թեև առանց այդ էլ արդեն 1 1/2 [ժամ] տևեց մեր խոսակցությունը:

Ահավասիկ իմ ՊՏՄսՈՊ-ը: «ԺՏՉՏսպկ սՌ Ցօ, ՎՏռ չՏրտՏՊՌվ?».

Փողը դեռ չեմ ստացել, այնուամենայնիվ վաղը գիրքս հանձնում եմ տպագրության:

Բարևիր Կուսիկյանին, Ծատուրին և բոլոր ընկերներին:

Քո Վահան

Հա՚, Օնիկը այսօր եկավ Ալլահվերդիից մի օրով՝ գործով, վաղը կգնա: Գուցե հետը ես էլ գնամ, կոռեկտուրան այնտեղ կուղարկվի - մի օրվա ճամփա է, ամեն օր փոստ կա:

Ավետիքը այստեղ չէ:

Երեկ ինքնասպանություն է գործել Գրիգոր Վանցյանը: Այսօր այստեղի վայրենի գիմնազիստները Կազան ազգանունով մի ուսուցչի սպանել կամենալով սպանել են մի 8-րդ դասարանի գիմնազուհիի: Գնդակը վրիպել է ուսուցչից և դիպել օրիորդին: Սպանությունը կատարվել է 3-րդ իգական գիմնազիայում, ուր Կազանը գնացել է դասի:

Վրաս շատ վատ ազդեց այդ դեպքը, որին գրեթե ականատես էի՝

թեև շատ հեռվից, այնպես որ միայն մարդկանց վազվզելը տեսա և լսեցի երեք անգամ արձակված ատրճանակի ձայնը:

Սոսկալի երկիր է, ամեն ինչ այստեղ այլանդակ կերպարանք է ընդունում, ամեն ինչ վայրենի ձևով արտահայտվում և այլասերվում: Եվ մենք պետք է աշխատենք այստեղ, մտածիր՝ ինչքա՜ն ուժ է պետք, ինչքա՜ն տոկունություն:

Քո Վահան

Գրիր հին հասցեով:
[Ողջույն Վարյա - Սոնյա - Հայկո Ko-ին]

Վահան Տերյան, երկերի ժողովածու երեք հատորով, հատոր երրորդ, Երևան, Հայպետհրատ, 1963, էջ 206-209

Վահան Տերյան, երկերի ժողովածու չորս հատորով, հատոր երրորդ, Երևան, «Հայաստան» հրատարակչություն, 1975, էջ 256-258

# ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻՆ[1]

## ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆ ԵՎ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ (ԱՆՏԻՊ ՆԱՄԱԿՆԵՐ)

Հայ մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի և լեզվաբան, հայագետ ու մանկավարժ Գրիգոր Վանցյանի (1840, Ախալքալաքի գավառ, գ. Բեժանո – 1908, Թիֆլիս) փոխհարաբերությունները սկզբնավորվել են 1880-ական թվականների կեսերին, երբ Գրիգորը մի կարճ ժամանակաշրջան գյուղի Սբ. Մինաս եկեղեցուն կից գործող ծխական դպրոցում սովորելուց հետո հարազատների ջանքերով 1885 թ. աշնանն ընդունվում է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի 2-րդ դասարան (այս դպրոցում սովորել է 1885-1890 թթ.): Հենց Ներսիսյան դպրոցում սովորելու տարիներին էլ Գ. Վանցյանը մտերմանում է ապագա բանաստեղծ Հովհ. Թումանյանի հետ: Երբ վերջինս նյութական ծանր դրության պատճառով ուսումը կիսատ թողած (Ներսիսյան դպրոցում սովորել է 1883-1887 թթ.) աշխատում էր Վրաստանի ու Իմերեթիայի թեմական կոնսիստորիայում, եկեղեցում ծանոթանում և մտերմանում է հետագայում հոգևորական օծված Ա. Ղլտճյանի հետ: Այնուհետև, Հովհ.

---

1 Սույն բաժնում բերված առաջաբանը և Գ. Վանցյանի՝ Հովհ. Թումանյանին ուղղված, մինչ օրս մեզ հայտնի թվով 19 նամակներից 14-ը վերահրատարակվում են «Բանբեր Հայաստանի արխիվների» հանդեսից (Վահե Սարգսյան, Գրիգոր վանցյան և Հովհաննես Թումանյան (անտիպ նամակներ), «Բանբեր Հայաստանի արխիվների», Երևան, 2016, թիվ 124, էջ 3-18): Նշված 14 նամակները, նախկինում այլ տեղերում հրատարակված մնացյալ 5 նամակների հետ մեկտեղ, հրատարակվել են նաև «Գրիգոր Վանցյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ» ժողովածուում (Գրիգոր Վանցյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ, կազմող՝ Վահե Սարգսյան, Երևան, 2016, էջ 100-122): Ե. Չարենցի անվան Գրականության և արվեստի թանգարանի Հովհ. Թումանյանի ֆոնդում պահպանվող հիշյալ 14 ձեռագիր նամակները 2016 թ. «Բանբեր Հայաստանի արխիվների» հանդեսում և «Գրիգոր Վանցյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ» ժողովածուում համաժամանակյա կերպով հրատարակվել են առաջին անգամ: Բաժնում տեղ գտած մնացած թվով հինգ նամակները նախկինում հրատարակվել են և այժմ դրանք վերահրատարակվում են համապատասխան հրատարակություններից: Սուրանկյուն փակագծերի (<>) մեջ դրվում են հեղինակի բաց թողած, վնասված կամ անընթեռնելի մասերը, ինչպես նաև մեր վերականգնած և ըստ տրամաբանության ավելացրած տառերը, բառերը, թվերը: Համարյա նույնությամբ պահպանել ենք ոճն ու ուղղագրությունը: Կատարել ենք կետադրական անհրաժեշտ ուղղումներ:

Թումանյանը վերջինիս ծանոթացնում է իր ներսիսյանական դասընկեր, ախալցխացու ընտանիքից սերված և Թիֆլիսում բնակվող Դավիթ (Դաթիկո) Ծաղկամյանի հետ: Շուտով այս «եռյակին» միանում են ևս երկու ներսիսյանցի՝ Արամ Առաքելյանն ու Գրիգոր Վանցյանը: Այսպիսով, 1888 թ. գարնանից (1887-1888 թթ. ուսումնական տարվա կեսեր)[1] միմյանց գրեթե հասակակից հինգ հայ ներսիսյանականներ (որոնցից մեկը՝ նախկին) մտերմանալով, սկսում են հաճախակի հավաքվել Դ. Ծաղկամյանի՝ Թիֆլիսի Նորաշենի փողոցում զբաղեցրած սենյակում, որը գտնվում էր Հովհ. Թումանյանի բնակարանի վերնահարկում: Փաստորեն, սկզբից «եռյակի», կարճ ժամանակ անց՝ «հնգյակի»՝ Դ. Ծաղկամյանի սենյակում ձևավորված գրական-գեղարվեստական այդ խմբակը հիմք դարձավ շուրջ մեկ տասնամյակ անց Հովհ. Թումանյանի տանը ձևավորված «Վերնատան» համար[2]: Ավելին, Ա. Ղլտճյանն այն անվանում է Հովհ. Թումանյանի՝ ցարդ անծանոթ ու անհայտ մնացած առաջին «Վերնատունը», որտեղ և կոփվել է ապագա արձակագրի, գրական-հասարակական գործչի բանաստեղծական տաղանդը: 18-19 տարեկան երիտասարդներից կազմված նորակազմ «հնգյակի» երեկոները անցնում էին բուռն քննարկումների մթնոլորտում: Հովհ. Թումանյանը կարդում էր իր նոր գրած բանաստեղծությունները, որոնք արժանանում էին ներկաների հիացմունքին կամ դիտողություններին: Ապագա բանաստեղծը դարձել էր «հնգյակի» առանցքը: Այդ հավաքներով են հղկվել նրա սիրված մի շարք բանաստեղծություններ և այլ գործեր: Նորաստեղծ խմբակի անդամ Ա. Առաքելյանն այսպես է ներկայացնում իրենց առաջին հանդիպումը. «Նշանակված օրը հավաքվեցինք Ծաղկամյանի մոտ: Այնտեղ էր և Հովհաննես Թումանյանը: Մեր խոսակցությունը Թումանյանի գրվածքների շուրջն էր պտտվում: Վերջում առաջարկեցինք հրապարակ բերել իր գրվածքները և հնարավորություն տալ մեզ ծանոթանալու: Թումանյանը համեստորեն հրաժարվում էր, պատճառաբանելով, թե մի առանձին արժեքավոր բան չեն ներկայացնում այդ գրվածքները: Մեր համառությանն ու պնդումներին նա ստիպված եղավ զիջել: Իսկույն նեթ գնաց և իր բնակարանից, որ նույն տան միջին հարկումն էր գտնվում, բերեց գրելու թղթի թերթերից կարած մի մեծ տետր, մատիտն էլ թելով վրան կապած:

1 Հովհաննես Թումանյանի կյանքի և ստեղծագործության տարեգրություն (1869-1908), Երևան, 2010, էջ 42:

2 Ա. Բաղդասարյան, Վերնատուն.– «Հայոց լեզուն և գրականությունը դպրոցում», 1990, թիվ 5, սեպտեմբեր-հոկտեմբեր, էջ 24:

Տետրը ձեռքե-ձեռք անցավ, և թերթել սկսեցինք ու կարդալ մեկը մյուսի ետևից «Շունն ու Կատուն», «Արև ու Լուսին», «Ամառվա գիշերը գյուղում», «Գութանի երգը», «Աղոթք», «Հին օրհնություն», «Մարո», «Ալեք», «Նահատակ», «Լոռեցի Սաքոն» և մեկը մյուսից գեղեցիկ ու գողտրիկ ոտանավորները»[1]:

1889 թ. խմբակը որոշում է հրատարակել 20-ամյա Հովի. Թումանյանի բանաստեղծությունների առաջին ժողովածուն[2]: Նրանց հետ չի պահում անգամ նյութական միջոցների իսպառ բացակայությունը: Խմբակի անդամներից երեքը որոշում են մեկնել գավառներ (Ա. Առաքելյանը՝ Ախալցխա, Գ. Վանցյանը՝ Ախալքալաք, Ա. Ղլտճյանը՝ Շիրակ) և կազմակերպել հրատարակվելիք գրքի բաժանորդագրությունը: Ահա այս ճանապարհով է լույս աշխարհ գալիս Հովի. Թումանյանի առաջին գիրքը[3]: Մի քանի տարի անց, 1893 թ. ապրիլի 8-ին, Գ. Վանցյանը Հովի. Թումանյանին Ախալքալաքից գրած նամակում խոսելով բանաստեղծություններից մեկի՝ «Կանչի» մասին, իր հիացմունքն է հայտնում հետևյալ խոսքերով. ««Կանչը» ամեն տեղ ֆուրոր է անում. «Это действительно высокохудожественное произведение»: Եթե, Հովհաննես ջան, ուրիշ ոչ մի բան չգրեիր, այդ ստեղծագործությունդ բավական էր քեզ բանաստեղծի կոչմանն արժանացնելու: Ունիս, այո՛, ուրիշ գեղեցիկ բաներ, ունիս և շատ թույլ բաներ, բայց «Կանչը», դա գլուխգործոց է, դա մի գոհար է»[4]: Հավելենք նաև, որ ընկերները մեծ վիշտ ապրեցին, երբ Դ. Շահլամյանը, գտնվելով հոգեկան ծանր վիճակում, 1894 թ. ինքնասպանությամբ հեռացավ կյանքից: Հետագայում (1908 թ.) նույնը պիտի լիներ նաև «հնգյակի» մեկ այլ անդամի՝ Գ. Վանցյանի հետ:

Գրիգոր Վանցյանի և Հովհաննես Թումանյանի՝ պատանեկան

---

1 Արամ Առաքելյան, Ընկերոջս հիշատակին.– Թումանյանը ժամանակակիցների հուշերում, Երևան, 1969 (այսուհետև՝ ԹԺՀ), էջ 288: Այս մասին տե՛ս նաև «Աղոթք» բանաստեղծության (գրվել է 1887 թ. փետրվարին) ծանոթագրությունը. Հովհ. Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու (այսուհետև՝ ԵԼԺ), հ. 1, Երևան, 1988, էջ 546-547:

2 Ա. Ինճիկյան, Հովհաննես Թումանյան. Կյանքի և ստեղծագործության պատմությունը (1869-1899), Երևան, 1969, էջ 230:

3 Տե՛ս Հովհաննես Թումանյանց, Բանաստեղծություններ, Մոսկվա, 1890, 98 էջ: Հովհ. Թումանյանի աշխատանքների տպագրման գործում իր ընկերների նվիրվածության մասին է պատմում «հնգյակի» անդամ Արամ Առաքելյանը (ԹԺՀ, էջ 285-290):

4 Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ, հ. 4, Երևան, 1985, էջ 313, հմմտ.՝ Հովհ Թումանյան, ԵԼԺ, հ. 1, էջ 566: 1891 թ. փետրվարին գրված այս բանաստեղծությունը ժամանակի գրաքննությունն արգելել է տպագրել «Մուրճ» ամսագրում, որի պատճառով այն առաջին անգամ տպագրվել է բանաստեղծի հիշյալ ժողովածուում:

տարիների հարաբերությունները հետագայում ծնունդ տվեցին բանաստեղծի մեկ այլ անմահ ստեղծագործության՝ «Փարվանա» բալլադին: Ջավախքում Փարվանա լճի և կրակի մեջ այրվող թիթեռների մասին տարածված զրույցները Հովհ. Թումանյանն առաջին անգամ լսել է Գ. Վանցյանից: Այս մասին խոստովանում է ինքը՝ բանաստեղծը, «Իմ մի քանի գրվածքների բացատրությունը» վերնագրի «Փարվանա, Վանցյան և Փշրանքներ թե Ջավախքի բուրմունք» ինքնակենսագրական գրառումների մեջ (Հովհ. Թումանյանն այստեղ հիշատակում է այն սկզբնաղբյուրները, որոնց շնորհիվ մտահղացել է գրելու իր այս կամ այն գործը)[1]: Հովհ. Թումանյանի ժառանգների ընտանեկան արխիվում պահվող համար 8 (3) ծոցատետրում Բանաստեղծը «Փարվանային» վերաբերող այսպիսի գրառում ունի. «(Գրիգորն է լսել Ախալքալաք): Փարվանա (կրակի թիթեռ) թագավորը մի աղջիկ է ունենում, ասում է՝ ով որ կրակ բերի, նրան կտամ: Դա գալիս է, կրակի շուրջը պտտվում, որ կրակ տանի և միշտ ընկնում է մեջը, այրվում»[2]: «Փարվանա» լեգենդի մշակման նպատակով Հովհ. Թումանյանն առաջին անգամ Գանձա է գնացել 1901 թ. օգոստոսի 22-25-ը, օգոստոսի 23-ին այցելել է Գանձայից ոչ հեռու գտնվող Փարվանա լիճ[3]: Այցի մասին տեղեկություններ իրենց հուշերում հանգամանորեն ներկայացնում են Վ. Տերյանի ավագ եղբայր Ջավախեցին, ինչպես նաև Ջավախքում հայտնի մտավորականներ Ջալալ Տեր-Գրիգորյանը (Սալլումյանը) և Վարդան Շահպարոնյանը[4]: Գանձա և Փարվանա այցի ողջ ընթացքում Հովհ. Թումանյանին ուղեկցած Ջավախեցին իր հուշերում մանրամասն նկարագրելով բանաստեղծի՝ Ջավախքի բնության տեսարաններից ոգեշնչված ապրումները, բարձր տրամադրությունն ու արտաբերած խոսքերը, ավելացնում է, որ «Փարվանայի» նախերգանքը բանաստեղծը գրել է իրենց իսկ տանը՝ երեկոյան ընթրիքի սեղանի շուրջ

1 Էդվարդ Ջրբաշյան, Հ. Թումանյանի ինքնակենսագրական գրառումները.– Պատմա-բանասիրական հանդես, 1966, թիվ 1, էջ 184, 186:

2 Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ, հ. 5, Երևան, 1998, էջ 253, հմմտ.՝ հ. 2, Երևան, 1969, էջ 420, 459, հմմտ.՝ Հովհ. Թումանյան, ԵԼԺ, հ. 2, Երևան, 1990, էջ 545, 558:

3 Հովհ. Թումանյան, ԵԼԺ, հ. 9, էջ 274-275, 277, 601: 1901 թ. օգոստոսի 21-ով թվագրված և Ախալքալաքից կնոջը՝ Օլգա Թումանյանին ուղղված նամակում Հովհ. Թումանյանը նշում է. «Նամակս հենց վերջացրի, ուզեցի փակել, մի գյուղից մարդիկ եկան հրավիրելու իրենց գյուղը. չկարողացա ոչ մի կերպ մերժել. վաղը գնալու ենք» (նույն տեղում, էջ 275): Իր մեկ այլ նամակում բանաստեղծը նշում է, որ Գանձայում մնացել է 3 օր (նույն տեղում, էջ 277):

4 Ջ. Տեր-Գրիգորյան, Ախալքալաքյան հանդիպումներ.– ԹԺՀ, էջ 400-415, Վ. Շահպարոնյան, Անմոռանալի օրեր.– ԹԺՀ, էջ 416-422, Ջավախեցի, Փարվանայի ափին.– ԹԺՀ, էջ 423-436:

բոլորած գանձացիների առջև, Փարվանա լճի ափից վերադառնալուց անմիջապես հետո[1]:

Գ. Վանցյանի և Հովհ. Թումանյանի միջև նամակագրական կապը շարունակվում է հետագայում, երբ Գ. Վանցյանը 1890-ական թվականներին արդեն ուսուցիչ էր, այնուհետև՝ ուսանող: Նամակների բովանդակությունը հիմնականում վերաբերում է երկու մտերիմ ընկերների միջև գրքափոխանակության, Հովհ. Թումանյանի անդրանիկ ժողովածուների տպագրության և բաժանորդագրության հարցերին[2], Գ. Վանցյանի՝ գավառներից արված թղթակցություններին: Նամակագիրները հետաքրքրվել են ինչպես միմյանց, այնպես էլ մյուս ընկերների վիճակով: Գ. Վանցյանն իր նամակներում հաճախակի անդրադարձել է նաև Հովհ. Թումանյանի ստեղծագործությունների քննության հարցին, երբեմն պիհա նման հորդորով դիմել բանաստեղծին. «...Չմոռանաս նախկին ուղղությունդ, չմոռանաս այն ժողովուրդը, որ քեզ ծնել է. երգի՛ր ժողովրդի ցավն ու վիշտը, հոգսն ու թշվառությունը: Սաքոներիդ ձեռից բաց չթողնես»[3]: Մեկ այլ նամակում Թումանյանի ստեղծագործությունները բնութագրում է որպես «ժողովրդական ոգու արտահայտություն՝ արվեստով արտաբերված»[4]: Հայրենիքում չորս տարի ուսուցչությամբ զբաղվելուց և իր ուսումնասիրությունների համար դաշտային նյութեր հավաքելուց հետո Գ. Վանցյանը մեկնում է Մոսկվա, ապա՝ Սանկտ-Պետերբուրգ, որտեղից էլ՝ Ավետիք Արասխանյանի միջնորդությամբ և Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի հոգաբարձության որոշմամբ ու միջոցներով Գերմանիա, որտեղ պետք է սովորեր մանկավարժություն[5]: 1895-1899 թթ. Գ. Վանցյանը սովորում է Բեռլինի համալսարանում, որը, չնայած ուսումնառության հաջող ընթացքին, չի կարողանում ավարտել, քանի որ Ներսիսյան դպրոցի հոգաբարձությունը չի ցանկանում ևս մեկ տարով արկարացնել Վանցյանի ուսման շրջանը, որպեսզի դրանով վերջինս կարողանար գրել

1 Ջավախեցի, նշվ. աշխ., էջ 423-436:

2 Նամակներից մեկը՝ թվագրված 1892 թ. փետրվարի 18-ով, վերաբերում է Թումանյանի անդրանիկ ժողովածուի երկրորդ հատորի տպագրմանը, որի առթիվ Գ. Վանցյանը մասնավորապես գրում է. «Գրքիդ II հատորի այդպիսի շուտափույթ տպագրության հանձնելը ինձ զարմացնում է, հույս ունի՞ս, որ ծախքդ հանես, կամ առաջին գրքիդ ծախքը հանեցի՞ր» (Ա. Ինճիկյան, նշվ. աշխ., էջ 319-320):

3 Ա. Ինճիկյան, նշվ. աշխ., էջ 249:

4 Նույն տեղում, էջ 250:

5 «Բազմավէպ», 1910, թիվ 1, հունվար, էջ 36:

իր ատենախոսությունն ու ներկայանար քննության[1]:

Բեռլինում սովորելու տարիներին շարունակվում է Գ. Վանցյանի և Թումանյանի նամակագրական կապը: Հատկապես հետաքրքրական է 1895 թ. դեկտեմբերի 18-ին գրած նամակը, որտեղ, պատմելով Գերմանիայում իր ուսանողական կյանքի, գերմանացիների կենցաղի ու սովորույթների մասին, Գ. Վանցյանը մասնավորապես նշում է. «Չգիտեմ քեզ ի՞նչ է պատահել. քնարդ լռեցրել ես: «Հորիզոն» մի՞թե այլևս չպիտի հրատարակեք: – Բա՛ց արա քնարիդ ձայնը, լսենք և ուրախանանք: Գեթ նամակ գրի՛ր, երկա՛ր, մանրամասն: Թիֆլիսից չենք ստանում համարյա ո՛չ լրագիր և ո՛չ նամակ, ուստի երևակայիր, որ քու նամակդ եթե բազմաբովանդակ լինի ամեն տեսակ մեր ներքին և արտաքին կյանքին վերաբերող լուրերով, Բեռլինի ամբողջ հայ ուսանողության շնորհակալությանը պիտի արժանանաս»[2]:

Ախալքալաքում Գ. Վանցյանի ուսուցչության տարիները (1892-1895 թթ.)[3] ներկայացնող մի փոքրիկ դրվագ է հիշատակում Հովի. Թումանյանի ուսանողական տարիների մտերիմներից Հովհաննես Խիզանյանը, որը 1894 թ. ամռանը Անդրեաս Բարխուդարյանի հետ որոշել էր գնալ Անի[4]: Վերջիններս ընտրել էին Թիֆլիս – Միխայլովո (այժմ՝ Խաշուր) կայարան (երկաթուղով) – Բորժոմ – Բակուրիան – Ցխրա-Ծղարոյի լեռնանցք (Թռեղքի լեռներ) – Ախալքալաք (ոտքով) երթուղին: Թումանյանը Վանցյանին և իրեն ծանոթ ախալքալաքցի այլ ուսուցիչների ուղղված նամակներ է հանձնում Հովի. Խիզանյանին: Դրանցում բանաստեղծը պատվիրում է պատշաճ ընդունել և աջակցել իր նամակաբեր ընկերոջը: Բնականաբար, արձագանքը լինում է սպասվածից ավելին. «Ախալքալաքում մենք սիրալիր ընդունելություն գտանք տեղական մտավորականության՝ ուսուցիչների կողմից, որոնց թվում էին՝ Ջալալ Տեր-Գրիգորյանը, Գրիգոր Վանցյանը և Սեդրակ Աղաբալյանը. վերջիններս միացան մեզ, և մենք ուղևորվեցինք Ալեքսանդրապոլ»[5], – գրում է Հովի. Խիզանյանը:

---

1 ԹԺՀ, էջ 276:

2 Հովհաննես Թումանյանի կյանքի և ստեղծագործության տարեգրություն (1869-1908), էջ 257:

3 Մինչ այդ՝ 1890-1891 և 1891-1892 թվականներին, Գ. Վանցյանը մանկավարժական և մշակութային գործունեություն է ծավալել համապատասխանաբար Վարդաշենում (Նուխիի գավառ) և Դերբենդում:

4 Հովհաննես Խիզանյան, Բանաստեղծի հետ.– ԹԺՀ, էջ 374-378:

5 Հովհաննես Խիզանյան, Բանաստեղծի հետ.– ԹԺՀ, էջ 377:

Գ. Վանցյանի՝ Հովհ. Թումանյանին ուղղված նամակներից մի քանիսը հրապարակվել են «Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ» նյութերի ժողովածուների հատորներում[1]: Տարբեր պատճառներով, ցավոք, Գ. Վանցյանին ուղղված Հովհ. Թումանյանի ոչ մի նամակ չի պահպանվել, կամ դրանց գտնվելու վայրերը մեզ հայտնի չեն[2]:

## ՆԱՄԱԿ – 1

16 դեկտեմբերի 1890, Նուխի

Սիրելի Հովհաննես,

Արդյոք գիրքդ տպագրվե՞ց, մի հատ ուղարկեիր ինձ: Իմ բաժանորդաթերթիս վճարը ստացե՞լ ես, թե ոչ, Արամից: Եթե չես ստացել, գրիր, ես կուղարկեմ վճարը: Տպած գրքերը կուղարկես Ախալքալաք բաժանորդների անվանց ցանկի հետ, այս հասցեով՝ Ахалкалаки. учит. Джалалу Тер-Григорянц և կխնդրես, որ նա ցրվե ըստ պատկանելույն: Դավթից տեղեկություն տուր, արդյոք նա Պետերբուրգ գնա՞ց, թե ոչ: Քո գործերդ ինչպե՞ս են: Բանաստեղծություններդ շարունակո՞ւմ ես: Ընդունիր բարևս՝

քո Գրիգոր Վանցյան

Հասցես՝ Нуха. Армянское правление, преслать в Вардашен, Ванцяну.

«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 291:

***

1 Նշյալ նամակները, որոնք թվով չորսն են, բերված են նաև Գ. Վանցյանի երկերի ժողովածուում.– Գ. Վանցյան, Երկերի ժողովածու, հ. 1, Երևան, 2015, էջ 286-290: Եվս մեկ տպագրված նամակ (տե՛ս ստորև՝ նամակ – 10-ը) հատվածաբար մեզ է հասել «Մուրճ» ամսագրի միջոցով:

2 Գ. Վանցյանի և Հովհ. Թումանյանի նամակագրության մասին առավել մանրամասն տե՛ս «Հովհաննես Թումանյանի կյանքի և ստեղծագործության տարեգրություն (1869-1908)», էջ 104, 105, 117, 120, 152, 153-154, 168-169, 171-172, 179, 180, 182, 185, 186-187, 188, 192, 196, 201, 208-209, 257:

# ՆԱՄԱԿ – 2

Въ Тифлисъ
Въ Армянскую Консисторию
Его благородію
Ованесу Туманянцъ

8 փետրվարի 1891 թ.
Վարդաշեն

Սիրելի Յովհաննէս!

Նամակիդ պատասխանելու համար հարկաւոր էր Արամի[1] հետ մի երկար գրագրութիւն բանալ, որն յիրաւի տեղի ունեցաւ: Նամակիցդ շատ առաջ ես Արամին գրեցի թէ՝ ուղարկիր բաժանորդաթերթը և փողերը Յովհաննէսին: Նա էլ ուղարկել է քեզ նոյեմբերի 16-ին (փոստի ստացականը մօտս է): Ուրեմն դու քո գրած նամակից շատ առաջ ստացած պիտի լինէիր պահանջածդ: Բացի դորանից, իմ նամակիս ինչո՞ւ չես պատասխանում ցարդ: Գրքերդ ծախու՞մ են կամ Ախալքալաք ուղարկեցի՞ր ինչքան հարկաւոր էր: Ղլտճեանի[2] հասցէն կարո՞ղ ես ինձ յայտնել: Ի՞նչ է շինում, կամ որտե՞ղ է Դաւիթը[3]: Ինչո՞ւ համար չէ գրում: Յակոբին (Զարգարեան) բարևիր: Մի հատ ուղարկիր քո գրքերից իմ հասցէով: Այդ տեղիդ ընկերներիս վերաբերեալ նորութիւններ յայտնիր: Իհարկէ, որոնց ճանաչում ես: Դու ի՞նչ ես շինում, շարունակում ես գրե՞լ թէ դադարել ես: Ընդունիր բարևս:

Քո Գրիգոր Վ.

ԳԱԹ, Հովհաննես Թումանյանի ֆոնդ (ԹՖ), 2017: Ինքնագիր:

***

1 Խոսքը Արամ Առաքելյանի մասին է (ծանոթություն կազմողի):

2 Արսեն եպիսկոպոս Ղլտճյան (1868-1943) – սովորել է Ներսիսյան դպրոցում, 1893 թ. ստացել է հոգևոր կոչում (ծանոթություն կազմողի):

3 Խոսքը Դավիթ Շահլամյանի մասին է (ծանոթություն կազմողի):

## ՆԱՄԱԿ – 3

[աշուն 1891 թ. – գարուն 1892 թ.]
Դերբենդ

Սիրելի Յովհաննէս!

Ուղարկում եմ ահա 10 ր. Խնդրեմ նեղութիւն քաշիր և տուր Սառաջևի քարվանսարան N... կարծեմ 1<9>-ը Միջին փողոցում և յանձնիր ուսուցիչ Թադէոս Խզմալեանին[1], այն տղային, որի հետ քեզ ծանօթացրել եմ: եթէ այնտեղ չէ, կ'տեղեկանաս թէ ո՞ւր է գնացել. եթէ Թիֆլիզում լինի, Ծալամեանը կ'իմանայ նորա տեղը: Աշխատիր անպատճառ գտնել և փողը յանձնել: Եթէ չ'գտար, կամ նա գնացած եղաւ Թիֆլիզից, այդ փողը կ'ուղարկես Թելաւ՝ Արամ Առաքելեանին: Այդ նեղութիւնը յանձդ առ շուտով կատարելու. փող ստանալուցդ յետոյ՝ առանց յապաղելու աշխատիր գտնես Խզմալեանին:

Նամակիդ միւս կէսը, որ գրած է Խզմալեանի անունով, յանձնի՛ր նորան: Շտապում եմ, աւելի չեմ կարող գրել. դասերը սկսւում են: Ընդունի՛ր բարևս և համբոյրս: Նոյնը հաղորդիր Ծալամօ-ին[2] եթէ այդտեղ է, եթէ ոչ՝ գրի՛ր ինձ նորա հասցէն:

Քո Գրիգոր Վանցեան

Հասցէս՝ Дербентъ, Даг. обл., учителю Армянскаго училища Григорію Ванцянъ

ԳԱԹ, ԹՖ, 2030: Ինքնագիր:

***

## ՆԱՄԱԿ – 4

Սիրելի Հովհաննես,

Ստացա նամակդ, ուրախ եմ, որ սաղ-սալամաթ ես մնացել

1Թադևոս Դավթի Խզմալյան (1869-1918) – մանկավարժ (ծանոթություն կազմողի):

2 Այստեղ և հետո խոսքը Դավիթ Շահլամյանի մասին է (ծանոթություն կազմողի):

տիրահալած կամրջի խորտակումից[1]: Տո՛, ողորմած հոգի Ծալամյանը սա՞ղ է, թե մեռավ, ի՞նչ է շինում նա:

Ծնորհավորելուդ համար շնորհակալություն: Ես կասկածել էի, թե խմբագրությունը ստացած չի լինի հոդվածը[2], այդ պատճառով վաղօրոք ուզում էի տեղեկանալ, ուստի և քեզ նեղություն տվի: Հոդվածս ինքն ըստ ինքյան մի առանձին բան չէր, եթե ոչ մի խիստ սակավ անծանոթ բոշա ցեղի հարևանցի ուսումնասիրությունը:

Գրքիդ II հատորի այդպիսի շուտափույթ տպագրության հանձնելը ինձ զարմացնում է: Հույս ունե՞ս, որ ծախքդ հանես, կամ առաջին գրքիդ ծախքը հանեցի՞ր...

Մի խոսքով ցանկամ լիուլի հաջողություն:

Բաժանորդաթերթդ շատ անժամանակ հասավ. թատրոններով, հանգանակություններով, բաժանորդագրություններով ժողովրդին կատարյալ ձանձրացրել էինք, ուստի քո թերթիդ բանը մի քիչ դժվար էր, երես չէր մնացել: Ուղարկում եմ, ահա, ութ հոգու բաժանորդագինը՝ չորս ռուբլի: Երբ գիրքը դուրս գա, կուղարկես հետևյալ հասցեով, խնդրելով, որ հասցնի բաժանորդներին, որոնց ազգանունները կգրես՝ Дербенд. Александру Шакиджанянц:

Այն դեպքում իհարկե, եթե ես հեռացած լինիմ Դերբենդից:

Ես էլ մի կերպ ապրում եմ: Մինչև հիմա զբաղված էինք թատրոններով, հիմա մի քիչ ազատ ենք:

Դերբենդի կյանքը, ինչ ասեմ, կա էլի, յոլա կտանի:

Ընդունիր ջերմագին բարևս, հաղորդիր Ծալամյանին և ծանոթներիս:

Քո Գրիգոր Վանցյան

Դերբենդ, 92 թ.,

18-ն փետրվ.

«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 304-305, 334:

***

1 Խոսքը 1892 թ. հունվարի 6-ի ջրօրհնեքի ծիսակատարության համար պատրաստած ժամանակավոր կամուրջի խորտակման մասին է:

2 Խոսքը Գրիգոր Վանցյանի «Հայ բոշաներ» հոդվածի մասին է, որը տպագրվել է «Մուրճի» 1892, N 7-8 (հուլիս-օգոստոս), էջ 1047-1064 և N 9 (սեպտեմբեր), էջ 1310-1321:

# ՆԱՄԱԿ – 5

1892 թ., 25 սեպտ., Ախալքալաք

Սիրելի Հովհաննես,

Կարդացի «Իմ եղբայրները օտարության մեջ ինձ ասում էին»[1]... և շատ հավանեցա, որովհետև կարծես իմ սրտիցս էին բխել այդ խոսքերը: Կրկնում եմ՝ չմոռանաս նախկին ուղղությունդ, չմոռանաս այն ժողովուրդը, որ քեզ ծնել է, երգիր ժողովրդի ցավն ու վիշտը, հոգսն ու թշվառությունը, սաքոներիդ ձեռից բաց չթողնես:

Տո, մեռած, մի քիչ երկար նամակ գրես կամ թե չէ կարգին նորություններ հայտնես, որ մենք գավառների անկյուններում նստածներս էլ ուրախանանք: Օրինակ՝ Հայրիկի հաստատվելը կամ որևէ նշանավոր դեպք, ինչո՞ւ իսկույն չես հայտնում, թեկուզ բաց նամակով:

Այսուհետև նորություններ քեզանից եմ սպասում: Գիրքդ էլ, եթե դուրս է ելել, ուղարկիր մի 15 հատ, եթե ավելի ծախելը հնարավոր լինի, նորից բերել կտամ:

Ինչպե՞ս եղավ Ջալալի հոդվածն, եթե չի տպագրվում հետ ուղարկիր:

Արդյոք օրիորդ Աննա Սահակյանը Թիֆլի՞ս է, կարող ես նորանից իմանալ Իսուֆյանի հասցեն և ինձ գրել: Ինձ հարկավոր է նաև Վրթանես Փափազյանի հասցեն, որ պետք է իմանաս և գրես: Օրիորդ Սահակյանին իմ կողմից ողջունիր, եթե այդտեղ է և եթե այդտեղ չէ, նորա հասցեն ևս գրիր:

Ի՞նչ են շինում ուսուցիչները, չկարողացա՞ն Գեղամյանին տապալել: Ուրիշ ի՞նչ նորություններ կան տեղդ, ի՞նչ եղավ հայոց թատրոնի բանը, պիտի կայանա՞ թե ոչ:

Ողջույն ինձանից և Ջալալից[2]:

Քո Գրիգոր Վանցյան

Ներփակյալ նամակս հանձնիր «Մուրճի» խմբագրին:

«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 311, 334:

---

1 Խոսքը «Օտարության մեջ» բանաստեղծության մասին է, որն առաջին անգամ առանց վերնագրի տպագրվել է «Մուրճի» 1892 թ. 7-8-րդ (հուլիս-օգոստոս) համարում, էջ 1045:

2 Ջալալ Տեր-Գրիգորյան (1866-1939) - մանկավարժ, հասարակական գործիչ, թարգմանիչ:

# ՆԱՄԱԿ – 6

Въ Тифлисъ
Его благородію Оганесу Туманянцъ
Въ контору Общества Изданія Армянск. книгъ

9 հոկտեմբերի 1892 թ.
Ախալքալաք

Սիրելի Յովհաննէս!

Զարմանում եմ, որ այսքան ժամանակ անցնելուց յետոյ նամակիս չես պատասխանում: Ախր ես քեզանից մի քանի անձանց հասցէներն էի ուզել, որ ինձ շատ հարկաւոր էին. խնդրեմ չ’մոռանաս շուտով այդ հասցէներն ուղարկելու: Խմբագրութիւնից յետ ստացիր և ուղարկիր նաև Ջալալի[1] յօդուածը: Չ’մոռանա՛ս, շուտ պատասխանի՛ր:

Ողջոյն:

Գր. Վանցեան

ԳԱԹ, ԹՖ, 2020: Ինքնագիր:

***

# ՆԱՄԱԿ – 7

[հունվար, 1893 թ.]

Սիրելի Յովհաննէս,

Խոստումդ վաղուց կատարել ես, շնորհակալութիւն, ստացայ քո ուղարկած հասցէներդ իմ ուզած անձերի:

Ուղարկում եմ թարգմանութիւնս «Ի՞նչ է խօսում Սենեակը»[2] Հրատ.

1 Ջալալ Հովհաննեսի Տեր-Գրիգորյան (գրական կեղծանունը՝ Սալլումյան, 1866, Արցախ, գ. Մաղավուզ – 1940, գ. Մաղավուզ) – մանկավարժ, թարգմանիչ: Երկար տարիներ ապրել և մանկավարժական, հասարակական, մշակութային գործունեություն է ծավալել Ախալքալաքում: Աշխատակցել է «Մշակ», «Նոր-Դար», «Տարազ», «Մուրճ» և այլ պարբերականների (ծանոթություն կազմողի):

2 Խոսքը ռուս մանկագիր Վ. Պ. Ավենարիուսի «Ի՞նչ է խոսում Սենեակը» պատմվածքի մասին է, որը հայերեն թարգմանությամբ լույս էր տեսել Երևանում (ծանոթություն կազմողի):

Ընկ.[1]: Բայց նորա սնանկութիւնը ինձ կասկածել է տալիս, որ շուտով չ'պիտի կարողանայ հրատարակել:

Եթէ Ընկ<երութիւնը> կարողանայ հրատարակել, քեզ եմ յանձնում նորա հետ պայմանախօսել. ա. պէտք է տպագրել ամենախոշոր տառերով և մի պատկերով «Քնած Վանիա», որպիսին կայ ռուսերէնի մէջ. տպագրելուց յետոյ չ'հրատարակել նախքան իմ համաձայնութիւնս յայտնելը գրքի տեսնելուց յետոյ: Թուղթը պիտի լինի ամենալաւը: Դորա փոխարէն ես ո՛չ մի վարձատրութիւն չեմ ուզի:

Իսկ եթէ պատկեր չի լինի և ոչ էլ ամենաընտիր թուղթ, այն ժամանակ վարձատրութիւն կ'ուզեմ երեսուն րուբլի:

Եթէ Հրատ<արակչական> Ընկ<երութիւնը> չի կարող տպագրել, ուզում եմ յանձնել «Աղբիւրի»[2] խմբագրութեան:

Ընդունի՛ր ողջոյնս:

Քո Գրիգոր

Յ. Գ. Աշխատիր անպատճառ ճարել «Հայրենիք»ի[3] այն համարները, ուր արտատպուած է յօդուածս – «Բոշաները» – թէկուզ այն պայմանով, որ յետ դարձնեմ շուտով. գուցէ «Մուրճ»ի խմբագրատանը կամ մի այլ տեղ ճարես:

Նոյն

ԳԱԹ, ԹՖ, 2033: Ինքնագիր:

***

## ՆԱՄԱԿ – 8

26 հունվարի 1893 թ.
[Ախալքալաք]

Սիրելի Յովհաննէս,

1 Նկատի ունի Թիֆլիսի հայոց հրատարակչական ընկերությունը (ծանոթություն կազմողի):

2 «Աղբիւր» – պատկերազարդ մանկական ամսագիր: Լույս է տեսել Թիֆլիսում 1883-1918 թթ.: Խմբագիր-հրատարակիչ՝ Տիգրան Նազարյանց (ծանոթություն կազմողի):

3 Խոսքը Կ. Պոլսում լույս տեսնող «Հայրենիք» լրագրի մասին է (ծանոթություն կազմողի):

Ստացայ նամակդ, միայն գրքերդ չեմ ստացել, ոչ էլ «Տարերքը»[1] որ ինձ շատ հարկաւոր է: «Տարերքի» համար ուղարկում եմ մի րուբլի. գինը հաստատ չ'գիտեմ:

Գրում ես թէ «Մուրճի» այս համարում բան չունիս. ո՞ր համարում՝ յունուարի՞ թէ դեկտեմբերի: Վերջինը տեսել եմ բայց առաջինի մասին ոչինչ չ'գիտեմ:

Տեղեկացի՛ր գոնէ թէ յօդուածներս կը տպագրուե՞ն:

Գրքերդ ուղարկի՛ր, նոյնպէս և ուզած միւս բաներս:

Եղբա՛յր, գոնէ նորութիւններ գրե՞ս, «Մշակի», բանտարկուածների[2] և այլոց մասին. ախր մենք գաւառում փտում, մեռնում ենք: Այդ մասին դուք մտածել էլ չէք ուզում:

Գալով թարգմանութեանս՝ պիտի ասեմ, որ ցանկալի է նորա տպագրութիւնը և այն՝ Հրատ<արակչական> Ընկ<երութեան> ձեռքով: Ես վարձատրութիւն չեմ ուզի եթէ տպագրութիւնը լինի մաքուր և հաստ թղթի վերայ, խոշոր և լաւ տառերով, և պատկերներով: Եթէ Ընկ<երութիւնը> չ'տպագրի, «Աղբիւրին» յանձնիր, ի սէր Աստծոյ, մոռացութեան չ'տաս. թէ չէ ձեռքիցս փրկութիւն չես ունենայ:

Ծալամին ողջունի՛ր, որտե՞ղ է նա, ի՞նչ է շինում:

Կ'ուղարկես ուրեմն տեղեկութիւն յօդուածներիս և թարգմանութեանս մասին. նաև «Տարերքն» ու «Հայրենիքը», նոյնպէս քո գրքերդ: Մալխասեանի հայերէնի քերականութիւնն[3] էլ որ ուղարկես խիստ լաւ կ'լինի:

Զալալը գրքի մասին շնորհակալութիւն և ողջոյն է յայտնում, նոյնը ստացի՛ր և ինձնից: Քո <Գր. Վանցեան>[4]

«Մուրճին» յայտնի՛ր, որ բաժանորդագիրը շուտով կ'ուղարկեմ:

ԳԱԹ, ԹՖ, 2021: Ինքնագիր:

***

1 Խոսքը հավանաբար Նիկողայոս Տեր-Ղևոնդյանի «Տարերք քերականութեան մայրենի լեզուի» (Կ. Պոլիս, 1891) գրքի մասին է (ծանոթություն կազմողի):

2 Ակնարկությունը Սարգիս Կուկունյանի խմբի անդամներին է վերաբերում (ծանոթություն կազմողի):

3 Ակնարկում է Ստեփանոս Մալխասյանցի «Գրաբարի հոլովումը, խոնարհումը և նախդիրները» (Թիֆլիս, 1891) գիրքը (ծանոթություն կազմողի):

4 Նամակի ավարտին «Գր. Վանցյան»-ի փոխարեն դրված է հեղինակի ստորագրությունը (ծանոթություն կազմողի):

# ՆԱՄԱԿ – 9

[փետրվար-մարտ, 1893 թ.]
[Ախալքալաք]

Սիրելի Յովհաննէս!

Ստացայ նամակդ. նորութիւններիդ համար շնորհակալութիւն:

Ստացել եմ և «Տարերքը»: Ի՞նչու Մալխասեանցի քերականութիւնն էլ չ'ուղարկեցիր:

Թարգմանութեանս մասին մի պայման մոռացել էի, որ կարծեմ Ընկ<երութիւնը> պիտի չ'զլանայ ընդունել. այն է՝ տպագրելուց յետոյ 100 օրինակ ինձ տայ. յիսունը կարծեմ սովորաբար տալիս է, իսկ 50ն էլ թող զիջողութիւն անի. հարկաւոր է: Ասա՛ եթէ կ'ընդունեն, լա՛ւ, եթէ չէ, չարժէ խօսել:

Տօ գոնէ «Մուրճ»ի այս տարուայ բաժանորդագնի մի մասն էլ տայիր աշխատավարձիցս: Նախքան քո նամակդ ստանալը խմբագրութեանը գրել եմ, որ իմ բաժանորդագինս վերցնեն վարձիցս: Կէսը նախօրօք տո՛ւր, մնացածը կ'տեսնենք:

Թէև դրա մասին չարժէր գրել, բայց ֆինանսական նեղ դրութիւնս թոյլ չի տալիս ազատ շարժուելու: Անցեալ ամսին եղբայրս վախճանեցաւ թողնելով չորս որբ և 300 ռ. պարտք: Ահա դրութիւնս: Միևնոյն ժամանակ վրաս է ծանրացած խօլերային զոհ գնացած հօրաքրոջս որդու վեց որբերի խնամքը, որոնք ապրուստի ո՛չ մի միջոց չ'ունին: Տարուայ սկզբին մտածում էի փող հաւաքել ուսումս շարունակելու համար, իսկ այժմ փող չեմ գտնում այս անտէր-անտիրական որբերուն կերակրելու համար: Է՛հ Յովհաննէս ջան, ո՞ր մէկն ասեմ, այսքան էլ ես շնորհակալ եմ Աստծուց, որ խելքս չեմ կորցրել այս տարի և կարողանում եմ նոյնիսկ մասնաւոր բաներով զբաղուելու, որպիսին է յօդուածներ գրելը: Եղբօրս մահը իմ բոլոր պլաններս տակն ու վրայ արեց. այս ամսից աւելի է համարեա ոչինչ չեմ կարողանում շինել:

Այսպէս թէ այնպէս, կերած եաղլիներդ[1] անուշ լինին. մենք այստեղ պասից կոտորւում ենք:

Մի բան որ ինձ շատ նեղացնում է, այդ քո ծուլութիւնն է: Քեզանից հազար բան եմ խնդրել և ո՛չ մինը չես կատարել իր ժամանակին: Ո՞ւր

1 Եաղլի (յաղլի, թուրքերեն) – յուղոտ, յուղով պատրաստած ուտելիք (ծանոթություն կազմողի):

են ուղարկած հասցէներդ. չէ՞ որ խնդրել էի Վ. Փափազեանի և այլոց հասցէները: Ախր դոքա ինձ հարկաւոր են, իսկ ժամանակը անցնում է:

Երկրորդ և ամենակարևոր խնդիրս է Մակար վ. Բարխուդարեանի գիրքը՝ «Աղուանից երկիր և դրացիք», որ հէնց առաջին փոշտով պիտի ուղարկես. Մալխասեանի քերականութեան հետ:

Առաջինը շատ հարկաւոր է, որովհետև Աղուանից մասին ես էլ ունիմ գրած, որ երկու-երեք ամիս է փտում է «Մուրճ»ի մօտ, և գուցէ քննադատեմ այդ գիրքը: Մալխասեանի գիրքը հարկաւոր է իբրև դասագիրք, որ անհրաժեշտ է:

Եթէ փող չ'ունես, «Մուրճ»ի բաժանորդագինը թող մնայ, միայն այդ գրքերը անպատճառ և շուտով ուղարկի՛ր, որ կարևոր են. «Մուրճ»ին կ'գրեմ, որ փողերը յետոյ կ'ստանան: Այս փոշտով «Մուրճ»ին մի թարգմանութիւն եմ ուղարկում: Տեղեկացի՛ր թէ պիտի տպագրուի՞:

Հայրիկի[1], «Մշակ»ի և այլոց մասին կրկին նորութիւններ գրի՛ր – անչափ կ'պարտաւորես. ախր մենք այստեղ մեռնում ենք միօրինակ ձանձրալի կեանքից առանց որևէ նորութեան: Ընդունի՛ր սիրալիր ողջոյնս, հաղորդի՛ր Դաթիկոյին, ուղարկի՛ր գրքերիցդ: Քո Գրիգոր

*ԳԱԹ, ԹՖ, 2032: Ինքնագիր:*

***

## ՆԱՄԱԿ – 10[2]

1 Դրանից մեկ տարի առաջ (1892 թ. մայիսի 5-ին) Ամենայն հայոց կաթողիկոս ընտրված Մկրտիչ Ա Վանեցին (Խրիմյան Հայրիկը) աքսորյալի կարգավիճակով գտնվում էր Երուսաղեմի Սրբոց Հակոբյանց հայկական վանքում: Ցարական և օսմանյան կայսրությունների արտաքին գործոց նախարարությունների բանակցությունների արդյունքում 1893 թ. ապրիլին սուլթան Աբդուլ Համիդ II-ը նորընտիր կաթողիկոսին ի վերջո ազատում է աքսորից և թուրքահպատակությունից: Խրիմյանը շուրջ ութսունօրյա ճամփորդությունից հետո հասնում է Էջմիածին (տե՛ս Էմմա Կոստանդյան, Մկրտիչ Խրիմյան. Հասարակական-քաղաքական գործունեությունը, Երևան, 2008, էջ 349-354) (ծանոթություն կազմողի):

2 Սույն նամակի մասին Գ. Վանցյանը հիշատակում է 1893 թ. ապրիլի 8-ին Ախալքալաքից Հովհ. Թումանյանին ուղարկված իր մեկ նամակում (ամբողջական նամակը տե՛ս ստորև (ՆԱՄԱԿ-11), ինչպես նաև «Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 313-314, 334, Վանցյան Գրիգոր, Երկերի ժող., հ. 1, Երևան, 2015, էջ 289-290): Մեզ չհասած խնդրո առարկա նամակից մեկ հատված «Մուրճի» խմբագրությունը զետեղել է պարբերականի «Զանազան լուրեր» բաժնում («Մուրճ», 1893, N 2, «Զանազան լուրեր» բաժին, էջ 346): Նամակի նույն հատվածը հետագայում բերված է նաև Գ. Վանցյանի վերոնշյալ՝ 1893 թ. ապրիլի 8-ի նամակի ծանոթագրության մեջ (տե՛ս «Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 334): Քանի որ չի պահպանվել նամակի ամբողջական տեքստը, նպատակահարմար համարեցինք «Մուրճում»

ԱԽԱԼՔԱԼԱՔԻՑ պ. Գ. Վանցեանի մի նամակից քաղում ենք այս կտորը «Մուրճ»-ի մասին: «Մուրճ»-ը կարդալու և հասկանալու համար հարկաւոր է մի որոշ աստիճանի կրթութիւն և զարգացումն ունենալ, որից ըստ մեծի մասին զուրկ է մեր տնտեսապէս ապահով դասակարգը. այդ պատճառով էլ «Մուրճ»-ը նոցա մէջ դժւար է տարածւում, որոնք իրանց ամբողջ մտաւոր պաշարը լրագրական թեթև լուրերով են միայն հարստացնում:

Սակայն, ըստ իս, «Մուրճ»-ի ապագան լիովին ապահով պէտք է համարել, քանի որ նորա կողմն են մեր բոլոր հասկացող և բանիբուն երիտասարդները, որոնց յոյսն ու հաւատը օրաւուր աւելանում է «Մուրճ»-ի վերաբերութեամբ»:

*«Մուրճ», 1893, N 2, «Զանազան լուրեր» բաժին, էջ 346:*

***

## ՆԱՄԱԿ – 11

8-ն ապրիլի 1893 թ., Ախալքալաք

Սիրելի Հովհաննես,

Ինչպես երևում է նամակս չստացած ուղարկել ես գրքերդ ու նամակդ, այժմ երևի ստացած կլինիս: Որովհետև Մովսես Կաղնկատվացի ուրիշ տեղից հույս ունիմ ստանալու, այդ պատճառով հարկավոր չէ այլևս քո ուղարկելը, եթե չես առել պրծել: Մնացած հանձնարարությունս աշխատիր կատարել: Անցյալ նամակիս հարցերին մանրամասն պատասխան տուր: Ետ ուղարկիր նաև թշվառ «Սենյակս», զարմանում եմ դորա անհաջողության վերա, մի՞թե թարգմանության լեզուն է վատ, բովանդակությունը գեթ անպայման գովելի է: Ինչի ես հարցնում «Մուրճում» տպված նամակիս մասին[1], նա ինձ վրա լավ տպավորություն

---

տպագրված նշյալ հատվածը՝ որպես առանձին նամակ, հերթական համարակալմամբ և անփոփոխ ուղղագրությամբ զետեղել Գ. Վանցյանի՝ Հովհաննես Թումանյանին ուղղված սույն նամակների շարքում (ծանոթություն կազմողի):

1 «Մուրճի» 1893 թ. N 2-ում, էջ 346, «Զանազան լուրեր» բաժնում տպված է Գ. Վանցյանի հիշյալ նամակից մի հատված, որ բերում ենք ստորև. «Մուրճը» կարդալու և հասկանալու համար հարկավոր է մի որոշ աստիճանի կրթություն և զարգացումն ունենալ, որ ըստ մեծի

թողեց: Գրիր հարցմանդ պատճառը: Զատիկի տոներին Ախալցխա էի, որ Արամը ստացավ նամակդ ու գրքերդ: Տոներին գնացել էի այս ճնշող մթնոլորտն մի քիչ փոխարինելու: Սիմոնին, եթե այդտեղ է, բարևիր և ասա, որ սպասում եմ մի կարգին նամակի:

Ստացանք գրքերդ: Շնորհակալություն նվերներիդ համար: Աղասին միայն տասը հատ վերցրեց ծախելու, մնացածից հրաժարվեց: Դժվար թե բոլորը կարողանանք ծախել, մանավանդ գրքերից մի քանիսի թղթերը ներկոտ են և շատ է խանգարում 35-ի վերա թույլ կպցրած 60 կոպեկը, որ շուտով պոկ է գալիս:

Ուզում էի մի քննադատություն գրել, կանգ առնելով մանավանդ «Կանչի» վերա, սակայն Աղայանցը կանխեց[1] և վախեցա ցենզուրան թույլ չտա:

«Կանչը» ամեն տեղ ֆուրոր է անում. Это действительно высокохудожественное произведение. Եթե, Հովհաննես ջան, ուրիշ ոչ մի բան չգրեիր, այդ ստեղծագործությունդ բավական էր քեզ բանաստեղծի մեծ կոչմանը արժանացնելու: Ունիս, այո՛, ուրիշ գեղեցիկ բաներ, ունիս և շատ թույլ բաներ, բայց «Կանչը», դա գլուխ գործոցդ է, դա մի գոհար է: Այդպես եմ անվանում ես «Կանչդ»՝ գոհար:

Զուտ բանաստեղծական-գրական-գեղարվեստական բաժնում անցյալի հետ համեմատած անտարակույս մեծ առաջադիմություն ես արել, ես քեզանից այդ չէի սպասում, ես և շատերը ինձ հետ քեզանից սպասում էինք ժողովրդական ոգու արտահայտություն գեղարվեստական արվեստով արտաբերված, այդ ուղղությամբ գրածներիցդ այս գրքում ամենահաջողակը «Ախթամարն» է, մնացածներում, ինձ թվում է, թե ոչ թե չես առաջադիմում, այլ մասամբ կանգնած ես մնացել նույն աստիճանի վրա: «Անուշիդ» առաջին մասը շատ է ձգձգված և ըստ իս, շատ էլ աջողակ չէ: «Մերժած օրենքը» գեղեցիկ է: Լիրիկականներդ, ինչպես ասացի, առհասարակ հաջողակ են, թարգմանություններդ, թեև բնագրի հետ չեմ համեմատել, բայց անհաջող են երևում: Թարգմանություններից մի քիչ

---

մասին զուրկ է մեր տնտեսապես ապահով դասակարգը, այդ պատճառով էլ «Մուրճը» նոցա մեջ դժվար է տարածվում, որոնք իրանց ամբողջ մտավոր պաշարը լրագրական թեթև լուրերով են միայն հարստացնում:

Սակայն, ըստ իս, «Մուրճի» ապագան լիովին ապահով պետք է համարել, քանի որ նորա կողմն են մեր բոլոր հասկացող և բանիբուն երիտասարդները, որոնց հույսն ու հավատը օրավուր ավելանում է «Մուրճի» վերաբերությամբ»:

1 Նկատի ունի Ղ. Աղայանի «Անուշից» մի ճաշակ» վերնագրով մատենախոսությունը, որը լույս է տեսել «Մուրճի» 1893 թ. N 3-ում, էջ 457-460:

ձեռը քաշի: Ի վերջո «Գիշերային մտածմունքը», «Խորհրդածությունը» և այլք, ընտիր բաներ են: Եթե առիթ եղավ, գիրքս քեզ կտամ և կկարդաս մանրամասն նկատողություններս:

Անուշավան Աբովյանին, եթե դա իմ ճանաչածս է, ուրիշ բան պետք էր նվիրած[1], համաձա՞յն ես:

Ի վերջո ընդունիր անկեղծ համբույրս: Ջալալը ողջունում է:

Միակ խնդիրս, խորհուրդս և պահանջս քեզանից այն է, որ կարդաս, կարդաս և կարդաս, մի ծուլանար[2]:

Քո Գրիգոր

«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ»,
գիրք 4,

*Երևան, 1985, էջ 313-314, 334:*

***

## ՆԱՄԱԿ – 12

Въ Тифлисъ
Его б. Оганесу Туманянцъ
Въ контору Общ. Изданія Армянск. Книгъ
17 ապրիլի 1893 թ.
Ախալքալաք

Սիրելի Յովհաննէս!

Ստացայ այցետոմսս – լաւն էր: Իմացայ որ ուզած գրքերս Թիֆլիզում չ'կան զարմացայ: Թիֆլիզում որ չ'կան, բա մենք գաւառներում ի՞նչ գտնենք: Գոնէ Մակար վարդապետի «Աղուանից աշխարհը» ուղարկի՛ր: Խմբագրութիւնը չ'ուղարկեց: Ուղարկի՛ր նաև «Սենեակս»[3]: Աշխատի՛ր նամակներիս բոլոր հարցերին մանրամասն պատասխանել: Քո զաhըլէն էլ տարել եմ: Ների՛ր: Գրիգոր

Ողջոյն ինձանից և Ջալալից:

*ԳԱԹ, ԹՖ, 2023: Ինքնագիր:*

---

1 Թումանյանը Ան. Աբովյանին է նվիրել «Անուշ» պոեմը:

2 Վերին լուսանցքում՝ «Նորություններ գրիր «Մշակի», Հայրիկի և այլ գործերի մասին»:

3 Խոսքը Գ. Վանցյանի թարգմանության մասին է, որն այդպես էլ չի հրատարակվել (ծանոթություն կազմողի):

# ՆԱՄԱԿ – 13

30 մայիսի 1893 թ.
Ախալքալաք

Սիրելի Յովհաննէս!

Ի՞նչ ասեմ քեզ. գրում ես, սպասեցնել ես տալիս շարունակ և վերջն էլ մեղաւոր ես դուրս բերում ուրիշին թէ ի՞նչու նամակ չեն գրում:

Առաջին բաց նամակով գրում ես, որ սպասեմ աւելի մանրամասն նամակիդ, մանաւանդ ես քեզանից շատ ու շատ բաներ էի հարցրել: Մինչև այսօր էլ սպասում եմ առանց հետևանքի: Ճնորհակալութիւն երկրորդ բաց նամակիդ համար, որով Հայրիկի գալուստն ու «Մշակի» հրատարակուելն ես աւետում կարճառօտ: Վերջինով գովելի ես, իսկ անհոգութիւնդ, մոռացկոտութիւնդ, անընդունելի են: Որպէսզի չ'նեղանաս, իհարկէ իմ հաշւով կ'գնաս, Քռի պաղ ջրում կ'նստես, որ զովանաս, և Վետցելի պիվօյից[1] կ'խմես, որ մի քիչ հովանաս, բայց և չ'մոռանաս նախընթաց երկար նամակիս հարցերին պատասխանել, և ի սէր Աստծոյ մի քիչ կարգին-ակկուրատնի լինել: Փողերդ ե՞րբ ուղարկեմ[2]:

Ներփակեալ ուղարկում եմ մի նամակ, որ պիտի տպել տաս տեղիդ լրագիրներից մինում («Տարազը» ինձ ճանաչում է, կ'տպէ) որն որ ամենից շուտ կարող կ'լինի տպագրել Հայրիկի Թիֆլիզ գալու լուրն առնելուց յետոյ: Երբ պաշտօնապէս հրատարակուի թէ Հայրիկը գալիս է Թիֆլիզ, աշխատի՛ր նամակս տեղաւորել այն լրագրում, որը այդ լուրի յաջորդ օրը պիտի դուրս գայ, որպէսզի օր առաջ Ալեքսանդրապոլն էլ աշխատի Հայրիկից խնդրել ճանապարհը մեր կողմով անելու:

Նամակը իհարկէ կ'ստանաս և կ'պահես յարմար րոպէին, չ'մոռանաս իւր ժամանակին տպագրել տալ – թէ չէ ամեն բան կորած է: Յուսով եմ, որ սորա վերաբերմամբ անհոգութիւնդ կ'մոռանաս: Եթէ աշխատես թէ՛ «Նոր-դարդ»ում և թէ՛ «Տարազում» տպագրել տալ, այդ աւելի լաւ կ'լինի: Եթէ մեր կողմով գայ, ես հաւատացած եմ, չ'տեսնուած ցոյցերով պիտի ընդունուի:

Ամառս ո՞րտեղ կ'լինիս. չգիտեմ ես ամառուայ վերջերին կարող

---

1 Գերմանացի արդյունաբերող Ֆրիդրիխ Կարլ Վետցելը 1881 թ. Թիֆլիսում հիմնադրել է «Կազբեգի» գարեջրատունը (ծանոթություն կազմողի):

2 Այս և հետագա բոլոր բառերի և տառերի ընդգծումները Գ. Վանցյանինն են (ծանոթություն կազմողի):

կ՚լինի՞մ Թիֆլիզ գալ: Լաւ կ՚լինէր, կ՚տեսնուէինք էլ: Շատ բաներ ունիմ խօսելու:

Ընդունի՛ր ողջոյնս - համբոյրս. նոյնը հաղորդի՛ր Շալամօ-ին:

Քո Գրիգոր Վանցեան

Նամակ գրի՛ր և պատասխանի՛ր առաջին նամակիս հարցերին:

Նոյն

Ջալալը անցեալ փոշտին նամակ ուղարկեց. ստացած կ՚լինես: Նա ևս ողջունում է:

ԳԱԹ, ԹՖ, 2024: Ինքնագիր:

***

## ՆԱՄԱԿ – 14

24 սեպտեմբերի 1893 թ.

Ախալքալաք

Սիրելի Յովհաննէս!

Դարձեալ դիմում եմ քեզ ձանձրոյթ տալու – կատարեալ ձանձրոյթ. երևի կ՚ասես. «Մի նամակ չ՚ստացայ սորանից, որ առանց յանձնարարութեան լինէր»: Ճարէն ինչ, այս մի վերջին յանձնարարութիւնս էլ կատարի՛ր, այնուհետև ինչ որ էլ խնդրելու լինիմ՝ կատարի՛ր, հալբաթ մի օր կ՚հատուցանեմ: Բանն այն է, որ մարդ էլ չ՚կայ այդտեղ որ ուրիշին յանձնարարեմ. քեզանից յարմար ու պիտանի՞. եթէ միայն անպիտանութիւն ու ծուլութիւն չ՚անես: Ախալքալաքում նստի՛ր և մեր խմբագրութիւնների հետ գործ ունեցի՛ր: Է՜հ, մի խօսքով՝ զահլէս գնացել է, համա ուրիշ ճար էլ չ՚ունեմ. այս տարի ուղիղ մտադիր չէի տպագրութեան ուղարկել մինչև յունուար, երբ ինքս ուզում էի Թիֆլիզ գալ, բայց հնար չ՚եղաւ:

Ուսուցիչների ապահովութեան նուիրուած մի քանի ժողովները ինձ ստիպեցին մի քանի տարուայ դիտողութիւններս գրի անց<ը>նել մեր ուսումնարանների և ուսուցիչների մասին, որ ահա ուղարկում եմ: Ուսումնարանական հարցը կարծեմ առաջինը պիտի լինի, որ պիտի գրաւէ Հայրիկի ուշադրութիւնը, ուստի յօդուածիս տպագրութիւնը անհրաժեշտ

է անպատճառ «Մուրճ»ի այս սեպտեմբեր N-ին հասցնել[1]: Եթէ պ. Արասխանեանը[2] չ'ուզեցաւ տպագրել, անմիջապէս յանձնի՛ր «Տարազ»ին. նա կ'տպագրէ: Միայն չ'մոռանաս պայման դնել Արասխանեանի հետ, որ մի շաբաթից յետոյ այո կամ ոչ պատասխանէ:

Չմոռանամ ասելու, որ յօդուածս կարդացուած է Ախալքալաքի ուսուցչաց և հոգաբարձուաց խառն ժողովում (13 հոգուց բաղկացած) և հաւանութիւն գտած: Սորանով իհարկէ չեմ ուզում գլուխս գովել, այլ` ասել, որ այս յօդուածը արտայայտում է մի ամբողջ խմբի կարծիք, ուրեմն և արժանի է ուշադրութեան:

Ուրիշ մի քանի բաներ էլ պիտի խնդրէի, բայց չեմ խնդրում, որ չ'խրտնիս և գէթ այս յանձնարարութիւնս շուտով կատարես. Հետևանքի մասին իհարկէ շուտով կ'գրես:

Ընդունի՛ր ողջոյնս, համբոյրս. նոյնը և ծանօթներիցդ:

Քո Գրիգոր Վանցեան

ԳԱԹ, ԹՖ, 2025: Ինքնագիր:

***

## ՆԱՄԱԿ – 15

6 նոյեմբերի 1893 թ.
Ախալքալաք

Սիրելի Յովհաննէս!

Ներկայ հանգամանքներում, Հայրիկի բռնած ներկայ ուղղութեամբ, յօդուածիս տպագրութիւնը մեզ վնասից աւելի ոչինչ չի բերի, ուստի և հարկաւոր չէ դորան տպագրել: Այդ յօդուածը միտք կ'ունենար միայն լաւ ռէժիմի ժամանակ: Յօդուածը վերցրո՛ւ և պահի՛ր մօտդ:

Վարդապետը` Արսէնը[3] այստեղ է. գնաց գիւղերը թափառելու և եկեղեցիներ օծելու[4]: Նորանից տասը րուբլի ստացայ. Շնորհակալութիւն:

---

1 Նամակում հիշատակվող` ուսումնարանների և ուսուցիչների մասին Գ. Վանցյանի ընդարձակ հոդվածը տպագրվել է «Մուրճում» (տե՛ս «Մուրճ», 1894, No 1, էջ 133-141), որտեղից էլ արտատպվել է երկերի ժողովածուի մեջ (տե՛ս Գ. Վանցյան, Երկերի ժողովածու, հ. 1, Երևան, 2015, էջ 36-45) (ծանոթություն կազմողի):

2 Ավետիք Մկրտումի Արասխանյան (1857-1912) – «Մուրճի» խմբագիր, հրատարակիչ (ծանոթություն կազմողի):

3 Խոսքը Արսեն վրդ. Ղլտճյանի մասին է (ծանոթություն կազմողի):

4 Գ. Վանցյանը սխալվում է. Հայ եկեղեցում վարդապետները չեն կարող եկեղեցի օծել, այդ

Նեղ ժամանակս էր, լաւ պէտք եկաւ:

Օհաննէս, էլ քեզանից մարդ չի դուրս գալ, ուստի և քեզ <չեմ> դիմում, գէթ նամակս Ճալամօ-<ին յանձ>նի՛ր, գուցէ նա կատարէ: Էլ գ<ու>ցէ չես ուզում, նա անպատճ<առ> կ'կատարէ, հաւատացած եմ:

Ախպէ՜ր, կատարեալ մեռայ էս քանդուած տեղում, գոնէ ուզած բաներս ուղարկեցէ՛ք, որ աշխատելով ժամանակ անցկացնենք:

Հա՛, էն էի ասում. ի՞նչ էի ասո՞ւմ,– իմացայ. էն էի ասում, որ շատ բէրդովլէթն ես, իսկ Ճալամօն շատ լաւն է. գլուխը եղենք[1], որ խնդիրս կատարէ: Էս նամակս էլ տո՛ւր նրան թող կարդայ: Մէ խօսքով. աշխատութիւնս – բոշաները – վերջացրի. բաւական մեծ և կարծեմ մի քանի գրօշ արժող աշխատութիւն դուրս եկաւ:

Ճարունակութիւնը կարդա՛ Դաւիթի նամակում:

Տօ էն անաստուած կալօշի թղթերից մինը գտել <...> նամակիդ պատասխանէի, բայց չեղաւ ու չեղաւ, <...> չ'գտայ. քաղդիցդ էր. մի ուրիշ անգամ:

1893 թ. կարծեմ 6ն նոյեմբերի. օրը կիրակի է: Մտածի՛ր որ գտնես:

Մայրաքաղաքն Ախալքալաք

*ԳԱԹ, ԹՖ, 2026: Ինքնագիր:*



***

## ՆԱՄԱԿ – 16

15 նոյեմբերի 1893 թ.
Ախալքալաք

Սիրելի Յովհաննէս և Ճալամօ

Այս օրերս ինձ համար մի անսպասելի նորութիւն առիթ տուեց առանց առաջին նամակիս պատասխանին սպասելու, նամակս երկրորդել: Չ'զարմանաք, այդ նորութիւնը ձեզ համար առանձին կարևորութիւն և հետաքրքրութիւն չի կարող ունենալ, բայց ինձ համար գիտ է:

---

իրավունքը վերապահված է միայն եպիսկոպոսներին և կաթողիկոսներին (ծանոթություն կազմողի):

1 Գլուխը եղենք (գլուխը յուղենք) – այսինքն՝ համոզենք (ծանոթություն կազմողի):

Ինձ յայտնի էր, որ երբեմն Թիֆլիզում եղել են բոշաներ, բայց չէի կարծում թէ հիմա էլ կան: Զարմանալով տեղեկացայ, որ այժմս էլ նոցանից Թիֆլիզում կան և կարծեմ ապրում են Խօջիվանքի մօտերքը: Բարոյական պարտք եմ դնում ճշտել-ստուգել այս լուրը և ինձ շտապով տեղեկութիւն տալ: Յովհաննէս, այդ մասին դու պիտի տեղեկութիւն ունենաս Կոնսիստորից և կամ տէրտէրիցդ:

Իմացէ՛ք ինչո՞վ են պարապում, մօտաւորապէս ինչքան են, և իսկական հա<՞յ>-բոշաներ են, թէ<՞> մի այլ զատ: «Էլի զահլա տարաւ»,– կ՚ասէ հիմա Օհաննէսը: Բայց որ հոգիդ էլ դուրս գայ, պիտի զահլէդ տանեմ, քանի որ դու Թիֆլիզումն ես և յարմարութիւն ունիս խնդիրքս կատարելու: Ծալամօն էլ hօ չորս ոտով և ութը ձեռով ու 16 աչքերով քեզ օգնական եմ տալիս. դէ աւելի ի՞նչ ես ուզում:

Ընդունեցէ՛ք բարևս:

Ծնորհալին էլ չ՚մոռնաք շուտով հասցնելու: Ձեզ եմ սպասում, որ աշխատութիւնս արտագրել տամ, որ մինչև ամսիս վերջը պատրաստ լինի:

Ճիշտը խոստովանեմ, տղէ՛րք, իմ էլ զահլէս գնաց ուրիշի զահլէն տանելուց, այնքան որ բոշի նման սրան նրան դիմեցի: Կորչէ՛ն այդ անպիտանները. ոնց որ իրանց կեանքը, նոյնպէս էլ նոցա ուսումնասիրութիւնը բոշայութիւնով պիտի լինի:

Ահա հաղորդեմ մի քանի նորութիւններ, որ կարծեմ շատ կ՚հետաքրքրի ձեզ. առաւօտեան՝ թէյ եմ խմել, դասերին՝ դաս պարապել, ճաշին՝ ճաշել, ճաշից յետոյ էլ, նամակ գրելիս <եմ>. նամակ եմ գրում Ձերդ արժանապատուութեանցը:

Ախալքալաքում առաւօտից մինչև երեկոյ լոյս է լինում, իսկ երեկոյից մինչև առաւօտ՝ մութ-գիշեր, երբ որ լուսին չի լինում: Իմ տրամադրութիւնս շատ վատ է:

Մնամ Ձեր Գրիգոր

Այս անգամ Օհաննէսին ներում եմ, սխալուեցայ, ներելու եմ, եթէ խնդիրս շուտ կատարէ: Ծալամօ, բզի՛ էս անպիտանին, որ մարդ դառնայ, հերիք ինչ որ... այդպէս մնայ:

Նոյն

Այսօր ամսաթիւը հաստատ գիտեմ. նոյեմբերի 15ն է և կարծեմ Ախալքալաք եմ:

Սիրելի Յովհաննէս!
Ընդունի՛ր բարևս: Ների՛ր, որ այսքան ժամանակ նամակ չեմ գրում:
Ջալալ[1]

ԳԱԹ, ԹՖ, 2031: Ինքնագիր:

***

# ՆԱՄԱԿ – 17

10 փետրվարի 1894 թ.
Ախալքալաք

Սիրելի Յովհաննէս,

Ահա ուղարկում եմ մի կապոց թուղթ և նամակ.

Ա. Լեռնային Ոգի[2]. իմ փոխադրությունս, որ յանձնում եմ Ձեր ընկերութեանը՝ տպագրելու: Երաշխաւոր եմ, որ դա կ՚ծախուի, որովհետև մանկական պիեսայի մեծ կարիք կայ, իսկ դա պատուական պիեսա է: Այդ իմ կարծիքը չէ, այլ այն ամենի, որոնք տեսել են դորա ներկայացումը: Քեզ կաշառում եմ խնդրելով, որ դու ձայն տաս դորա տպագրութեան: Նոյնպիսի կաշառք խոստանում եմ և պ. Ֆիլիպպին[3]:

Ներփակեալ կ՚ստանաս հինգ րուբլի գրքերիդ փողը. իսկ մնացեալ հինգ րուբլին կ՚պահանջես Արամից, որովհետև 100 օր<ինակ> նորան եմ տուել, համաձայն քո պատուական կարգադրութեան:

Բ. Երկրորդ կապոցը նամակի հետ կ՚տաս օր. Աննա Սահակեանին, օր<իորդ> Դարիայի միջոցով, որ «Մշակի» խմբագրատանն է:

Գ. Երրորդ կապոցը Ուտիացոց մասին Քարամեանի նամակի հետ կ՚տաս մեր պատուական Ծալամօ-ին իր նամակի հետ, իսկ նա գիտէ թէ դա ինչ պիտի անէ, այսինքն պիտի յանձնէ պատուական պ. Քարամեանին:

Գալով մեր գործին, Յովհաննէս ջան, պիտի ասեմ, որ էդ օրիորդների թարկը տաս – ձեռք քաշես նորանցից և պարապես: Յա՛,

---

1 Ջալալի այս տողերն ավելացված են Գ. Վանցյանի նամակի առաջին էջի վերևի մասի ձախ անկյունում (ծանոթություն կազմողի):

2 Խոսքը շվեդ գրող Աննա Վալենբերգի «Լեռնային ոգին և տղան» մեկ գործողությամբ հեքիաթ-բեմադրության մասին է (ծանոթություն կազմողի):

3 Փիլիպպոս Հակոբի Վարդազարյան (1858-1935) – մշակութային գործիչ, Թիֆլիսի «Հորիզոն» գրական հանդեսի հրատարակիչ (ծանոթություն կազմողի):

ինչպէս խոստացել ես, նոր-թարմ-լաւ ոտանաւորներից‌դ երբեմն ինձ գրի՛ր: Արտաւազդդ չ'մոռանաս գլուխ բերել:

Յետ այնորիկ, աշխատի՛ր. չ'մոռանաս այն ես ու դու որ գիտենք. պատմական գիշերը անմահացնել մի պերճ ստեղծագործութիւնով:

Սիմոնը Էջմիածնից շատ տխրալի բաներ է գրում... Այդտեղ ի՞նչ են խօսում, ի՞նչ են շինում. գրի՛ր, մի՛ ծուլանար: Փաթեթս ստանալուդ մասին շուտով տեղեկութիւն տո՛ւր:

Զաւակներիդ համբո՜յր, Տիկնոջը և Տէր-տէրին`[1] ողջոյն. սիրալիր ողջոյնս հաղորդիր և պ. Ֆիլիպպին. նոյնը և քեզ.

Քո Գրիգոր

Յ. Գ. Թարգմանութեանս տպագրութեան մասին անպատճառ շուտով հաղորդես:

ԳԱԹ, ԹՖ, 2027: Ինքնագիր:

***

## ՆԱՄԱԿ – 18

Въ Тифлисъ

Міщанская улица, дом Игитханянца. Господину Давиду Шаламянъ.

Խնդրեմ տալ Туманянинъ

13 մայիսի 1894 թ.

Ախալքալաք

Սիրելի Յովհաննէս!

Բաց նամակդ ստացայ շնորհակալութեամբ: Անհամբեր սպասում եմ խոստացած մանրամասնութիւններիդ և բոլոր այն հարցերիս պատասխանին, որ գրել եմ նախընթաց նամակով: Ընդունի՛ր յատուկ ողջոյնս և հաղորդի՛ր Չերայնոց և այլ ծանօթներիս:

1 Նկատի ունի Հովհ. Թումանյանի հորը` Տեր-Թադևոսին (1839-1898) (ծանոթություն կազմողի):

Քո Գրիգոր
Դաթօ-ին բարև:

ԳԱԹ, ԹՖ, 2028: Ինքնագիր:

***

# ՆԱՄԱԿ – 19

18 դեկտեմբերի 1895 թ.
Բեռլին

Սիրելի Յովհաննէս!

Արամի նամակի հետ ստացայ մեծափայլ տեառնդ գրած ողորմած երկտողը: Չ'գիտեմ քո ծուլութեանդ համար քեզ հայհոյե<՞>մ թէ<՞> անիծեմ, սակայն, ըստ առածի՝ խևին խրատն ինչ անի սևին՝ սապոնն: «Օղորմած հոգի» թուրքն ասում է՝ էսքի դօստ դիւշման օլմազ. սամի՛մն-ինանմա՛[1]: Էլի շարունակենք մերը: Երկար ժամ<անա>ակ չ'գրելուց յետոյ մարդ չ'գիտէ ո՞րտեղից սկսի և ո՞ւր վերջացնի, ուստի անշնորհք աշըղի նման նէյնիմներից պիտի սկսի: Այդպէս էլ ես:

Սկսեմ ինձանով, վերջացնեմ քեզանով: Լսում եմ համալսարանում իբրև իսկական ուսանող. փիլիսոփայական բաժնում, բայց իհարկէ առաւելապէս մանկավարժական բովանդակութիւն, որը ես պարտաւոր եմ ուսումնասիրելու, թէև անպարտ բաներ ևս թոյլ եմ տալիս ինձ ուսանելու: Կարծեմ ներելի է վարմունքս: Թէ ո՞րքան առաւելութիւններ ունի Բերլինը ռուսական կրկնակի մայրաքաղաքներից, այդ միայն երկար ապրելով և ո՛չ առաջին անգամ մարդ կարող է զգալ. սա մի ծով է. ուզում ես զուարճացի՛ր եթէ դրամ ու ժամանակ ունիս, և դարձեալ մի ծով ուսանելու, առաջ գնալու, եթէ շնորհք և ընդունակութիւն ունիս աշխատելու և հետաքրքրուելու:

Եւ որովհետև չափահաս խելքդ, աւելի ևս խելահաս գրպանդ կատարեալ կօնտրօլ են գործողութեանդ, ուստի դու սկսում ես պարապել գերմանական բարեխղճութեամբ:

Չ'մոռանամ ասել, անդուրեկան ժողովուրդ են այս գերմանացիք, պրուսացիք նա՛մանաւանդ. գծուծ, ժլա՛տ, սառն, անտարբեր, մի խօսքով՝

1 Սամի՛մն-ինանմա – Հին բարեկամը թշնամի չի լինում. իսկապէ՛ս – Մի՛ հավատա (թուրքերեն) (ծանոթություն կազմողի):

այն չեն, ինչ որ մարդ հեռուից կարծում է: Սոցա քաղաքակրթութիւնը եթէ մեզ մօտ լինի, հաւատացած եմ, իդէալական ազգ կարող ենք համարուել: Հայոց խնդրի օրական դառնալու պատճառով բոլոր լրագիրները անխտիր ահագին յօդուածներ են նուիրում հայերին[1], ուր մի սովորական երևոյթ է դարձել հայերի բոլոր առաւելութիւնները յիշելուց յետոյ միշտ աւելացնել որ «հայերը Արևելքի հրէաներն են» (իսկ հրէա անունը այստեղ ամենաանպիտան և իւր ամենախայտառակ նշանակութեամբ է հասկացւում):

Բայց երանի մի տեսնես թէ իրանք` գերմանացի տանտիկինները ինչ անաստուած կերպով են կողոպտում մեզ` ուսանողներիս, ինչպիսի լիրբ և անամօթ հաշիւներ են ներկայացնում մեզ ամսի վերջին, ինչպէս մէկը հինգ են հաշւում, և այն ժամանակ կ'ասես` թո՛ւ, այս լրբերն է՞լ են մեզ դատապարտում: Հապա սոցա բարոյականութի՞ւնը. տէր Ալլա՛հ, ինչե՞ր չի կարելի անել այստեղ փողով, չ'գիտեմ կա՞յ արդեօք մի այլ ազգութիւն, որ աւելի երկրպագու լինի մամոնային[2], պատուանշանի, պաշտօնի, ազնուական ծագման և այլն քան այս գերմանացիք: Բայց քեզ չ'նախապաշարեմ, ինչ որ մինչև օրս լսել ես սոցա մասին, դա սոցա լաւ կողմերն է, ես գրում եմ միայն վատ կողմերը. լաւերը շատերից լսած կ'լինես:

Սոցա հիմնարկութիւնները, մամուլի ազատութիւնը, ամեն տեսակ ժողովները, թատրոնները, թանգարանները, փոստը, երկաթուղիները, քաղաքների և տների մաքրութիւնը իդէալ կարող են համարուել: Ըստ իս, սոցա ամենակրթուած դասակարգը (բացի իհարկէ գիտնականներից) բանւոր դասակարգն է: Տէր Աստուած, պէտք է լինել դոցա ժողովներում և զարմանալ ու հիանալ, թէ մրոտ բանւորը ի՞նչպէս և ի՞նչերից է ճառում: Միջին դասակարգը, ինչքան ես գիտեմ, բացարձակ տգէտ և պահպանողական է: Բարձր դասակարգի էլ շահերին հակառակ է համաձայնել բանւորների պահանջի հետ:

Յովհաննէս, պ. Վարդազարեանից իմ կողմից յատուկ ներողութիւն կ'խնդրես, որ մինչև օրս նոր «Հորիզոն»ի վճարը չ'կարողացայ ուղարկել: Դորա պատմութիւնն այս է: Պետերբուրգ ես յանձնել էի, որ մնացած համարները ծախելուց յետոյ փողը ուղարկեն պ. Վարդ<ազարեանի> հասցէին: Մէկ օր Պետերբ<ուրգի> ընկերոջիցս 9ը րուբլի եմ ստանում,

---

1Ակնարկությունը 1894-1896 թթ. աբդուլհամիդյան հայկական կոտորածներին է (ծանոթություն կազմողի):

2 Մամոնա (արամեերեն) – հարստություն, փող (ծանոթություն կազմողի):

այն առարկութեամբ թէ պ. Վարդ<ազարեան>-ի հասցէն կորցրել եմ, դու այդտեղից ուղարկի՛ր: Գնում եմ այստեղի փոստը փողը ուղարկելու, բայց նոքա նամակը չ'կորչելու ապահովութիւն տալիս են, իսկ փողինը՝ ոչ, որովհետև փողը այստեղ չեն ուղարկում, այլ՝ փոխադրում, իսկ Ռուսաստանը այդ չ'ունի: Վերջապէս այնպէս էլ մնաց պարոնի փողը ինձ մօտ: Եթէ եկող եղաւ, եկող ամառ կ'ուղարկեմ մարդու հետ, իսկ եթէ ոչ, կ'մնայ մինչև գալուստս: Իմ կողմից յատուկ ներողութիւն կ'խնդրես այդ մասին:

Չ'գիտեմ քեզ ի՞նչ է պատահել. քնարդ լռեցրել ես. «Յորիզոն» մի՞թէ այլևս չ'պիտի հրատարակէ՛ք: Բա՛ց արա քնարիդ ձայնը, լսենք և ուրախանանք: Գէթ նամակ գրի՛ր, երկա՛ր, մանրամա՛սն: Թիֆլիզից չենք ստանում համարեա ո՛չ լրագիր և ո՛չ նամակ. ուստի երեւակայի՛ր որ քու նամակդ եթէ բազմաբովանդակ լինի ամեն տեսակ մեր ներքին և արտաքին կեանքին վերաբերեալ լուրերով, Բերլինի ամբողջ հայ ուսանողութեան շնորհակալութեանը պիտի արժանանաս (մօտ 12 հոգի են): Ուրեմն, երկար և բազմաբովանդակ. որակն էլ, քանակն էլ՝ հարուստ: Բայց որ ծուլանաս ու չ'պատասխանես, քեզ չեմ ների: Գրի՛ր ամեն բան. հին և նոր, չ'կարծես թէ մենք իմացած կ'լինենք. Կովկասից մեզ լուր համարեա չի հասնում:

Ընդունի՛ր համբոյրս: Ծէկ գերմանուհիք քեզ համբոյր են ուղարկում:

Քո Գրիգոր Վանցեան

*Յասցէս՝ Berlin, Elsasser str. 36. IV. Herrn Vancian*

*ԳԱԹ, ԹՖ, 2029: Ինքնագիր:*

# ԱՐՍԵՆ ՂԼՏՃՅԱՆ
# ՄՏԵՐԻՄ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ

1888 թվականի գարնանային մի օր էր, մարտի սկզբներին (հին տոմարով), երբ մի քանի ընկերներ՝ Ներսիսյան դպրոցի 3-4 դասարանի աշակերտներ, շտապեցինք մի հուղարկավորության ներկա լինելու, մեր վերջին պարտքը տալու բյուրեղի նման մի մարդու և ուսուցչի: Այդ մարդը Դավիթ Ներսիսյանն էր, որին աշակերտել էինք 1884-85 ուսումնական տարին Էջմիածնի հոգևոր ճեմարանում և որի հետ, շուրջ 60 աշակերտներ, վտարվել էինք, իբրև հեղափոխական, անհանգիստ տարրեր(1): Ահա թե ինչու, ճեմարանի աշակերտներից մի փոքր խումբ 1886 թվի աշնանից անցանք Թիֆլիս՝ Ներսիսյան դպրոցում սովորելու:

Այսպես ուրեմն, խմբով, 5-6 հոգով, գնացել էինք մասնակցելու մեր ուսուցչի հուղարկավորությանը: Օրը խիստ մռայլ, կես անձրևային, տխուր հուղարկավորության հետ համերաշխ, եղանակն էլ սգում էր ազնիվ մարդու կորուստը: Այդ օրը խիստ տպավորվել է իմ հիշողության մեջ երկու հանգամանքով - հանգամանքներ, որոնք իրար հետ կապվեցին, ուզում եմ ասել, իրար հաջորդեցին. մեկը սիրելի ուսուցչի, պատվական մարդու, ժամանակի հեղափոխական մտածողի և կրկնակի հալածվածի անշնչացած դին էր դագաղի մեջ պարուրված, որ գնում էր հավիտենության գիրկը, և մյուսը՝ ողջ, առույգ պատանին, որ կանգնած էր ծիսակատարություն անող տերտերների հետ, ըստ երևույթին, որպես դերակատար, սակայն այդ դերին անմասն ու անհաղորդ:

Դառնալով դեպի ընկերներս, ես հարցրի. «Էդ ո՞վ է էդ տիրացուն, որ փոխանակ իր ընկերների հետ շարական ասելու, մեզ է նայում և ժպտում, կարծես թե ծաղրում է ծիսակատարությունը»: Մեկը նրանցից ասաց, թե էդ տիրացուն Ներսիսյան դպրոցից անցյալ տարի է դուրս եկել, ա՛յ, էն ջահել տերտերի տիրացուն է, որ խոստացել է դրան շուտով տերտեր շինի՝ իրեն ընկեր-օգնական: Հետո, խոսակցության ընթացքում նաև պարզվեց, որ էդ ջահել տիրացուն ոտանավորներ է գրում, բանաստեղծ է, որ նա կոնսիստորիայի մեջ գրագրի պաշտոն ունի:

Բայց տիրացուն շարունակում էր մեզ նայել, ինչ-որ գլխով նշաններ անել ու ժպտալ: Երբ դուրս էինք գալիս հանգուցյալի տանից, մեկ էլ տեսա

էդ ջահել տիրացուն ժամաշապիկը հանած, կողքիս կանգնեց ու դառնալով ինձ, ասաց.

- Ներսիսյան դպրոցի մոնթերի՞ց եք:

- Այո՛,- ասացի ես,- բա դու ո՞վ ես:

- Ես էլ աշակերտ էի, ամա դուրս եկա. հիմի տիրացություն եմ անում, կոնսիստորումն եմ:

- Գիտե՞ս ինչ կա,- ուղղակի ասացի ես,- հոգով որ ասենք, տիրացությունը քեզ չի սազում, վրայիցդ թափում է:

Նա ծիծաղեց և շտապեց գնալ: Ես թևը քաշեցի, ասելով.

- Բա չե՞ս ուզում ծանոթանալ (ես անունս տվի):

- Ոնց թե չէ, ես էլ Օվանես Թումանյանն եմ, քեզ ծառա:

Այստեղ երկուսս էլ ծիծաղեցինք ու բաժանվեցինք: Օվանեսը շտապեց հասնել տերտերին, որ իր վրա հրացայտ հայացքներ էր գցում:

Օվանեսը, սակայն, մոտիցս հեռանալու րոպեին, ասես հանդիմանելով, կշտամբանոք ասաց.

- Դե դու էլ ես տիրացություն անում, ես քեզ տեսել եմ Մողնիում երգելիս:

Եվ իրոք, ես և Գրիգոր Վանցյանը շաբաթ և կիրակի օրերը գնում էինք Մողնիի եկեղեցում երգելու, բայց որևէ տերտերի հետ կապված չէինք, մենք երգիչներ էինք:

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Օվանեսը վանքում տիրացու էր. լավ ձայն ուներ և տերտեր դառնալու հեռանկարով հաճախում էր վանքի եկեղեցին, որ միաժամանակ առաջնորդական եկեղեցի էր:

Վանքի եկեղեցում էր, որ Օվանեսը և ես մտերմացանք. նա պաշտպանում էր ինձ խանգարող և ազատ երգելս արգելող մյուս երգիչ-տիրացուներից: Նրանք մի քիչ վախենում էին Օվանեսից, չէ՞ որ նա կոնսիստորի գրագիր էր և առաջնորդարանում ելումուտ ուներ: Եվ իրոք, առաջնորդը, որ Սեդրակյան Արիստակես եպիսկոպոսն էր, Օվանեսին շատ էր սիրում:

Օվանեսը միշտ խրախուսում էր ինձ, թե՝ երգիր հետս, մի՛ վախենար: Նա ձրի տիրացություն էր անում, ինչպես ինքն էր ասում՝ «հոր խերի»: 1887 թ. աշնանից, երբ ես գիշերօթիկ դարձա, վանքում իմ երգելս էլ ձրի դարձավ:

Այսպես մեկ-երկու ամիս չանցած, արդեն ընկերացել, մտերմացել էինք այն աստիճան, որ մի օր ինձ տարավ իրենց տուն, ու չգիտեմ ինչ ոտանավոր կարդաց, որ շատ ծիծաղեցրեց ինձ: Ինձ թվում է, թե դա նրա «Շունն ու Կատուն» լեգենդի սկզբնական տարբերակն էր: Դե, շատ ժամանակ է անցել, ի՞նչ կիմանաս ու միտդ կպահե՞ս:

1887-88 ուսումնական տարվա կեսերին արդեն մենք մոտիկ ընկեր-բարեկամներ էինք, սկզբում երեք հոգի - Օվանեսը, Դաթիկոն և ես, ապա մեզ միացան Արամ Առաքելյանն ու Վանցյան Գրիգորը: Մեր հնգյակի հանդիպումները պարբերական էին, հաճախ՝ շաբաթ երեկոները: Մեր հավաքատեղին Դաթիկո Շահլամյանի առանձնարանն էր, Օվանեսի բնակարանից վեր, մի հարկով բարձր:

Երբ խոսքը «Վերնատան» մասին է լինում, դա հասկացվում է Բեհբության փողոցի այն տունը, ուր ապրում էր Թումանյանը սկսած, կարծեմ, 1900 թվից: Այդ տան վերին հարկում, իր բնակարանի մի առանձնացած սենյակ Օվանեսը դարձրել էր աշխատասենյակ, ուր և ընդունում էր ընկեր-բարեկամներին, ինչպես և առհասարակ իր մոտ եկող հյուրերին: Օվանեսին այցելող գրականագետներն այդ սենյակին տվին «Վերնատուն» անունը, ու այդպես էլ մնաց: Հետ այնու, երբ խոսք էր լինում «Վերնատան» մասին, ամենքն հասկանում էին այն օջախն, ուր հավաքվում էին Օվանեսին մոտիկ մարդիկ, գրական սրտակից ընկերներ:

Որքան էլ «Վերնատունը» դեր խաղացած լինի Օվանեսի կյանքի և ստեղծագործության բնագավառում, այնուամենայնիվ այդտեղ չէր, որ կոփվեց նրա բանաստեղծական տաղանդը, և այդ «Վերնատունը» չէր, ուր նրա պատկերն ուրվագծվեց: Այդ բանը տեղի ունեցավ Դաթիկո Շահլամյանի առանձնասենյակում, և Ծիրանավորի անպաճույճ, բացօթյա գարեջրատների սեղանների վրա, որոնք ոչ այլ ինչ էին, եթե ոչ իրար միացրած հասարակ տախտակներ՝ իրենց, այսպես կոչված, իշաոտնուկ նստարաններով:

Ինչպես ասել եմ, սկզբում երեքն էինք՝ Օվանեսը, Դաթիկոն և ես: Երբ առանձնանում էինք Դաթիկոյի սենյակում, առաջին հերթին, մանավանդ Դաթիկոն, հարկադրում էինք Օվանեսին կարդալ մեզ իր ոտանավորներից. նա հաճախ մերժում էր, աշխատում էր խուսափել, բայց մեր ձեռքից չէր պրծնում: Երբեմն կարծում էր, որ մեր գովեստներով իրեն ու իր ոտանավորները ծաղրում ենք: Նա շատ էլ ոգևորված չէր իր բանաստեղծություններով, այլ խոսքով՝ դեռ իր արժեքը չգիտեր ու իրեն համարում էր սովորական ոտանավորներ գրող և ոչ ավելին:

Շատ չանցավ, մեր այդ առանձնացումներին մասնակից արինք նաև Արամին ու Գրիգորին և ամեն շաբաթ երեկո հավաքվում էինք նրա բանաստեղծությունները կարդալու և լսելու: Կարելի է ասել, որ ժամանակի ընթացքում (1-2 տարվա) նրա բանաստեղծություններից շատերը տասնյակ անգամներ կարդացել ենք, դիտողություններ արել ու իրեն թողել, որ կոկի:

Որքան էլ ջահել, սակայն ճաշակի ու զգացմունքի տեր պատանիներ էինք, Օվանեսին սկսեցինք սիրել, գնահատել և իր կոչման գիտակցության բերել: Նա, մանավանդ այն ժամանակներում, շատ քաշվող էր, համեստ, միևնույն ժամանակ շատ հպարտ էր, ինքնասեր և դյուրազգաց: Մեր բոլորի անկեղծ ու սրտացավ վերաբերմունքը չէր կարող չնկատել ու չգնահատել մեր Օվանեսը, ուստի որոշ ժամանակ անց արդեն ինքն էր առաջ բերում իր բանաստեղծությունների փոքր տետրակը: Ժամանակի ընթացքում շատ անգամ նա հարկադրված եղավ իր այդ տետրակի պատկերը փոխել նորանոր արտագրություններով ու տարբերակներով: Նա աշխատում էր լեզվի վրա, խմբագրում ոճը, փոփոխություններ անում՝ հնարավորին չափ բարբառային ազդեցություններից ազատվելու համար:

Մենք հինգն էինք, մնացել է մեկը: Մեզանից երկուսն ինքնասպանություն գործեցին, երրորդը սրտի կաթվածից մեռավ, իսկ ինքը, մեր հնգի կենտրոնը կազմող ու մեր շատ սիրելի Օվանեսը վաղաժամ վախճանվեց քաղցկեղից:

Այժմ համառոտակի անցնեմ այդ հնգյակից չորսի կենսագրականին: Բոլոր հինգս էլ Ներսիսյան դպրոցի աշակերտներ էինք, թեպետ Օվանեսին ծանոթացա այն ժամանակ, երբ նա այլևս աշակերտ չէր. 1886 թվին, չորրորդ դասարանից թողել էր դպրոցը:

Արամ Առաքելյան. զանգեզուրցի, շինականի զավակ, որ բարեկամների օգնությամբ եկել էր Թիֆլիս ուսում առնելու, մարդ դառնալու, որպեսզի հետո գնա, գյուղական ցավերի տակ կքած իր ծնողներին օգնի: Արամը Օվանեսի մոտ եղած մեր հավաքույթներին պատմում էր իրենց գյուղի և գավառի ցավերից, ազգամիջյան անհամաձայնություններից, բեկի և մելիքի ձեռքը աշխատավոր գյուղացիության քաշածից:

Օվանեսը հաճախ ընդհատում էր նրան, ասելով.

- Քո տունը չծակվի, դե ասա էդ քո Զանգեզուրը մեր Լոռու-Բորչալուի կտորն է, նույն ցավերով ու սրտամաշությունով:- Ու սկսում էր ինքն էլ ավելի գունագեղ ու վշտով համակված պատմել աշխատավոր գյուղացու՝ իր տեսած ու ապրած չարքաշ կյանքից: Մենք ամենքս էլ ժողովրդի զավակ

էինք, նրա ցավերին ու հոգսերին տեղյակ, նրա ապրումներին մասնակից, սակայն երբ Օվանեսն էր խոսում ցարական ռեժիմի և պաշտոնեության ձեռքում շահագործվող ժողովրդի տառապանքներից, նրա նկարագիրն այլ շունչ ուներ և այլ արտահայտություն: Այդ ոգեշունչ ապրումներն իրենց ավելի գունագեղ արտահայտությունը գտան նրա ստեղծագործությունների մեջ, սկզբում համեստ, երկչոտ, ապա հուժկու և տպավորիչ՝ հատկապես «Հառաչանք» պոեմի մեջ:

Առաքելյանը նյութական սուղ միջոցներով էր ապրում, սակայն ուսում առնելու ձգտումն այնքան մեծ էր նրա մեջ, որ նա ապրում էր մեծ խնայողությամբ՝ ամսական 4-5 ռուբլով: Իբր ուսումնատենչ պատանի, աշխատում էր լավ սովորել: Օվանեսը և մենք բոլորս սիրում էինք նրան՝ կենսուրախ, ընկերական բնավորության համար: Նա քիչ թե շատ գրական ճաշակ ուներ ու երբեմն Օվանեսի բանաստեղծությանց ազդեցության տակ ոտանավորներ էր գրում, որ Օվանեսին և մեզ խիստ զվարճացնում էր: Հետագայում մենք երբեմն նրա ոտանավորներից տողեր էինք արտասանում ու ծիծաղում վրան: Օվանեսը նույնիսկ մի երգիծական քառյակ էր գրել նրա բանաստեղծական ունակությանց մասին: Արամը խիստ զայրանում էր, երբ Օվանեսը դիմում էր նրան, ասելով. «Դե, հիմի դու քո ոտանավորդ կարդա», ու մենք քահ-քահ ծիծաղում էինք: Երբ Արամը խիստ էր նեղանում, Օվանեսը դառնում էր նրան, թե՝ ադա, խո սարսաղ չես, հանաք ենք անում:

Նա իր ամբողջ կյանքում մնաց Օվանեսին մտերիմ ընկեր և երբեք նրանից իր կապը չկտրեց: Օվանեսի առաջին հատորի հրապարակ գալուն մեծապես նպաստեց: Բանաստեղծը այդ բանը երբեք չէր մոռանում:

Առաքելյանի նյութականը մի քիչ բարվոքվեց, երբ նա 1887 թ. աշնանն ընդունվեց Ներսիսյան դպրոցի թոշակառու աշակերտների շարքը: Թոշակն ամսական 7 ռուբլի էր. թեև քիչ, բայց իր 4-5 ռուբլու հետ սկսեց համեմատաբար լավ ապրել: Ժամանակի հոգաբարձությունը գտնում էր, որ 7 ռուբլին մեծ գումար է ու դրանից ավելին տալը՝ շռայլություն: Չքավորը չքավորության մեջ էլ պիտի ապրի ու սովորի, որ հասկանա, թե դրամն ինչ արժեք ունի և ինչպես է կուտակվում. այսպես էր հոգաբարձության բուրժուական հասկացողությունը. այսինքն՝ ողորմություն տալ, այն էլ կաթ-կաթ: Որքա՜ն դժվար էր այդ 7 ռուբլուն արժանանալը: Արամ Առաքելյանը երեք տարի տառապելուց ու դռներ մաշելուց հետո հազիվ արժանացավ հոգաբարձության գթասրտությանը, թեպետ լավ սովորողներից էր:

Ի դեպ՝ Թումանյանը, լինելով ընդունակ պատանի, սուղ միջոցների

տեր, Դսեղի ծխական քահանայի որդի, ավելի քան իրավունք ուներ հոգևոր դպրոցից նպաստ ստանալու, բայց ո՛չ ուսուցիչներն ու տեսուչը և ո՛չ էլ աղա հոգաբարձուները երբեք չհետաքրքրվեցին, թե ինչո՞ւ այդ շնորհալի աշակերտը դուրս մնաց դպրոցից:

Օվանեսը Ներսիսյան դպրոցում էլ ոտանավորներ էր գրում, բայց դա չէր մտահոգում ո՛չ հոգաբարձուներին, ո՛չ էլ ուսուցիչներին: Եթե նա ամսական գոնե մի 7 ռուբլի թոշակ ստանար, դպրոցից չէր դուրս գա, կավարտեր ուսումը, և այդ, անշուշտ, նրա մտահորիզոնն ընդլայնելու տեսակետից մի փոքր առավելություն կլիներ, որքան էլ Ներսիսյան դպրոցի այն ժամանակվա ծրագիրը խեղճ ու ողորմելի էր: Ահա այն հիմնական պատճառը, որ հարկադրել էր մեր Օվանեսին թողնել դպրոցը:

Այժմ վերադառնանք մեր Արամին:

Առաքելյանը երկար չի մնում ուսուցչական ասպարեզում, հազիվ 3-4 տարի: Հեռանալով դպրոցական ասպարեզից, նա ազատվում է հոգաբարձուների և թեմական տեսուչների քմահաճ քաշքշուկներից: Մի քանի տարի Աղստաֆա կայարանում վարում է մի առևտրական տան ներկայացուցչի պաշտոնը: 1898 թվից, եթե չեմ սխալվում, արդեն Բաքվումն էր ու այստեղ էլ մնում է ցմահ, որ տեղի է ունենում 1933 թ.: Այլուր թե Բաքվում իր ուժերի ներածին չափ նա մասնակցել է հասարակական գործերի:

Օվանեսը միշտ բարձր էր գնահատում Արամի՝ ընկերների նկատմամբ ունեցած նվիրվածությունն ու հատկապես նրանից ստացած օժանդակությունը գրական ասպարեզում առաջին քայլերն անելիս: Արամը միշտ մնաց Թումանյանի տաղանդով հիացող, նրա գրական արժանիքները բարձր գնահատող ընկեր, բարեկամ ու ոգևորված երկրպագու:

Դաթիկո Ծահլամյան. Մեր ինգյակի սիրելին, մեր շատ սիրելի Դաթիկոն, որի հետ դեռ աշակերտությունից Օվանեսն առանձնապես մոտիկ ու սրտակից է եղել: Երբ 1887 թ. աշնանը Օվանեսն ինձ ծանոթացրեց նրան, ես էլ Դաթիկոյին սիրեցի ու նրա հետ կապվեցի: Ինչպես Օվանեսն իր ժամանակին, այնպես էլ ես մինչև օրս չեմ կարող մոռանալ նրա մրահոն և թախծալից աչքերն ու առհասարակ վշտալից հայացքն ու կեցվածքը:

Ծահլամյանները Թիֆլիս վերաբնակված ախալցխացիներ էին, ապրում էին նյութապես նպաստավոր պայմաններում: Օվանեսն ու Դաթիկոն Ներսիսյան դպրոցից ընկերներ էին, սակայն Օվանեսի նման Դաթիկոն չի թողել դպրոցը, այլ մնացել ու ավարտել է, կարծեմ Արամ

Առաքելյանի հետ: 1886 թ. աշնանից ինձ հետ էլ աշակերտակից լինելով, նա ինձանից մի դասարանով միայն բարձր էր:

Օվանեսն ապրում էր նույն տանը, ուր մի հարկ վերև ապրում էր Դաթիկոն՝ իր քրոջ և փեսայի հետ միասին, վերջինիս բնակարանում: Այդ տունը գտնվում էր Նորաշենի փողոցում, նույնանուն եկեղեցու մոտ: Թումանյանը այդ ժամանակվանից, այսինքն 1887 թվից, ապրում էր Հովհաննես քահանա Մարտիրոսյանի տանը: Բնակարանի այդպիսի մոտիկությունն էլ ավելի մտերիմ հարաբերությանց նպաստող էր. դա հնարավորություն էր տալիս 1888 թ. սկսած հաճախ առանձնանալ Դաթիկոյի հետ՝ ընկերական զրույցների և ժամանցի համար: Մանավանդ որ Դաթիկոյի սենյակը բոլորովին առանձնացած էր քրոջ բնակարանից ու մի առանձին մուտք ուներ, ինչպես սովորաբար լինում են տան գլխավոր մուտքի գլխին շինված սենյակները: Այդ սենյակն, ինչպես ասացի, դառավ Օվանեսի և առհասարակ մեր հնգյակի «Վերնատունը», Հովհաննես Թումանյանի առաջին «Վերնատունը», որ ցարդ մնացել է անծանոթ ու անհայտ:

Մեր սիրելի Դաթիկոն երկար չապրեց. նրա մատաղ և ազնիվ հոգին կրծող վիշտը, որ այնպես ակնբախ կերպով արտացոլվում էր նրա խորը թախիծով համակված հայացքի մեջ, վերջ տվեց նրա ջահել կյանքին՝ 1894 թ. նա ինքնասպան եղավ: Օվանեսը հաղորդակից էր Դաթիկոյի հոգեկան ապրումներին. նա գիտեր, թե ինչն էր տանջում իր սիրելի ընկերոջը, գիտեր, որ մի խոր գաղտնիք մշտապես ուղեկցում ու հալածում էր Դաթիկոյին և լուռ էր մնում, նույնիսկ ինձ մինչև վերջ էլ չասաց: Ես շատ անգամ եմ Օվանեսին հարցրել, բայց միշտ էլ պատասխանը եղել է մի վշտահար ժպիտ և երկու խոսք, թե՝ իմս չէ, որ քեզ տամ:

Դաթիկո Ծաղլամյանի գաղտնիքը զգալի ազդեցություն է գործել Օվանեսի վրա, նրան էլ համակելով հոգեկան ապրումներով: Երբ ես այդ մասին ակնարկներ էի անում, թե Դաթիկոն իր վրա ազդեցություն ունի, Օվանեսն այդ չէր ուրանում:

Թումանյանն այն կարծիքին էր, թե մեր հնգյակի ընկերներից Դաթիկոն ամենապայծառն ու զգայունն էր:

Գրիգոր Վանցյան. Ախալքալաքի (Ջավախք) գավառի Բեժանո գյուղից, մանկուց մեծացած Ախալքալաքում՝ իր քեռու մոտ, որ գյուղական ուսուցիչ է եղել: Քեռին, նկատելով քրոջ տղայի ընդունակությունները և սովորելու ձգտումը, ուղարկում է նրան Թիֆլիս, Ներսիսյան դպրոց, ուր նա 1885 թ. աշնանը ընդունվում է 2-րդ դասարան: Վանցյանի գյուղացի

ծնողքն անկարող էին նույնիսկ ամենաչնչին միջոց հայթայթել իրենց որդու ապրուստի համար, ուստի և քեռին իր խիստ աղքատ միջոցներից ամսական ուղարկում էր երբեմն 3, երբեմն 4 ռուբլի: Ահա այդ դրամով Վանցյանը ապրում էր, դպրոց հաճախում և իր աշխատասիրությամբ լավագույն սովորողների շարքը մտնում:

Վանցյանի կրթության գործում ակնբախ է նրա քեռու դերը: Յանրածանոթ Յոպալիկը (Վանցյանի քեռու ծաղրական անունը) ավելի մի հնօրյա խալֆա է եղել, կիսագրագետ մի մարդ, որը, սակայն, ոչ միայն Վանցյանի, այլ նաև իր մի շարք աշակերտուհիների մեջ սեր է ներշնչել դեպի ուսումն ու գրագիտությունը: Նյութական զոհողությունների գնով (իր վաստակածի 25 տոկոսը, ինչպես պատմում էր Վանցյանը) նա ամեն ինչ անում էր, միայն թե կարողանա օգնել քրոջ որդուն. նրան մարդ դարձնել: Նույնը նա պատրաստ էր անել նաև ուրիշների համար, եթե հնարավորություն ունենար:

Վանցյանն ընդունակ, վառվռուն և ջղային պատանի էր, գրական ընդունակություններով և մեծ ձգտումներով: Դժբախտ պատահարների բերումով նա կորցրեց իր մտային հավասարակշռությունը և 1908 թ. կյանքի հետ հաշիվները վերջացրեց ինքնասպանությամբ:

Դպրոցում 1886 թ. աշնանից երրորդ դասարանում ընկերացանք ու իրար հետ ավարտեցինք 1890 թ. գարնանը: Ինչպես ասացի, նա խիստ սուղ նյութական վիճակում մի կերպ քարշ էր տալիս իր գոյությունը: Արամ Առաքելյանը, Վանցյանն ու նրանց մի ուրիշ ընկեր ապրում էին Թիֆլիսի Սերեբրեննայա փողոցում մի տան մեջ, մի փոքրիկ սենյակում, ուր դրված էր երեք թախտ և մեկ հասարակ սեղան. աթոռներ չունեին, նստում էին թախտերի վրա: Մոտ երեք տարի նրանք ապրում էին նյութական խիստ ծանր պայմանների մեջ, մինչև վերջապես Արամ Առաքելյանին հոգաբարձությունը նշանակեց թոշակ, իսկ Գրիգոր Վանցյանին և ինձ ընդունեցին դպրոցի գիշերօթիկ աշակերտների շարքը:

Օվանեսն առաջին ուրախացողներից մեկն եղավ, երբ իմացավ, որ Արամի, Գրիգորի հետ վերջ է տրվել նաև իմ նյութական ծանր վիճակին:

Վանցյանն ուսուցչությունը թողեց 1894 թ. գարնանը և նույն թվականի աշնանից արդեն Պետերբուրգումն էր ու պատրաստվում էր իբրև իսկական ուսանող մտնելու այնտեղի համալսարանը, սակայն Ներսիսյան դպրոցի հոգաբարձության որոշմամբ 1895 թ. մեկնեց Գերմանիա ուսանելու՝ վերադառնալուց հետո դպրոցում ուսուցչություն անելու պայմանով: Յակառակ հաջող ուսանելուն, նա չկարողացավ ավարտել, որովհետև

հոգաբարձությունը չուզեց երկարացնել նրա ուսման շրջանը դարձյալ մի տարով՝ դիսերտացիա գրելու և քննության ներկայանալու համար:

Վերադառնալուց հետո Վանցյանը չկարողացավ ազգային դպրոցների հոգաբարձուների հետ հաշտվել, խաղաղ կյանք ու պաշտոն վարել: Իր կյանքի վերջին յոթ տարին նա Թիֆլիսի առաջին առևտրական դպրոցի հայոց լեզվի ուսուցիչ էր:

Պարզ քաղաքական հայացքներ չուներ, բայց հակված էր դեպի սոցիալ-դեմոկրատիզմը, հատկապես կյանքի վերջին տարիներին դեպի մարքսիզմ էր գնում, որի հետևանքով և խուլ մաքառումն կար նրա և դաշնակցականների միջև:

Սիմեոն Ղլտճյան (հետո Արսեն եպիսկոպոս). դարսեցի հին ընտանիքի սերունդ, ծնված Ալեքսանդրապոլում (այժմ Լենինական): Ունեցել եմ աղմկալից կյանք խոշոր տարուբերումներով և մոլորություններով: 1882 թվականից Գևորգյան ճեմարանի աշակերտ էի: 1884-1885 թվականներին ճեմարանի համար ռեակցիայի տարիներ էին: Տարածված աչքացավի պատրվակով հեռացվեցին, վարչության արտահայտությամբ՝ «խառնակիչ տարրերը», որոնք կազմում էին աշակերտության մոտ 30 տոկոսը. դրանց մեջ էի նաև ես(2):

Ծուրջ մի տարի տանը մնալուց հետո ծնողներս ինձ ուղարկեցին Թիֆլիս, քրոջս մոտ, որի ամուսինը կոշկակար էր: 1886 թ. օգոստոսին ընդունվեցի Ներսիսյան դպրոցը, ուր շատ լավ սովորող աշակերտների շարքում մնացի մինչև 1890 թ. մայիսը և հիվանդությանս պատճառով ավարտեցի առանց քննության:

Առաջին տարին, որպեսզի կարողանամ փեսայիս մի քիչ օգնել, ճաշերից հետո գնում էի նրա խանութն աշակերտության ու շատ շուտով սովորեցի կոշիկի երեսը այնպես վարպետորեն կարկատել, որ կարը համարյա չէր երևում: Ասել է՝ նույն աշխատանքով հանում էի ապրուստիս մի մասը: Դժբախտաբար 1887 թվի օգոստոսին, երբ արձակուրդներից հետո վերադարձա Թիֆլիս, փեսաս իր ընտանիքով տեղափոխվեց Ալեքսանդրապոլ, ես մնացի Թիֆլիսում, այսպես ասած՝ փողոցում: Գրպանումս ունեի այնքան դրամ, որ կարող էի ապրել երկու ամիս, այնուհետև խնդիրը լուծողը բախտն ու դիպվածն էին լինելու: Բայց ես որոշել էի ինչ էլ լիներ, մնայի դպրոցում: Ներսիսյան դպրոցի մի քանի ալեքսանդրապոլցի աշակերտների հետ Քռի ափին վարձեցինք մեկ սենյակ ամսական 3 ռուբլով, յուրաքանչյուրին ընկնում էր 75 կոպեկ. դա մեզ բոլորիս ձեռնտու էր:

Թումանյանը խիստ խրախուսում էր ինձ, ամեն կերպ աշխատում էր օգտակար լինել, սակայն իր նյութական հնարավորությունից հեռու էր այդ բանը: Նա կարծեմ ինչ-որ բան արավ, որ վանքի ծխական հոգաբարձությունն արագացներ եկեղեցում երգելուս համար շաբաթականների վարձատրությունը:

Երբ Օվանեսի հետ արդեն պարբերական հանդիպումներ էինք ունենում, տեսնում էի, որ նա գրքեր էր հավաքում, կարդում էր և առհասարակ ընթերցասեր էր. հաճախ ինձ էլ էր խրախուսում ընթերցանությամբ պարապել, մանավանդ, երբ տեսավ, որ ես էլ գրական շնորհք ունեմ՝ քչից-շատից: Դա երևում էր նրա բանաստեղծությունների ընթերցման ժամանակ: Հետագայում, երբ հնգով էինք լսում նրա ոտանավորների ընթերցումը, հաճախ նա դառնում էր, թե՝ էդ չելավ, մի տեսնենք Սիմոնն ի՞նչ է ասում:

1890 թ. ավարտելուցս հետո երկու տարի ուսուցիչ եղա: 1892 թ. Խրիմյան Հայրիկի կաթողիկոս ընտրվելուց հետո երիտասարդության մեջ ձգտում կար վանական-հոգևորական կամ, ինչպես ասում էին, վարդապետ դառնալու: Դա համարվում էր ազգին ծառայելու մի ձև: Ահա այդ մթնոլորտի մեջ էր, որ ես էլ հմայվեցի ու 1892 թ. հունիսին խնդիր տվի հանգուցյալ Երեմիա եպիսկոպոսին, որ այն ժամանակ կաթողիկոսական տեղակալ էր, ու նույն տարվա օգոստոսին ընդունվեցի Էջմիածնի վանքի միաբան՝ իր բոլոր հետևություններով:

Երբ ես 1906 թ. հեռացա վանքից և փախա արտասահման(3), այդ օրերին Օվանեսի հետ սրտալից շատ տեսակցություններ ունեցանք: Նա իմ կյանքի անհաջողություններից վշտացած էր. մի անգամ ասաց.- Արսեն, այդ քայլերիդ մեջ ճակատագրական շատ բան կա քեզ համար, բայց կարծում եմ, թե այժմ մարդ դարձար: Տարիներ անցան, ես բարձրագույն կրթությամբ, որպես իրավաբան, վերադարձա հայրենիք, Օվանեսն առաջին հանդիպմանը ոգևորությամբ ընդունեց ինձ, սակայն երբ նորից վանք մտա, նա դառնությամբ շեշտեց, որ կարծում էր, թե բարձր կրթություն ստանալուց հետո «մարդ մնալը» դժվարին բան չէր, «բայց դու միայն վարդապետ դարձար»,- ասաց նա:

Թումանյանի առաջին ընկեր-մտերիմները սրանք էին, որոնց մասին համառոտակի պատմեցի: Ասել, թե նոքա փոխադարձ ազդեցություններ չեն կրել, ճիշտ չէր լինի: Թումանյանի սկզբնական շրջանի երկերի մեջ խիստ թախծի և վշտի արտահայտություններ կան. այդ թախիծն ու

վիշտը երկու ընկերների՝ Օվանեսի և Դաթիկոյի իրար խառնվող և իրար լրացնող ներքին դրամայի արդյունքն է առավելապես: Սխալ է կարծել, թե կոնսիստորիայի խորթ միջավայրը, քահանայության ապագա հեռանկարն էր պատճառը, որ «այդ շրջանում գրած Թումանյանի լիրիկ ոտանավորների մեծ մասը կրում են հոռետես մի շեշտ»(4): 1887-1892 թվականներում նա իրեն շատ էլ վատ չէր զգում... Այդ շրջանից 1887-90 տարիներն անցել են իմ աչքի առաջ. ես մշտապես Օվանեսի կյանքին հաղորդակից էի: Այն հանգամանքը, որ իր չորս ընկերները սովորում են, իսկ ինքը՝ ոչ, ճնշում էր Թումանյանին: Նորից դպրոց վերադառնալ անհնարին էր. մնում էր մի բան՝ զբաղվել ինքնակրթությամբ, ընդլայնել իր մտավոր հորիզոնը. մի բան, որ նա իրագործում էր ընթերցանության միջոցով. նա շատ էր կարդում, մշտապես գրքեր էր հավաքում, հաճախ օրվա հացի գինը ծախսելով այդ նպատակին: Այս խնդրում նա բարերար ազդեցություն ունեցավ նաև մեզ վրա, մենք էլ էինք աշխատում նույնն անել: Բայց մենք, հատկապես տողերիս գրողը, աշխատել է, որ Թումանյանը հիմնավոր կրթություն ստանա, սակայն այդ չի հաջողվել գլուխ բերել, հատկապես նրա համար ստեղծված անձնական կյանքի յուրահատուկ պայմանների պատճառով:

## ԻՆՉՈ՞Ւ ԹՈՒՄԱՆՅԱՆԸ ԿՈՆՍԻՍՏՈՐԻԱՅԻ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆԻՑ ԴՈՒՐՍ ԵԿԱՎ

Թումանյանը մտել էր կոնսիստորիա, որպեսզի քահանա դառնար. այդպես էր նրան տրամադրում, ավելին, դրդում իր շրջապատը: Ու նա, դժբախտաբար, քահանա կդառնար, եթե Արիստակես եպիսկոպոս Սեդրակյանը մնար առաջնորդ: Վերջինիս փոխարինեց Մամբրե եպիսկոպոս Սանասարյանը, որը իմանալով Օվանեսի՝ դեպի Սեդրակյանն ունեցած դրական վերաբերմունքի մասին, սկսեց նրա հետ վատ վարվել, փոխվեց նաև կոնսիստորիայի մյուս ծառայողների վերաբերմունքը: Նոր առաջնորդը հայացքներով պահպանողական էր, նախորդը՝ Սեդրակյանը, լիբերալ էր, «մշակական»: Կոնսիստորիան, որ առանց այն էլ ձրիակերների հիմնարկություն էր, Մամբրեի օրով է՛լ ավելի վատթարացավ. հրապարակով կաշառք վերցնելը, գյուղացուն ու խնդրատուին գզլելը սովորական բաներ դարձան:

Թեև Թումանյանի համար այդ բաները շատ էլ նորություններ չէին, սակայն Մամբրեի օրով դրանք դառան վրդովեցուցիչ: Նա սկսեց ծաղրել,

բացեիբաց խոսել, զայրանալ, բողոքել: Այդ բանը չէր կարող դուր գալ ծառայակիցներին, կոնսիստորիայի անդամ քահանաներին, որոնք Օվանեսի երգիծանքով նույնիսկ զվարճանում էին, առանց, սակայն, իրենց վրա վերցնելու: Այդ բոլորը, անշուշտ, չէին կարող գաղտնի մնալ առաջնորդից: Մեր հավաքույթների ժամերին Օվանեսը կոնսիստորիայի անցուդարձերը պատմում էր խիստ վրդովված: Մենք և զայրանում էինք, խրախուսում էինք Օվանեսին ծառանալ այդ ապօրինությունների և անարդարությունների դեմ: Ինչպես նա, այնպես էլ մենք, անփորձ և մաքուր պատանիներ, կարծում էինք, թե նման ձևերով հնարավոր էր բարի արդյունքի հասնել:

Թումանյանը մեզ համար կարդում էր նաև իր երգիծական ոտանավորները՝ գրված առանձին թերթիկների վրա, որոնք հետո ոչնչացնում էր: Առաջնորդի և նրա արբանյակների դեմ գրածներից մեկը, սակայն, մնացել է: Այդ ոտանավորը, որ երգիծական չէր, այլ մեղադրական, մենք պահանջեցինք, որ անպատճառ դրվի հրատարակվելիք ժողովածուի մեջ:

Թումանյանն այդ բանաստեղծությունը, որ ուներ «Չարամիտներին» խորագիրը, մեզ կարդաց վերջին հավաքույթի ժամանակ, որից հետո շատ չանցած, ցրվեցինք գավառները: Եթե Օվանեսը չբացատրեր, թե դրա գրելու առիթն ու գլխավոր դրդապատճառը թեմական առաջնորդ Մամբրե եպիսկոպոսն է ու խոսքի սուր ծայրն ուղղված է դեպի նա, մենք ամենևին չպիտի կարողանայինք կռահել:

Թումանյանը այդ բանաստեղծությունը գրել էր կոնսիստորիայում, կարդացել ի լուր ամենքի, և որովհետև սրա առիթը եղել էր պաշտոնավայրում կատարված մի դեպք, ուստի և լսողները բարձրաձայն ասել էին իրար, թե դա Մամբրեի դեմ է գրված:

Մամբրե եպիսկոպոս Սանասարյանը քանի մի քահանաներով առաջնորդարանը դարձրել էր անառականոց: Այդ պատճառով չորս տարվա առաջնորդության ժամանակամիջոցին նույնիսկ իր կուսակիցների՝ «նոր-դարականների» շրջանում հեղինակություն չուներ: Օվանեսը ոգևորված էր հին, մեծ հոգևորականների կյանքով և գործերով, այն կարծիքին էր, որ հոգևորականությունը մեծ դեր ուներ կատարելու: Իր մի նամակում (1892 թ. սեպտեմբերի 12, Թիֆլիս) իմ վանք մտնելու առիթով գրում է ինձ. «... Սիրելի ընկեր, հայոց կուսակրոն հոգևորականությունը այս օրերում ծանր գործ ունի կատարելու - մեր ներկա վիճակի բարվոքման և ապագայի ապահովության խնդիրը դրած է նորա առաջին, դու էլ մտնելով այդ

դասակարգի մեջ, պատասխանատու հոգատարի պարտականություններ ես հանձն առնում»(5):

Մակար կաթողիկոսն Արիստակես եպիսկոպոս Սեդրակյանին Վրաստանի և Իմերեթիայի հայոց թեմի առաջնորդության պաշտոնից արձակեց իբրև Արծրունու և հայ լիբերալների կողմնակցի: Այդ բավական չէ, նրա տեղն ուղարկված Մամբրե եպիսկոպոսն ամեն կերպ աշխատելիս է եղել Սեդրակյանի գործունեության մեջ և անձնական կյանքում վատ արարքներ գտնել: Այդ նպատակին հասնելու համար կատարվել են խուզարկություններ, գումարվել «եղբայրադավ» ժողովներ և պարզել երկու մեղադրանք. նախ՝ որ Արիստակես եպիսկոպոսը Սարգիս Բեկնազարյանին և Սահակ Սահակյանին առանց Էջմիածնի թույլտվության քահանա է ձեռնադրել, և երկրորդ, որ նրա կյանքը խիստ արատավոր է եղել:

Բանաստեղծության մեջ Օվանեսի ակնարկած «ժողովների» հետևանքը պետք է լիներ հալածել նաև այն քահանաներին, որոնք «հակամակարական» էին, ասել է՝ «արծրունական»-«մշակական». վերջիններիս թվումն էր նաև Օվանեսի աներ Հովհաննես քահանա Մարտիրոսյանը:

Հայոց հոգևորական գործերի թեմական կենտրոնական մարմինները, որ կոնսիստորիաներ էին կոչվում, հատուկ դրամական միջոցներ էին գանձում՝ թեմի հոգևորականության որբերին և այրիներին օգնելու, ամսական կամ տարեկան նպաստներ հայթայթելու համար: Պետական օրենքն այդ իրավունքը տալիս էր հայ հոգևորականությանը:

Սակայն Օվանեսը ականատես էր, թե կոնսիստորիայի անդամ քահանաներն ինչպես էին չարաշահում հոգևորականաց այրիներին և որբերին հատկացված գումարը, երբ պետք էր լինում այդ գումարներից նպաստներ տալ այս ու այն որբին կամ այրի կանանց: Նա տեսնում էր, թե ինչպես հաճախ նպաստ ստացողները ոչ թե խեղճերն ու անճար գյուղական հոգևորականաց որբ երեխաներն ու կանայք էին, այլ քաղաքի բարվոք վիճակի մեջ եղածները: Գյուղականի ձայնը լսելու ոչ խիղճ և ոչ գլուխ ունեին առաջնորդ ու տերտեր իշխանավորները: Բանաստեղծը տեսնում էր, թե ինչպես էին վարվում նրանք մեռած քահանաների ջահել կանանց հետ, երբ վերջինները դիմում էին նրանց օգնությանը:

Այսքանը, կարծեմ, բավական է հիմնավորելու համար այն պնդումը, թե «Չարամիտներին» բանաստեղծությունը գրելիս Օվանեսը նկատի է ունեցել Թիֆլիսի կոնսիստորիան իր առաջնորդով ու քահանաներով:

Օվանեսը մեր շրջանում կարդացել է, ինչպես ասացի, մի քանի երգիծական քառյակներ: Բացի «Չարամիտներին» մեղադրականից, նա ուներ նաև մի ուրիշը, ուր շատ ավելի խտացված ու պարզ արտահայտություններ էր թույլ տվել հոգևորականության, հատկապես ցոփության ու կաշառակերության մասին, սկսվում էր դարձյալ «Դուք»-երով: Գրված չէր տպագրելու համար, քանի որ ավելի պամֆլետի բնույթ ուներ: Ինչպես Օվանեսի դուստր Նվարդն ասաց, այդ բանաստեղծությունը չի երևացել նրա թղթերի մեջ, ափսոս. դա լավ պատկեր էր, խարազանիչ նյութ: Երբ նա մեզ կարդաց իր «Ալեք» պոեմը, մենք խիստ հավանեցինք ու մտցրինք տպագրվելիք բանաստեղծությանց ցանկը, մինչև իսկ պահանջվեց, որ այն անպատճառ տպագրվի առաջին ժողովածուի մեջ: Ինքն էլ խիստ հավանում էր այդ պոեմը:

Հակառակ այն բանին, որ Թումանյանը ըստ ժամանակի պահանջի չէր խոնարհվում կոնսիստորիայի իշխանության առջև և ընդհակառակը՝ իր ոչնչացնող ելույթներով, ծաղրով ու երգիծանքով խարանում էր շրջապատի հոգևորականության արարքները, նրան չէին հեռացնում կոնսիստորիայից: Չէ՞ որ Օվանեսը այսպես կոչված հաստիքավոր պաշտոնյա չէր, այլ ազատ վարձված մի գրագիր, որ պետական պաշտոնյա չէր կոչվում, իսկ կոնսիստորիայի հաստիքավոր ծառայողները համարվում էին պետական ծառայողներ ու ստանում չին (աստիճան) և շքանշաններ ըստ իրենց դիրքի: Ասել է՝ մի վարձու ծառայողի, ինչպիսին Թումանյանն էր, ոչինչ բան էր փողոց շպրտելը: Այդ բանը հեշտ էր 1889 թվականին, արդեն մի քիչ դժվարին՝ 1890-ին, ու էլ ավելի դժվար՝ 1891-ին: Այս բացատրվում է շատ դյուրին կերպով.- 1890 թվականին Թումանյանը սկսեց հրապարակի վրա երևալ իբրև բանաստեղծ, նույն տարվա աշնանը նրա գրքույկը դուրս եկավ. լրագրերն սկսեցին խոսել նրա մասին. նույնիսկ առաջնորդի կողմնակից և բարեկամ «Նոր-Դար» թերթը գովում էր Թումանյանին(6): Նա իր դիրքի ամրանալն հասկացավ և ձայնն ավելի ամուր, առնացի սկսեց հնչել: Պարզ է, որ Օվանեսի դիրքի ամրանալուն հակադարձ հարաբերական դառավ առաջնորդարանի կողմից Թումանյանից ազատվելու մտադրությունն ու նրան հալածելու ձգտումը:

Եվ եկավ մի ժամանակ, երբ կոնսիստորիան և առաջնորդը Թումանյանին ուզում էին ազատել աշխատանքից, բայց պահում էին, իսկ նա սրտանց ուզում էր հեռանալ, բայց մնում էր: Այդ առթիվ նա մի նամակում գրում էր ինձ. «Այ քեզ խաթա»: Եվ իրոք «խաթա» էր դառել

Թումանյանը առաջնորդարանի գլխին: Այս դրությունը բոլորովին էլ նման չէր հալածված լինելու վիճակի, ինչպես ընդունված է ասել Թումանյանի՝ կոնսիստորիայի ծառայության ժամանակաշրջանի մասին:

1892 թ. հունվարին նշանակվում է Թիֆլիսի եկեղեցիների պատվիրակների ընտրությունը: Խիստ կատաղի պայքար էր մղվում լիբերալների (Գր. Արծրունու կողմնակիցների) և պահպանողականների («նոր-դարականների», «արծագանքականների») միջև: Թումանյանը 1892 թ. հունվարի 27-ին Թիֆլիսից ինձ գրում է. «Երեկ կատարեցինք կաթողիկոսական ընտրության համար եկեղեցական պատգամավորների ընտրությունը, «մշակականները» և առհասարակ երիտասարդությունը հաղթող են երևում առայժմ: Ես թեև որպես խոխա, այսինքն անչափահաս (ոչ 25 տարեկան), զրկվում էի ձայն տալու իրավունքից, մանավանդ արգելած էր կոնսիստորը, այնուամենայնիվ խառնվեցի»:

Առաջնորդարանը պահպանողականների միջնաբերդն էր. նա էր ղեկավարում ընտրությունները ու ծանր պայքար մղում լիբերալիզմի դեմ, ու առաջնորդարանի այդ ցածր պաշտոնյան համարձակվում է, հակառակ եղած կրկնակի արգելքի (Թումանյանը և՛ ծառայող էր, և՛ անչափահաս, քանի որ ընտրության մասնակցելու համար 25 տարիքը կտրական սահման էր նշանակված), մտնում է պայքարի մեջ, մասնակցում ընտրություններին: Թումանյանն այդ պայքարի սուր ծայրն ուղղում է առաջնորդարանի և առաջնորդի դեմ: Այս հանգամանքը վճռական նշանակություն է ունենում, և շուտով Թումանյանն ինքն է թողնում կոնսիստորիայի իր ծառայությունը: Դժբախտաբար չեմ հիշում այնտեղից հեռանալու ճիշտ ժամանակը(7): Համենայն դեպս նա այլևս տիրացություն չէր անում 1890 թվականից սկսած ո՛չ վանքի եկեղեցում և ո՛չ էլ տեր-Հովհաննեսի հետ:

## ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒԻ ԱՌԱՋԻՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ 1890 ԹՎԱԿԱՆԻՆ

1889 թ. վերջերին «Վերնատանը» մեր հինգյակը լրջորեն զբաղվում էր Թումանյանի առաջին ժողովածուն կազմելու և հրատարակելու գործով: Օվանեսը սկզբում լուրջ չէր նայում այդ գործին ու շատ անգամ հեգնանքով էր վերաբերվում այն բարձր գնահատությանը, որ մենք տալիս էինք նրա տաղանդին:

Երբ ժողովածուն նախնական ձևով արդեն կազմված էր, մենք թողեցինք, որ պատրաստի ցանկից կրճատումներ, եթե անհրաժեշտ է,

անի ինքը՝ բանաստեղծը:

Բավական չէր նյութը պատրաստելը, պետք էր նաև հրատարակել կարողանալ, իսկ դրա համար հարկավոր էր դրամ: Դրամ մենք չունեինք, բանաստեղծն է՛լ ավելի աննպաստ նյութական պայմանների մեջ էր. ի՞նչ անել: Անհայտ բանաստեղծի երկերը հրատարակելու համար որևէ բուրժուայից դրամ խնդրելն ու սպասելը ավելորդ էր, ուստի գործը գլուխ պետք է բերեինք ինքներս և, ինչ գնով լիներ, հրատարակեինք մեր սիրելի բանաստեղծի անդրանիկ ժողովածուն: Մենք ջահել էինք ու հանդուգն. որոշեցինք ու գործի դիմեցինք: Կարճ ժամանակից հետո գնալու էինք գավառները, ու ամենքս ունեինք մեր ծանոթների, բարեկամների շրջանը, որտեղ և կարող էինք սկսել Թումանյանի բանաստեղծությանց առաջին հատորիկի բաժանորդագրությունը: Այդպես էլ արինք: Ախալցխայում Արամ Առաքելյանն այդ գործի գլուխ կանգնեց, Ախալքալաքում՝ Գրիգոր Վանցյանը, իսկ Շիրակում՝ ես: Թիֆլիսն ու շրջակայքը թողինք Օվանեսին և մեր Դաթիկոյին: Այդ դժվարին գործից մենք պատվով դուրս եկանք. հինգ կրակոտ, եռուն երիտասարդների առաջ հարթվեցին դժվարությունները, գլխավորապես՝ դրամական:

Պետք է խոստովանել, որ Թումանյանի բանաստեղծությանց առաջին հատորի հրատարակության, հատկապես բաժանորդագրություն կազմակերպելու գործում հիմնական աշխատանքը կատարեց Արամ Առաքելյանը:

Թումանյանի բանաստեղծությունների երկրորդ հատորի հրատարակության գործում մենք մասնակցություն չենք ունեցել, քանի որ Թիֆլիսից հեռու էինք, սակայն հրադարձությանց տեղյակ ենք եղել նամակագրության միջոցով:

Յետագայում շատ անգամ է պատահել մտերմական խոսակցություններ ունենալ Թումանյանի հետ այն մասին, թե շատացել է նրանց թիվը, որոնք հավակնություն ունեն կարծելու, թե ինքը՝ Թումանյանը հրապարակ է եկել, անուն ու պաշտպանություն է ստացել իրենց աջակցությամբ: Այդ բանը հաճախ կրկնում էին և՛ հրապարակով, և՛ մասնավոր զրույցների միջոցին:

Բոլոր նման դեպքերում Օվանեսը ծիծաղում էր՝ անմիտ և անհիմն այդ հավակնոտությանց վրա ու ավելացնում՝ «Դե, ասում են»:

***

Հուշերը գրի են առնված 1936 թ.: Տեքստը պատրաստված է ըստ հեղինակի բավական ընդարձակ ինքնագրի (133 էջ) առաջին չորս մասերի (էջ 1-49): Հաջորդ՝ V մասը (էջ 49-115), «Թե ի՞նչ են ասում Թումանյանի ինձ գրած նամակները 1890-1902 թվականներին» վերնագրով, հիշատակված նամակների վերլուծությունն են կամ արծարծված որոշ հարցերի ծանոթագրությունները, որոնք թերևս կարելի է օգտագործել նամակների հրատարակության համար: Այնուհետև 116-133 էջերում ծանոթագրված և վերլուծված են «Դեպի Անիունը», «Հառաչանքը», «Ծունն ու Կատուն» և մասամբ՝ «Պոետն ու Մուսան»:

**1. 2.** Հավանաբար, ակնարկվում են Գևորգյան ճեմարանի 1883 թ. նոյեմբերի 12-ի հուզումները, որոնց պատճառը որդեգրած աշակերտներից ուսման վարձ պահանջելն էր և ճեմարանական ներքին կարգապահական խստությունները: Այդ պատճառով 1884 թ. հեռացվել են աշակերտներ և ուսուցիչներ Արշակ (Նահապետ) Նահապետյանը (տեսուչ), Կարապետ Կոստանյանը, Սեդրակ Մանդինյանը, Փիլիպոս Վարդանյանը (ԳԱԹ, Կ. Կոստանյանի ֆոնդ, N 447): Այլ հավաստի տեղեկություններ իմանալ դժվար է, քանի որ ժամանակի մամուլը խուսափել է իսկությունը հրապարակել՝ ճեմարանի հեղինակությունը վտանգի տակ չդնելու միտումով: Ուշագրավ է Րաֆֆու 1884 թ. հունվարի 14-ի նամակը Ն. Աբելյանին. «Այստեղ շատ վատ տպավորություն գործեց ճեմարանից այնքան աշակերտների հեռացնելը: Մի՞թե չկարողացաք այդ խայտառակության առաջն առնել: Վաղարշապատից շատ հեռագրեր և նամակներ ստացանք, բայց ոչ մեկը չտպեցինք, պահպանելով ճեմարանի վարկը» (Րաֆֆի, Գրականության մասին, Երևան, 1958, էջ 295):

Ղլտճյանի հուշերում դեպքը չափազանցված է. աշակերտները չեն հեռացվել որպես հեղափոխականներ, և ոչ էլ հեռացվողները 60 հոգի են եղել. 13 հոգի հեռացվել են, 22-ը հեռացել են կամովին (տե՛ս ԳԱԹ, Կ. Կոստանյանի ֆոնդ, N 447: Այդ մասին հատուկենտ տեղեկություններ կան նաև՝ «Մեղու Հայաստանի», 1884, NN 48, 55, 60, 71):

**3.** Ղլտճյանը որպես Թիֆլիսի թեմի եկեղեցական հաշիվների քննիչ Ախալցխայում իր պարտականությունները կատարելիս ամբաստանվում է մի ժամկոչի սպանելու մեղադրանքով: Թեպետ դատարանի առաջ նա արդարանում է, այնուամենայնիվ կաթողիկոսի հրամանով նրան փոխադրում են Հին Նախիջևանի Երնջակի Ս. Կարապետ վանքը:

Այնուհետև Ղլտճյանի և Էջմիածնի միաբանության ու հատկապես Խրիմյան Հայրիկի փոխհարաբերությունները վատթարանում են, որի հետևանքով Ղլտճյանը հեռանում է վանքից: (Տե՛ս «Նոր-Դար», 1893, N 226, «Մուրճ», 1893, N 12, նաև՝ ԳԱԹ, Թումանյանի ֆոնդ, այս հուշերի բնագիրը, էջ 87):

**4.** Մեջբերումը կատարված է՝ Հովհ. Թումանյան, երկերի ժողովածու, ժողովրդական հրատարակություն, Երևան, 1926, Առաջաբան, էջ IV:

**5.** Տե՛ս ԹԵԺ V, 71:

**6.** Նկատի ունի Մանուկ Աբեղյանի (Վարսամ) հոդվածը. տե՛ս «Նոր-Դար», 1890, NN 196, 197:

**7.** Թումանյանը կոնսիստորիայից հեռացել է 1892 թ. մարտին. նույն ամսի 22-ից նա արդեն աշխատում էր Հայոց հրատարակչական ընկերության գրասենյակում: Թումանյանի և հոգևոր գործիչների փոխհարաբերության մասին հստակ պատկերացում է տալիս նրա՝ Ան. Աբովյանին ուղղած 1892 թ. մարտի 24-ի նամակը (տե՛ս ԹԵԺ V, 64):

*«Թումանյանը ժամանակակիցների հուշերում», Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1969, էջ 268-284, 932-933*

ԱՐԱՄ ԱՌԱՔԵԼՅԱՆ

# ԸՆԿԵՐՈՋՍ ՀԻՇԱՏԱԿԻՆ

Բնությունից բացառիկ ձիրքերով օժտված, զգայուն ու տպավորվող, բնության ծոցում մեծացած մանուկ Թումանյանը սկզբնական գրագիտությունը սովորելով իր հայրենի Դսեղ գյուղում, Սահակ վարժապետի մոտ, անցնում է Ջալալօղլու ծխական դպրոցը, որտեղից ութսունական թվականների սկզբին Թիֆլիս է գալիս և մտնում Ներսիսյան դպրոց: Այստեղ ուսանելիս նա միջակ աշակերտ էր համարվում և իր ընդունակություններով առանձնապես աչքի չէր ընկնում: Հասնելով մինչև չորրորդ դասարան՝ 1886 թ. սեպտեմբերին մի ինչ-որ առարկայից անհաջող վերաքննություն տալու հետևանքով երկրորդ տարին թողնվում է դասարանում, որից վիրավորված ու վշտացած դպրոցից դուրս է գալիս:

Ինքնասեր ու զգայուն, նյութական միջոցներից զուրկ և անորոշ վիճակի մատնված գյուղացի պատանին կոնսիստորիայում գրագրի պաշտոն է ստանում, ամսական 16 ռուբլի 66 կոպեկ ռոճիկով: Կոնսիստորիայում մեր բանաստեղծը մոտիկից ծանոթանում է այդ հոգևոր ատյանում տիրող կարգերի, պաշտոնյաների ու խնդրատուների փոխհարաբերություններին:

Կոնսիստորիայի պաշտոնյաների արարքների ու խնդրատուներին շահագործելու մասին հանգուցյալը շատ զվարճալի, համով-հոտով պատմություններ էր անում: Նրա այդ մերկացումները ոտանավորով՝ ուղղված առաջնորդից սկսած մինչև վերջին գրագիրը, պատճառ դարձան նրան կոնսիստորիայի գրագրի պաշտոնից արձակելուն, որը շատ տաղանդավոր կերպով նա պատմում է իր «Պոետն ու Մուսան» պոեմի մեջ(1):

Թեև Ներսիսյան դպրոցը մեր բանաստեղծի վերաբերմամբ անհյուրընկալ գտնվեց, շնորհիվ այն ժամանակ նրանում տիրող անհանդուրժելի կարգերի ու անհրապույր միջավայրի, բայց և այնպես չի կարելի ժխտել, որ դպրոցական կյանքը որոշ ազդեցություն գործած չլինի Թումանյանի վրա: Պատանի Թումանյանը դպրոցում աշակերտել է նշանավոր արևմտահայ հեղինակ Ծերենցին, հայագետ Կարապետ Կոստանյանցին, Պետրոս Սիմեոնյանցին, Գևորգ Բարխուդարյանցին, Աբիսողոմ Հովհաննիսյանին, Մկրտիչ Պալյանին, Արշակ Նահապետյանին,

Փիլիպպոս Վարդանյանցին, Ալեքսանդր Քիշմիշյանցին և Ավետիք Արասխանյանցին, անձնավորություններ, որոնցից յուրաքանչյուրը 70-80 և 90-ական թվականների մեր հասարակական մտավոր, կուլտուրական առաջադիմության պատմության մեջ որոշ դեր ունեն կատարած: Մյուս կողմից՝ հայ պարբերական մամուլի, գրականության ու ազգային ինքնագիտակցության զարթոնքը և դպրոցական գործի զարգացումը, ապա նրան հաջորդող միապետական կառավարության հայահալած քաղաքականությունը, հայկական դպրոցների փակումն ու հազարավոր երկու սեռի մանուկներ փողոց շպրտելու փաստը, անպայման խոշոր տպավորություն են թողել զգայուն և տպավորվող Թումանյանի վրա: Այլապես դժվար կլինի մեզ բացատրել նրա հայ լեզվին ու գրականության նվիրված լինելու ուխտը, որը նա ամենայն սրբությամբ պահպանեց մինչև վերջին րոպեն:

Կոնսիստորիայում ծառայելով որպես գրագիր, զուգընթացաբար նա հայ և օտար գեղարվեստական գրականության ուսումնասիրությամբ էր զբաղվում ու իր բանաստեղծական տաղանդը զարգացնում: Հենց սկզբից բանաստեղծի վրա խոր ազդեցություն են գործում ռուս դասական հեղինակներից Պուշկինն ու Լերմոնտովը, որոնցից բավական հաջող թարգմանություններ ու փոխադրություններ էր կատարում, միաժամանակ արտադրելով նաև ինքնուրույն, մեկը մյուսից գեղեցիկ բանաստեղծական գոհարներ:

Մինչև 1890 թ. սկզբները Թումանյանի բանաստեղծական տաղանդի մասին ոչ ոք տեղեկություն չուներ: Նա սկսել էր ոտանավորներ գրել, հավանորեն առանց մտածելու, որ ինքն իր մեջ անձնավորում էր հայ ժողովրդի ապագա մեծ բանաստեղծին:

Մենք՝ Ներսիսյան դպրոցի բարձր դասարանների մի խումբ աշակերտներ, չբավարարվելով դպրոցի տված կրթությամբ, նկատելով, որ համարյա ամեն տարի փոփոխվող ուսուցչական կազմը մի կողմից, և դպրոցում ավանդվող առարկաների, գլխավորապես հայոց լեզվի և գրականության սահմանափակ ծրագիրն ու սխոլաստիկ ուղղությունը մյուս կողմից՝ մեր հարցասիրությունն ու հետաքրքրությունը բավարարել չեն կարող, որ հայագիտական առարկաների ծրագիրը գլխավորապես գրաբար լեզվի վրա է ծանրանում, իսկ աշխարհիկ լեզուն ու գրականության պատմությունը դպրոցական ծրագրից վտարված են, որ մի ժամանակ ուսուցիչների ղեկավարությամբ պարբերաբար կազմակերպվող աշակերտական դասախոսությունները վերացված են՝ ուսուցիչների

կողմնակի գործերով զբաղված լինելու հետևանքով, որոշում ենք գրական հավաքույթներ կազմակերպել ու ինքնազարգացմամբ զբաղվել, առանց ուսուցիչների օգնության դիմելու: Մեր ուսումնասիրության նյութը պիտի լիներ աշխարհիկ գրականությունը՝ վերածնության շրջանից սկսած մինչև մեր օրերի հեղինակները: Այդ նպատակի համար մենք օգտվում էինք Ներսիսյան դպրոցի բավական հարուստ մատենադարանից, զանազան ծուռ ու մուռ ճանապարհների դիմելով, քանի որ մատենադարանապետը դպրոցի վարչության կողմից հրահանգված ցուցակից դուրս մեզ գրքեր չէր տալիս: Շատ անգամ մենք, խորամանկորեն օգտագործելով նոր նշանակված մատենադարանապետի անտեղյակությունն ու բարությունը, գոյություն ունեցող ցուցակից դուրս գրքեր էինք վերցնում, հաճախ, մինչև անգամ, արգելված գրքեր ու ամսագրեր և մեծ հետաքրքրությամբ կարդալով, մեր հավաքույթների նյութ էինք դարձնում:

Այս եղանակով սկսեցինք ծանոթանալ մեր աշխարհիկ գրականության վերածնության շրջանի հետ, կարդալով Աբովյան, «Հյուսիսափայլ», «Կռունկ Հայոց աշխարհի», «Հայկական աշխարհ», «Փորձ» պարբերական հրատարակությունները և մի շարք հազվագյուտ ու արգելված գրքեր ու հանդեսներ: Շատ մեծ հետաքրքրությամբ էինք կարդում Գամառ Քաթիպա, Րաֆֆի, Սունդուկյան, Պռոշյան, Մուրացան, Շիրվանզադե, Նար-Դոս և ժամանակակից պարբերական հրատարակությունների մեջ լույս տեսնող թե՛ հրապարակախոսական և թե գրական-մատենախոսական բովանդակություն ունեցող հոդվածները: Ինչ ասել կուզի, իհարկե, որ մեր ուշադրությունից չէր վրիպում նաև ռուսաց գրականությունը՝ Պուշկին, Լերմոնտով, Տուրգենև, Գոգոլ, Դոստոևսկի, Պիսարև, Չերնիշևսկի, Դոբրոլյուբով մեր առանձին հետաքրքրության առարկաներն էին:

Մեր գրական հավաքույթները տեղի էին ունենում կանոնավորապես ամեն շաբաթ երեկո, մեզանից մեկի կամ մյուսի մոտ: Մի երեկո մենք հավաքված էինք մեր ընկեր Դավիթ Շահլամյանի մոտ, որը շատ պարզ, ընկերասեր ու սիրելի տղա էր և ապրում էր իր հարուստ ու անզավակ քրոջ ու փեսայի հետ Նորաշենի թաղում, բնակարանի մեծ հարմարություններով, Թումանյանի հարևանությամբ: Դավիթը մեզ հայտնեց, որ Հովհաննեսը շատ լավ ոտանավորներ է գրում, քանիցս խնդրել է նրան կարդալ գրածները, բայց մերժումն է ստացել: Դավթի այդ հայտնությունը մեր հետաքրքրությունը շարժեց: Հանձնարարեցինք նրան մյուս շաբաթ երեկո մեր ժողովին հրավիրել նաև Հովհաննեսին:

Նշանակված օրը հավաքվեցինք Ծաhիլամյանի մոտ: Այնտեղ էր և Հովհաննես Թումանյանը: Մեր խոսակցությունը Թումանյանի գրվածքների շուրջն էր պտտվում: Վերջում առաջարկեցինք հրապարակ բերել իր գրվածքները և հնարավորություն տալ մեզ ծանոթանալու: Թումանյանը համեստորեն հրաժարվում էր, պատճառաբանելով, թե մի առանձին արժեքավոր բան չեն ներկայացնում այդ գրվածքները: Մեր համառության ու պնդումներին նա ստիպված եղավ զիջել: Իսկույն ևեթ գնաց և իր բնակարանից, որ նույն տան միջին հարկումն էր գտնվում, բերեց գրելու թղթի թերթերից կարած մի մեծ տետր, մատիտն էլ թելով վրան կապած: Տետրը ձեռքե-ձեռք անցավ և թերթել սկսեցինք ու կարդալ մեկը մյուսի ետևից «Շունն ու Կատուն», «Արև և Լուսին», «Ամառվա գիշերը գյուղում», «Գութանի երգը», «Աղոթք», «Հին օրհնություն», «Մարո», «Ալեք», «Նահատակ», «Լոռեցի Սաքոն» և մեկը մյուսից գեղեցիկ ու գողտրիկ ոտանավորները: Թումանյանի գրվածքները մեզ վրա խոր տպավորություն թողեցին ու զարմացրին իրենց արտահայտության ձևի գեղեցկությամբ, ոճի սահունությամբ ու կառուցվածքի անբռնազբոսությամբ: Մի շարք նիստեր նվիրեցինք այդ նորագյուտ բանաստեղծի ոտանավորների ծանոթության և ուսումնասիրության համար: Երբ վերջացրինք մեր աշխատանքը, առաջարկեցինք Թումանյանին մեր նշանակած ոտանավորներից մի ժողովածու կազմել, իսկ մենք որոշեցինք բաժանորդաթերթեր տարածել, որպեսզի բաժանորդագրությամբ հրատարակել կարողանանք:

Որպեսզի նախքան ժողովածուի լույս տեսնելը հայ ընթերցող հասարակությանը կարողանանք ծանոթացնել Թումանյանի բանաստեղծական կարողություններին, իր իսկ ձեռքով արտագրել տվինք «Արև և Լուսին» ավանդությունը և իմ մտերիմ ընկեր Գրիգոր Վանցյանի հետ տարանք «Տարազ» հանդեսի խմբագրատուն ու հանձնեցինք Ղազարոս Աղայանին, խնդրելով «Տարազի» մոտակա համարում տպագրել և եթե կարելի է, մի խրախուսական հոդված էլ գրել երիտասարդ բանաստեղծին ոգևորելու համար:

Աղայանը, կարդալով, շատ հավանեց, հարց ու փորձ արեց նրա որտեղացի և ով լինելու մասին ու խոստացավ մեր խնդիրն անպատճառ կատարել: «Արև և Լուսինը» 1890 թ. սկզբներում լույս տեսավ «Տարազ» շաբաթաթերթում, Ղազարոս Աղայանի մի փոքրիկ խրախուսականով(2): Առաջին անգամ ընթերցող հայ հասարակությունն առիթ ունեցավ ծանոթանալու մեծ ապագա խոստացող երիտասարդ բանաստեղծ Հովհ. Թումանյանի գրելու ընդունակություններին:

Թումանյանը մեր առաջարկությամբ իր կազմած ժողովածուն ներկայացրեց Թիֆլիսի գրաքննիչին՝ թույլտվություն ստանալու համար, որը բավական երկար պահելուց հետո մերժեց թույլտվությունը: Ամառն արդեն վրա էր հասել: Մեր խումբը ցրվել էր Թիֆլիսից: Թումանյանը բարեկամների խորհրդով իր ժողովածուն ուղարկում է Մոսկվա, տպարանատեր Մկրտիչ Բարխուդարյանին, առաջարկելով թույլտվություն ստանալ և որոշ պայմաններով տպագրել: Աշնանը լույս տեսավ Թումանյանի բանաստեղծությունների առաջին ժողովածուն: 1890 թ. նոյեմբերին Ախալցխայում, ուր ուսուցչական պաշտոն էի վարում, ստացա Հովի. Թումանյանից մի նամակ, հետը նոր լույս տեսած նրա անդրանիկ ժողովածուն, որը անչափ ուրախություն պատճառեց ինձ, և ես մի ոգևորված ու սրտառուչ նամակով շնորհավորեցի նրա գրական ասպարեզ գալու առաջին քայլը(3):

Զարմանալին այն է, որ Թումանյանի բանաստեղծությունների առաջին ժողովածուում տեղ չի գտել նրա սքանչելի «Ծունն ու Կատուն»: Երբ մենք կարդացինք նրա ոտանավորների տետրը ու իր իսկ մասնակցությամբ ընտրություններ կատարեցինք, «Ծունն ու Կատուն» թեև մեծ զվարճություն պատճառեց, բայց առանձին գրական արժեք չտվինք: Այդ գրական տհասությունը մեզ՝ դպրոցականներիս, ներել կարելի է, բայց որ մեզնից հետո ավելի պատրաստված, հրապարակում անուն հանած ու դիրք գրաված հրապարակախոսներ ու գրականագետներ նրա երկերի գրական-բանաստեղծական արժեքը ժխտեցին, անգամ «Ծունն ու Կատուն» ոտանավորը հեգնեցին, դա արդեն անթույլատրելի էր(4):

Հովի. Թումանյանի գրական ասպարեզ գալու շրջանում մեր պարբերական հրատարակություններից Արասխանյանի «Մուրճը» առաջինն եղավ, որ երիտասարդ բանաստեղծին աշխատակցության հրավիրեց: Այդ ժամանակ «Մշակի», «Նոր-Դարի» ու «Արձագանքի» խմբագրություններից դժգոհ մի շարք հին ու նոր հայ գրողներ խմբվել էին «Մուրճի» շուրջը:

1921 թ. սեպտեմբերին, երբ մի օր ճաշին հրավիրված էինք Թումանյանի մոտ, ուր կային և մի քանի անվանի և բարձր պաշտոն ունեցող հայ կոմունիստներ, բանաստեղծը իրեն հատուկ հումորով ու զվարճախոսությամբ թամադայություն անելիս այսպես բնորոշեց իրեն.

- Ինչպես յուղոտ ձուն ներկ չի վերցնում, այնպես էլ ես չկարողացա այս կամ այն քաղաքական կուսակցության հարել, թեև թե՛ իմ և թե՛ իմ

անձնական բարեկամների կողմից այդ ուղղությամբ փորձեր եղան:

Սակայն պետք է նկատի ունենալ, որ բոլոր կուսակցությունների մեջ էլ նա անձնական բարեկամներ ու բազմաթիվ համակրողներ ուներ: Որպես գրող նրա հմայքն այնքան մեծ էր, որ նրա հետ զրուցելիս առիթ չէր լինում քաղաքական խնդիրներ շոշափել:

***

Տպագրվում է մի հատված «Հովհ. Թումանյանց (հուշեր ու գծեր)» զեկուցումից, որ գրված է 1923 թ. մայիսին, Բաքվի լուսավորության տան կից հայկական ուսուցչական բյուրոյի պատվերով:

Հուշերի մի այլ տարբերակ տպագրվել է՝ «Կոմունիստ», Բաքու, 1923, N 39:

1. Հեղինակը նկատի ունի «Պոետն ու Մուսան» պոեմի հետևյալ տողերը.

Էնքան արիր, սատանի պես,
Որ գըրեցի մեծիս պարսավ.
Նա էլ - կո՛րի, կո՛րի, ասավ,
Մենք ենք տալի քեզ փող ու վարձ,
Դու, Մուսայի խելքով ընկած,
Վեր ես կենում մեր դեմ խոսում.
Էդպես պիսեր մենք չենք ուզում:

Առաքելյանի հիշատակած՝ «մերկացումները ոտանավորով» և պոեմի «որ գըրեցի մեծիս պարսավ» խոսքերը վերաբերում են «Չարամիտներին» բանաստեղծությանը (տե՛ս ԹԵԺ I, 40):

2. Առաքելյանը շփոթում է. ինչպես պարզվում է Թումանյանի՝ 1890 թ. հուլիսի 29-ին Ան. Աբովյանին գրած նամակից, «Արև և Լուսինը» տպագրվել է առանց որևէ միջնորդության. պարզապես Աղայանը Թումանյանի տանը կարդացել է (ԹԵԺ V, 20) և այն հավանելով՝ տպագրել «Աղբյուրի» 1890 թ. N 8-9-ում (և ոչ թե «Տարազում»)՝ առանց որևէ խրախուսականի:

Երկու պարբերականները իրար հետ շփոթված են նաև Առաքելյանի «Կոմունիստում» տպագրված հուշերում. այստեղ սխալ է նաև թվականը՝ 1889 թ. («Տարազը» սկսել է հրատարակվել 1890-ից):

3. Թումանյանին գրած Ա. Առաքելյանի 1890 թ. նոյեմբերի 16-ի նամակը տե՛ս ԳԱԹ, Թումանյանի ֆոնդ, N 516:

4. Ակնարկում է Խաչ. Մալումյանին և Գր. Արծրունուն: «Անգամ հեգնեցին «Շունն ու Կատուն» ոտանավորը» խոսքերը վերաբերում են Արասխանյանին, որը, 1889 թ. կարդալով տակավին անտիպ «Շունն ու Կատուն», ասել է. «...ասացեք, խնդրեմ՝ շունն ու կատո՜ւ և բանաստեղծությո՜ւն, սրանք ի՞նչ կապ ունեն իրար հետ, էն էլ էս տեսակ վայրենի լեզվով...» (ԹԵԺ V, 415):

*«Թումանյանը ժամանակակիցների հուշերում», Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1969, էջ 285-290, 934*

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ԽԻՋԱՆՅԱՆ

# ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ՀԵՏ

Թումանյանի հետ ծանոթացել եմ սրանից 46 տարի առաջ՝ 1889 թվին:

Այդ ժամանակ նա ծառայում էր Վրաստանի և Իմերեթի թեմի կոնսիստորիայում, որը տնվում էր Թիֆլիսի վանքի եկեղեցու բակում: Գիտեի, որ նա գրում է:

1890 թվից սկսած մենք շատ հաճախ էինք պատահում իրար: Բնակվում էինք միևնույն՝ Նորաշենի (այժմ՝ Չազիրի) փողոցում, իրարից բավականին մոտիկ: Նա հաճախ գալիս էր մեզ մոտ՝ տեսնելու իմ նկարները:

Նրա բանաստեղծությունների առաջին գրքույկը լույս տեսավ 1890 թվականին: Բաժանորդագինը, կարծեմ՝ 25 կոպ. էր: Ես այդ տարին Թիֆլիսի առաջին գիմնազիայի աշակերտ էի: Այդ ժամանակ Թիֆլիսում հեկտոգրաֆով հրատարակվում էր «Ծիածան» ամսաթերթը, որը միջնակարգ ուսումնարանների հայ աշակերտության միության օրգանն էր և տպագրվում էր մեր տանը: Նա հետաքրքրվում էր այդ թերթով և հաճախ կարդում էր:

Մի կիրակի օր Թումանյանը, մտնելով ինձ մոտ և տեսնելով ինձ թերթի տպագրությամբ զբաղված, ասաց.

- Բայց շա՜տ լավ տեղ ես գտել (ծիծաղելով, մատով ցույց տվեց դիմացի տունը). երբեք ոչ ոքի մտքովն էլ չի կարող անցնել, որ ոստիկանների քթի տակին, մի էսպիսի թերթ է տպագրվում. շատ լավ տեղ է ընտրված, կեցցե՛ք:

Ապա ծիծաղելով, պինդ սեղմեց ձախ թևիս արմունկը ու շարժեց մի քանի անգամ: Իրավ, հենց մեր պատուհանների դիմաց, այդ նեղ փողոցում, գտնվում էր Թիֆլիսի ոստիկանության 5-րդ քաղաքամասի վարչությունը:

Թումանյանին հաճախ պատահում էի մեր ընդհանուր ծանոթների շրջանում ևս. շատ անգամ է պատահել, որ բավական մեծ խմբով (մոտ 40 երկսեռ երիտասարդներից բաղկացած) գնացել ենք Բուսաբանական այգի, Կոջորի սարերը և Կրծանիսի այգիները՝ խնջույքի: Այդ խմբում ունեինք լավ երգողներ՝ երգիչ Ամիրջանյանը, որ երգեցողության ուսուցիչ էր, երգիչ Մամաջանյանը, որ դեռ Ներսիսյան դպրոցի աշակերտ էր, և

Ջանբաբյանը, որ լավ թառ էր նվագում և նույնպես երգում:

Այդ խմբում, բացի ուսուցիչներից և ուսուցչուհիներից, կային և միջնակարգ դպրոցների մի քանի աշակերտ-աշակերտուհիներ, որոնց թվում էի և ես:

Հիշում եմ, մի երեկո, երբ ես հրավիրված էի մի օրիորդի տոնախմբության առթիվ կազմակերպված ընտանեկան երեկույթի, հյուրերի թվումն էր և Թումանյանը: Մենք պարում էինք ու զվարճանում: Թումանյանը պարել չգիտեր. նա ամբողջ ժամանակ լուռ ու մունջ նստած՝ նայում էր մեզ: Երբ նստեցինք սեղանի շուրջը, ինձ թամադա ընտրեցին: Պաշտոնական կենացները (օրիորդի և նրա ծնողների) վերջացնելուց հետո ես վերցրի բաժակը և դիմեցի Թումանյանին Պուշկինի հայտնի բանաստեղծության առաջին տողերով.

Я памятник себе воздвиг нерукотворный,
К нему не зарастет народная тропа...

և շարունակելով խոսքս հայերեն՝ առաջարկեցի Թումանյանի կենացը, ցանկանալով նրան մեծ հաջողություն իր ընտրած ասպարեզում:

Թիֆլիսից ոչ հեռու (մոտ 2 ժամվա ճանապարհ), Թելեթի սարի ետևում գտնվում է Թելեթ գյուղը և «Թելեթի խեչը» (այսինքն՝ խաչը-սուրբը), որտեղ աշնանը մեծ տոնախմբություն և ուխտագնացություն էր տեղի ունենում: Մի աշնան, «Թելեթոբի» օրը, ես երկու ընկերներիս հետ գնացի Թելեթ, որը դեռ չէի տեսել: Թիֆլիսի կինտոների մի խումբ, ծառի տակ նստած, քեֆ էր անում. կինտոներից մեկը, որ ընկերոջս հարևանն էր, հրավիրեց մեզ իրենց սեղանին, և մենք երեքով, մոտ մի ժամ նրանց հետ նստած՝ ուտում, խմում ու նրանց սրամիտ կենացներն էինք լսում. նվագում էր «արղանը» (ՏՐչՌ'վ, երգեհոն - կինտոների սիրած երաժշտական գործիք): Սկսեցին և պարել. հավանեցինք նրանց մի պարը, որ կատարեցին երկու հոգով, առանց «արղանի» մասնակցության, միայն երգով՝ Թիֆլիսի բարբառով. այդ երգը ես գրի առա. պարում էին և միևնույն ժամանակ երգում երկուսն էլ.

Հացար Գիքո, մացար Գիքո,
Երկու շահու հաց առ, Գիքո.
Ցոմ-ցոմ պուրեբս նու իղիդի(1)
Սիպտակ թխած հաց առ, Գիքո.

Յիս քիզ ասի՝ գնա Կումիս
Ինչի՞ Կոդա կացար, Գիքո... և այլն:

Դրանից հետո մի օր Թումանյանին պատմեցի այդ մասին. նա շատ ծիծաղեց ու երգն անգիր արավ: Հետագայում, երբ մի անգամ մեծ խմբով գնացել էինք Ավճալա գյուղը զբոսանքի ու ճաշից հետո զվարճանում էինք, Թումանյանը ձեռքս բռնելով ասաց. «Արի', «Հացար Գիքո» պարենք». ու երկուսս երգելով պարում էինք, բոլորի ծիծաղը շարժելով:

Հյուրերի թվում կային մարդիկ, որոնք գուցե կամ ծանոթ չէին Թումանյանի նոր լույս տեսած գրվածքներին, կամ եթե ծանոթ էլ էին, չգիտեին, թե նա' է հեղինակը: Երբ մի օրիորդ իմ խնդրանքով երգեց Թումանյանի «Ներիր, ո'վ կույս, որ հուզեցի» երգը («ծպ ոՐՈվՌ ՎպվԴ, ՐՏՊվՈԴ» ռոմանսի եղանակով) և ամբողջ սեղանը ծափահարեց, կրկին բաժակները ուղղելով Թումանյանին, նա շատ զգացվեց ու կարմրեց: Ոտքի կանգնած, բաժակը ձեռին, բանաստեղծը ժպտալով գլխով էր անում բոլոր սեղանակիցներին:

Ընթրիքից հետո նա մոտեցավ ինձ և, սեղմելով ձեռքս, ասաց.

- Ես լսել էի, որ Աբգար Հովհաննիսյանը լավ թամադա է, բայց (ծիծաղելով) դու էլ պակաս չես եղել նրանից:

1891 թ. ամառը հյուր էի գնացել Կոջոր՝ Հակոբ Ստեփանյանի մոտ, մի քանի օրով: Մի օր անտառում նստած կարդում էինք Թիֆլիսից ստացված թերթերը. «Մշակում» կարդացինք Ասիացու (Գր. Արծրունու) ֆելիետոնը, որտեղ ծաղրված էր Թումանյանի՝ «Մուրճ» ամսագրում լույս տեսած «Կուրծքս երբեմն եռ է գալիս և հուզվում...» բանաստեղծությունը: Մի օր Թիֆլիսում հարցրի Թումանյանին.

- Ուրի՞շ, ո՞նց ես, կուրծքդ ի՞նչպես է,- ու նկատելով նրա հարցական հայացքը վերջին խոսքերիս վերաբերմամբ, ավելացրի,- էլ սամովարի պես եռ չի՞ գալիս:

Թումանյանն սկսեց ծիծաղել ու ասաց.

- Սպասի՜, ես նրան ցույց կտամ «սամովարը»...(2)

1894 թ. ամառը ես և Անդրեաս Բարխուդարյանը վճռեցինք գնալ Անի. մեր մարշրուտն էր երկաթուղու Միխայլովո կայարանից (այժմ Խաշուրի) ոտքով գնալ Բորժոմ, Բակուրիան (այն ժամանակ այդ տեղերում դեռ երկաթգիծ չկար) և Ցխրա-Ծղարո սարով իջնել Ախալքալաքի (Ջավախեթի) բարձրավանդակը, այնտեղից Ալեքսանդրապոլ (Լենինական), Անի և

վերադառնալ Ղարաքիլիսայով (Կիրովական) և Ջալալօղլով:

Թումանյանը նամակներ տվեց իր ծանոթ ախալքալաքցի ուսուցիչներին ուղղած, որ մեզ ամեն աջակցություն ցույց տան մեր ճանապարհորդության ժամանակ: Թիֆլիսի կայարանում մեզ ճանապարհ գցելիս հիշեց, որ մոռացել է նամակ տալ Ախալքալաքի գավառի Արագովա գյուղի ուսուցիչ Հովվյանի անունով և Ա. Բարխուդարյանի հիշատակարանում մատիտով գրեց հետևյալը. «Այս հիշատակարանը ում ձեռքում որ տեսնես, նրան իմ տեղը կընդունես, իսկ եթե նա սև և կարճահասակ չլինի, իմացիր, որ հիշատակարանը գողացել են իմ սիրելի Անդրեասից»:

Ախալքալաքում մենք սիրալիր ընդունելություն գտանք տեղական մտավորականության՝ ուսուցիչների կողմից, որոնց թվումն էին՝ Ջալալ Տեր-Գրիգորյանը, Գրիգոր Վանցյանը և Սեդրակ Աղաբալյանը. վերջիններս միացան մեզ, և մենք ուղևորվեցինք Ալեքսանդրապոլ:

Անիից վերադառնալով Ալեքսանդրապոլ, նամակ ստացանք Թումանյանից, իմացանք, որ նա գնալու է Ջալալօղլի և այնտեղ սպասելու է մեզ: Մենք բաժանվեցինք մեր ճանապարհորդակիցներից: Նրանք ուղևորվեցին Ախալքալաք, իսկ մենք շարունակեցինք մեր ճանապարհը դեպի Ղարաքիլիսա (որտեղ դեռ երկաթգիծ չկար): Մի օր մնալով Ղարաքիլիսա, Դվալ սարով անցանք Ջալալօղլի: Մյուս օրը եկավ և Թումանյանը:

Ջալալօղլում տեղի մտավորականները, որոնցից հիշում եմ ուսուցչուհի օրիորդ Ն. Գրիգորյանին և գյուղատնտես Սարգիս Սահակյանին, մի խնջույք կազմակերպեցին անտառում: Սահակյանը լավ նվագում էր կիթառ և երգում: Թումանյանի խնդրանոք նա մի քանի անգամ երգեց մի բան, որն սկսվում էր այս խոսքերով.

В стране свободы песни льются,
В стране неволи песен нет,
Там только стоны раздаются;
Свобода – жизнь, свобода – свет.

Խոսքերն ազդու էին և եղանակը՝ մելամաղձոտ: Թումանյանն ամեն անգամ լսելիս՝ հուզվում էր:

Մոտ մի շաբաթ մնացինք Ջալալօղլում, պտտելով շրջակայքը. Թումանյանն ու Անդ. Բարխուդարյանը գնացին Դսեղ, ես ուղևորվեցի

Թիֆլիս(3):

Գիմնազիան ավարտելուց հետո 1895-1900 թթ. ես ուսումս շարունակում էի Պետերբուրգում:

Ամբողջ հինգ տարվա ընթացքում ամառները մի քանի անգամ եմ միայն պատահել Թումանյանին:

Թումանյանը շատ կենսուրախ ու սրամիտ մարդ էր: 1902 թ. ես ծառայում էի Բալախանում (Բաքու): Այդ ամառ ընտանիքս Մանգլիսի ամառանոցումն էր: Տասը օրով գնացի Մանգլիս: Մինաս Սամվելյանի հետ մի օր ձիով գնացինք Բելի-Կլյուչ (կամ Աղբուլաղ, այժմ՝ Թեթրի-Ծղարո): Այդ ամառ այդտեղ էին Ղազարոս Աղայանը և Թումանյանը:

Բելի-Կլյուչ մտնելիս պատահեցինք նրանց. շատ ուրախացան, համբուրվեցին մեզ հետ և խնդրեցին երեկոյան անպատճառ լինել իրենց մոտ՝ ընթրիքին: Դեռ ժամը 5-ն էր: Ես ասացի.

- Դեռ ժամանակ շատ կա, գնալու ենք Սամշվիլդո (Շամշուլդա) ամրոցը, այնտեղից կվերադառնանք և անպատճառ կանցնենք ձեզ մոտ՝ ընթրիքի:

Բայց մենք միայն ժամը 12-ին վերադարձանք: Թումանյանը գիտեր մեր իջնելու տեղը և այդ երեկո, նախքան մեր վերադարձը, երեք անգամ մտել էր այնտեղ և հարցրել մեզ: Երրորդ անգամ գալուց նա մի թուղթ էր թողել, որի վրա կարդացինք՝ «Անպիտան մանգլիսցիներ, վաղը ճաշին եկեք ներողություն խնդրելու»:

Մյուս օրը ճաշին գնացինք «ներողություն խնդրելու»: Ճաշի ժամանակ Ղ. Աղայանը երգեց իր «Քյորօղլին»:

Այնուհետև միշտ բնակվելով Բաքվում, շատ քիչ անգամ եմ պատահել Թումանյանին:

***

Հուշերը գրի են առնված 1935 թ.:

1. Ցոմ-ցոմ պուրեբս նու իղիդի - վրաց.՝ Խմոր-խմոր հացեր մի՛ գնիր:

2. Խոսքը վերաբերում է Թումանյանի «Կուրծքս երբեմն եռ է գալիս և հուզվում+» բանաստեղծության (տպագրվել էր՝ «Մուրճ», 1891, N 6) մասին Գր. Արծրունու (Ասիացի) հրապարակած ֆելիետոնին (տե՛ս «Մշակ», 1891, N 90): Խնդիրն այն է, որ թեպետ «Կուրծքս երբեմն եռ

է գալիս և հուզվում+» բանաստեղծությունը իսկապես թույլ է, անմշակ, այնուամենայնիվ, Ասիացու (Արծրունու) ծաղրը վերաբերում էր ոչ այնքան նոր գրական ասպարեզ մտնող երիտասարդ բանաստեղծին, որքան «Մուրճի» խմբագրին՝ Ավ. Արասխանյանին, ու նրա ամսագրում տպագրվող Լևոն Մանվելյանի, Ալ. Ծատուրյանի բանաստեղծություններին և ընդհանրապես «Արասխանյանցի բանաստեղծական նոր դպրոցի արտադրություններին+» («Մշակ», 1891, N 90)։ Արծրունու այդ քննադատությունը պատասխան էր «Մշակի» մասին հայտնած Արասխանյանի աննպաստ կարծիքի («Մուրճ», 1899, N 1, էջ 11-13)։

3. Նույն ճանապարհորդության մասին տե՛ս Օլգա Թումանյանի և Արշակ Բարխուդարյանի հուշերը և ԹԵԺ V, 94։

## Բաժնում կիրառված համառոտագրությունները

ԳԱԹ - Գրականության և արվեստի թանգարան

ԹԵԺ - Հովհ. Թումանյան, երկերի ժողովածու 6 հատորով, ակադեմիական հրատարակություն, Երևան, 1940-1959. նշված են ըստ հատորների՝ ԹԵԺ I, ԹԵԺ II և այլն

*«Թումանյանը ժամանակակիցների հուշերում», Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1969, էջ 374-378, 907, 909, 943*

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ԿՅԱՆՔԻ ԵՎ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆ (1869-1908)

**1888**

1887-1888 ուստարվա կեսեր, Թիֆլիս.- «Հնգյակի» անդամները (Հովհաննես Թումանյան, Արսեն Ղլտճյան, Դաթիկո Ճահլամյան, Արամ Առաքելյան, Գրիգոր Վանցյան) պարբերաբար հավաքվում են Ճահլամյանի սենյակում՝ Թումանյանի սենյակից մեկ հարկ վերև:

Կարդում ու քննարկում էին Թումանյանի բանաստեղծությունները:

Ա. Ղլտճյանը հիշում է. «Որքան էլ «Վերնատունը» դեր խաղացած լինի Օվանեսի կյանքի և ստեղծագործության բնագավառում, այնուամենայնիվ այստեղ չէր, որ կոփվեց նրա բանաստեղծական տաղանդը, և այդ վերնատունը չէր, ուր նրա պատկերն ուրվագծվեց: Այդ բանը տեղի ունեցավ Դաթիկո Ճահլամյանի առանձնասենյակում, և Ծիրանավորի անպաճույճ, բացօթյա գարեջրատների սեղանների վրա, որոնք ոչ այլ ինչ էին, եթե ոչ իրար միացրած հասարակ տախտակներ՝ իրենց այսպես կոչված իշատոտնուկ նստարաններով: <...>

Երբ առանձնանում էինք Դաթիկոյի սենյակում, առաջին հերթին մանավանդ Դաթիկոն, հարկադրում էինք Օվանեսին կարդալ մեզ իր ոտանավորներից. նա հաճախ մերժում էր, աշխատում էր խուսափել, բայց մեր ձեռքից չէր պրծնում: Երբեմն կարծում էր, որ մեր գովեստներով իրեն ու իրեն ոտանավորները ծաղրում ենք: Նա շատ էլ ոգևորված չէր իր բանաստեղծություններով, այլ խոսքով՝ դեռ իր արժեքը չգիտեր ու իրեն համարում էր սովորական ոտանավորներ գրող և ոչ ավելին: <...>

Որքան էլ ջահել, սակայն ճաշակի ու զգացմունքի տեր պատանիներ էինք, Օվանեսին սկսեցինք սիրել, գնահատել և իր կոչման գիտակցության բերել: Նա, մանավանդ այն ժամանակներում, շատ քաշվող էր, համեստ, միևնույն ժամանակ շատ հպարտ էր, ինքնասեր ու դյուրազգաց: Մեր բոլորի անկեղծ ու սրտացավ վերաբերմունքը չէր կարող չնկատել ու չգնահատել մեր Օվանեսը, ուստի որոշ ժամանակ անց արդեն ինքն էր առաջ բերում իր բանաստեղծությունների փոքր տետրակը: Ժամանակի ընթացքում շատ անգամ նա հարկադրված եղավ իր այդ տետրակի պատկերը փոխել նորանոր ստեղծագործություններով ու տարբերակներով: Նա աշխատում

էր լեզվի վրա, խմբագրում ոճը, փոփոխություններ անում՝ հնարավորին չափ բարբառային ազդեցություններից ազատվելու համար»:

ԹԺՀ, 270-271

<Մարտի սկիզբ>, Թիֆլիս.- Վանքի եկեղեցում մասնակցում է Գևորգյան ճեմարանի նախկին ուսուցիչ Դավիթ Ներսիսյանի թաղման արարողությանը, ուր կատարում է տիրացուի պարտականություն:

Թաղման արարողության ժամանակ Թումանյանը ծանոթանում, ապա բարեկամանում է Արսեն Ղլտճյանի հետ. հետո նրանց միանում են Դավիթ (Դաթիկո) Ծահլամյանը, Արամ Առաքելյանը, Գրիգոր Վանցյանը՝ չորսն էլ Ներսիսյան դպրոցի աշակերտներ, բավական կարդացած ու բանիմաց երիտասարդներ: Իրենց հավաքատեղին դարձնելով Ծահլամյանի բնակարանը՝ նրանք ամեն շաբաթ կազմակերպում էին երեկույթներ, զրուցում գրական հարցերի շուրջ, խորանում հայ և համաշխարհային դասական գրականության մեջ, բարձրաձայն ընթերցանություններով ծանոթանում ժամանակի պարբերական հրատարակությունների կարևոր հրապարակումներին: Այդ հավաքույթներին քննության ու վերլուծության առարկա էին դառնում նաև Թումանյանի ստեղծագործությունները: Արամ Առաքելյանը հիշում է. «Նշանակված օրը հավաքվեցինք Ծահլամյանի մոտ: Այնտեղ էր և Հովհաննես Թումանյանը: Մեր խոսակցությունը Թումանյանի գրվածքների շուրջն էր պտտվում: Վերջում առաջարկեցինք հրապարակ բերել իր գրվածքները և հնարավորություն տալ մեզ ծանոթանալու: Թումանյանը համեստորեն հրաժարվում էր, պատճառաբանելով, թե մի առանձին արժեքավոր բան չեն ներկայացնում այդ գրվածքները: Մեր համառությանն ու պնդումներին նա ստիպված եղավ զիջել: Իսկույն նեթ գնաց և իր բնակարանից, որ նույն տան միջին հարկումն էր գտնվում, բերեց գրելու թղթի թերթերից կարած մի մեծ տետր, մատիտն էլ թելով վրան կարած: Տետրը ձեռքե-ձեռք անցավ, և թերթել սկսեցինք ու կարդալ մեկը մյուսի հետևից «Ծունն ու Կատուն», «Արև և Լուսին», «Ամառվա գիշերը գյուղում», «Գութանի երգը», «Աղոթք», «Հին օրհնություն», «Մարոն», «Ալեք», «Նահատակ», «Լոռեցի Սաքոն» և մեկը մյուսից գեղեցիկ ու գողտրիկ ոտանավորները»: Մի քանի հավաքույթ նվիրելով այդ ստեղծագործությունների քննարկմանը՝ ընկերներն առաջարկում են մի ժողովածու կազմել դրանցից և հրատարակել:

ԹԺՀ, 268-271, 286-289

**1890**

Դեկտեմբերի 16.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին Նուխիից:
Հարցնում է «Բանաստեղծությունների» տպագրության մասին: Խնդրում է գրքեր ուղարկել՝ բաժանորդներին հանձնելու:
ՈւԻՀ 4, 291

Դեկտեմբերի 18, Թիֆլիս.- Ստանում է Գր. Վանցյանի դեկտեմբերի 16-ի նամակը:
ԳԱԹ ԹՖ, 2016

**1891**

Հունվար, Թիֆլիս.- Նամակ Գր. Վանցյանին (չի պահպանվել):
Խնդրում է իր գրքի բաժանորդագրությունից ստացած գումարները ուղարկել: Նամակի բովանդակության մասին տեղեկությունը՝ Գրիգոր Վանցյանի փետրվարի 8-ի նամակում:
ԳԱԹ ԹՖ, 2017 (987)

Փետրվարի 8.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին:
Գրում է, որ Թումանյանի նամակին պատասխանելու համար պիտի Արամի հետ գրագրություն բանար, խնդրեր նրան՝ ուղարկել բաժանորդագրությունից ստացված գումարը:
Ուզում է Ղլտճյանի հասցեն: Հարցնում է Դավիթ Ծաղիկյանից:
ԳԱԹ ԹՖ, 2017 (987)

Փետրվարի 18.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին՝ Վարդաշենից:
Հայտնում է, որ Արամի հետ երկար նամակագրությամբ ճշտել է Թումանյանի գրքերի վաճառքի հետ կապված հարցերը: Գրում է գրքերի բաժանորդաթերթերի մասին: Նամակում հիշատակվում են Ղլտճյանը և Դավիթը:
ԳԱԹ ԹՖ, 2017 (987)

Նոյեմբերի 12.- Ա. Ղլտճյանի նամակը Թումանյանին:
Թումանյանի անհայտ նամակի պատասխանն է: Խոստանում է

ուղարկել գրքերի վաճառքից գոյացած գումարը: Գրում է, որ ներկայացում է պատրաստում: Թումանյանից գրքեր (պիեսներ) է ուզում: Նաև տեղեկություններ Վանցյանի մասին: Հարցնում է Մուշեղից:

ԳԱԹ ԹՖ, 1560 (381/5 լր.)

**1892**

<Փետրվարի սկիզբ>, Թիֆլիս.- Նամակ Դերբենդ՝ Գրիգոր Վանցյանին (չի պահպանվել):

Հավանաբար շնորհավորել է ընկերոջը ինչ-որ հոդվածի առթիվ: Հայտնել է, որ տպագրության է ուղարկել «Բանաստեղծությունների» երկրորդ հատորը:

Նամակի բովանդակությունը ըստ Վանցյանի պատասխանի (տե՛ս փետրվարի 18):

ԳԱԹ ԹՖ, 2018 (988)

Փետրվարի 18.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին Դերբենդից:

Բանաստեղծի անհայտ նամակի (տե՛ս <փետրվարի սկիզբ>) պատասխանն է: Հայտնում է իր զարմանքը «Բանաստեղծությունների» երկրորդ հատորը շուտափույթ տպագրության հանձնելու առթիվ և մտավախությունը գրքի տպագրության ծախսերի հետ կապված. «Գրքիդ երկրորդ հատորը այդպես շուտափույթ տպագրության հանձնելը ինձ զարմացնում է. հույս ունես, որ ծախքդ հանես կամ գրքիդ ծախքը հանեցիր...»:

Ուղարկում է ութ բաժանորդի բաժանորդագրության վարձը՝ 4 ռուբլի:

ԳԱԹ ԹՖ, 2018 (988)

Օգոստոսի 12, Ջալալօղլի.- Ստանում է Գր. Վանցյանի նամակը (չի պահպանվել):

Նամակի «հետի թերթը» ուղարկելով Արասխանյանին՝ Թումանյանը գրում է. «Խնդրում է ուշադրություն դարձնել «Մուրճում» տպագրելի յուր «Բոշաներ» հոդվածի մեջ եղած օտարազգի բառերի ճշտության վրա: Այս թերթը պարունակում է նույն բառերը պարզ և մեկին գրած, որ Դուք աչքի առաջ ունենաք տպագրության ժամանակ, եթե կպատահեն դժվար ընթեռնելի օտարազգի բառեր»:

ԵԼԺ, 9, 110

Օգոստոսի 12, Ջալալօղլի.- Նամակ Թիֆլիս՝ Ավ. Արասխանյանին:

Գրում է մոր հիվանդության, Գր. Վանցյանից ստացած նամակի և մի քանի գյուղերում տարածված խոլերայի մասին:

ԵԼԺ, 9, 110, 514

Սեպտեմբերի 12, Թիֆլիս.- Նամակ Ա. Ղլտճյանին:

Շնորհավորում է ընկերոջը՝ Արսեն անունով կուսակրոն աբեղա ձեռնադրվելու կապակցությամբ: Գրում է. «Սիրելի ընկեր, հայոց կուսակրոն հոգևորականությունը այս օրերում ծանր գործ ունի կատարելու. մեր ներկա վիճակի բարվոքման և ապագայի ապահովության խնդիրը դրված է նորա առաջին, դու էլ մտնելով այդ դասակարգի մեջ, պատասխանատու հոգատարի պարտականություն ես հանձն առնում: Դու, անշուշտ, քաջ զգում ես այս բոլորը, և ես սրտումս հույս տածելով քո ապագա ազգանվեր և լուսամիտ գործունեության նկատմամբ, համբուրվելով շնորհավորում եմ սրբազան պաշտոնդ և խորասիրտ մաղթում եմ հաջողություն...»:

Տեղեկացնում է, որ Ղլտճյանի համար գրքեր է գնել, պատվիրում է. «Դու աշխատիր գրքեր շատ ունենալ»: Առաքելյանը և Վանցյանը «գրականության մշակ են դարձել»: Մեծ աղմուկ է հանել և անախորժ տպավորություն թողել Գամառ Քաթիպայի «Աստառը» պարսավագիրը Գր. Արծրունու և նրա կնոջ մասին:

ԵԼԺ, 9, 110-111, 516

Սեպտեմբերի 25.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին՝ Ախալքալաքից:

Գրում է. «Իմ եղբայրները օտարության մեջ...» (տե՛ս հունիսի 26, հուլիս-օգոստոս) բանաստեղծությունից իր ստացած տպավորության մասին. «Կարծես իմ սրտից են բխել այդ խոսքերը. կրկնում եմ, չմոռանաս նախկին ուղղությունդ. չմոռանաս այն ժողովուրդը, որ քեզ ծնել է: Երգիր ժողովրդի ցավն ու վիշտը, հոգսն ու թշվառությունը: Սաքոներիդ ձեռից բաց չթողնես»:

Խնդրում է Թումանյանի գրքից «մի 15 հատ»: Հարցնում է օրիորդ Աննա Սահակյանից, խնդրում է Վրթանես Փափազյանի հասցեն: Հետաքրքրվում է. «Ի՞նչ եղավ հայոց թատրոնի բանը, պիտի կայանա՞ թե ոչ»:

ՌԻՀ, 4, 311

**1893**

Հունվարի երկրորդ կես, Թիֆլիս.- Նամակ Գր. Վանցյանին (չի պահպանվել):

Նամակի հետ գրքեր է ուղարկել: Գրում է, թե «Մուրճի» այդ համարում ոչինչ չունի: Բովանդակությունը՝ ըստ պատասխան նամակի (տե՛ս հունվարի 26):

ԳԱԹ ԹՖ, 2021 (990)

Հունվարի 23.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին:

Խնդրում է, որ իր թարգմանությունները Հրատարակչական ընկերությունը տպագրի, եթե ոչ, թող հանձնի «Աղբյուրին»: Վարձատրություն չի ուզում, միայն մաքուր ու լավ թղթի վրա տպագրեն:

ԳԱԹ ԹՖ, 2021 (990)

Մարտի <14-15>, Թիֆլիս.- Նամակ Գր. Վանցյանին (չի պահպանվել):

Այդ մասին հիշատակություն կա Աղասի Հովվյանի մարտի 16-ի նամակում. «Անցյալ օրը Վանցյանը քեզանից նամակ էր ստացել. գրել էիր. «Աղասու նամակը նրան հասցրու», այնինչ ինձ վրա նամակ չկար ստացված»:

ԳԱԹ ԹՖ, 1534 (795)

Մինչև ապրիլի 8-ը.- Ախալքալաք Գր. Վանցյանին է ուղարկում իր գրքերն ու մի նամակ (չի պահպանվել):

Գրում է, որ Մովսես Կաղանկատվացու գրքերը դեռ չի գնել, բայց կգնի ու կուղարկի: Հարցնում է Վանցյանի՝ «Մուրճում» տպված նամակի մասին. «Ինչի՞ ես հարցնում «Մուրճում» տպած նամակիս մասին. նա ինձ վրա լավ տպավորություն թողեց, գրիր հարցմանդ պատճառը»,- իր հերթին հարցնում է Վանցյանը:

Տեղեկությունը՝ ըստ Վանցյանի պատասխանի (տե՛ս ապրիլի 8):

ԳԱԹ ԹՖ, 2022 (991)

Ապրիլի 8.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին՝ Ախալքալաքից:

Գրում է Ախալքալաքի ընթերցողների՝ Թումանյանի «Բանաստեղծությունների» երկրորդ հատորից ստացած տպավորության մասին. «Ուզում էի մի քննադատություն գրել, կանգ առնելով մանավանդ

«Կանչի» վրա, սակայն Աղայանցը կանխեց և վախեցա ցենզուրան թույլ չտա:

«Կանչը» ամեն տեղ ֆուրոր է անում: Это действительно высокохудожественное произведение. Եթե, Հովհաննես ջան, ուրիշ ոչ մի բան չգրեիր, այդ ստեղծագործությունդ բավական էր քեզ բանաստեղծի մեծ կոչմանը արժանացնելու: Ունիս, այո՛, և ուրիշ գեղեցիկ բաներ, ունիս և շատ թույլ բաներ, բայց «Կանչը» դա գլուխգործոցդ է, դա մի գոհար է <...> Ես և շատերը ինձ հետ քեզանից սպասում էինք ժողովրդական ոգու արտահայտություն՝ գեղարվեստական արվեստով արտաբերված, այդ ուղղությամբ գրածներիցդ այս գրքում ամենահաջողակը «Ախթամարն» է <...> «Անուշիդ» առաջին մասը շատ է ձգձգված և ըստ իս, շատ էլ աջողակ չէ: «Մերժված օրենքը» գեղեցիկ է: Լիրիքականներդ, ինչպես ասացի, առհասարակ հաջողակ են, թարգմանություններդ, թեև բնագրի հետ չեմ համեմատել, բայց անհաջող են երևում: Թարգմանություններիցդ մի քիչ ձեռ քաշի: Ի վերջո «Գիշերային մտածմունքը», «Խորհրդածությունը» և այլք ընտիր բաներ են»:

Խնդրում է նորություններ գրել «Մշակի» և Հայրիկի մասին: Իր «Սենյակս» գործի անհաջողությունից զարմացած է, մտածում է, թե թարգմանության լեզուն է վատ, բայց բովանդակությունը անպայման գովելի է: Շնորհակալություն է հայտնում ուղարկած գրքերի համար, տեղեկացնում է, որ 2-3 օրում Աղասին գրքերից 10-ն է հասցրել վաճառել, բայց կարծում է, թե դժվար բոլորը կարողանա վաճառել, քանի որ գրքերից մի քանիսը ներկոտ են:

ՈւԻՀ 4, էջ 313-314

<Ապրիլի վերջ - մայիսի սկիզբ>, Թիֆլիս.- Նամակ Գր. Վանցյանին (չի պահպանվել):

Խոստանում է առաջիկայում ավելի մանրամասն գրել:

Նամակի մասին տեղեկությունը պահպանվել է Վանցյանի պատասխանում (տե՛ս մայիսի 30). «Շնորհակալություն երկրորդ բաց նամակիդ համար»:

ԳԱԹ ԹՖ, 2024 (993)

Մայիսի 24.- Զ. Տեր-Գրիգորյանի նամակը Թումանյանին՝ Ախալքալաքից:

Գրում է, որ ստացել է «Բանաստեղծությունների» երկրորդ հատորը:

Մանրամասն շարադրում է գրքից ստացած տպավորությունները: Առաջին գրքի հետ համեմատած՝ «մեծ առաջադիմություն» է նկատում, մասնավորապես ընդգծում է, որ «բուն ժողովրդական ոգով խմորված երկերի» կողքին բանաստեղծին «ուրիշ հարցեր էլ են հուզում». «... Միայն ժողովրդական բաներ գրել կարելի էր տալ ավելի նվազ շնորհք ունեցող մեկին: Իսկ իմ անկեղծ խորհուրդն է տաղանդդ բազմակողմանի զարգացնել»: Շատ է հավանում բնության «նկարագրությունները», հատկապես նրա համար, որ դրանք «օբյեկտիվ» են, այսինքն՝ բանաստեղծը ներկայացնում է ոչ թե բնության «ազդեցություններից առաջացած զգացմունքները, հոգեկան տրամադրությունները», այլ բնությունն այնպես, ինչպես որ կա, մի հանգամանք, «որ գեղարվեստական մեծ նշանակություն ունի»: «Սիրո երգերի» գլխավոր արժանիքը համարում է այն, որ «հերոսուհիները» հաճախ հանդես են գալիս «բնության ծոցում». «Այն հոգեկան տրամադրությունը, որ առաջ է գալիս բնության տեսարանի և սիրելի, համակրելի, բնությունը համահավասար սիրող կնոջ ընկերակցության ազդեցությունից, այնքան վեհ և սուրբ է, որ միայն բանաստեղծը կարող է արտահայտել. անկասկած է, որ այդ զգացմունքները երջանիկ են, թևավորում են մեր հոգին և դարձնում են մեզ աստվածանման»: Պոեզիան համարում է «մի լուսատու փարոս». «Բանաստեղծները այդ փարոսի բոցերից պետք է վառեն այն ջահերը, որով ուզում են լույս սփռել ամենուրեք»: Փափագում է իր ընկերոջը տեսնել «միշտ կանգնած բանաստեղծի այս վեհ, վսեմ կոչման վրա»: Եվ ապա. «Սիրելի Հովհաննես, եղիր մեզ համար լուսավորող, պայծառ գաղափարներ տարածող ոգի, սովորեցրու մեզ մտածել և զգալ, ամեն մի լավ բան սիրել, ամեն մի ազնիվ բան համակրել և, իհարկե, ատել, ինչ որ ատելի է, ապրել ոչ թե հաշվով, շահի համար, այլ հավատով: Փայլիր մեզ համար, ինչպես մի առաջնորդող աստղ, այն ժամանակ մենք կգանք քո ետևից դեպի իդեալը, զգալով մեզ բախտավոր, ոգևորված...»:

ՈՒՀ 4, 316-319

Մայիսի 30.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին՝ Ախալքալաքից:

Հարցնում է, թե երբ ուղարկի գրքերի վաճառքից գոյացած գումարը: Խնդրում է իր ուղարկած նամակը տպագրել հաջորդ օրվա «Նոր-Դարում» կամ «Տարազում». որպեսզի օր առաջ Ալեքսանդրապոլն էլ աշխատի Հայրիկից խնդրել, որ նրա ճանապարհը «մեր կողմով» անցնի: Թող իմանան, թե ամառը որտեղ է լինելու: Գրում է, որ ամառվա վերջում կլինի

Թիֆլիսում և կհանդիպի Թումանյանին:

ԳԱԹ ԹՖ, 2024 (993)

Սեպտեմբերի 24.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին՝ Ախալքալաքից:

Գրի է առնում և ուղարկում ուսուցիչների ապահովությանը նվիրված մի քանի ժողովներից ստացած տպավորությունները. «Ուսումնական հարցը կարծեմ առաջինը պիտի լինի, որ պիտի գրավե Հայրիկի ուշադրությունը»: Խնդրում է իր հոդվածի տպագրությունը «Մուրճի» սեպտեմբերի համարին հասցնել, եթե Արասխանյանը չցանկանա, թող հանձնի «Տարազին»:

ԳԱԹ ԹՖ, 2025 (994)

Նոյեմբերի 6.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին՝ Ախալքալաքից:

Առաջարկում է, որ իր հոդվածը (տե՛ս սեպտեմբերի 24) Թումանյանը վերցնի և պահի իր մոտ, քանի որ հոդվածի տպագրությունն այդ պահին միայն վնաս կարող էր բերել:

ԳԱԹ ԹՖ, 2026 (995)

**1894**

Փետրվարի 10.- Գր. <Վանցյանի> նամակը Թումանյանին՝ Ախալքալաքից:

Խնդրում է իր կատարած փոխադրությունը հանձնել հրատարակչական ընկերությանը, նամակները հանձնել հասցեատերերին: Խորհուրդ է տալիս Թումանյանին ավարտին հասցնել «Արտավազդը»: Էջմիածնից (Սիմոնից) վատ լուրեր է լսել: Տեղեկություններ է ուզում «Մշակի» և Հայրիկի մասին:

ԳԱԹ ԹՖ, 2027 (997)

<Փետրվարի առաջին կես>.- Գր. Վանցյանի միջոցով Ախալցխա՝ Ա. Առաքելյանին է ուղարկում «Դաշնակների» 100 օրինակ (տե՛ս փետրվարի 14):

ԳԱԹ ԹՖ, թիվ 917 (247ա, լր.)

**1895**

Ապրիլի 25, Թիֆլիս.- Նամակ Ավ. Արասխանյանին:

Խնդրում է իրենց հարաբերությունների մեջ որոշակիություն մտցնելու համար պատասխանել հետևյալ հարցերին, ինչպես՝

«1. Դո՞ւք եք ինձ հեռացրել «Մուրճից», թե ես եմ հեռացել:

2. Դուք ինչպե՞ս իմացաք՝ պ. Վարդազարյանի հետ ես ինչի համար և ինչ պայմանով էի կապվել:

3. 1893 թ. վերջին ամիսներին ինձ տանո՞ւմ էիք Ձեր խմբագրական ժողովներին, թե չէ, և այդ ժողովներում տվե՞լ եք ինձ կարդալու և կարծիք հայտնելու համար, օր. Մելքումյանի քննադատությունը՝ Հովհաննիսյանի բանաստեղծությունների մասին, Ծաթիրյանի «Մծիրին», Արգահատյանի վեպիկը (մի ինչ-որ երեցի մասին) և այլն, որոնք և օրերով, եթե ոչ շաբաթներով եղել են մոտս:

4. 1894 թ. հունվարին ի՞նչ է ասել Ձեզ պ. Վանցյանը յուր հոդվածի և ինձ գրած նամակի մասին:

5. Խնդրեմ նայեք 1893 թվականի Ձեր չեկերի տետրակին, այնտեղ կա՞ իմ անունով մի չեկ «Սովի ժամանակներից» վերնագրով գրվածքիս համար, որ տպված է «Մուրճի» No 5-ում 1893 թ.:

Եվ 6. Դուք գրում եք, թե ինձ միակ գնահատողն եք եղել և պաշտպանել եք ոչ միայն դրսի մարդկանցից (!), այլև «Մուրճի» գրողներից (սկզբի տարում), խնդրեմ տաք այդ գրողների անունները»:

ԵԼԺ, 9, 155-156

Դեկտեմբերի 18.- Գր. Վանցյանի նամակը Թումանյանին՝ Բեռլինից:

Պատմում է Գերմանիայում իր ուսանողական կյանքի մասին: Անդրադառնում է գերմանացիների կենցաղին, սովորույթներին: Հանդիմանում է Թումանյանին լռության համար. «Չգիտեմ քեզ ի՞նչ է պատահել. քնարդ լռեցրել ես: «Հորիզոն» մի՞թե այլևս չպիտի հրատարակեք:- Բաց արա քնարիդ ձայնը լսենք և ուրախանանք: Գեթ նամակ գրի՛ր, երկա՛ր, մանրամասն: Թիֆլիսից չենք ստանում համարյա ո՛չ լրագիր և ո՛չ նամակ. ուստի երևակայիր, որ քու նամակդ եթե բազմաբովանդակ լինի ամեն տեսակ մեր ներքին և արտաքին կյանքին վերաբերող լուրերով, Բեռլինի ամբողջ հայ ուսանողության շնորհակալությանը պիտի արժանանաս»:

ԳԱԹ ԹՖ, թիվ 2029

**1902**

Մայիսի 22.- Գրաքննչական կոմիտեն արգելում է Թումանյանի «Ղազարոս Աղայան» հոբելյանական հոդվածի (տե՛ս մայիսի 19) տպագրությունը:

Բացատրությունը հետևյալն է. «...в виду отступления редакции от программы, напечатание воспретить»:

Արգելված փորձանմուշը պահպանվում է՝ ԹՏԹ, ՓԲ, 40: Տպագրվել է 1911 թ. («Տարազ», թիվ 5-6, էջ 80): Արգելվել էին նաև Գր. Վանցյանի, Տ. Նազարյանի՝ Ղ. Աղայանին նվիրված հոդվածները, որոնք պետք է տպագրվեին «Տարազում»: Պատճառը Ղ. Աղայանի՝ Հնչակյան կուսակցության անդամ և դրա համար բանտարկված լինելն էր:

ԵԼԺ, 6, 132-133

**1905**

Փետրվարի 24.- Տպագրվում է հայտարարություն Գր. Վանցյանի «Հայ հեղինակներ» դասագրքի վաճառքի մասին:

Հեղինակների շարքում է նաև Թումանյանը:

«Մշակ», 1905, թիվ 31

*«Հովհաննես Թումանյանի կյանքի և ստեղծագործության տարեգրություն (1869-1908)», Երևան, ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչություն, 2010*

# ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆԻ
# «ԱՂՈԹՔ»,
# «ԿԱՆՉ»,
# «ՓԱՐՎԱՆԱ»
# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

# ԱՂՈԹՔ

Սողոմոնի պես, տեր,
Ես խելք չեմ ուզում,
Ինձ երկար օրեր
Եվ փող տուր բազում:

Մի ձեռք էլ շոր,
Միայն մոդնի, տեր,
Մին էլ մի հաստ փոր,
Տրոստ, ակնոցներ:

Եվ բավական է,
Դու վերեն դիտե,
Թե ինչեր կանե,
Այդ ծառադ գիտե:

***

Գրված է 1887 թ. փետրվարին:

Տիգրան Փիրումյանն իր հուշերում հիշատակում է ԲՄ I-ում տպագրված 13 բանաստեղծություն և, հավանաբար բանաստեղծի զրույցներից քաղած, տեղեկություններ հաղորդում դրանց գրության շարժառիթների և Թումանյանի ներշնչման պահերի մասին: Օրինակ՝ նրա հուշերից տեղեկանում ենք, որ այս՝ «Աղոթք» ոտանավորը գրելու առիթ է ծառայել մի քահանայի բացականչությունը. «Փող է հարկավոր, փող, դուն փող ասա» (տե՛ս ԹԺՀ, էջ 345):

Ինքնագիրը չի պահպանվել: Ըստ Արամ Առաքելյանի հուշերի՝ ինքնագիրը եղել է «գրելու թղթի թերթերից կարած» այն տետրում, որը 1888 թ. Թումանյանը ցույց է տվել Ներսիսյան դպրոցի բարձր դասարանցի ընկերներին՝ Դավիթ Ծաhիլամյանին, Գրիգոր Վանցյանին, Արամ Առաքելյանին և Արսեն Ղլտճյանին (նույն տեղում, էջ 288):

Առաջին անգամ տպագրվել է ԲՄ I, էջ 85, այնուհետև՝ ԵԺ I, 247:

Տպագրվում է ԲՄ-ից:

* * *

# ԿԱՆՉ

Եթե կաս, աստված,
Եվ չես ստեղծել
Արտասուք ու լաց,
Հեծել, անիծել,
Թե չար նախանձի
Թույնով մահացու
Դու չես վարակել
Պարզությունն հոգու,
Թե դու չես ասել,
Որ կյանքը այսպես
Լինի անսպառ
Տանջանքի հանդես,-
Մեղմացրու մարդկանց
Կիրքն ամբարտավան,
Եթե աստված ես
Դու խաղաղության:

Տե՜ր արագահաս,
Աստված արդարի,
Ո՞ւր ես, եթե կաս.
Ես աղոթք արի,
Բայց սրածության
Ահարկու ձայնից
Խլացավ անդորր
Իմ աղոթքն անբիծ.
Եվ ես, վայրենի
Կրքից կատաղած,
Ամբարիշտների
Քարերից փախած,

Քո անվան հուսով
Կռվեցի երկար,
Պարծեցա քեզնով,
Սակայն դու չեկար:
Էլ ինչո՞ւ եմ ես
Տառապում այսքան,
Եթե աստված ես
Դու անմեղության:

Ինչո՞ւ տակավին
Չես պատժում չարին,
Ո՞ւյժդ է պակասում,
Թե՞ չենք աղերսում:
Թե չարագործին
Դո՛ւ չես տվել սուր,
Որ խաղաղ հոգին
Սարսափի իզուր.
Թե՞ դու չըգիտես,
Որ այստեղ, երկրում
Մարդը ժպտերես
Մարդ է գիշատում.-
Դե արի՛ ու տե՛ս.
Զարկի՛ր ու շանթի՛ր,
Եթե աստված ես
Դու վըրեժխնդիր:

***

15-16 ինք., ԲՄ II
Եթե դու աստված
Ես խաղաղության:

23
Խլացավ իսկույն
40-ից հետո ինք.
Ինչո՞ւ չես գալիս,
Ո՞ւր ես, եթե կաս,
Թե դու չես տալիս
Խեղճին պատուհաս,

Այս քառատողը ԲՄ II-ում դրված է 53-րդ տողից հետո և սրանով ավարտվում է ոտանավորը:

* * *

Գրված է 1891 թ. փետրվարին:

ԳԱԹ ԹՖ N 21 պահվում է մեկ ինքնագիր՝ հանված Մճ-ի արխիվից, վրան մակագրված՝ «Չթույլատրված», որից կարելի է ենթադրել, որ Մճ-ում տպագրությունն արգելել է գրաքննությունը:

Առաջին անգամ տպագրվել է ԲՄ II, էջ 76-78, թվագրված՝ «1891 թ. փետրվար», այնուհետև ԲԲ, էջ 22-23, ապա՝ ԵԺ I, 62-63:

Արտատպվում է ԲԲ-ից:

Թումանյանի առաջին շրջանի լավագույն բանաստեղծություններից է, որ բարձր է գնահատվել նաև ժամանակակիցների կողմից: Այդ մասին ունենք ոչ քիչ թվով վկայություններ: Օրինակ՝ գրաքննադատ և մանկավարժ Գ. Վանցյանը 1893 թ. ապրիլի 8-ին բանաստեղծին հղած նամակում գրում է. «Կանչը» ամեն տեղ ֆուրոր է անում. «Это действительно высокохудожественное произведение». Եթե, Հովհաննես ջան, ուրիշ ոչ մի բան չգրեիր, այդ ստեղծագործությունդ բավական էր քեզ բանաստեղծի կոչմանը արժանացնելու: Ունիս, այո՛, ուրիշ գեղեցիկ բաներ, ունիս և շատ թույլ բաներ, բայց «Կանչը», դա գլուխգործոցդ է, դա մի գոհար է» (տե՛ս ՈՒՀ 4, 313):

Բանաստեղծության համընդհանուր ջերմ ընդունելության մասին են վկայում նաև Թումանյանի երբեմնի դասընկեր, Ներսիսյան դպրոցի ուսուցիչ Արամ Առաքելյանը (տե՛ս նույն տեղում, էջ 314) և մանկավարժ, թարգմանիչ Ջալալ Տեր-Գրիգորյանը (նույն տեղում, էջ 318):

* * *

## Բաժնում կիրառված համառոտագրությունները

ԲՄ I - Բանաստեղծություններ, հ. I, Մոսկվա, 1890

ԲՄ II - Բանաստեղծություններ, հ. II, Մոսկվա, 1892

ԲԲ - Բանաստեղծություններ, Բաքու, 1908

ԵԺ I, II, III, IV, V, VI - Հովհաննես Թումանյան, Երկերի ժողովածու, գիտական հրատարակություն 6 հատորով, Երևան, 1940-1959

ԳԱԹ - Ե. Չարենցի անվան գրականության և արվեստի թանգարան

ԹԺՀ - Թումանյանը ժամանակակիցների հուշերում, տեքստը պատրաստեց և ծանոթագրեց՝ Լ. Մ. Կարապետյան, Երևան, 1969

ԹՖ - Թումանյանի ֆոնդ

Մճ - «Մուրճ» ամսագիր

ՈւՀ 4 - Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ, հ. 4, Երևան, 1985

*Հովհաննես Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու, հ. 1-ին, Երևան, 1988, էջ 25, 546-547 և էջ 85-86, 443, 565-566*

# ԲԱԼԼԱԴԻ ԺԱՆՐԸ ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Թումանյանի չափածո ժառանգության մեջ որոշակիորեն առանձնանում է երկերի մի բավական մեծ խումբ, որոնք իրենց գեղարվեստական նկարագրով և ծավալային հատկանիշներով գտնվում են նրա քնարերգության և պոեմների միջև: Դրանք ժողովրդական ավանդությունների և զրույցների, առակների ու հեքիաթների հիման վրա գրված բազմազան գործերն են, որոնք իրենց տարբերիչ գծերի հետ միասին ունեն նաև որոշ ընդհանուր ժանրային հատկանիշներ: Նախ, բոլոր այդ երկերն ունեն քիչ թե շատ հստակորեն արտահայտված սյուժե՝ մեծ մասամբ այլաբանական կամ ֆանտաստիկ բնույթի, երբեմն էլ իրապատում: Դեպքերի ու կերպարների օբյեկտիվ գծագրումը կատարվում է հեղինակային պատումի և հերոսների խոսքի միջոցով, իսկ բանաստեղծի քնարական վերաբերմունքի ուղղակի դրսևորումներ գրեթե չկան: Նշված և ուրիշ հատկանիշներ մեզ հիմք են տալիս Թումանյանի այդ երկերին տալու մեկ միասնական ժանրային բնութագիր և դրանք համախմբելու «Բալլադներ» ընդհանուր վերնագրի տակ:

Բալլադի ժանրը Թումանյանի ստեղծագործական հետաքրքրությունների շրջանակը մտավ, կարելի է ասել, տարերայնորեն՝ ոչ թե գրական նմուշների ազդեցությամբ, այլ առաջին հերթին ժողովրդական բանահյուսության խոր և բազմազան իմացության շնորհիվ: Եթե իր պոեմների մասին Թումանյանն ասում էր, որ նրանց ժանրային ձևը գոյացել է զգալի չափով Պուշկինից և Լերմոնտովից ստացած ստեղծագործական ներշնչանքով, ապա բալլադների վերաբերյալ նույնը ասել ճիշտ չէր լինի: Այստեղ ելակետը ժողովրդական ստեղծագործությունն էր: Երիտասարդ բանաստեղծն առաջին իսկ քայլերից մեծ տեղ էր հատկացնում ժողովրդի բանավոր հիշողության մեջ դարերով պահպանված զրույցներին և ավանդություններին, որոնց նվիրական իմաստի բացահայտումը նա համարում էր առաջնակարգ ստեղծագործական խնդիր: Թումանյանի համար դրանք ոչ թե «ստացական», «ձեռք բերված» գիտելիքներ էին, այլ նրա էության և մտածողության անբաժան մի մասը: Հետագայում, պայքարելով գրականության և ժողովրդական բանահյուսության փոխհարաբերության մասին պարզունակ և գռեհիկ պատկերացումների՝ այսպես կոչված «հայոց դրամբյանիզմի» դեմ, նա լիակատար իրավունքով

գրել է. «...Ես լռռեցի եմ ու էն գլխից, ոչ «դիպվածով», սիրել ու հետաքրքրվել եմ հեքիաթներով, լեգենդներով, առակներով, և շատերն անգիր գիտեմ դեռ մանկուց» (ԵԺ IV, 98):

Ինչպես երևում է Թումանյանի ստեղծագործական կենսագրությունից, ժողովրդական ավանդությունների մշակումով նա սկսել է զբաղվել դեռ 1880-ական թթ. կեսերից: Այդ մասին կա նրա ուղղակի վկայությունը. «Մի ժամանակ (1885-1887) էդ տեսակ բաներ, ժողովրդական առակներ ու լեգենդներ շատ էի գրում բարբառով և շատ էլ ունեի, բայց, որովհետև չէի պահում, դես-դեն կորան, նրանցից մնացին «Ծունն ու Կատուն», մին էլ «Անբախտ վաճառականները» (ԵԺ IV, 119): Սրան պետք է ավելացնել, որ Թումանյանի առաջին տպագիր՝ ճիշտ է, անստորագիր հոդվածը (1887) կոչվում էր «Մի ավանդություն» և վերաբերում էր Դսեղում հիշվող պատմական մի զրույցի, իսկ նրա առաջին տպագիր բանաստեղծությունը (1890) «Արև և լուսին» ավանդությունն է եղել: Դրանից հետո՝ ավելի քան երեսուն տարի, մեծ կամ փոքր ընդմիջումներով ժողովրդական զրույցների ու լեգենդների գեղարվեստական մշակումը միշտ եղել է նրա ստեղծագործական աշխատանքի «օրակարգում»: Վերջին գեղարվեստական երկը, որի վրա Թումանյանն աշխատել է մահից մի քանի ամիս առաջ՝ 1922 թ. ամռանը, «Անբուն կկուն» քաղաքական այլաբանությունն էր: Սակայն չպետք է անտեսվի նաև ռուս և արևմտաեվրոպական գրական ավանդույթի դերը: Թումանյանը լավ ծանոթ էր այս ժանրի բնագավառում Պուշկինի, Լերմոնտովի և ռուս գրականության ամենախոշոր բալլադագիր Վ. Ա. Ժուկովսկու ինքնուրույն և թարգմանական երկերին: «Բանաստեղծությունների» մոսկովյան հրատարակության 2-րդ հատորում (1892) տեղ գտավ վերջինիս «Աքիլլես» դիցաբանական բալլադի թարգմանությունը, որը հետագայում էական վերամշակման ենթարկվեց: 1899 թ. Թումանյանը թարգմանեց Պուշկինի երկու նշանավոր բալլադները՝ «Օլեգի երգը» և «Ջրահեղձը», իսկ 1906-ին՝ Մ. Գորկու «Վալախական լեգենդը»: Արևմտաեվրոպական հեղինակների բալլադներին հայ բանաստեղծը հաղորդակից է եղել ռուսերեն թարգմանությունների միջոցով: Օրինակ, «բալլադային» հարուստ նյութ են պարունակում Ն. Վ. Գերբելի կազմած ռուսերեն հայտնի ժողովածուները՝ «Անգլիացի բանաստեղծները կենսագրականներով և նմուշներով» (1875), «Գերմանացի բանաստեղծները կենսագրականներով և նմուշներով» (1877), որոնք եղել են Թումանյանի գրադարանում: Մեզ հասել է Շիլլերի «Լողվոր» բալլադի սևագիր թարգմանությունը:

Թումանյանի կենդանության ժամանակ եղած հրապարակումները ցույց են տալիս, որ ժողովրդական ավանդությունների մշակումներին նա շատ տարբեր, խայտաբղետ ժանրային անվանումներ է տվել: Հաճախ դրանք ժանրային հստակ բնորոշումներ չեն, այլ միայն մատնանշում են երկերի ժողովրդական ակունքները: Այսպես, ամենից հաճախ Թումանյանի այդ գործերը հրատարակվել են «ժողովրդական ավանդություն» ենթավերնագրով («Ծունն ու Կատուն», «Անբախտ վաճառականներ», «Արև և Լուսին», «Արծիվն ու Կաղնին», «Որբը», «Արտուտի երգը»): «Ազգային ավանդություն» ենթավերնագիրն են ունեցել «Ախթամարն» ու «Աղավնու վանքը», իսկ «Աղջկա սիրտը» ստացել է «արևելյան ավանդություն» բնութագիրը: Մի քանի գործեր կոչվել են առասպելներ, ինչպես «Օրորոցագողը» (ժողովրդական առասպել), «Հսկան» (Կովկասի առասպելներից): «Լեգենդ» անվանումն են ստացել «Անիծած հարսը» (ժողովրդական լեգենդա), «Փարվանան» (լեգենդ), «Հոգեհանը» (լեգենդա), իսկ «Էսպես չի մնա» և «Կաչաղակների ծագումը» բանաստեղծությունները կոչվել են «Հին զրույց»: Առաջին հրատարակության մեջ «Մի կաթիլ մեղրը» ունեցել է «հեքիաթ» անվանումը (հետագայում՝ 1922 թ. Պ. Մակինցյանին բանաստեղծը գրում էր. «Մի կաթիլ մեղրը» առակ է, թեև ռուսները վրան գրել են «րՍՌՋՍՌ» - ԵԺ V, 472), իսկ «Գառնիկ ախպերը»՝ «Հայ ժողովրդական հեքիաթ»: Սյուժետային-այլաբանական բնույթ ունեցող որոշ չափածո գործեր ունեն «ժողովրդական» («Մուկիկի մահը») կամ «ժողովրդականից» («Քաջ Կիվիվը», «Կաքավի ողբը») ենթավերնագրերը:

Մեր դարի սկզբին Թումանյանն իր այդ երկերի համար սկսում է որոնել միասնական ժանրային անվանումներ: Այսպես, «Բանաստեղծությունների» 1903 թ. Թիֆլիսի հրատարակության մեջ նա այդ գործերից ութը («Ծունն ու Կատուն», «Ախթամար», «Անբախտ վաճառականներ», «Անիծած հարսը», «Արծիվն ու Կաղնին», «Պողոս-Պետրոս», «Լուսավորչի կանթեղը», «Փարվանա») համախմբեց առանձին բաժնում՝ «Լեգենդներ» ընդհանուր վերնագրի տակ: Նույն «Լեգենդներ» վերնագրով նշված երկերը լույս տեսան նաև առանձին գրքույկով (հրատարակություն Ստ. Լիսիցյանի և ընկ., 1904): Իսկ մի քանի տարի անց՝ 1908 թ., Բաքվի «Բանաստեղծություններ» գրքում նույն գործերը համախմբվեցին մեկ այլ վերնագրով՝ «ժողովրդական մոտիվներ»: Վերջապես, Թումանյանի կազմած վերջին ժողովածուի մեջ («Բանաստեղծություններ», Կ. Պոլիս, 1922) հիշյալ ութ երկերին

ավելացան ևս հինգը («Մի կաթիլ մեղրը», «Հսկան», «Աղավնու վանքը», «Աղջկա սիրտը», «Թագավորն ու չարչին»), և բաժինն ստացավ քառակի անվանում՝ «Լեգենդներ, բալլադներ, առակներ, առասպելներ»:

Թումանյանի երկերի հետմահու հրատարակությունների (այդ թվում՝ նաև ռուսերեն թարգմանությունների) մեջ մեզ հետաքրքրող բաժինը վերնագրվել է կամ «Լեգենդներ և բալլադներ» և կամ «Լեգենդներ, բալլադներ, առակներ» (այդպես է նաև Թումանյանի երկերի առաջին ակադեմիական հրատարակության մեջ):

Սակայն 1969 թ. Թումանյանի ծննդյան 100-ամյակի առթիվ հրատարակված երկերի քառահատոր ժողովածուի առաջին հատորում վերանայվեց այդ ավանդույթը, և տվյալ բաժինն ստացավ մեկ միասնական անվանում՝ «Բալլադներ»: Հետագայում այդ սկզբունքը ընդունվեց նաև ուրիշ ժողովածուներում, իսկ այժմ կիրառվում է Թումանյանի ժառանգության ներկա գիտական հրատարակության մեջ: Ո՞րն է այդ սկզբունքի տեսական հիմքն ու նպատակահարմարությունը:

Չնայած իրենց ներքին բոլոր տարբերություններին՝ Թումանյանի այս երկերն ունեն այնպիսի ընդհանուր ժանրային հատկանիշներ, որոնք իրավունք են տալիս դրանք համախմբելու մեկ միասնական վերնագրի տակ: Բայց այդ ժանրային միասնությունը հնարավոր չէ արտահայտել այն ենթավերնագրերով, որ, ինչպես տեսանք, սովորաբար տալիս էր բանաստեղծն իր այդ գործերին: Առհասարակ ավանդություն, լեգենդ, առասպել, զրույց կամ ժողովրդական մոտիվ բնութագրումները գրականության մեջ ժանրային հստակ որակումներ չեն: Դրանք մատնանշում են միայն ստեղծագործության ժողովրդական հիմքն ու աղբյուրը, բայց ժանրային որոշակի բովանդակություն չունեն, քանի որ բանահյուսական այդ նյութերը կարող են գրական մշակման ենթարկվել տարբեր ժանրերով՝ պոեմ, բալլադ, դրամա, վիպական ստեղծագործություն:

Ավանդության և հարանման բանահյուսական նյութերի հիման վրա գրված թումանյանական չափածո երկերը ամենից ավելի մոտենում են բալլադի գրական տեսակին: Վերցնենք, օրինակ, Թումանյանի այն գործերը, որոնք ծագում են ժողովրդական առակներից, մի ժանր, որն իր բնույթով ավելի հեռու է գրական բալլադից, քան նշված մյուս բանահյուսական տեսակները: Ճիշտ է, այս բաժնի գործերից մի քանիսը («Անբախտ վաճառականները», «Արծիվն ու Կաղնին», «Չարի վերջը», «Մի կաթիլ մեղրը», «Մոծակն ու Մրջյունը») ունեն առակային ծագում

և, բնականաբար, որոշ համապատասխան հատկանիշներ: Սակայն Թումանյանի մշակմամբ դրանք արդեն առակներ չեն սովորական առումով: Այլաբանությունը և բարոյախոսությունը,- առակի ժանրի այդ երկու հիմնական գծերը,- թեև հանդես են գալիս այդ գործերում, բայց էապես տարբերվում են առակներին բնորոշ դրսևորումներից (բացի, թերևս, «Մոծակն ու Մրջյունը» բանաստեղծությունից): Իսկ «Գառնիկ ախպերը», «Էսպես չի մնա» կամ «Աղջկա սիրտը», անշուշտ, ծագում են հեքիաթային բանահյուսությունից և պահպանում են այդ ժանրի որոշակի գծեր (ինչպես նաև «Հազարան բլբուլը», որը սովորաբար դասվում է Թումանյանի պոեմների շարքը): Սակայն մշակման ենթարկվելով չափածո ձևով՝ դրանք ձեռք են բերել բանաստեղծական բովանդակության և կառուցվածքի նոր, լրացուցիչ հատկանիշներ: Ե՛վ առակային ու հեքիաթային «տարերքից» ծագող այս երկերը, և’, մանավանդ, լեգենդի, ավանդության հիման վրա գրված գործերը («Ախթամար», «Անիծած հարսը», «Պողոս-Պետրոս», «Փարվանա», «Հսկան», «Աղավնու վանքը» և այլն) իրենց հիմնական գծերով մոտենում են գրական բալլադի չափանիշներին:

Բալլադը նոր ժամանակների գրականության հենց այն ժանրային տեսակն է, որը ծագել է ժողովրդական լեգենդների, ավանդությունների և զրույցների ստեղծագործական մշակման ճանապարհով: Բալլադը համադրական ժանրային ձև է: Նրա բովանդակության և կառուցվածքի մեջ բնականորեն զուգակցվում են իրականն ու ֆանտաստիկը, առօրեականն ու պայմանական-այլաբանականը, ինչպես նաև պատմողական, քնարական և դրամատիկական տարրերը: Ժանրի այդ համադրական բնույթը շատ լավ է երևում նաև Թումանյանի երկերի օրինակով, որոնք իրենց հիմնական գծերով լիովին համապատասխանում են բալլադի ժանրի՝ նշված և ուրիշ էական հատկանիշներին:

Թումանյանը հայ իրականության մեջ բալլադի՝ իբրև ինքնուրույն գրական տեսակի հիմնադիրն ու խոշորագույն վարպետն է: Ճիշտ է, նրանից առաջ ժողովրդական ավանդությունների չափածո մշակման առանձին փորձեր են արել Աբովյանն ու Պատկանյանը, Րաֆֆին ու Հովհ. Հովհաննիսյանը, սակայն նրանք չհասան ազգային բալլադի ինքնատիպ ստեղծագործական նկարագրի բացահայտման: Այդ խնդրի իրականացումը վիճակվեց Հովհ. Թումանյանին, որից հետո հայ գրական բալլադի հետագա պատմական ընթացքը շարունակեցին Ավ. Իսահակյանը, Ե. Չարենցը, Գ. Սարյանը և ուրիշ բանաստեղծներ:

Դիմելով ազգային բանահյուսության ֆանտաստիկ և այլաբանական

սյուժեներին՝ Թումանյանը, իհարկե, չէր հեռանում իր ստեղծագործության ժողովրդային և ռեալիստական հիմքերից, այլ ցուցադրում էր նրանց գեղարվեստական լայն հնարավորությունները: Նրա բալլադներին լիովի վերաբերում է այն միտքը, որ բանաստեղծն արտահայտել է 1899 թ. մի նամակում. «Ամեն մի ազգի բանաստեղծություն ժողովրդական լեգենդաներով, ազգային ոգու ստեղծագործություններով է զորանում ու ինքնուրույնության կնիք առնում, հաստատվում, առաջ գալիս որպես մի ամբողջ ժողովրդի խոսք և դրանով էլ դառնում պատկառելի» (ԵԺ V, 147): Իրոք, Թումանյանի լավագույն բալլադները ամբողջ հայ գրականության պատմության մեջ ազգային-ժողովրդական ոգու լիարյուն գեղարվեստական մարմնավորման անգերազանց օրինակներ են: Իրենց արտահայտած լուսավոր գաղափարներով և հավերժական ընդհանրացումներով դրանք ձեռք են բերում համամարդկային արժեք և նշանակություն:

Պետք է նկատի առնել նաև հետևյալ կարևոր հանգամանքը: Համաեվրոպական գրականության մեջ բալլադի ժանրը նախապես ծագել ու ձևավորվել է ռոմանտիզմի ուղղության ներսում XVIII դարի վերջի և XIX դարի առաջին կեսի ռոմանտիկ բանաստեղծների ջանքերով, Բյուրգերից մինչև Ժուկովսկի: Եվ այդ իրողությունը իր ուժեղ կնիքը դրեց ժանրի գեղարվեստականնկարագրիվրա:Բալլադնիրխորհրդավորևֆանտաստիկ մոտիվներով, անսովորի և բացառիկի հակումով հաճախ համարվել է «զտարյուն» ռոմանտիկական ժանր, նրան դիմելը՝ ռոմանտիզմին «տուրք տալու» արտահայտություն: Սակայն գրականության պատմությունը նաև օրինակներ է տալիս այն բանի, երբ բալլադի ժանրի ֆանտաստիկ, այլաբանական շղարշի տակ արտահայտվել է լիարյուն ռեալիստական բովանդակություն՝ իրական կենսական հարաբերություններով և բնավորություններով: Ռուս գրականության մեջ դրա լավագույն օրինակը տվեց Պուշկինը, մասնավորապես՝ հենց Թումանյանի թարգմանած «Օլեգի երգը», «Ջրահեղձը» բալլադներում: Նույնը կարելի է ասել ազգային-ժողովրդական ոգով տոգորված ուրիշ բանաստեղծների մասին: Թումանյանը պատկանում է նրանց շարքին: Իր լավագույն բալլադներով նա տվեց «ռոմանտիկական ժանրի» ռեալիստական իմաստավորման փայլուն օրինակներ: Այդ շարքի գործերը՝ «Շունն ու կատվից» մինչև «Թագավորն ու չարչին», Թումանյանի ռեալիստական արվեստի անբաժան մասն են կազմում: Կենդանական և առարկայական աշխարհի մարդկայնացման, հրաշապատում ձևափոխությունների և այլաբանական

կերպարների միջոցով երևան է գալիս կենսական ճշմարտությունն իր ամբողջ հավաստիությամբ, կենդանի բնավորություններ՝ իրենց խոսքով և գործով: Միաժամանակ Թումանյանի երկերը միշտ պարունակում են կյանքի որոշ հավերժական գծեր, համամարդկային ընդհանրացումներ: Այդ բոլորի բազմազան դրսևորումներն են և՛ կենդանիների դիմակի տակ հանդես եկող բնավորությունները («Ծունն ու կատուն», «Անբախտ վաճառականներ», «Չարի վերջը», «Արծիվն ու կաղնին», «Մոծակն ու մրջյունը»), և՛ ֆանտաստիկ ձևափոխումներն ու չափազանցումները («Անիծած հարսը», «Պողոս-Պետրոս», «Աղավնու վանքը», «Հսկան», «Որբը»), և՛ Թումանյանի ստեղծագործության անվիճելի գագաթների թվին պատկանող «Փարվանան», «Մի կաթիլ մեղրը», «Թագավորն ու չարչին»:

Թումանյանի բալլադները, որոնց թիվը հասնում է շուրջ երեք տասնյակի, սույն հատորի մեջ բաժանված են երկու մասի՝ ավարտված և սևագիր կամ անավարտ գործեր: Առաջին բաժնում տեղադրված ավարտուն երկերն էլ տարբեր ճակատագիր են ունեցել: Նրանց մի մասը գրվելուց և տպագրվելուց հետո նորից ու նորից գրավել է հեղինակի ուշադրությունը, ենթարկվել բազմաթիվ փոփոխությունների («Ծունն ու Կատուն», «Անբախտ վաճառականներ», «Ախթամար», «Որբը», «Գառնիկ ախպերը», «Հսկան» և այլն): Կամ էլ սկզբից ևեթ երևան է եկել այնպիսի կատարյալ տեսքով, որ հետագայում էական փոփոխությունների անհրաժեշտություն չի զգացվել («Պողոս-Պետրոս», «Փարվանա», «Լուսավորչի կանթեղը», «Մի կաթիլ մեղրը», «Աղավնու վանքը», «Թագավորն ու չարչին» և այլն): Վերջապես, կա նաև բալլադների մի ուրիշ խումբ, որոնք առաջին տպագրությունից հետո մի տեսակ դուրս են մնացել ստեղծագործական տեսադաշտից, որևէ փոփոխություն չեն կրել կամ չեն վերահրատարակվել («Արև և լուսին», «Օրորոցագող», «Հոգեհան», «Երկինք ու երկիր»): Ըստ երևույթին, Թումանյանը դրանք համարել է անհաջող գործեր, որոնք հիմք չեն տալիս վերամշակման համար: Քառորդ դար անց, անդրադառնալով իր առաջին տպագիր բանաստեղծությանը («Արև և Լուսին»), նա, օրինակ, գրել է, թե դա «անպայման անհաջող է դուրս եկել» և «դրա համար էլ մնացել է առաջին հրատարակության մեջ» (ԵԺ V, 417):

Թումանյանի բալլադների աղբյուրը եղել են հայկական կամ ընդհանրապես արևելյան ժողովրդական ավանդություններն ու զրույցները, երբեմն էլ՝ հայ հին մատենագրության մեջ եղած հիշատակությունները: Բանաստեղծն իր տրամադրության տակ սովորաբար չի ունեցել ամբողջական ու ծավալուն սյուժեներ, որոշակիորեն գծագրված

կերպարներ: Այդ բոլորը նա ստեղծել է ինքնուրույն ճանապարհով՝ պատմական կամ աշխարհագրական որևէ հիշատակության ուսեղմ զրույցի, բնության երևույթի կամ որևէ անվան ժողովրդական ստուգաբանության հիման վրա: Դրա շնորհիվ էլ Թումանյանի բալլադները, իրենց նյութով ու ոգով լինելով խորապես ժողովրդական, միաժամանակ ըստ ամենայնի նոր և ինքնուրույն կերտվածքներ են, արդյունք են ստեղծագործական մեծ աշխատանքի:

Իրենց թեմատիկ հատկանիշներով Թումանյանի այս երկերը կարելի է բաժանել մի քանի խմբի:

Նախ, որոշակիորեն առանձնանում են, պայմանականորեն ասած, մանկական բալլադները: Դրանք հասցեագրված են, ամենից առաջ, «մանկական լսարանին», թեև պարունակում են գաղափարներ ու պատկերներ, որոնք յուրովի հետաքրքիր և ուսանելի են նաև տարեց ընթերցողների համար: Բալլադների այս խումբն սկսվում է դեռ 80-ական թթ. գրված «Շունն ու կատուն» և «Անբախտ վաճառականներ» բանաստեղծություններով և շարունակվում հաջորդ տասնամյակներում գրված մի շարք ուրիշ գործերով, ինչպես «Գառնիկ ախպերը», «Չարի վերջը», «Հսկան», «Արտուտի երգը», «Ծաղիկների երգը», «Մոծակն ու մրջյունը» և այլն: Ընդհանուր է սրանց մեջ այն, որ կենդանի պատկերի ուժով (թեև մեծ մասամբ այլաբանորեն) ցուցադրվում են կյանքի զարմանալիորեն ճշմարտացի տեսարաններ, մարդկային բնավորություններ իրենց համոզիչ խոսքով ու գործով, քարոզվում են մարդասիրության և արդարության, հավասարության և ազատասիրության գաղափարներ՝ առանց որևէ ձանձրալի խրատաբանության: Կենդանի պատկերի տրամաբանությամբ էլ բանաստեղծը մանուկ ընթերցողին հանգեցնում է չարի դատապարտման, բարու և աշխատանքի դրվատման մտքին:

Կառուցվածքի սկզբունքներով հիշյալ գործերից շատերը պայմանականորեն կարող են կոչվել «փոքր դրամաներ»: Նրանց մեջ բացարձակորեն գերիշխում է գործող անձանց խոսքը, որը ոչ միայն բացահայտում է բնավորությունների կենդանի երանգներ, այլև, հեղինակային պատումի հետ «դաշնակցած», առաջ է մղում գործողության ընթացքը: Հայտնի է, որ Թումանյանը շատ է խոսել իր դրամատուրգիական նախասիրությունների մասին, որոնք, սակայն, ուղղակի մարմնավորում չգտան որևէ ամբողջական թատերգական ստեղծագործության մեջ: Բայց դրանք իրենց ինքնատիպ արտահայտությունը գտան կենդանի շարժմամբ,

գործողությամբ ու դրամատիզմով հագեցած չափածո և արձակ շատ գործերում: Վերջիններիս թվին է պատկանում նաև թումանյանական բալլադների զգալի մասը (բացի վերը թվարկված գործերից, պետք է հիշատակել նաև «Թագավորն ու չարչին», «Մի կաթիլ մեղրը», «Անիծած հարսը» և այլն):

Բալլադների երկրորդ խումբը կազմում են այն երկերը, որոնք արծարծում են մարդու և բնության փոխհարաբերության խնդիրը՝ լուծելով այն մարդասիրության և բնապաշտության դիրքերից: Այդ իմաստով նրանք մերձեցման շատ կետեր ունեն Թումանյանի ուրիշ երկերի, մանավանդ «Դեպի Անհունը» պոեմի և քառյակների հետ: Բանաստեղծը հատուկ նախասիրություն ունի ժողովրդական այն սյուժեների նկատմամբ, որոնց մեջ կյանքի չար ուժերից հալածված էակները վերածվում են թռչունների, դառնում մեծ ու գթառատ բնության մի մասնիկը: Այդ ճակատագիրն է վիճակվում դաժան սկեսրոջից անիծված երիտասարդ կնոջը («Անիծած հարսը»), խորթ մոր քմահաճույքով հայրական տնից վտարված որբերին («Պողոս-Պետրոս»), թուրքի կողմից առևանգված գեղանի աղջկան («Որբը»), Լենկթեմուրի հրամանով գերի քշվող հազարավոր մարդկանց («Աղավնու վանքը»): Բնությունը նրանց համար դառնում է հարազատ գիրկ, փրկում է չար ու դաժան մարդկանց հալածանքից: Այստեղ արտահայտվել է Թումանյանի աշխարհայացքին շատ բնորոշ այն մոտիվը, որը հաճախ նրան մղում էր հասարակական կյանքի ողբերգական հակասությունները լուծելու բնության միջոցով՝ նրա մեջ տեսնելով մարդասիրության, արդարության և ազատության բարձրագույն տիպար ու հանգրվան: Բնությունը մարդկային ձգտումների հավերժացման միջոց է դառնում նաև «Ախթամար», «Աղջկա սիրտը» բալլադներում, իսկ «Արծիվն ու կաղնին», «Էսպես չի մնա» և այլ գործերում յուրովի արտահայտվել է բնության ու կյանքի հավերժական հոսունության, շարժման գաղափարը: Առհասարակ բալլադներում ցայտուն կերպով արտահայտվել են Թումանյանի գեղարվեստական մտածողության երկու կողմերը իրենց բնական միասնության մեջ. մի կողմից պատկերի առարկայական, գրեթե տեսանելի կոնկրետություն, մյուս կողմից՝ հավերժական ընդհանրացումներ, ժամանակն ու տարածությունը իրենց անչափելի մեծությամբ ընդգրկելու ձգտում:

Այս բոլոր մոտիվների ամենաբարձր ու կատարյալ արտահայտությունը դարձավ «Փարվանան», որն «Անուշի» և «Թմկաբերդի առումի» հետ կարող է համարվել Թումանյանի էպիկական պոեզիայի

գագաթներից մեկը: Բանաստեղծի համար ելակետ են եղել Փարվանա լճի և կրակի մեջ այրվող թիթեռների մասին Ջավախքում պատմվող զրույցները, որ նա նախապես լսել էր իր դասընկեր Գրիգոր Վանցյանից: Այս զրույցների հիման վրա գրելով բալլադ՝ Թումանյանը մեծապես ընդլայնեց պատմության աշխարհագրական և փիլիսոփայական սահմանները, արտահայտեց իր նվիրական խոհերը մարդու կատարելության և մարդկության զարգացման հեռանկարների մասին: Անշեջ հուրը ոչ միայն բալլադի հերոսներին շարժման մեջ դնող կետ-նպատակն է, այլև վիթխարի ուժի հասցված մի ընդհանրացում, որը խորհրդանշում է մարդկության հավերժական ձգտումը դեպի գեղեցիկն ու կատարյալը: Բարձր իդեալի այդ անվերջանալի մղումն արտահայտվում է արքայադստեր, թիթեռներ դարձած անձնազոհ կտրիճների կերպարներում: Այս դեպքում ևս ֆանտաստիկ ձևափոխությունը Թումանյանի հումանիստական գաղափարների դրսևորման միջոց է: Հայ բանաստեղծն ինքնատիպ մեկնաբանություն է տվել Արևելքի միջնադարյան և նոր ժամանակների արևմտյան գրականության մեջ բազմիցս օգտագործված կրակի և թիթեռի բազմանշանակ պատկերին: Այդ պատկերը կապվում է բարձր իդեալի հավերժական ձգտման հետ, որը մշտապես ապրում է մարդկության սրտում՝ չնայած բոլոր արգելքներին ու դժվարություններին:

Վերջապես, կարելի է առանձնացնել բալլադների մի երրորդ խումբ, որոնք արծարծում են ազգային-հայրենասիրական և քաղաքական կյանքի խնդիրներ, ներկայացնում պատմության դրվագներ՝ ի դաս ժամանակակից սերնդի: Այս խմբի մեջ մտնող գործերի համար («Աղավնու վանքը», «Լուսավորչի կանթեղը», «Մի կաթիլ մեղրը», Թագավորն ու չարչին») հիմնական աղբյուր են ծառայել միջնադարի գրականությունից քաղված առանձին սյուժետային դրվագներ, որոնք իմաստավորվում են արդիականության դիրքերից: Այսպես, Արագածի գագաթին կախված մշտավառ ջահի ավանդությունը, որը գալիս է վաղ միջնադարից, Թումանյանը ներկայացնում է իբրև ազգային ազատության անմարելի հույսերի խորհրդանիշ: Իսկ «Աղավնու վանքի» համար հիմք է ծառայել միջնադարյան մի հրաշապատում լեգենդ, որի տարբերակները գրի են առնվել XVIII դարի մատենագիր Ղազար Ջահկեցու գրքի, Միքայել Չամչյանի «Պատմություն հայոց» աշխատության և Ավգուստ ֆոն Հաքստհաուզենի ուղեգրության էջերում: Այդ աղբյուրներից քաղված դրվագներն ու մանրամասները Թումանյանը վերահյուսել է մի նոր գեղարվեստական ամբողջության մեջ: Բայց լեգենդի ֆանտաստիկ սյուժեն (գերյալ հայերի

աղավնի դառնալու պատմությունը) նրան գրավել է ոչ թե իբրև կրոնական հրաշք, այլ որպես հայրենասիրական և հումանիստական գաղափարների հաստատման միջոց:

Նույնը կարելի է ասել նաև մյուս երկու բալլադների մասին: «Մի կաթիլ մեղրի» ստեղծման համար անմիջական խթան է եղել Վարդանի առակների գրքում տեղ գտած համանման պատմությունը: Սակայն միջնադարյան առակի սեղմ, արձանագրական սյուժեն բալլադում վերածվել է կենսական լիարյուն մանրամասներով հագեցած մի լայնածավալ համայնապատկերի, իսկ երկու գյուղերի կռիվն ի վերջո ձեռք է բերել համընդհանուր արյունահեղ պատերազմի չափեր: Առաջին համաշխարհային պատերազմի ծագումից մի քանի տարի առաջ՝ 1909 թ. գրված այս ստեղծագործության մեջ Թումանյանն ասեք կանխազգում էր մոտալուտ ապագան: Երգիծական մեծ ուժով նա ցուցադրում էր պատերազմի անմարդկային և անհեթեթ բնույթը, նրա բերած անհամար չարիքները, մերկացնում աշխարհի տիրակալների կեղծ-հայրենասիրական դեմագոգիան: «Մի կաթիլ մեղրը» դուրս է գալիս ազգային ու պատմական շրջանակներից և վերաբերում է բոլոր ժամանակներին: Այն կարող է դասվել համաշխարհային հակապատերազմական գրականության լավագույն էջերի թվին և այսօր էլ հնչում է իբրև խորապես հրատապ ստեղծագործություն:

Ոչ միայն անցյալի, այլև ներկայի իմաստավորմանն է ծառայում նաև «Թագավորն ու չարչին» (1917), որի նյութը Թումանյանը քաղել է XVII դարի նշանավոր պատմիչ Առաքել Դավրիժեցու, մասամբ էլ նույն դարի հեղինակ Զաքարիա Սարկավագի գրքերից: Շահ Աբասի հրամանով իրականացված հայերի բռնագաղթը, նրանց զրկանքների ու տանջանքների ողբերգական պատմությունը ներքուստ զուգադրվում էին համաշխարհային պատերազմի տարիներին ծավալված հայկական մեծ եղեռնի դեպքերի հետ: Բայց այստեղ ևս Թումանյանն ազգայինից գնում է դեպի համամարդկային խնդիրների արծարծում: Գեղարվեստական մեծ ուժով նա դատապարտում է ամեն կարգի բռնություն, որի պայմաններում հնարավոր չէ «ո՛չ շիտակ խոսք, ո՛չ կյանք, ո՛չ սեր»:

«Թագավորն ու չարչին» Թումանյանի վերջին ավարտուն բալլադն է: Բայց կյանքի վերջին տարիներին էլ նրա միտքն աշխատում էր բանահյուսական նյութերի գեղարվեստական մշակման վրա՝ ձգտելով նրանց բովանդակության ազգային և ժամանակագրական շրջանակների ընդլայնման: Թումանյանը համոզված էր, որ «էդ ճանապարհով միայն գրողը կարող է համամարդկային գրականության մեջ տեղ ունենալ» (տե՛ս

Նվարդ Թումանյան, էջ 296): Առաջին իսկ քայլերից ղեկավարվելով այդ սկզբունքով՝ բանաստեղծը կյանքի մայրամուտին էլ երազում էր ավարտել «Հազարան բլբուլ» հեքիաթ-պոեմը, որը, նրա համոզմամբ, պետք է լիներ իր բոլոր նվիրական գաղափարների, մոտիվների ու ձևերի ամենալրիվ ու բարձր համադրությունը: Բանահյուսական հիմք ունեցող մյուս երկը, որը նույնպես մնաց անավարտ, «Անբուն կկուն» էր: Այստեղ Թումանյանը նորից անդրադարձավ մոտ 15 տարի առաջ գրած «Չարի վերջը» մանկական բալլադի նյութին, բայց շատ ավելի լայն ստեղծագործական ծրագրով: Բանը միայն ծավալի բազմապատիկ մեծացումը չէր (ավարտելու դեպքում, դատելով պահպանված հատվածներից, դա լինելու էր Թումանյանի ամենածավալուն չափածո երկերից մեկը): Ավելի կարևոր է այն, որ այս դեպքում ևս մեծապես ընդլայնվում են ստեղծագործության թեմատիկ-գաղափարական սահմանները՝ արդարության և հավասարության բարոյախոսական հավաստումից գնալով դեպի քաղաքական երգիծանքի լայն ընդգրկումներ: «Անբուն Կըկուն», նույնիսկ իր առկա մասերով, արդեն դուրս է գալիս բալլադի ժանրային շրջանակներից: Դա նոր ժամանակներում մի յուօրինակ «կենդանական վեպ» ստեղծելու, այն հասարակական-քաղաքական հրատապ խնդիրներով հագեցնելու համարձակ փորձ էր: Իրավացի էր թումանյանագետ Արամ Ինճիկյանը, երբ «Անբուն Կըկուն» համեմատում էր Գյոթեի նշանավոր «Ռեյնեկե աղվես» երգիծական պոեմի հետ (տե՛ս ՈւԻՀ 1, էջ 20), որն, ի դեպ, ինչպես վկայել է Աշխեն Թումանյանը, բանաստեղծն իրոք նկատի է ունեցել իր երկը գրելիս:

Ինչպես ուրիշ ժանրերի, այնպես էլ բալլադի բնագավառում Թումանյանն ուներ անհամար մտահղացումներ ու ծրագրեր, որոնք առհասարակ մնացին անհայտության մեջ: Ազգային ժողովրդական ավանդությունների և լեգենդների համապարփակ իմացությունը պետք է հիմք ծառայեր շատ տասնյակ բալլադների ստեղծման, որի համար Թումանյանն ըստ ամենայնի պատրաստ էր: 1923 թ. փետրվարի 6-ին նա ասել է. «Հիմա որ լավացա, էլ ոչ ոք չի պոկի ինձ իմ գրասեղանից: Գարունքի հետ հենց որ աչքերս բացվեն՝ ինչե՜ր եմ թափելու, ինչե՜ր եմ թափելու՝ հեքիաթների, լեգենդների հեղեղ...» (Նվարդ Թումանյան, էջ 310): Դրանից մի քանի շաբաթ անց վրա հասած մահը ողբերգական վերջակետ դրեց բանաստեղծի այդ մեծ երազանքին:

Ամփոփելով շարադրվածը՝ կարելի է ասել, որ բալլադը Թումանյանի ստեղծագործության առաջատար և կենտրոնաձիգ ժանրային ձևերից

մեկն է: Նրա ամբողջ գրական ճանապարհի միջով անցնող ու հարատևող հետաքրքրությունը ժողովրդական ավանդությունների նկատմամբ նշանավորվեց բազմաթիվ անզուգական երկերի ստեղծումով, որոնք պատկանում են հայ գրականության չխամրող արժեքների թվին: Թումանյանի լավագույն բալլադները այդ ժանրի դասական նմուշներից են ոչ միայն ազգային, այլև համաշխարհային գրական չափանիշներով:

***Հովհաննես Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու, հատոր երկրորդ, Երևան, 1990, էջ 538-548***

## Հովհաննես ԹՈՒՄԱՆՅԱՆ

1902

# ՓԱՐՎԱՆԱ

I

Բարձրագահ Աբուլն ու Մըթին սարեր
Մեջք մեջքի տըված կանգնել վեհափառ,
Իրենց ուսերին, Ջավախքից էլ վեր`
Բըռնած պահում են մի ուրիշ աշխարհ:

Ասում են` էնտեղ, արծըվի նըման,
Ծիծղուն, կապուտակ երկընքի ծոցում,
Նըստում էր էն սեգ սարերի արքան
Իրեն Փարվանա ճերմակ ամրոցում:

Փարվանա արքան մի աղջիկ ուներ.
Ու ոչ մի որսկան դեռ իրեն օրում
Էնքան գեղեցիկ եղնիկ չէր տեսել`
Իր որսն անելիս Մըթին սարերում:

Աշխույժ մանկությամբ զարդարում էր նա
Ծերության օրերն ու սարերն իր հոր,
Ու ապրում էր ծեր արքան Փարվանա
Իրեն էն քընքուշ ծաղկով բախտավոր:

Մեծ բախտը սակայն առաջևն էր դեռ.
Եկավ էն օրն էլ հասավ երջանիկ,
Ու ղըրկեց արքան ուրախ դեսպաններ
Ամեն մի ամրոց, ամեն արքունիք:

- Ո՞րտեղ է, ասավ, էն քաջը, թե կա,
Իմ չընաշխարհիկ դըստերն արժանի,

Թող առնի իր ձին, իր զենքն ու զըրահ,
Գա՛, ցույց տա իրեն, իր բախտը տանի...

II
Հագած, կապած զենք ու զըրահ,
Ձիանք հեծած ամեհի,
Ահա եկել հավաքվել են
Կըտրիճները Կովկասի,
Ծեր Փարվանա թագավորի
Ապարանքի հանդիման
Կազմ ու պատրաստ սպասում են
Մոտիկ ժամին մըրցության:
Ըսպասում է ողջ աշխարհքը՝
Եկած, կիտված Փարվանա,
Թե ո՞ր կըտրիճն արդյոք պիտի
Էն սիրունին տիրանա:

Հընչեց փողը: Ահա փունջ-փունջ
Դըրանիկներ, նաժիշտներ,
Ահա աղջիկն իր նազելի
Ու թագավորն ալեհեր:
Հայրը ինչպես մըռայլ մի ամպ,
Աղջիկն անուշ մի լուսին,
Ամպ ու լուսին իրար փարված՝
Դուրս են գալի միասին:
Հառաչում է ողջ աշխարհքը.
Կըտրիճները, քարացած,
Երազների մեջ են ընկնում՝
Էս աշխարհքից վերացած:

- Նայի՛ր, դըստրի՛կ, իշխանազուն
Էս քաջերին լայնալանջ,
Այժմ պիտի հանդես դուրս գան,
Պայքար մըտնեն քո առաջ.
Մեկը իրեն ուժը ցույց տա,
Մյուսը՝ շընորհքն իր բազկի,

Մ՜րը՝ ճարպիկ ձիարշավը,
Մ՜րն էլ՝ թափը իր վազքի:
Իսկ երբ կըռիվն առնի դադար,
Հայտնի լինին քաջն ու վատ,
Ու երբ անցնեն մեր առջևից
Կըտրիճները պայազատ,
Ընտրի՛ր, զարկի՛ր ձեռքիդ խնձորն
Անհաղթներից անհաղթին,
Որ ողջ աշխարհ մայիլ մընա
Անզուգական քո բախտին:

Ասավ արքան, ձեռքը ձըգեց,
Նըշան տըվավ պայքարին,
Այնինչ՝ աղջիկն առաջ եկավ՝
Կարմիր խնձորն իր ձեռին:
- Գուցե, հայրի՛կ, տըկար լավին
Հաղթե մի վես տըմարդի,
Բայց չի կարող լինել երբեք
Նա սիրելին իմ սըրտի...
- Է՜յ, Փարվանա չըքնաղ փերի,
Ի՞նչն է հավան քո սըրտին,-
Խըռնըվում են կըտրիճները,
Խընդրում կրկին ու կրկին:

- Գա՞նձ ես ուզում, ոսկի՞, արծա՞թ,
Անգին քարեր ու գոհա՞ր,
Ա՞ստղ ես ուզում, էլ երկընքից
Վար կըբերենք քեզ համար:
- Ինչի՞ս են պետք ոսկին, արծաթ
Եվ կամ աստղը երկընքի,
Ոչ էլ գոհար եմ պահանջում
Սեր-ընկերից իմ կյանքի:
Ես նըրանից հուր եմ ուզում,
Անշեջ հուրը սըրբազան,
Ով կըբերի անշեջ հուրը,
Նա է ընտրած իմ փեսան...

Ասավ աղջիկն, իրար անցան
Կըտրիճները քաջարի,
Ձիանք հեծած թըռան հապճեպ
Դեպի չորս կողմն աշխարհի:
Թըռա՜ն, շուտով գըտնեն, բերեն
Անշեջ հուրը աղջըկան.
Բայց... տարիք են գալի՜ս, գընո՜ւմ,
Նըրանք չըկան ու չըկան...

III
- Հայրի՛կ, ինչո՞ւ ետ չըդարձան
Էն քաջերը սիրատենչ.
Մի՞թե, հայրի՛կ, ինձ մոռացան,
Էլ չեն բերիլ հուրն անշեջ:

- Ո՛չ, իմ դըստրիկ, կըգան անշուշտ
Ու կըբերեն էս տարի.
Կըռիվներով արյունըռուշտ
Լիքն է ճամփեն քաջերի:
Ո՛վ իմանա, պետք է անցնեն
Մութ աշխարհքից, սև ջըրից.
Ո՛վ իմանա, պետք է փախցնեն
Յոթգըլխանի դևերից:

Անց է կենում դարձյալ տարին.
Նայում է կույսն ամեն օր.
- Ո՞ւր է, հայրի՛կ, ե՞րբ կըգա նա՝
Սարից թըռած ձիավոր:

Միշտ երազում ես տեսնում եմ
Էն հերոսին ապագա,
Հուր կարոտով թըռած իմ դեմ,
Լուսանում է... ու չըկա:

- Կըգա, դըստրի՛կ, իմ թանկագին,
Հեշտ չի բերվում հուրն անշեջ.

Ճատ-շատ անգամ բերող հոգին
Ինքն է այրվում նրա մեջ...

Անց է կենում դարձյալ տարին:
Նայում է կույսն ամեն օր.
Ոչ մի սարից, ոչ մի ճամփում
Չի երևում ձիավոր:

- Հայրի՛կ, հայրի՛կ, մի՞թե չըկա
Էս աշխարհքում անշեջ հուր.
Թառամում է սիրտըս ահա,
Պաղ է էս կյանքն ու տըխուր...

Էլ չի խոսում. մռայլ, տըրտում,
Լուռ է արքան ալևոր,
Սև-սև ցավերն իրեն սըրտում՝
Միտք է անում գըլխակոր:

IV
Էսպես անցան շատ տարիներ.
Տըխուր աղջիկն արքայի
Նայե՜ց, նայե՜ց սարերն ի վեր,
Ճամփաներին ամայի,
Հույսը հատավ... ու լաց եղավ.
Էնքա՜ն արավ լաց ու կոծ,
Որ լիճ կըտրեց արտասուքը,
Ծածկեց քաղաքն ու ամրոց.
Ծածկե՜ց, կորա՜ն, ինքն էլ հետը...
Այժըմ էնտեղ տըրտմաշուք
Խոր Փարվանա լիճն է ծըփում,
Հըստա՜կ, ինչպես արտասուք:
Ու էն վըճիտ ջըրերի տակ
Ցույց են տալի մինչ էսօր
Ծեր արքայի ճերմակ ամրոցն
Ու շենքերը փառավոր:

* * *

Ասում են, էն թիթեռները,
Որ գիշերվա խավարում,
Որտեղ ճըրագ, որտեղ կըրակ,
Որտեղ լույս է հենց վառվում,
Հավաքվում են, շուրջը պատում,
Մեջն են ընկնում խելագար,
Ասում են, թե էն Փարվանա
Ջահիլներն են սիրավառ:
Ըշտապելուց թև են առել,
Դարձել թեթև թիթեռներ,
Ու տակավին հուր տեսնելիս`
Մեջն են ընկնում անհամբեր.
Ջանք է անում ամեն մինը,
Ծուտով տանի, տիրանա...
Ու այրվում են, այրվո՜ւմ անվերջ
Կըտրիճները Փարվանա:

***Հովհաննես Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու, հատոր երկրորդ, Երևան, 1990, էջ 121-126***

* * *

1902

# ՓԱՐՎԱՆԱ

*ՄՃ / «Մուրճ» ամսագիր, Թիֆլիս*

5 Ասում են` այնտեղ, արծըվի նըման,
11 Այնքան գեղեցիկ եղնիկ չէր տեսել
16-18 Իրեն այն քնքուշ ծաղկով բախտավոր:
Մեծ բախտը սակայն առաջին էր դեռ.
Եկավ այն օրն էլ հասավ երջանիկ,
37 Փողը հընչեց: Ահա փունջ-փունջ
39 Ահա աղջիկն իր գեղանի
66-67 Նըշան տա գոռ պայքարին,

Աղջիկն հանկարծ առաջ եկավ
76 Խընդրում նորից ու նորից:
76-ից հետո՝
- Ասա՛, դստրի՛կ, ի՞նչ ես ուզում
Էս աննըման քաջերից
80 Վեր կըբերեն քեզ համար,
83 Ոչ գոհար եմ ես պահանջում
120 Ինքն է այրվում նորա մեջ
133 Այսպես անցան շատ տարիներ:
138-139 Այնքա՜ն արավ լաց ու կոծ,
Որ ծով կըտրեց արտասուքը
141-142 Ծածկե՜ց, կորա՜ն, ինքն էլ մեջը...
Այժմ այնտեղ տըրտմաշուք
145-146 Ու այն վճիտ ջըրերի տակ
Ցույց են տալի մինչ այսօր
149 Ասում են, այն թիթեռները
155-156 Ասում են, թե՝ այն Փարվանա
Ջահելներն են սիրավառ:

*ԲԹ / «Բանաստեղծություններ», Թիֆլիս, 1903*

5 Ասում են՝ այնտեղ, արծըվի նըման,
11 Այնքան գեղեցիկ եղնիկ չէր տեսել
16 Իրեն այն քնքուշ ծաղկով բախտավոր:
18 Եկավ այն օրն էլ հասավ երջանիկ,
50 Այս քաջերին լայնալանջ,
133 Այսպես անցան շատ տարիներ:
138 Այնքա՜ն արավ լաց ու կոծ,
145 Ու այն վճիտ ջըրերի տակ
149 Ասում են, այն թիթեռները
152 Որտեղ լույս է երևում,
155 Ասում են, թե՝ այն Փարվանա

*ԲԲ / «Բանաստեղծություններ», Բաքու, 1908*

5 Ասում են՝ այնտեղ, արծըվի նըման
11 Այնքան գեղեցիկ եղնիկ չէր տեսել
16 Իրեն այն քնքուշ ծաղկով բախտավոր:
18 Եկավ այն օրն էլ հասավ երջանիկ,

44 Դուրս են գալիս միասին:
50 Այս քաջերին լայնալանջ,
58 Հայտնի լինեն քաջն ու վատ,
65-66 Ասեց արքան, ձեռքը ձըգեց,
Նըշան տըվեց պայքարին,
70 Հաղթե մի վես տըմարդի,
79 Ո՞ստղ ես ուզում, մենք երկընքից
91 Ձիանք հեծան, թըռան հապճեպ
100 Էլ չեն բերի հուրն անշեջ:
133 Այսպես անցան շատ տարիներ
138 Այնքա՜ն արավ լաց ու կոծ,
145-146 Ու այն վճիտ ջըրերի տակ
Ցույց են տալիս մինչ այսօր
149 Ասում են, այն թիթեռները
155 Ասում են, թե՝ այն Փարվանա

*ՀԳ / «Հայ գրողներ» (քրեստոմատիա), Ա, Ռուսահայ գրողներ, Թիֆլիս, 1909 (առաջին տպ.), 1914 (երկրորդ տպ.)*

66 Նըշան տըվավ պայքարին
83 Ոչ գոհար եմ ես պահանջում
91 Ձիանք հեծան թըռան հապճեպ
120 Ինքն է էրվում նըրա մեջ
152 Որտեղ լույս է երևում

*ԳԳ / Սուրխաթյան, «Գրական գոհարներ» (քրեստոմատիա), Թիֆլիս, 1922*

58 Հայտնի լինեն քաջն ու վատ,
79 Աստղ ես ուզում, մենք երկընքից
91 Ձիանք հեծան, թըռան հապճեպ
100 Էլ չեն բերի հուրն անշեջ
120 Ինքն է էրվում նըրա մեջ...
128 Պաղ է էս կյանքն ու տըխուր:
146 Ցույց են տալիս մինչ այսօր
152 Որտեղ լույս է երևում
163 Ու էրվում են, էրվո՜ւմ անվերջ

***Հովհաննես Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու, հատոր երկրորդ, Երևան, 1990, էջ՝ 385-387:***

# ՓԱՐՎԱՆԱ
## («Բարձրագահ Աբուլն ու Մըթին սարեր»)

Ակունքը ժողովրդական է: Թումանյանն առաջին անգամ լսել է Ներսիսյան դպրոցի իր նախկին դասընկեր, հետագայում մանկավարժ և լեզվաբան Գր. Վանցյանից: «Գրիգորն է լսել Ախալքալաք, – գրում է բանաստեղծը ԹԸԱ N 3 ծոցատետրում: – Փարվանա (կրակի թիթեռ): Թագավորը մի աղջիկ է ունենում, ասում է՝ ով որ կրակ բերի, նրան կտամ: Գալիս է կրակի շուրջը պտտվում, որ կրակ տանի և միշտ ընկնում է մեջն այրվում» (տե՛ս ՈՒՀ 2, էջ 420, 459):

Ընկերոջ պատմածը լսելուց հետո Թումանյանն այցելել է Փարվանա լիճը, նրա մոտակա գյուղերը և այստեղ, հավանորեն, նույն ավանդությունը լսել նաև ուրիշներից: Այս մասին հետաքրքիր տեղեկություն է հաղորդում Ավ. Իսահակյանը. «...1901 թվի սեպտեմբերին Օհաննեսը Ալեքսանդրապոլ եկավ Աբասթումանից, ուր նա բժշկվում էր: Ճանապարհին կանգ էր առել Ախալքալաքում, այցելել էր Փարվանա լիճը, որի հայտնի լեգենդի մասին վաղուց ի վեր մտորում էր: Լսել էր Թմկաբերդի լեգենդը: Չէր կարողացել գնալ բերդը տեսնելու, սակայն Աբուլ լեռան լանջերից դիտակով նայել էր բերդին, որի բուրգերը հեռվից ազատ ուրվագծվում էին: Խանդավառ խոսում էր Փարվանայի ու Թմկաբերդի լեգենդների մասին. նրա երևակայության մեջ կամաց-կամաց կենսագործվում էին այդ չքնաղ պոեմները:

Հիշում եմ այսօրվա պես, որ նա «Թմկաբերդի» նախերգանքի առաջին փորձը արտասանեց, մեծ հիացմունք պատճառելով ինձ» (ԹԺՀ, էջ 12-13):

Գրված է 1902 թ. Աբասթումանում: Այդ մասին տեղեկանում ենք 1909 թ. հուլիսի 18-ին բանաստեղծի՝ Մ. Թումանյանին հղած նամակից. «Որքան հիշողություններ ու անմոռանալի վայրկյաններ են կապված Աբասթումանի այս կամ այն փոքրիկ, խաղաղ, չքնաղ անկյունում, – գրում է Թումանյանը, – այդտեղ ես շատ եմ երազել ու գրել եմ իմ մի քանի լավ բաները: Այդտեղ եմ մշակել «Անուշը», այդտեղ եմ գրել «Փարվանան» և այլ բաներ – հա՛, «Թմկաբերդի առումը» (ԵԺ V, 320):

Ինքնագիրը չի պահպանվել:

ԳԱԹ ԹՖ N 1354 և N 1355 պահվում են ԲԹ-ի և ԲԲ-ի հեղինակի սեփական օրինակները, որոնց մեջ Թումանյանն ուղղումներ է կատարել և լուսանցքում արել նաև հետևյալ նշումները. «Մի քիչ ավելացնել ու

զարգացնել» (77-79-րդ տողերի կողքին), «Իմ Հերն էլ շատ ունի - մեր երկնքում էլ աստղեր կան» (81-83-րդ տողերի կողքին), «Ավելացնել, զարգացնել իր իդեալը» (85-88-րդ տողերի կողքին), «Աղջկանը ավելի շատ տեղ տալ» (109-111-րդ տողերի կողքին):

Առաջին անգամ «Լեգենդ» ենթավերնագրով տպագրվել է Մճ, 1903, N 1, էջ 33-38, տողատակի հետևյալ ծանոթությամբ. «Փարվանա լիճը գտնվում է Ախալքալաքից 20 վ. հյուսիս-արևելք: Փարվանա են կոչվում և՛ այն թիթեռները, որ թրթռում են ճրագի շուրջը»: Այնուհետև՝ ԲԹ, էջ 70-76, ԹԼ, էջ 23-29, ԲԲ, էջ 89-95, ՀԳ, էջ 95-100, ԳԳ, էջ 322-327, ԲՊ, էջ 91-97, ապա՝ ԵԺ I, 292-296:

*Արտատպվում է ԲՊ-ից: Ուղղել ենք մի քանի վրիպակ:*

## Բաժնում կիրառված համառոտագրությունները

ԲԹ - Բանաստեղծություններ, Թիֆլիս, 1903
ԹԼ - Լեգենդներ, Թիֆլիս, 1904
ԲԲ - Բանաստեղծություններ, Բաքու, 1908
ԲՊ - Բանաստեղծություններ, Կ. Պոլիս, 1922
ԵԺ I, II, III, IV, V, VI - Հովհաննես Թումանյան, Երկերի ժողովածու, գիտական հրատարակություն 6 հատորով, Երևան, 1940-1959
ԳԱԹ - Ե. Չարենցի անվան գրականության և արվեստի թանգարան
ԳԳ - Սուրխաթյան, Գրական գոհարներ (քրեստոմատիա), Թիֆլիս, 1922
ԹԸԱ - Թումանյանի ընտանիքի արխիվ
ԹԺՀ - Թումանյանը ժամանակակիցների հուշերում (տեքստը պատրաստեց և ծանոթագրեց՝ Լ. Մ. Կարապետյան), Երևան, 1969
ԹՖ - Թումանյանի ֆոնդ
ՀԳ - Հայ գրողներ (քրեստոմատիա), Ա, Ռուսահայ գրողներ, Թիֆլիս, 1909 (առաջին տպ.), 1914 (երկրորդ տպ.)
ՈՒՀ1, ՈՒՀ2, ՈՒՀ3, ՈՒՀ4 - Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ, հ. 1, Երևան, 1964, հ. 2, Երևան, 1969,
Ֆ - ֆոնդ
Նվարդ Թումանյան - Ն. Թումանյան, Հուշեր և զրույցներ, Երևան, 1969

***Հովհաննես Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու, հատոր 2-րդ, Երևան, 1990, էջ 558-559***

# ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻՆ

(բնօրինակների լուսապատճենումներ)





ОТКРЫТОЕ ПИСЬМО.

Тифлисъ

Его Благородию Оганесу

Г-ну Туманіанцу

Армянская Консисторія

На этой сторонѣ пишется только адресъ.

# ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆԻ ՀԵՂԻՆԱԿԱԾ ԳՐՔԵՐԻ ԵՎ ՎԵՐԱՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏԻՏՂՈՍԱԹԵՐԹԵՐԸ

(բնօրինակների լուսապատճենումներ)



ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

Ալիշան, Պէշիկթաշլեան, Դուրեան, Պարոնեան, Սէրենց, Նալբանդեան, Գամառ - Քաթիպա, Պռօշեան, Րաֆֆի, Շահազիզ, Աղայեան, Շիրվանզադէ, Մուրացան, Լէօ, Ահարոնեան, Յ. Յովհաննիսեան, Թումանեան, Մանուէլեան, Իսահակեան, Շանթ եւ այլն:—

ԸՆՏԻՐ ՀԱՏՈՒԱԾՆԵՐ

ՄԻՋՆԱԿԱՐԳ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԹԻՖԼԻԶ

Տպարան «ՀԵՐՄԷՍ» ԸՆԿ. 1905 Թ.

Մադաթեան փողոց № 15

(86)

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

Աբովեան, Ս. Նազարեան, Ալիշան, Պէշիկթաշլեան, Դուրեան, Պարոնեան, Ծերենց, Նալբանդեան, Գամառ-Քաթիպա, Պռօշեան, Սունդուկեան, Րաֆֆի, Շահազիզ, Աղայեան, Շիրվանզադէ, Մուրացան, Լեօ, Ահարոնեան, Յ. Յովհաննիսեան, Թումանեան, Ծատուրեան, Իսահակեան, Շանթ եւ այլն։

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԲԱՐԵՓՈԽԱԾ-ՀԱՐՍՏԱՑՐԱԾ

ԹԻՖԼԻԶ
Տպարան «ՀԵՐՄԷՍ» Ընկ. Մադաթեան փողոց № 15.
1906 (135)

Первое изданiе допущено къ употребленiю въ учебн. заведен. Попечительнымъ Совѣтомъ К. У. О.

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

Եղիշէ, Ղազար Փարպեցի, Քուչակ, Սայեաթ-Նովա, Մեսրոպ Թաղիադեանց, Աբովեան, Ս. Նազարեան, Ալիշան, Պէշիկթաշլեան, Դուրեան, Պարոնեան, Գամառ-Քաթիպա, Նալբանդեան, Պռօշեան, Ծերենց, Սունդուկեան, Րաֆֆի, Շահազիզ, Սաղաթեան, Աղայեան, Արփիարեան, Պալասանեան, Շիրվանզադէ, Մուրացան, Լէօ, Սիպիլ, Ահարոնեան, Ե. Յովհաննիսեան, Թումանեան, Ծատուրեան, Շանթ, Իսահակեան, Կուրղինեան եւ այլն։

ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԲԱՐԵՓՈԽԱԾ ԵՒ ՀԱՐՍՏԱՑՐԱԾ

Հրատարակութիւն տիկին Մ. ՎԱՆՑԵԱՆԻ

Գինն է 1 ռուբլի





ԹԻՖԼԻՍ
Էլեկտր. տպարան «ԷՊՕԽԱ» Դվորցովայա փող. № 3.
1909

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

Մեսրոպ Թաղիադեանց, Աբովեան, Ս. Նազարեան, Ալիշան, Պէշիկ-թաշլեան, Դուրեան, Պարոնեան, Սերենց, Նալբանդեան, Գամառ-Քաթիպա, Պռօշեան, Սունդուկեան, Րաֆֆի, Շահազիզ, Աղայեան, Շիրվանզադէ, Մուրացան, Լէօ, Ահարոնեան, Յ. Յովհաննիսեան, Թումանեան, Պատուրեան, Իսահակեան, [illegible]եանք, Կուրղինեան եւ այլն։

ՉՈՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Հրատարակութիւն տիկին Մ. ՎԱՆՑԵԱՆԻ



ԹԻՖԼԻՍ
Ելեկտր. տպարան «ԷՊՕԽԱ» Գանովսկայա փող. № 8.
1910

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

Եղիշէ, Ղազար Փարպեցի, Քուչակ, Սայեաթ-Նովա, Մեսրոպ Թաղիադեանց, Աբովեանց, Ս. Նազարեանց, Ալիշան, Պեշիկթաշլեան, Դուրեան, Պարոնեան, Ծերենց, Նալբանդեան, Գամառ-Քաթիպա, Պռոշեան, Սունդուկեան, Րաֆֆի, Շահազիզ, Սաղաթեան Աղայեան, Արփիարեան, Պալասանեան, Շիրվանզադէ, Մուրացան, Լէօ, Սիբիլ, Ահարոնեան, Յ. Յովհաննիսեան, Թումանեան, Ծատուրեան, Իսահակեան, Շանթ, Կուրղինեան եւ այլն.

ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Հրատարակութիւն տիկին Մ. Վանցեան



ԹԻՖԼԻՍ
Տպարան «ԷՊՕԽԱ» Մուզէյսկի պեր. № 8
1913

Հրատարակութիւն Մամիկոն Գէորգեանի

# ՊԱՏՄԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԱՐԵՒԵԼԱՀԱՅ ԼԵԶՈՒԻ

Աշխատասիրեց Գր. ՎԱՆՑԵԱՆ

Nichts zeigt deutlicher, dass ein volk in eine schöpfungs periode eintrit und etwas Ursprüngliches zu leisten vermag, als der umstand, dass es seine Sprache reformirt.

*Ոչ մի բան աւելի որոշ չի ցոյց տալիս, թէ մի ժողովուրդ ստեղծագործական շրջանն է մտնում և մի հիմնական բան սկսում ստեղծագործել, քան այն, որ նա սկսում է իր լեզուն մշակել.*

Björson Björnsterne

ԹԻՖԼԻՍ
Տպ. Մ. Վարդանեանի Դաւ. փ. № 3 || Тип. М. Варданянъ Гав. ул. № 3
1906

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ




Տպարան „ՇԻՐԱԿ" Ալէքսանդրապօլ
1906
(34)




ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

*Բարեփոխուած՝ երկրորդ տպագրութիւն*



ԹԻՖԼԻԶ
Տպարան Տ. Մ. Ռոտինեանցի

Գ. ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ծխական դպրոցների համար.

Պատկերազարդ

ԹԻՖԼԻԶ
1906

Գ. ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՄԻԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ.

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ



ԹԻՖԼԻՍ
ԷԼԵԿՏՐԱՇԱՐԺ ՏՊԱՐԱՆ ԹՐ. Ն. ԱՂԱՆԵԱՆՑԻ ՊՈԼԻՑ. 7.
1908 (75)





ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԾԽԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

Հրատարակութիւն տիկին Մ. ՎԱՆՑԵԱՆԻ

ԹԻՖԼԻՍ
Էլէկտր. տպարան «ԷՊՈԽԱ» Գանովսկայա փող. № 3.
1909

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԾԽԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*(սկզբից մինչեւ մեր օրերը)*

ԳԻՆՆ Է 50 ԿՈՊ.



ՉՈՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՊԵՏՐՈԳՐԱԴ

Հրատարակութիւն տիկին Մ. ՎԱՆՑԵԱՆԻ





ՁԵՌԱԳՐԻ ԻՐԱՒՈՒՆՔՈՎ

# ՀԱՅ-ԼԵԶՈՒ

## ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՅԲԵՆԱՐԱՆ

*Ա. ՏԱՐԻ*

Կազմեց Գ. ՎԱՆՑԵԱՆ



ԹԻՖԼԻՍ

ԷԼԵԿՏՐԱՇԱՐԺ ՏՊԱՐԱՆ ՕՐ. Ն. ԱՂԱՆԵԱՆՑԻ

1907

## ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ ԱՌՆՉՎՈՂ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏԻՏՂՈՍԱԹԵՐԹԵՐԸ

(բնօրինակների լուսապատճենումներ)



ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ
ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ

# ՊԱՏՄԱ-ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ՀԱՆԴԵՍ

ՀԻՄՆԱԴՐՎԵԼ Է 1958 Թ.

НАЦИОНАЛЬНАЯ АКАДЕМИЯ НАУК
РЕСПУБЛИКИ АРМЕНИЯ

# ИСТОРИКО-ФИЛОЛОГИЧЕСКИЙ ЖУРНАЛ

ОСНОВАН В 1958 Г.



ՀՀ ԳԱԱ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ИЗДАТЕЛЬСТВО «ГИТУТЮН» НАН РА


ՆՎԻՐՎՈՒՄ Է
ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԲԱՆԱՍՏԵՂԾ
ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻ
ԾՆՆԴՅԱՆ 140-ԱՄՅԱԿԻՆ
ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻ
ԿՅԱՆՔԻ ԵՎ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ
ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆ
(1869 – 1908)


ՎԱՀԱՆ ՏԵՐՅԱՆ
ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ
ԵՐԵՔ ՀԱՏՈՐՈՎ
Հայպետհրատ
Երևան 1963
ՎԱՀԱՆ ՏԵՐՅԱՆ
ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ
ՀԱՏՈՐ ԵՐՐՈՐԴ
ԿԱԶՄԵՑ, ԾԱՆՈԹԱԳՐԵՑ ԵՎ ՎԵՐՋԱԲԱՆԸ
ԳՐԵՑ Վ. ՊԱՐՏԻԶՈՒՆԻ
Հայպետհրատ
Երևան 1963



# ԿՈՄԻՏԱՍ

ԺՈՂՈՎԱԾՈՒ՝ ՆՎԻՐՎԱԾ ԿՈՄԻՏԱՍԻ
ԾՆՆԴՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻՆ

Կազմեց ՌՈՒԲԵՆ ԹԵՐԼԵՄԵԶՅԱՆ

ՊԵՏԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ 1930

АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ЛИТЕРАТУРЫ им. М. АБЕГЯНА

АРАМ ИНДЖИКЯН

# ОВАНЕС ТУМАНЯН

ИСТОРИЯ
ЖИЗНИ И ТВОРЧЕСТВА
1869—1899

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН
1969

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
Մ. ԱԲԵՂՅԱՆԻ ԱՆՎ. ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԱՐԱՄ ԻՆՃԻԿՅԱՆ

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ

ԿՅԱՆՔԻ ԵՎ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ
ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ
1869—1899

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ
1969

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ



ԵՐԿԵՐԻ ԼԻԱԿԱՏԱՐ
ԺՈՂՈՎԱԾՈՒ



ՏԱՍ ՀԱՏՈՐՈՎ

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ



ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ



ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ



ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ

ԵՐԿԵՐԻ ԼԻԱԿԱՏԱՐ ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՏԱՍ ՀԱՏՈՐՈՎ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ

ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

ՔԱՌՅԱԿՆԵՐ
ԲԱԼԼԱԴՆԵՐ
ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆ · 1990



ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ

ԵՐԿԵՐԻ ԼԻԱԿԱՏԱՐ ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՏԱՍ ՀԱՏՈՐՈՎ

ՀՀ ԳԱԱ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ

ՀԱՏՈՐ ԻՆՆԵՐՈՐԴ

ՆԱՄԱԿՆԵՐ
1885–1904

ԵՐԵՎԱՆ—1997

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
*Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտ*

# ԹՈՒՄԱՆՅԱՆԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑՆԵՐԻ ՀՈՒՇԵՐՈՒՄ

*Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն*
ԵՐԵՎԱՆ · 1969

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

Բ. Մ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

# ՀԱՅՈՑ ԾԱԾԿԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

(8000 հեղինակի 25000 ծածկանուն)



ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ - 2005



АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР

**ИСТОРИЯ АРМЯНСКОЙ ЛЕКСИКОГРАФИИ**

**ՀԱՅ ԲԱՌԱՐԱՆԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ**



ТУМАНЯН

ИССЛЕДОВАНИЯ И ПУБЛИКАЦИИ

4

ԹՈՒՄԱՆՅԱՆ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐ

4

# ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՄԱՌՈՏ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆ



## ՆՈՐ ԴԱՐ – ՖՈՒՏՈՒՐԻԶՄ

## 4

ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ 2003

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆ





ՀԱՏՈՐ II

ՍՈՎԵՏԱԿԱՆ - ՏԻԵԶԵՐՔ

ԵՐԵՎԱՆ 1985

ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆ. ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ՈՎ ՈՎ Է

# ՀԱՅԵՐ

## Կենսագրական հանրագիտարան

ՀԱՏՈՐԻ ԳԻՏԱԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎ

**Հ.Մ. ԱՅՎԱԶՅԱՆ** (գլխավոր խմբագիր-տնօրեն), **Գ.Վ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ** (պատասխանատու քարտուղար), **Ֆ.Մ. ԱՂԱՄԱԼՅԱՆ**, **Հ.Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ** (գլխավոր խմբագրի տեղակալ), **Վ.Ա. ՀԱԿՈԲՋԱՆՅԱՆ**, **Ս.Տ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ**, **Վ.Գ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**

*Հատոր երկրորդ*

*Ճաղարյան-Ֆրիկ*

2007



ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ
ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ
Մ. ԱԲԵՂՅԱՆԻ ԱՆՎԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԹՈՒՄԱՆՅԱՆ

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐ

5

ՀՀ ԳԱԱ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1998



«Միտք» վերլուծական կենտրոն

# Հայոց հյուսիսային դարպասները. ՋԱՎԱԽՔ ԼՈՌԻ

(Նյութերի ժողովածու)

7

Երևան
«Միտք» վերլուծական կենտրոն
2012

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆ

## ՀԱՏԸՆՏԻՐ

Կազմել և հրատարակության է պատրաստել
պ. գ. թ. Վահե Սարգսյանը:

Համակարգչային մակետավորումը և
կազմի ձևավորումը՝ Վահրամ Արշակյանի

Տպագրիչ՝ Լևոն Մուրադյան

Ստորագրված է տպագրության՝ 10.08.2020 թ.:
Տպաքանակը՝ 300 օրինակ:
Ծավալը՝ 36.5 տպ. մամուլ:

ՀՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ
ИНСТИТУТ ИСТОРИИ НАН РА
INSTITUTE OF HISTORY OF NAS RA

ՀՀ, 0019, Երևան, Մարշալ Բաղրամյան պողոտա, 24/4
РА, 0019, Ереван, пр. Маршала Баграмяна, 24/4
24/4, Marshal Bagramyan Ave., 0019, Yerevan
http://www.academhistory.am



Գ. Վանցեան ազգային կրթուած դէմքերէն էր. Ներսիսեան վարժարանը աւարտելով՝ յաջողած էր Եւրոպա իւր ուսումը կատարելագործելու անցնիլ, ուսկից դառնալով՝ Տփղիսի առեւտրական դպրոցի մէջ հայերէն լեզուի դասատուութիւն կ՚ընէր: Հայ ուսուցչութեան յառաջադիմութեան բարեխիղճ մարդիկներէն էր, որուն կորուստը Նոր կազմակերպիլ սկսած միութեան զգալի վնաս մըն էր:

Գ. Վանցեան հայ գրականութեան մէջ ալ ձեռնհաս ոյժ մըն էր…

«Հանդէս ամսօրեայ», 1908, թիւ 7, էջ 224: